Chashak heilen ew latin...

# ՃԱՇԱԿ
# ՀԵԼԼԷՆ ԵՒ ԼԱՏԻՆ
# ՃԱՐՏԱՐԽՕՍՈՒԹԵԱՆ

ԹԱՐԳՄԱՆԵԱՑ Ի ԲՆԱԳՐԱՑ

Հ. ԱՐՍԷՆ ԿՈՄԻՏԱՍ ԲԱԳՐԱՏՈՒՆԻ

ՄԽԻԹԱՐԵԱՆՑ



Ի ՎԵՆԵՏԻԿ
Ի ՎԱՆՍ ՍՐԲՈՅՆ ՂԱԶԱՐՈՒ
1863

# ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ

Իշխան ոք՝ որ չև էր տուեալ զհամար՝ տնտեսութեանն՝ աթենացւոց օրէնքն չհրամայէին ումեք խնդրել 'ի ժողովրդենէն պատիւ 'ի պարգև ումն: Եւ միւս ևս օրէնք պատուիրէին, զպատկան պարգևսն 'ի ժողովրդենէն՝ 'ի հասարակաց ժողովոյն մատուցանել: Դիմոսթենէս գործ 'ի ձեռն հանեալ կարկատել զպարիսպն Աթենայ, իւրովք ևս ծախիւքն էր զայն վճարեալ: Կտեսիփոն ոմն անուն՝ քաղաքակից իւր և բարեկամ, չև Դիմոսթենէս հատուցեալ զհամար գործակալութեանն, առաջի արար ժողովրդեանն և հաճեցոյց ընծայել նմա պսակ ոսկի, և մատուցանել զայն, հակառակ օրինացն, յաշխարհախումբ ատենաբանի՝ ակն յանդիման բազմաժողով հրապարակին, և քարոզ կարդալ՝ զի 'ի վերայ առաքինութեան և երախտեաց իւրոց առ ժողովուրդն աթենացւոց՝ ընդունէր Դիմոսթենէս զայն փոխարէնս:

Եսքինէս 'ի ճառի աստ ամբաստան լինի զԿտեսիփոնէ, զի հակառակ օրինաց՝ պսակ հրամայէ իշխանի որոյ չև է տուեալ համարս, և զի 'ի ատենարանին խնդրէ զայն մատուցանել, և զի սուտ գովէ զառաքինութիւն և զբարերարութիւնս առնն՝ յորում չիք ինչ ընաւ երևեալ լաւութիւն, և ոչ երախտաւորութիւն առ ժողովուրդն:

Դատ մեծ. զի են 'ի նմա և օրինացն նուրբ մեկնութիւնք յերկոսին կողմանցն, և ծանր պայքար զերախտեաց առ պետութիւնն: Եւ զի Եսքինէս 'ի Դիմոսթենեայ 'ի զլխապարտութիւն ամբաստանեալ էր վասն անիրաւ հրեշտակութեանն, այն պատճառաւ են Եսքինեայ՝ 'ի վրէժխնդրութիւն թշնամւոյն՝ դատախազելոյ ընդ անուամբ Կտեսիփոնի զգործոց և զհամբաւոյ Դիմոսթենէսի: Զի ոչ այնչափ զհամար չարալոյն առնէ, որչափ զի ապիրատ ոք է և իբրև լաւագոյն ոք գովի:

Այս ամբաստանութիւն Եսքինեայ զԿտեսիփոնէ՝ քաւեամ մի յա-ռաջ քան զմահ Փիլիպպեայ արքայի մակեդոնացւոց մատուցեալ, իսկ դատաստանն ամաց ինչ զկնի կատարեցաւ, մինչդեռ Աղեքսանդր ար-քայացեալ էր ասիացւոց կողմանցն: Զամենայն Ելլադա ասեն խուռներ-թաց դիմեալ յատեանն անդր: Եւ զի՞նչ իսկ քան զայն՝ տեսիլ ցան-կալի և արժանաւոր էինչ, ուր երկուքին մեծանուն ճարտարախօսք 'ի պայքար մտանէին 'ի գլուխ մի մեծ պայքարի՝ ամենայն Հնարագիտու-թեամբ հանճարոյ և քինախնդրական ոխից:

ԿԻԿԵՐՈՆ, գլխաւորն ազգէ ճարտարասանից. Է. որ և խոստա-նայ թարգմանել զերկոսին ճառսն հելլենականս 'ի լատին, որ արդ չեն 'ի միջի՝ բաց 'ի յառաջաբանէն իւրմէ, բայց կային յաւուրս Ս. Հերոնիմոսի:

ղաքիս 'ի հմտութենէ փորձոյ. և ապա՝ ում ումեք և յայլոց քաղաքացւոց կամ իցէ՝ կարգաւ ըստ հասակին մի ըստ միոջէ յայտնի առնել զամենայնէ զմիտս իւր: Զի թուի ինձ, թէ այսու օրինակաւ քաղաքս բարւոք տնօրինեսցի, և նուազ լինիցին փոփոխք դատաստանաց: Բայց քանզի որ ինչ զամ մի յառաջագոյն բարւոքն էին վկայեալ՝ եղծաւ բարձաւ այժմ ամենայն, և համարձակ գրեն ոմանք արտաքոյ օրինացն հրամանս, և զպիրան զայն այլք ոմանք 'ի վճիռ հանեն, ոչ արդարապէս վճռակեալք դահերիցութեան, այլ հայթայթանօք առեալք զաթոռն. և եթէ յայլոց խորհրդականաց ոք՝ իրաւամբք վճռակեալ 'ի դահերիցութիւն հասեալ գտանիցի, և զձեր ընտրութիւնդ ուղղութեամբ հրատարակիցէ [2], որք զքաղաքավարութիւնն ոչ հասարակաց ինչ՝ այլ սեփական իւրեանց ձեռակալն վարկանին, ատատենն նմա՝ մի իշխել պատմել: Եւ զբամիկն 'ի հարկի ծառայութեան կացուցեալ, և անձամբք անձանց առեալ իշխանութիւնս, և զօրինի դատաստանսն չրեալ, որ ինչ ըստ իւրեանց անձնակամակ հաճութեանն իցեն՝ զայնս ընտրեն խրոխտով. լսեալ կայ գեղեցկագոյնն և իմաստնագոյն 'ի քարոզս քաղաքիս, թէ « Որոց ըստ յիսնեմեակն ելեալ իցեն՝ ո՞ 'ի նոցանէն կամիցի հրապարակախօս լինել, և դարձեալ յայլոց ամենացւոցն մի ըստ միոջէ: » Եւ ճարտասանիցն սահակութեան ոչ զօրէն ունել զդէմ, ոչ օրէնք, ոչ նահապետք, ոչ ատենի դահերէց, տասներորդ մասն քաղաքիս [3]:

Եւ զի այս այսպէս, և ժամանակք քաղաքիս այսպիսի՝ որպիսի դուք իսկ տեսանէք, մի եւեթ մասն տեսչութեան կայ մնայ 'ի ձեռս, եթէ և եսն չմարթեմ ինչ, զանխրատւաց փութիչք ամբաստանութեան: Իսկ եթէ և զայս քակտեցէք, կամ քակտեցեալս տայջիք թոյլ, ահա կանխեմ ասեմ ձեզ՝ զի առ. փոքր փոքր զվարչութիւնն բովանդակ 'ի ձեռս ոմանց լքանիցէք յանդէտս: Քանզի քաջ գիտէք, արք աթենացիք, զի առ. մարդիկ համօրէն՝ երրեակ քաղաքավարութիւնք են. ինքնակալութիւն, սակաւապետութիւն և ընկերհաշտու-

թիւն. Միանձնակալութիւնք և ստահակապետութիւնք վարին ըստ կամս իշխեցողացն, իսկ քաղաքք ընկերահաշտք՝ հաստատուն օրինօք: Մի ոք ապա 'ի ձէնջ անգիտասցի զայս, այլ հաւաստի գիտասցէ ամենայն ոք, զի յորժամ ելեալ յատեան մտանիցէ՝ դատել զամբաստանութիւն անիրաւութեան, յաւուրն յայնմիկ առաջի կայ նմա զազատութենէ իւրմէ հատանել վճիռ: Վասն որոյ և օրէնսդիրն [4] զայս նախ կարգեաց յերդմանն անդ դատաւորացն. «Վճիռ ըստ օրինացն տաց.» զի ճարտար գիտէր թէ յորժամ պահեսցին քաղաքին օրէնք, և ընկերհաշտութիւն կացցէ յակատանի:

Զայս ընդ ուշ կալեալ ձեր՝ ատեալ պարտիք զորս հակառակ ինչ օրինաց առաջեն հրամանս, և մի ինչ յանիրաւութեանց անտի փոքր համարել, այլ մեծեղեան զամենայն: Եւ զայս իրաւունս ձեր՝ մի ումեք 'ի մարդկանէ տալ թոյլ յափշտակել. ոչ զօրավարացն բարեխօսութեանց, որ 'ի բաղում ժամանակաց հետէ գործակից ոմանց եղեալ ճարտարախօսաց՝ ապականեն զքաղաքավարութիւնն, և ոչ աղաչանացն հիւրոց, զորս 'ի մէջ ածեալ ոմանց՝ զերծանին 'ի ձեռաց ատենից անօրէն քաղաքավարութեամբ իւրեանց: Այլ զոր օրինակ ամենայն ոք 'ի ձէնջ յամօթ մտանէր՝ զատալիք լինել յոր կարգեցաւն 'ի մարտի, նոյնպէս և այժմ ամաչեսջիք թողուլ զտեղին՝ յոր յօրինացն դասեցայք պահապանք ընկերհաշտութեան յաւուր յայսմիկ:

Եւ զայն ևս պարտ է յուշ ածել, զի զարդիս քաղաքացիք ամենայն՝ որոց զքաղաքս ձեր յանձն արարեալ է, և զվարչութիւնն 'ի ձեզ հաւատացեալ, կէսք աստ են և ունկն դնեն դատաստանիս, և այլք հեռի՝ իւրաքանչիւր 'ի գործ իւր. յորոց պատկառեալ, և երդմանցն զորս երդուայք յիշող եղեալ և օրինացն, եթէ յանդիմանեսցուք զԿտեսիփոն՝ տարապէս օրինացն գիր հանեալ, և սուտս գրեալ և վնասակարս քաղաքիս, լուծէք, արք աթենայիք, զանօրէն հրամանսն, պինդ կալջիք քաղաքիս զընկերհաշտութիւն, զթըշնամիս օրինացն և քաղաքիս պատուհասեսջիք, և որ հակա-

ռակ օդոյ ձեռուամբ գնացեալքն լցեն։ Եթէ առնլին միօք ունկն մատուցջիք առաջնոյ խօսիցս, ՛քաջ գիտեմ զի արդար և ուղիղ ըստ երդմանդ՝ և 'ի շահ օդոյ ձեռոյ և ամենայն քաղաքիս առնիցէք զատ։

Այդ յուսամ յաղագս ամբաստանութեանս առ Համարակ ասացեալ բաւականն 'ի մտաւս առա․ իսկ զօրէնացն Համարատուաց, զորովք ապախտ արարեալ Կտեսիփոնի 'ի գիր հրամանին, կամիմ աստ կարճառօտս։ Զի յառաջ ժամանակաւ տիրացեալ ոմանց՝ մեծամեծ իշխանութեանց 'ի քաղաքիս, և զմատակարարութիւն զանձուց 'ի ձեռն առեալ, և 'ի զուստ յամենեսին եղեալ կաշառաբեկ, յինքեանս յարեցուցեալ զձարտարախօսս ՙ խորհրդարանին և զժողովրդեանն, անձապարէին ունէին զառաջս համարատուութեանն՝ գովութեամբք և քարոզն կարգաւորով․ մինչև 'ի համարատուութեան իշխանաց՝ 'ի մեծ տագնապ տարակուսի անկանել զատաւորացն, ևս առաւել զատաւորաց։ Զի բազումք 'ի համարատուաց՝ յայտնապէս գող ըմբռնեալք զանձուց աշխարհին, ապրեցանէին 'ի զատաստանաց․ և յիրաւի։ Զի կարծեմ ամօթ կրեալ զատաւորացն, եթէ այնպէս ինչ երևեսցի՝ թէ նոյն այր 'ի նմին քաղաքի, թերևս և 'ի նմին տարւոջ, փոքր մի յառաջ քարոզեալ 'ի հանդիսի՝ զի վասն առաքինութեանն և արդարութեան պսակ ոսկի պսակի 'ի ժողովրդենէն, և ապա փոքր մի յետոյ նոյն այր ելանիցէ յատենէն պարտաւոր գողութեան 'ի հաշուոյն․ որպէս զի հարկ լինել զատաւորացն՝ ոչ ըստ այն ժամու անիրաւութեանն, այլ առ ամօթոյ ժողովրդեանն առնել զվճիռն։

Յայս հայեցեալ օրէնադիր ուրուք, կարգէ օրէնս մի յոյժ վայելուչս, որ արգելու յայտնապէս՝ զպատրուականս համարոյ մի պսակել։ Եւ յետ այսր այսպէս քաջ նախահոգակ լինելոյ օրէնադրին, գտանին տակաւին բանք քան զօրէնսն զօրագոյնք․ զոր թէ ոչ ոք արգիլիցէ ձեզ՝ յանդգնանեց 'ի պատրանս ըմբռնեսջիք։ Զի յորոց արտաքոյ օրինաց

զհամարապարտսն պսակեն՝ են որ բնութեամբ համեստագոյնք են, — եթէ յանիրաւ հրամանատուութեան գտանիցի ոք համեստագոյն, — և սակայն արկանեն ինչ զէթ պատրուակ անօթոյ: Զի յաւելուն 'ի գիր հրամանին, պսակել զհամարատուն յորժամ եթէ զհաշուան և զհամար իշխանութեանն տայցէ: Քաղաքս զնոյն աղաղէն կրէ անիրաւութիւն, զի գովութեամբք և պսակօք յառաջագոյն համարքն պաշարեն, սակայն հրամանին գրող՝ զէթ ցոյցս իմն լաւելայն տանէ, զի թէպէտ և անիրաւ ինչ է գիրն, սակայն ինքն 'ի յանցանաց պատկառէ: Իսկ Կտեսիփոն, ով այրք աթենացիք, մաղեալ զհամարապարտականն օրէնս, և զպատճառանսն ետ՝ զոր արդ իսկ տեսանէք՝ բարձեալ 'ի միջոյ, մինչ չև զհաշուան, մինչ չև զհամարսն տուեալ, գրեաց ատենին և տար զիշխանն պսակել զԴիմոսթենէս:

Բայց նոքա, ով այրք աթենացիք, այլ իմն բան այժմու ստացելումս հակառակ ասասցեն, որպէս թէ ոչ ամենայն յոր հրամանաւ կարգեալ ոք ինչ գործիցէ՝ իշխանութիւն իցէ, այլ հոգաբարձութիւն ինչ և պաշտօն եւեթ. իսկ իշխանութիւն՝ զայն ասասցեն լինել, զոր Օրէնսպահքն [6] ընտրեն 'ի մեհեանին Թեսեւսի, և զոր սովոր է ժողովուրդն ընտրել 'ի ժողովս իւր [7], զօրավարս և ասպահապետս, և զորս ընդ նոցանէն իշխանութիւնք. իսկ զայլն ամենայն՝ հրամանաւ եւեթ գործակալութիւնս:

Իսկ ես՝ առ նոցա խօսս՝ զօրէնս ձեր ածից 'ի մէջ, զոր դուք օրէնսդրեցէք 'ի ցրումն այդպիսի բարբանաց, յորում և գրեալ կայ յայտնապէս. «Որ ընտրութեամբքն են, ասէ, իշխանութիւնք, — զամենայն առ հասարակ միով անուամբ բովանդակեալ օրէնսդրին, և հաւասար իշխանութիւն կոչելով զընտրեալսն 'ի ժողովրդենէն, — և գործավարք, ասէ, գործոց աշխարհին, — և է իսկ Դիմոսթենէս պարսպաշէն՝ [8] մեծագոյնի գործոյ գործավար, — և ամենեքին որ միանգամ աւելի քան զաւուրս երեսուն անտեսեցին ինչ զքաղաքէն, և որ զպխաւորութիւն ատենից առնու-

ցուն , — և ամենայն ոստիկանք գործոց՝ գլխաւորութիւն ումին ատենի . » զի՞նչ պատուիրէ նոցա առնել։ Ոչ պաշտել, այլ՝ իշխել, փորձ գտեալ յատենի. — զի և վիճակաւն ընտրեալ իշխանութիւնք՝ ոչ եթէ անփորձ ինչ իշխեն , այլ յետ ընդ հարցփորձ անցանելոյ . — և տալ հաշիւս և համարս առ դպրապետն և առ համարատուս՝ հրամայէ , որպէս և այլոց իշխանութեանցն ։

Եւ զի զճշմարիտն ասեմ, զնոյն իսկ զօրէնսն ընթերցցի [9] ձեզ ։

## ՕՐԷՆՔ

Եւ արդ , ո՜վ արք աթենացիք , յորժամ զոր օրէնսգիրն իշխանութիւնս անուանէ՝ սոքա գործակալութիւնս և հոգաբարձութիւնս յորջորջիցեն , ձեզ անկ է յուշ ածել և ախոյեան հանել զօրէնսն առ նոցա յանդգնութիւնն . և ընդդէմ բերել նոցա , թէ չհաճիք ընդ խորամանկ խաբեբայն՝ որ կարծէն բանիւք զօրէնսն տապալել . այլ անիրաւ ինչ գրեալ ուրուք , որչափ և ճարտար խօսիցի , նոյնչափ և մեծագունի արժանի եղիցի բարկութեան ։ Զի պարտ է , ո՛ արք աթենացիք , ճարտարախօսի՝ զնոյն նման օրինացն բարբառել . իսկ յորժամ այլ ձայն օրէնքն արձակիցեն , և այլ ճարտարախօսն , 'ի կողմ արդարութեան օրինացն պարտ է տալ վճիռ , և ոչ խօսելեացն անամօթութեան ։

Իսկ զոր Դիմոսթենէսն ասէ անփախուստ բան , կամիմ կանխել ասել զնմանէ համառօտ ։ Քանզի հանդերձեալ է դա ասել . « Պարսպաշէն եմ , ոչ ժխտեմ զայդ . այլ մատուցի քաղաքիս հարիւր մնաս , և զգործն մեծ 'ի գլուխ հանեալ վճարեցի . իսկ արդ իմ իմիք պարտապան իցեմ համարս տալոյ . եթէ ոչ և խնամոտ բարերար կամից համարք ինչ իցեն ։ » Առ այդ բաղբաղայսդ՝ լուարուք զոր ասեմս յիրաւի , և ձեզ յօգուտ ։ Զի 'ի քաղաքի աստ յայսմիկ՝ այսքան վաղնջական և մեծի՝ ոչ ոք է առանց համարս տալոյ ,

յորոց և եղէ 'ի հասարակաց գործ մատուցելոց ։ Իսկ նախ զզարմանալիսն ուսուցից ձեզ․ որպէս զի և զքուրմսն և զքրմանոյշս ընդ համարատուպահանջութեամբ լինել հրամայեն օրէնքն , և միահաղոյն զամենեսեան առհասարակ , և զմի մի իւրաքանչիւր ընդ անձինն․ որոց է ընծայս եւեթ առնուլ , և աղօթս վասն ձեր առ դիսն մատուցանել․ և ոչ միայն առանձինն ուրուք , այլ և խառն հասարակ զազգս , զԵւմոպիդս և զՔարոզս , և զայլն ամենայն ։ Եւ այսու՝ և զպետս [10] կառուցից և կազմից պատերազմիկ նաւացն՝ ․ օրէնքն պարտս առնեն համարոյ․ որ ոչ 'ի հասարակաց համարուէ՝ մատակարարք ինչ իմիք լինին , և ոչ 'ի ձերոց հասից բազում ինչ շորթեալ և սակաւս ծախեալ , 'ի հատուցանելն ձեզ զձերն՝ յաւելուած առեն արարեալ շնորհս , այլ որ յայտնի իսկ 'ի հայրենի գոյիցն 'ի ձեզ առատացեալքն են ։

Բայց ոչ միայն նաւակառոյցքդ , այլ և ամենամեծար ատեանք ատենականաց քաղաքիս՝ ընդ դատաստանական համարով անկանին ։

Քանզի նախ՝ զատենի Արիսպագին հրամայեն օրէնքս մատանել 'ի գիր համարակալացն , հաշիւս և համարս տալ․ և որ անդ ահաւորն է և մեծամեծաց [11] իշխան՝ ընդ ձերով դատաստանաւդ արկանէ ։ — Իսկ արդ ո՞չ պսակեսցի ատեան Արիսպագին ։ — [12] Զի և ոչ 'ի հարց անտի կարգեալ գայ առ նոսա ։ — Իսկ արդ ո՞չ 'ի պատիւ եղեալ առնիցեն ։ — Եւ կարի իսկ քաջ․ բայց ոչ շատ համարին՝ եթէ ոչ ոք առ նոսա յանցանիցէ , այլ և՛ եթէ մեղիցէ ոք՝ պատուհաս կարգեն 'ի վերայ․ իսկ ձեր ճարտարախօսքդ շփացեալ ապերասանեն ։ Դարձեալ և զխորհրդարանն զՀինգհարիւրոցն պարտական համարոյ կացուցանէ օրէնսդիրն․ և այնպէս սաստիկ թերահաւատեալ 'ի համարատուաց , մինչև 'ի գլուխ անդր օրինացն ասել․ « Իշխան որ համարս ունիցի տալ , մի՛ ուրեք , ասէ , գնասցէ 'ի տար աշխարհ ։ »

Տէ՛ր , ասէ՛ , ասասցէ ոք թերևս , քանզի իշխան կացեալ

եմ, չելից ուրեք ընդ աշխարհս ։ — Ոչ․ զի մի՛ առնել ըղ-գանձս և զպանդխտին քաղաքին՝ հաստատուած երթիցես փա-խըստեայ ։ Դարձեալ ոչ ներէ համարատուի նուիրել զեց զգոյսն, ոչ ձօնի համնել, չլինել ումեք յորդեգիր, ոչ կտա-կագրել զինչսն, և ոչ այլ ինչ բազում․ հակիրճ ասել, գրաւեալ օրէնսդիրն զինչս համարատուաց յամրի գնէ՝ մինչև հաստուսցեն քաղաքին զհաշիւսն ։ — Բարւոք․ սակայն է ոք այր՝ որ չէառ ինչ ՚ի գանձուէ աշխարհին և ոչ ծա-խեաց, բայց յիրս ինչ հասարակաց եղև միջամուխ ։ — Եւ-նմա պատուիրէ՝ հաշիւս տալ համարատուացն ։ — Իսկ զիա՞րդ. որ չառնէ ինչ և ոչ ծախեաց՝ տայցէ հաշիւս քաղա-քին ։ — Նա ինքն օրէնքն յաւելու և ուսուցանէ զոր պարտն է արձանագրել․ զի զայս ինչ հրամայէ ՚ի գիրս հարկանել․ « Չառի ինչ ՚ի քաղաքէն և ոչ ծախեցի ։ » Չիք ինչ ՚ի քաղա-քիս առանց համարոյ և հարց և քննութ. առնելոյ ։ Եւ զի ար-դար ասեմ, նոյնին իսկ օրինացն լուարուք ։

ՕՐԷՆՔ

Արդ ՚ի կարի ժամերանել Դիմոսթենի և ասել, թէ վասն որոյ չպարտիմ ինչ համարս, զայն տուք նմա պատասխա-նի․ « Մի թէ չէր քեզ պարտ, ով Դիմոսթենէս, թոյլ տալ քարոզին համարատուաց՝ կարդալ զհայրենաւանդ և զօրի-նաւոր քարոզութիւնն զայն․ Ո՞ այն ոք որ ամբաստան լինել կամիցի ։ » Որում կամիցին ՚ի քաղաքացւոց՝ թոյլ տուր յարուցանել քեզ փաստախիչ, զի չէառուր ինչ բնաւ, այլ և ՚ի բազմաց անտի՝ զոր ՚ի շինութիւնն պարսպացն ու-նիս՝ սակաւ ինչ եթէ արկեր ՚ի կէր․ մինչ զեռ. տաղանդս [13] տասն առեալ ես առ. այն ՚ի քաղաքէն ։ Մի յափշտակեր զպատուիսն, և մի ՚ի ձեռաց դատաւորացն զվճիռսն կորզեր, և մի ՚ի վեր քան զօրէնսն քաղաքավարիր, այլ ընդ նոցա-նէն․ զի այս իսկ է՝ որ զընկերահաշտոխն ուղղէ ։

Արդ՝ առ սնոտի պատճառանսն զոր դոքա պատճառէին,

ցայս վայր յինէն աւանդեալ լիցի ։ Իսկ զի արդարեւ համարս պատրաստէր Դիմոսթենէս՝ յորժամ առ[14] 'ի մէջ մտանոյց զխնդիրն, զի եղեալն կայր 'ի վերայ ատենականաց եւ եղեալն պարսպապաշտճեաց, եւ ոչ զիշխանութեանցն այնոցիկ առաւել ուրեք էր ձեզ զհաշիւս եւ զհամարս, զայդ յառաջիկայդ հանդիտացայց ցուցանել ձեզ 'ի հասարակաց գրութեանցս ։

Օ՜ն ընթերցիր ինձ, առ որով եղեալ իշխանաւ, յորում ամսեան, յորում աւուր եւ յինչ ժողովի ընտրեցաւ Դիմոսթենէս յիշխանութիւն ատենականաց ։

## ՕՐԱՀԱՄԱՐ

Արդ՝ եթէ եւ ոչ ինչ աւելի քան զայդ ցուցանէի, 'ի պարտաւորութիւն յիրաւի մատնեալ լինէր Կտեսիփոն․ զի ոչ իմ ինչ դատախազութիւն պարտաւորէ զնա, այլ հասարակաց գրութիւնքս ։

Յառաջ ժամանակաւ, ով արք աթենացիք, կայր քաղաքիս արձանագրող[15] ընտրեալ, որ առ իւրաքանչիւր նախահաղեստութեանս համարս տայր ժողովրդեանն զելից եւ զմտից․ իսկ առ վստահութեան ձերում յԵւբուլոս[16] մինչ չեւ էր կարգեալ օրէնքն Հեգեմոնի[17], որք 'ի վերայ ատենականաց ընտրեալքն էին՝ նոքա վարէին զիշխանութիւն արձանագրողին․ ունէին եւ զիշխանութիւն հարկահանաց եւ զնաւապարածաց, եւ զզինանոցն շինէին, եւ ճանապարհաց էին յարդարիչք, եւ զամենայն իսկ գրեթէ յանձանձանս քաղաքիս ունէին բովանդակ ։ Զայս ոչ 'ի բամբասանս եւ ոչ 'ի ամբաստանութիւն կամիմ ինչ նոցին առնել, այլ զայն կամիմ ցուցանել ձեզ, զի թէ ով զփոքու ինչ իրիք իշխանութեան համարս պատրաստեցի, չառայ թոյլ օրէնսդիրն պսակել, մինչեւ տացէ զհաշիւսն եւ զհամարս ։ Իսկ Կտեսիփոն ոչ ինչ վեհերեաց պսակ խնդրել Դիմոսթենի, որոյ զամենայն իսկ իշխանութիւնս միանգամայն 'ի ձեռս արկեալ է յաթենացւոցս քաղաքի ։

Եւ զի զպարսպապաշտճեացն եւս ունէր իշխանութիւն՝ յոր-

ժամ առ զխնդիրդ մատոյց, և զգանձս աշխարհին մատակարարէր, և տուգանս արկանէր՝ ոչ ինչ ընդհատ յայլոց իշխանաց, և առաջնորդութիւն ունէր զդատաստանաց, այդոցիկ զնոյն ինքն զԴիմոսթենէս և զԿտեսիփոն մատուցից ձեզ վկայս: Զի առ Քերոնդեաւ իշխանաւ, որ օր քսան և ինն էր Թարգելիոն ամսոյ, 'ի ժողովել ժողովրդեանն, հրաման եհան Դիմոսթենէս՝ յատեան կոչել զցեղսն յերկրորդ և յերիր աւուր Սկիրոփորիոնի. և 'ի հրամանի անդ՝ պատուէր եդ՝ 'ի միոյ միոյ 'ի ցեղից անուն ընտրել հոգաբարձուս գործոց պարսպին և հանդերձապետս: Եւ կարի յիրաւի. զի լիցին քաղաքիս անձինք համարատուք՝ յորոց զծախիցն հաշիւս հատանիցէ:

Ա՛ռ աղէ ընթերցիր ինձ զհրովարտակսն:

## ՀՐՈՎԱՐՏԱԿՔ

Այո, այլ անդէն ածէ Թափէ առ այդ. Ոչ վիճակաւ կարգեցայ 'ի շինուած պարսպին, և ոչ 'ի ժողովրդենէն ընտրեալ: — Եւ յաղագս այսր՝ Դիմոսթենէս և Կտեսիփոն բազում արասցեն խօսս. իսկ իմս՝ հակիրճ և հաւաստի, որ փութով լուծցէ զարուեստս նոցին: Այլ նախ սակաւ ինչ զայսցանէ կամ է ինձ ասել առ ձեզ:

Քանզի իշխանութեան, ո՛վ աթենացիք, օրինակք են երեք. յորոց մին և ամենեցուն քաջայայտ՝ որ վիճակաւ և որ ընտրութեամբ կան յիշխանութիւնն. երկրորդ՝ որոց գործ ինչ մատակարարութեան քաղաքիս 'ի ձեռս տուեալ է առաւել քան զաւուրս երեսուն, և որ տեսչանքն են գործոց աշխարհին. իսկ երրորդն՝ յօրէնսն անդ գրեալ կայ. « Եւ եթէ այլք ոմանք ընտրութեամբ զառաջնորդութիւն դատաստանաց ունիցին, և նոցա իշխել՝ յետ փորձ և ընտրելն զատանելոյ: » Իսկ եթէ ոք հանցէ 'ի բաց զիշխանսն ընտրեալս 'ի ժողովրդենէն և զվիճակաւսն, մնայ՝ զի և զորս ցեղք և երիր մի ցեղից և խառնաղանձն ընտրեն 18 յին-

ցեանց հազարապետս հասարակաց գանձուն, եղեն և նոքա իշխանք ընտրականք։ Եւ այս լինի, յորժամ որպէս այժմ՝ հրամայեսցի ինչ ցեղէց. կամ փոսս հատանել, կամ նաւս կառուցանել պատերազմիկս։

Եւ թէ զճշմարիտն բարբառիմ՝ 'ի նոցունց անտի յօրի-նացն առցիք 'ի միտ։

## ՕՐԷՆՔ

Ցուշ լիցին ձեզ նախատացեալ բանքս, զի և իշխանացն որ 'ի ցեղէց անտի՝ հարցուփորձ զատաստանի հրամայէ օրէնսդիրն. և ցեղն Գանդիոնեան՝ 19 իշխան և պարապաշէն եցոյց զԴիոնուսթենէս, որ ունի 'ի գոյն պէտս զգեթէ տասն տաղանդ 'ի տեսչութենէն. և միւս օրէնքն արգելուն, զիշ-խան որ համարս պարտի՝ մի պսակել. և ձեր երդուեալ է՝ ըստ օրինացն առնել զատաստան. իսկ Ճարտարախօսդ գրեաց պսակել զհամարապարտդ առանց յաւելուածոյն «Յորժամ տայցէ զհաշիւսն և զհամարսն.» և ես զանի-րաւութիւնն ակն յանդիման ցուցանեմ՝ վկայս առ հասա-րակ մատուցեալ զօրէնսն, զհրովարտակսն և զհակառա-կորդսն։ Եւ զիա՞րդ եղէ ունիք յայտնագոյնս նշաւակել զայր 'ի հրամանս իւր անիրաւեալ։

Եւ զի զքարոզութիւնն իսկ պսակին արտաքոյ օրինացն լինել հրամայէ 'ի գրին, և զայդ ես ուսուցից ձեզ։ Զի օրէնքն յայտնաբարբառ պատուիրեն. եթէ խորհրդա-կանքն պսակիցեն զոք՝ 'ի տաճարին խորհրդոց քարոզել, իսկ եթէ ժողովուրդն՝ 'ի հրապարակի ժողովոյն, և մի այլ ուրեք։

Կարդա՛ ինձ զօրէնսն։

## ՕՐԷՆՔ

Այդ աւադիկ օրէնքն, ով արք աթենացիք, և յոյժ գեղեցկապէս կարգեալ։ Զի թուի ինձ՝ չկամեցեալ օրէնսդրին թէ առ. արտաքինն յօրացեալ նախկին ճարտարախօսն, այլ շատանացի պատուիլ 'ի քաղաքիս 'ի ժողովրդեննէն, և մի 'ի քարոզութիւնս զօշաքաղել[20]։ Արդ օրէնսդիրն այսպէս․ իսկ Կտեսիփոն զիա՞րդ։

Ընթերցիր զհրամանն։

## ՀՐԱՄԱՆ

Լսէք, ով արք աթենացիք, զի օրէնսդիրն պատուէր տայ՝ 'ի ժողովրդեան, 'ի Պնիքսի[21], 'ի ժողովարանի անդ հռչակել զպսակեալն 'ի ժողովրդեննէն, և մի այլ ուրեք․ իսկ Կտեսիփոն՝ 'ի թատրոնի․ ոչ ըստ օրէնսն եւեթ անցեալ, այլ փոխեալ և զտեղին․ ոչ 'ի ժողովել աթենացւոց, այլ 'ի մրցել նորոց ողբերգակաց․ ոչ առաջի ժողովրդեան, այլ յանդիման հելլենացւոց․ զի տեսցեն և նոքա զորպիսի ոք այր պսակիցեմք։

Արդ այսպէս արտաքոյ օրինացն հանեալ հրամանն, և ճակատեալ Դեմոսթենիւ հանդերձ՝ զաւ բերցէ առ. օրէնսն․ զոր ես կանխեցից յայտ արարից ձեզ, զի մի յանկարծ խարդաւանեսջիք։ Թէ օրէնքն չհրամայիցեն զպսակեալն 'ի ժողովրդեննէն քարոզել արտաքոյ ժողովոյ նորա, ոչ ունիցին դոքա բարբառել․ այլ խրատուցս ինձ յառաջ ածցեն զՍպանդարամետական[22] օրէնսն, և զմասն ինչ եւեթ օրինացն առնուցուն 'ի կիր, գողացեալ զմտադրութիւն ձեր․ և 'ի մէջ մատուսցեն օրէնս ինչ՝ ոչ ինչ 'ի փութանս այսր պատշաճեալս, և ասասցեն՝ որպէս թէ քաղաքիս կրկին կայցեն օրէնք 'ի վերայ քարոզութեանց․ մի՝ զոր ես այժմ 'ի մէջ առնում, և յայտնապէս արգելու՝ զպսակեալն 'ի ժողովրդե-

## ՕՐԷՆՔ

Արդ՝ եթէ, ո՛վ արք աթենացիք, հաւաստի ինչ էին դոցա բանքն, և կրկին կային օրէնք յաղագս քարոզութեանց, հարկաւ՝ կարծեմ՝ 'ի գտանել զայն օրինապահաց, և յաւանդել նախահայեաց յօրէնսդիրսն, մին յօրինաց անտի բառնայր 'ի բաց, կա՛մ որ իշխանութիւնն տայր քարոզելոյ, և կամ որ արգելոյրն: Իսկ զի չիք ինչ եղեալ յայդցանէ, ակներև յանդիմանին՝ ոչ միայն սուտ խօսել, այլ և ամենևին իսկ անհնարինս:

Եւ թէ ուստի ուստեք առեալ բերիցեն զսուտ զայդ, ես ցուցից ձեզ, ասացեալ նախ յինչ աղագս եղան օրէնք քարոզութեանց 'ի թեատրոնին:

Ի լինել ողբերգութեանց 'ի քաղաքիս՝ քարոզ կարդային ոմանք, ոչ 'ի հաւանութենէ ժողովրդեան, կիսոց՝ պսակ 'ի ցեղիցն առնուլ, այլոց՝ 'ի ժողովրդականաց. իսկ այլք ոմանք՝ ազդեցութիւն քարոզելով՝ զծառայս իւրեանց արձակէին ազատս, վկայս ազատութեանն արարեալ զհելլենացիս: Եւ որ քան զամենայն դժպհին էր, ասպնջականութիւն գտեալ ոմանց յարտաքին քաղաքս՝ հնարաւորէին տալ քարոզ կարդալ, թէ ժողովուրդն, օրինակ իմն հռոդացւոց կամ քիացւոց կամ այլոյ ուրուք քաղաքի, պսակէ զնոսա վասն առաքինութեան և բարերարութեան: Եւ զայս առնէին՝ ոչ հանդոյն պսակելոցն յատենէ ձերմէ կամ 'ի ժողովրդենէ՝ 'ի հաւան զձեզ ածելով և հրովարտակաւ, բազում շնորհս ձեզ խոստովանելով, այլ ըստ իւրեանց մտի և անհրաման առ 'ի ձէնջ: Եւ 'ի նոյն սակս պատահէր ամբոխել հանդիսականացն և պարապետաց և խաղալկաց, և քարոզելոցն 'ի թեատրոնին՝ մեծապատիւ մեծարել քան զպսակեալսն 'ի ժողովրդենէն: Զի սոցա ցուցեալ էր տեղին՝ ժողով ժողովրդեանն՝ ուր պարտն էր ընդունել զպսակն, և արգելեալ՝ մի՛ այլ ուրեք քարոզել. իսկ նոցա հռչակ հար-

կանչէր լու 'ի լուր Հելլենացն բոլորեցունց · և սոքա հրամա-նաւ և համաձայնեալք ձերով, իսկ նոքա՝ առանց հրամանի :

Զայս տեսեալ օրէնսդրին ասեմ՝ կարգէ օրէնս իմն՝ որում չիք ինչ հաղորդութիւն ընդ օրէնս պսակելոցն 'ի ժողովրդենէն, և ոչ լուծանէ զայն · զի ոչ եղանար ժողովր-դեանն էր որ անհանգիստ առնէր, այլ թատրոնին : Եւ ոչ ընդդէմ ինչ նախակարգեալ օրինացն գրէր, զի և չէր իսկ մարթ · այլ · յաղագս անհրամանն 'ի ձեռն պսակելոցն 'ի տոհմայնոց և 'ի ժողովրդականաց, և յաղագս ազատեցուցչաց ստրկացն և յաղագս օտարոտի պսակացն : Եւ յայտնի իսկ ար-գելու՝ մի ազատել ծառայ 'ի թատրոնի, և մի զպսակա-ւորս 'ի տոհմից և 'ի ռամկէն՝ քարոզել, և մի, ասէ, որ յայլմէ ինչ՝ ուրուք · և թէ ոչ, յանարգութեան լինել քա-րոզչին :

Արդ, յորժամ պսակելոցն յատենէն յայս ասիցէ՝ յատենի անդ հռչակել, և պսակելոցն 'ի ժողովրդենէն՝ 'ի ժողովի անդ իւրում, իսկ պսակելոցն 'ի ժողովրդականաց և 'ի ցեղից՝ չհրամայիցէ հրապարակել յողբերգականն, որ-պէս զի մի ոք պսակս և հռչակս մուրացեալ՝ ստասցի սուտ փառս · և յորժամ յաւելուցու ևս յօրէնսն՝ առանել զի մի յայլմէ ոք ուրուք քարոզեսցի, բայց միայն յատենէն և 'ի ժողովրդենէն և 'ի ցեղիցն և յիւրոց ժողովրդականաց · և յորժամ զայսոսիկ 'ի բաց առնիցի, զի՞նչ այլ մնայ՝ բայց պսակքն օտարամուտ : Եւ զի հաստատ առացեալքս իցեն՝ 'ի նոցունց իսկ յօրինացն առաց ձեզ նշանակ մեծ :

Զի ահա զնոյն ինքն զպսակն ոսկի՝ զքարոզեալն 'ի թատե-րոնի ատենին՝ հանեալ 'ի պսակելոյն, Աթենասայ սուրբ առնել հրամայեն օրէնքն : Իսկ ո՞ 'ի ձէնջ ժպրհեսցի 'ի ժլատութիւն այդպիսի զաթենացւոցս ժողովուրդ ըստգտա-նել : Զի ոչ եթէ քաղաքս միայն, այլ և ոչ առականն ոք այնպէս անազգի գտանիցի, որպէս զի զոր ինքն իսկ ետ զպսակն՝ զնոյն և քարոզ կարդալ և ապա 'ի բաց կապտել և զից նուիրել : Այլ կարծեմ զայդ վասն օտարական լինե-

լոյ պատկերն. և ձօնիդ լինի, զի մի զօտարաց ոք մտերմութիւն նախամեծար քան զիւրոյ աշխարհին արարեալ՝ վատթարեսցի հոգւով: Իսկ պատկ որ 'ի հրապարակ ժողովըրդեան քարոզեալ՝ ոչ ոք նուիրէ, այլ օրէնս է ժառանգել զայն. զի ոչ լինքն միայն, այլ և սերնդոց իւրոց 'ի տան ունելով զյիշատակն՝ մի երբեք անզգամեսցին մտօք առ ժողովուրդն: Եւ վասն այնորիկ յաւել օրէնսդիրն, մի հաշակել 'ի տեսարանի զօտարոտի պատկերն՝ եթէ ոչ ժողովուրդն տայցէ հրաման. որպէս զի քաղաք որոյ կամ իցէ պատկեր զոք 'ի ձերոցն, հրեշտակս արարեալ աղաչեսցէ զժողովուրդն. զի յորժամ քարոզեսցի, մեծ ևս ձեզ քան պատկերացն կայցի շնորհս վասն քարոզութեան այլոց օձանից:

Եւ զի զատուցութիւն բարբառիմ՝ զլինելնին զօրէնսն լուարուք:

## ՕՐԷՆՔ

Արդ յորժամ ձեզ 'ի խաղս առիցեն, թէ դրեալ կայ ևս յօրէնսն, զի եթէ ժողովուրդն հաճեալ հաւանեսցի՝ մարթի պատկել 'ի տեսարանին, յուշ լիցի ձեզ տալ նոցա պատասխանի. Այո, այլ եթէ յայլմէ քաղաքէ տացի քեզ պատկեր. իսկ եթէ յաթենացւոցս ժողովրդենէ, ցուցեալ է քեզ առ-զին՝ ուր արժան է այդմ լինել. խափանեալ եւ՝ մի ուրեք արտաքոյ հրապարակի ժողովրդեանն քարոզել: Զի թէ զինչ իցէ « Եւ մի այլ ուրեքն, » առ խօսեաց զօրն ողջոյն, ոչ երբեք օրինաւոր ինչ կարասցես զհրամանդ ցուցանել:

Մնայ ինձ վասն ինչ ամբաստանութեանս յոր փութամ ձեռնիմ մանաւանդ. և են բաղբաղայքն՝ որովք խնդրէ պսակել զնա: Քանզի այսպէս ասէ 'ի հրամանին. « Եւ քարոզն կարգասցէ 'ի տեսարանին առ հելլենացիս, թէ ժողովուրդն աթենացւոց պսակէ զնա վասն առաքինութեան և քաջութեան. » և որ ևսն է, « զի յամենայն ժամ խօսի և գործէ զօգուտ ժողովրդեանն: » Դարձ լինի մեզ ամենևին բանս

այսուհետև, և ձեզ լսելեացդ զկարգն 'ի դատել. զի ինձ դատախազիս՝ զայս պարտ է ձեզ ցուցանել, թէ որ զԴիմոսթենեայ են գովեստք՝ սուտ են, և թէ ոչ սկսեալ զորս երբեք բարի ինչ խօսել, և ոչ ցարդ գործէ անպակաս զօգուտ ժողովրդեանն : Եւ թէ զայդ յանդիմանեսցեմ, յիրաւի որդեօք պարտաւորեսցի Կտեսիփոն 'ի փութալ ամբաստանութեանս.. քանզի ամենայն օրէնք արգելուն՝ չգրել ինչ ումեք սուտ 'ի հրամանս անէրութեանն : Իսկ ջատագովքն՝ զհակառակն այսմ ցուցանելի է. և դուք լինիջիք մերոց բանիցս դատաւորք : Եւ այդ իսկ է խնդիր :

Զվարս Դիմոսթենի քննել՝ երկայնաձգոյն բանից գործ վարկանիմ ես : Զի զի՞ պիտոյ այժմ ասել զզեկուցեալսն նմա յանդիմանաստանութենէ անուն իւրոց վիրացն, յորժամ դատախազ եկաց յԱրիսպագին զԴիմոմելեայ պէանեցւոյ՝ զհօրեղբօրորդւոյ իւրմէ, և զպատուհս կառափին. կամ զիրս զօրավարութեանն Կեփիսոդոտեայ[27], և զնաւապետութիւնն 'ի Հելլեսպոնտոս, յորում մի 'ի նաւապետացն եղեալ Դիմոսթենէս, և տարեալ 'ի նաւին զզօրավարն, հացակից նմին լեալ և ըմպակից և նուիրակից, և այդպիսի՝ վասն հայրենի ընդ իւր բարեկամութեանն արժանացեալ, յորժամ 'ի քաղաքէ դատաստան մահու 'ի վերայ կայր նմա՝ ոչինչ դանդաղեաց չարախօս զնմանէն լինել. և դարձեալ զիրսն Միդեայ[28], և զկռուփսն ընկալեալս 'ի կաքաւարանին՝ յորժամ պարապետն իսկ էր[29]. և թէ որպէս ընդ երեսուն միասին վաճառեաց միանգամայն և զանձինն թշնամանս և զպատիւ ժողովրդեանն՝ որով 'ի մեհենին Սայոնդարանմեանին՝ դատաստանաւորապետաց զՄիդեայ : Այլ արդ զայդս թողից, և այլ ևս զայլն նմանս, հանդոյ թուի ինձ զանց առնել. ոչ եթէ մասն ինչ ձեզ լինելով կամ ոսոխս աչառելով, այլ զանդգնեալ՝ թէ գուցէ յանդիմանեսցայց 'ի ձէնջ, ճշմարիտ ինչ թերևս ասացեալ, բայց զոյգս պատուեալս և քաղցրանոյթս : Իսկ արդ, ո՛վ Կտեսիփոն, որոյ մեծամեծքն յանցանս թախին՝ այնպէս հաւատարիմ են և ծանօթա-

կանք ունկնդրաց, մինչև դատախազին գիտուել սուտ խօսել, այլ վարպետիս և յոյժ յառաջահանօթս, արդեօք արժա՞ն ինչ իցէ այնմ պատիւ ընդունել ոսկի, եթէ պախարականս: Եւ քեզ յանդգնելոյդ 'ի հրաման տալ սուտ և անօրէն՝ արժա՞ն իցէ արդեօք քամահանս առնել ատենից, եթէ տալ վրէժս քաղաքիս:

Իսկ զվարչութեան անիրաւութեանցն ջանացայց ստուգագոյնս առնել: Զի լսեմ թէ յորժամ տայցի նոցա ժամ խօսելոյ, Դիմոսթենէս 'ի համար արկանելոց է առ ձեզ, եթէ զի քաղաքիս չորք կացին ժամանակք՝ յորս ինքն առաքինացաւ: Ցորոց մի և առաջին անձնեցաւն, որպէս լսեմս, զժամանակն համարի՝ յորում ընդ Փիլիպպեայ 'ի վերայ Ամփիպոլսի պատերազմ մղէաք. և զժամանակն զայն որոշէ խաղաղութեամբն և նիզակակցութեամբ [30], զոր Փիլոկրատէս Ագնուսացի առաջի արար, և դա ինքն ընդ նմա, որպէս ես ցուցից: Երկրորդ ժամանակ ասէ եղեալ, զոր խաղաղութեամբ [31] անցուցաք. յայս խոկ է թէ մինչև ցօրն՝ յորում լուծեալ զխաղաղութիւն քաղաքիս՝ դոյն ինքն Ճարտարախօսդ զպատերազմն առաջի արար: Եւ երրորդ՝ զժամանակն զոր 'ի կռուի կայաք, մինչև 'ի Թշուառութիւնն Քերոնեայ [32]: Եւ չորրորդ՝ զայժմու ժամանակս: Եւ զայսոսիկ 'ի Թիւ արկեալ, ըստ որում լսեմ, ձայնատուր առ իս է լինելոյ և հարցանել, զորմէ՞ ինքէ 'ի չորեցունց սոցա ժամանակաց իցեմ ես ամբաստան, և երբ ասիցեմ զնա ոչ յօգտակարագոյնս ժողովրդեան քաղաքավարեալ. և եթէ չկամիցիմ տալ պատասխանի, այլ կոր 'ի գլուխ եղեալ 'ի բաց խուսափիցեմ, սպառնայ գալ հրապարակացոյց զիս առնել, և եկակոչ անձնաքարշ արարեալ՝ ստիպել տագնապել զիս տալ պատասխանի: Արդ, զի մի՛ դա՛ անգիտասցի, և զի դուք այժմէն տեղեակ լինիջիք և ես տաց պատասխանի, քեզ՝ Դիմոսթենէս՝ առաջի դատաւորացս և այլոց քաղաքայնոց՝ որ շուրջս կան արտաքուստ արտաքս, և Հելլենաց՝ որոց փոյթ եղև զդատաստանս զայս լսել, — զի ոչ

սակաւս ուսանեմ այսր հասեալս, այլ՝ որչափ կարէ ինչ ոք երբեք եկեալ կուտեալ ՚ի հասարակաց հանդիսարան, — ահա տամ պատասխանի՝ թէ ՚ի վերայ չորեցդ ես զատուցելոց ՚ի քէն ժամանակաց առհասարակ լինիմ զքէն ամբաստան: Եւ եթէ կամիցիս դիր, և դատաւորքս հասարակ լուիցեն մեզ, և մարթասցիս ես ընդ միտ ածել զոր գիտեմ ընդ քեզ, ակն ունիմ ամենայն իրիք յայտ առնել դատաւորացս, թէ փրկութեան քաղաքիս պատճառք՝ դիքն եղեն, և որք մարդասիրապէս և չափաւոր վարեցան՝ յիրս քաղաքիս. իսկ ամենայն թշուառութեանց քաղաքիս պատճառ եղեալ Դեմոսթենէս: Եւ խօսեցայց կարգ զայն կալեալ, զոր դու ինքն լսեմ թէ գնելոց է. զի ճառեսցից նախ զառաջնոյ ժամանակէն, և ապա զերկրորդէն, և երրորդ՝ որ ըստ նմանէն, և չորրորդ՝ զայժմու իրացս հաստատելոց:

Եւ արդ ՚ի վեր ՚ի խաղաղութիւն անդր ելանեմ՝ զոր դու և Փիլոկրատէս առաջի արարէք: Քանզի, ով արք աթենացիք, եթէ թոյլ տայիք ձեզ ունիք՝ սպասել հրեշտակացդ առաքելոց ՚ի ժամանակին յԵլլադա՝ աղաչել զնոսա հաղորդս լինել Հելլենախումբ ժողովոյն [33] ընդդէմ Փիլիպպոսի, գոյր ձեզ զառաջին խաղաղութիւնն զայն առնել հասարակ միաբան խորհրդով Հելլենացւոց, և ՚ի զալ ժամուն՝ ՚ի կամաց հաւանութենէ Հելլենացւոց՝ ՚ի ձեզ զառաջնորդութիւնն հանել: Զրկեցայք յայդցանէ ՚ի ձեռն Դեմոսթենի և Փիլոկրատեայ և կաշառակերութեանց դոցա՝ զոր կաշառեցան կալ հակառակ ձերում պետութեանդ: Իսկ եթէ յանկարծոյն լուր բանիս կարի ինչ չաւատալի ումանց երևեսցի ՚ի ձէնջ, զառաջիկայ ունկնդրութիւնդ այնպէս արարէք, որպէս յորժամ յետ երկար ժամանակի ՚ի հաշիւս մտանիցեմք ծախուց. արծաթոյ: Է երբեք՝ զի թիւր կարծեօք գամք ՚ի տանէ զհաշուիցն. իսկ իբրև հաշիւքն բովանդակիցին, չիք ոք ՚ի ձեզ այնպէս գժպհի յախտաւորակաց, որ ոչ մեկնեսցի անտի՝ խոստովան եղեալ և վկայեալ ճշմարտութեան հաշուին համարոյ: Այսպէս և

այժմ զունկնդրութիւնդ արտաջիք։ Եթէ իցեն 'ի ձէնջ՝ որ եկեալ իցեն 'ի տանէ կանխակալ կարծեօք միայն, թէ չիք ինչ Դիմոսթենի միաբանութեամբ ընդ Փիլոկրատեայ սացեալ երբեք 'ի շահ օգտին Փիլիպպեայ, որ ոք 'ի դոյն խորհուրդս կայցէ՝ մի ինչ անպարտ արձակեսցէ, և մի պարտաւոր, մինչև լուիցէ. զի և չէ իսկ արդար։ Իսկ եթէ կարճառօտս ինձ լուիջիք՝ զի յուշ զժամանակսն արարից, և զհրովարտակն մատուցից 'ի մէջ՝ զոր ընդ Փիլոկրատեայ գրեաց Դիմոսթենէս, եթէ ինքնին իսկ ստուգութեան հաշիւք զտանիցեն զԴիմոսթենէս յաճախագոյն քան զՓիլոկրատէս գրեալ մինչ 'ի սկզբանէ յաղագս խաղաղութեանն և նիզակակցութեան, և յառաջեալ եա անօթապարտութիւն՝ պաշտօն արարեալ Փիլիպպեայ, և չապաւեալ 'ի զինուց նորա հրեշտակացն, և պատճառ եղեալ ժողովըրդեանն՝ մի ընդ միահամուռ ժողովս հելլենացւոց առնել զխաղաղութիւնն, և 'ի ձեռս Փիլիպպեայ զԿերսոբլեպտէս արքայ Թրակիոյ մատնեալ՝ զայր բարեկամ և նիզակակից քաղաքիս, եթէ զայդ ամենայն ցուցից ձեզ հաւաստեաւ, խնդիր մի փոքր աղաչեցից զձեզ. յաստուածան զձեզ երդմնեցուցեալ, ձեռն տուք ինձ հաւանութեան, թէ զառաջինն 'ի չորից անտի ժամանակաց ոչ ուղիղ քաղաքավարեալ է դորա։ Բայց սկսայց աստ՝ ուստի դիւրաւ ինձ զհետ ժամանիցէք։

Դրեաց Փիլոկրատէս հրաման, թէ օրէն է Փիլիպպոսի քարոզ և հրեշտակս առաքել այսր վասն խաղաղութեան և թիկանց առնելոյ։ Անկրաւ ամբաստանեցաւ հրամանդ. եկին ժամանակք դատաստանին. դատախազէր Նամակագիրն Լիւկինոս, ջատագովէր Փիլոկրատէս, պաշտպանեկայր ընդ նմա և Դիմոսթենէս. Փիլոկրատէս արդարացաւ։ Յետ այսորիկ եհաս ժամանակ, Թեմիստոկլէս իշխան։ Յայնմ վայրի մտանէ Դիմոսթենէս 'ի տուն խորհրդոյ խորհրդական, ոչ վիճակաւ և ոչ տեղապահութեամբ [34], այլ գնոյ առեալ մարթանօք, զի զամենայն ինչ բան և գործ նպաստ

'և տուր եղեն առ նա զօրութեանց քաղաքին՝ մեծի բարկութեան են արժանի: Զի որ այժմս զանձն առնեցող Ալեքսանդրի առնէ լինել և յայնժամ Փիլիպպոսի Դիմոսթենէս, որ զԱլեքսանդրի հիւրասիրութիւնն ինձ մեղ դնէ, խորամանկեալ զպատեհ պատեհ ժամանակս քաղաքիս, զիս մատուցանէ՝ ժողով գումարել նահապետաց յաղթ ամսեանն Եղափեբօլիոնի, յորում Ասկլեպեայ զոհք էին և նախատօնակ [36], 'ի սրբութիւն անդ աւուր, որպէսի ինչ չէշէ ոք եղեալ յառաջագոյն: Զի՞նչ առ այս կցկցեալ բաղդայս: Որպէս զի, ասէ, ընդ հասանել հրեշտակացն Փիլիպպեայ՝ հետ ընդ հետ վաղվաղակի 'ի խորհուրդ մտանիցէ ժողովուրդն զիրացն Փիլիպպեայ: Վասն չև ևս երևելոցն հրեշտակաց կանխէր ժողով կալմէր, զժամանակս ձեր զողանայր, և զգործն շտապէր, զի մի ընդ այլ հելլէնս, 'ի հասանել հրեշտակացն ձերոց, այլ ինքնաձեռն միայնակ զխաղաղութիւնն առնիցէք: Զհետ այսորիկ, ով արք աթենացիք, եկին հասին հրեշտակք Փիլիպպեայ [37], իսկ ձերքն էին 'ի տար աշխարհ յորդորել զհելլենացիս ընդդէմ Փիլիպպեայ: Յայնմ վայրի այլ իմն զիր հրամանի տայ վճռել Դիմոսթենէս, գրեալ 'ի նմա՝ ոչ զխաղաղութենէն միայն, այլ և զնիզակակցութենէն առնուլ ձեզ խորհուրդ, ոչ մնացեալ ձերոց հրեշտակացն, այլ անդէն և անդ յետ սպանդարամետականացն տօնից աւուրնիս, որ օր ուխտուտան և իննուտան էր ամսոյն:

Իսկ թէ արդար խօսիցիմ՝ լուարուք հրովարտակացն:

## ՀՐՈՎԱՐՏԱԿ Գ

Եւ արդ, ով աթենացիք, խորև անցին զնացին տօնքն սպանդարամետականք, ժողովքն եղեն. և յառաջնումն անդ առաւօտի կարդայաւ հասարակ հրամանն նիզակակցաց, զորոյ զբանիցն ծայրաքաղ զգլուխս ցուցից համառօտիւք: Զի դրեցին նախ՝ ձեզ միայն խորհել վասն խաղաղութեան,

իսկ զանուն նիզակակցութեան լսեցին . ոչ առ մնացութեան ինչ, այլ զի և զխորհրդութիւնն ինքնին 'ի գլխովին կարևոր առաւել քան թէ վայելուչ ինչ վարկուցեալք : Յետ այնորիկ, 'ի զարմանս կաշառակերութեանն Դիմոսթենի, բարուոք 'ի գլուխ հարեալ և զլկեցին 'ի Հրամանի անդ, զի օրէն էր, ում ունէք և կամք էին 'ի Հելլենացւոց, մինչև յամիսս երիս 'ի նախին արձանի 38 ընդ աթենացիս 'ի գիր անցանել, և բազդորդ լինել երաշխաւորն և զաշանց : Երկու ինչ մեծ այնու անձնապարտեալ ածեալ զբաւմեջ . նախ՝ զերկրպագունեայ ժամանակին բաւական առ Հելլենացւոյն Հրեշտակութիւն պատրաստել, և տալ զմաներմնութիւն Հելլենացւոցն Հասարակաց ժողովոյն շահեալ քաղաքիս . որպէս զի եթէ անցումն լինիցի զուխտիւքն, մի միք միայն և անկարելք զպատերազմն մղեսցուք, որպէս այժմս եհաս մեզ կրել 'ի ձեռն Դիմոսթենեայ :

Ու թէ Հաւատարիմ բանիցս իցեն՝ 'ի Հրամանէ անտի լսեալ 'ի միտ առնուցուք :

## ՀՐԱՄԱՆ ՆԻԶԱԿԱԿՑԱՑ

Վկայեմ զի պաշտպան կայի ես Հրամանիդ այդմիկ, և ամենեքեան որ յառաջինում ատենին խօսեցան առ ժողովուրդն : Մեկնեցաւ ժողովուրդն յուսով թէ եղիցի խաղաղութիւնն, բայց եղիցի՝ Հասարակ Հաւանութեամբ Հելլէնացւոցն բոլորեցունց . և զի ոչ բարուոք էր խորհել 'ի նիզակակցութիւն յետ կոչ առնելոյ առ Հելլէնս : Գիշեր մի ընդ մէջ, և եկաք 'ի վաղիւ անդր 'ի ժողովն : Անդ կանխեալ զրաւեալ Դիմոսթենի զբեմն և ոչ ումեք տեղի թողեալ խօսից, ոչ ինչ օգուտ տայր լինել յերեկի բանիցն, եթէ ոչ 'ի նոյնս Հաւանեսցին Հրեշտակք Փիլիպպեայ . և առանց նիզակակցութեան չձանաչեմ տայր զխաղաղութիւնն : Զի չէ պարտ, ասէ, — քանզի յիշեմ և զբանն ասացեալ՝ առ ատելութեան խօսողին և բանին, — չէ պարտ պատառել

'ի խաղաղութենէն զնիզակակցութիւնն, և ոչ յապաղանացն հեշտենացուց ակն ունել, այլ մերձն տալ պատերազմ կամ խաղաղութիւն առնել առանձինն : Եւ 'ի կատարածն կոյս՝ յատեան անդր կոչեցեալ զԱնտիպատրոս, հարցանէր հարցումն ինչ, ցուցեալ նմա յառաջագոյն զոր առնելոցն էր, և ուսուցեալ՝ զոր հակառակ քաղաքիս պիտոյ էր նմա տալ պատասխանի : Եւ հուսկ ուրեմն եկն այդորիկ 'ի յաղթութիւն, Դիմոսթենի՝ բանիւ հարստահարեալ, և Փիլոկրատեայ գրեալ զվճիռն :

Եւ զոր մնայրն նոցա, վճարանդի տալ զԿերսոբլեպտէս և զդաւառն Թրակիոյ, արարին. և զայն՝ որ օր քսան և հինգ էր Ելափեբոլիոն ամսեան, չև չուեալ Դիմոսթենի 'ի յետին հրեշտակութիւնն՝ որ յաղագս երդմանցն : Քանզի Թշնամիք այդ Աղեքսանդրի և Փիլիպպեայ, Ճարտարախօսդ ձեր, երկիցս չոգաւ հրեշտակութեամբ 'ի Մակեդոնիա, որ և ոչ մի անգամ արժան էր. և արդ հրաման տայ արհամարհել զՄակեդոնացիսն : Եւ 'ի ժողովին, զվեցերորդ աւուրն ասեմ, հնարիւք եղեալ ատենակալ, նստեալ մատնեաց 'ի ձեռս եա զԿերսոբլեպտէս միաբանութեամբ ընդ Փիլոկրատեայ : Զի Փիլոկրատէս զանխլաբար ընդ այլ բանս հրամանին արկ խառնեաց, և Դիմոսթենէս վճիռ եա առնել, յորում գրեալ կայր. « Ատենակալացն նիզակակցաց երդմունս լինել առ հրեշտակսն Փիլիպպեայ 'ի մին յայսմ աւուր : » Ա՛յլ 'ի զինուց Կերսոբլեպտէ չգոյր ոք բազմեալ գահակից : Եւ երդումն հրաման տալով բարձակցաց ատենին՝ արգել զԿերսոբլեպտէս, որ չէր աթոռակից յատենի անդ :

Եւ թէ Ճշմարիտ ասիցեմ՝ ընթերցիր ինձ, ո՛ այն ոք էր որ գրեացն զայսոսիկ, և ո՛ այն ոք նախագա՛հ՝ որ ետն վճռել :

ՀՐԱՄԱՆ . ՆԱԽԱԳԱՀ

Գեղեցիկ, ո՛վ արք աթենացիք, գեղեցիկ է հասարակաց դպրութեանցն գիւան. քանզի անշարժ իմն է, և ոչ շրջի

ընդ դատաւորքն [39] քաղաքականութեան, այլ առոյ ժողովրդեան՝ յորժամ և կամիցին՝ ձանձրացեալ զորս վարուց չարացն իցեն, և խնդրեցեն բարերար երևել 'ի վերին երեսս :

Մնայ ինձ դժնդակութեանց նորա անցանել բանիւ : Քանզի Դիմոսթենի, ով այրք աթենացիք, զամ մի ողջոյն խորհրդական եղեալ, ոչ ուրեք երբեք երևի 'ի բարձերիցութեան կոչեալ 'ի հրեշտակաց զօք • այլ նախ դատաւորին և յայնժամ միայն հրաւիրեաց զհրեշտակսն 'ի բարձերիցութեան [40], և բարձկնեաբս արկ, և պատուատու ախոռեաց ծիրանածուքնս, և ընդ այգն՝ առաջնորդեաց հրեշտակացն 'ի թատրոնն, մինչև 'ի չքեան լինել վասն ծանակութեանն և արտականացն : Եւ 'ի ժամ մեկնելոյ նոցա 'ի Թեբէ՝ 'ի վարձու կալեալ երիս լուծս ջորւոց [41], յուղարկեաց զհրեշտակսն 'ի Թեբէ, արկեալ զքաղաքս մեր 'ի կատականս :

Այլ զի մի բանս ճառս ելից արտաքս, առ ինձ զհրամանն որ վասն բարձերիցութեանն :

ՀՐԱՄԱՆ

Արդ դու, ով այրք աթենացիք, այդչափ մեծդ սուտակապաս, լուեալ յառաջագոյն 'ի լրտեսացն Քարիդեմայ [42] զմահն Փիլիպպեայ, առեղծեալ իւր անուրջս ինն առ 'ի դիցն, ստեաց՝ իբրև ոչ 'ի Քարիդեմեայ առեալ զաղդ իրին, այլ յԱրամազդայ և յԱթենասայ, առ որս 'ի տուէ սրտերդումն եղեալ, գիշերի խօսակիցս իւր առնէ լինել զնոսա, և հանդերձելոյն նախապատուելս : Եւ զեռ եօթնօրեայ մեռեալ ունելով զդուստր իւր, յառաջ քան զսուգն և զօրէնս սովորն նմա հարկանելոյ, պսակ 'ի գլուխ և սպիտակահանդերձ զունէր արջառս [43], և անօրէնէր : չուառականն՝ որոյ զայն զք կորուսեալ էր՝ որ միայն և առաջին կարդացեալ էր զնա հայր [44] : Ոչ 'ի թշուառութիւնն տանհար լինիմ, այլ զբարսն կերկատեմ : զի որդեատեացն և անդգամ հայր՝ ոչ երբեք լինիցի քաղաքավար բարերարոյ : և որ յանձանց

սիրելեացն և ընտանեկաց զգութ իւր փակէ, ոչ առ աւելի ինչ զձեզ զօտարոտիսդ կալցի բնաւ. և որ առանձինն չարն է, ոչ երբեք հրապարակաւ բարի լինիցի. և որ առ տնին խոտանն է, ոչ բնաւ 'ի Մակեդոնիա ընտիր և քաջ էր 'ի հրեշտակութեանն. զի ոչ զվարսն, այլ զվայրսն[45] ևեթ փոփոխեաց ։

Արդ՝ թէ ուստի 'ի յեղափոխութիւն իրացն եկն, — քանզի այս երկրորդ է նորա ժամանակ, — և թէ զինչ պատճառքն իցեն, զի Փիլոկրատէս զհանգոյն Դիմոսթենի քաղաքավարութեանցն կրեալ ամբաստանութիւն՝ տարագիր եղև, իսկ Դիմոսթենէս եկաց զայլոց չարախօս, և թէ ուստի բնաւ յայս տառապանս խարդաւանեաց զմեզ այրդ պիղծ, զայդուսիկ մտադիւրագոյն ևս արժան է լսել ։

Զի կերև այն ինչ մտեալ անց Փիլիպպոս ընդ Դրունսն[46], և զքաղաքս փոկկիսացւոց յեղակարծումն տարակարծի տապալեաց, և զԹեբայեցիսն՝ որպէս ձեզ թուէր 'ի ժամանակին՝ առաւել քան զպատեհ ժամուն և զձեր օգուտ զօրագոյնս յարդարեաց, և ձեր զարհուրեալ՝ ժողովեցէք զաղխս ձեր 'ի բացավայրաց, և փութանք ծանր ամբաստանութեան զհրեշտակացն կայր զերթելոցն զխաղաղութենէն, մանաւանդ զՓիլոկրատեայ և զԴիմոսթենէ, զի ոչ միայն պատգամաւորեցան, այլ և հրամանացն գրողքն էին. — և զայնու ժամանակօք դէպ եղև ընդ հակառակս ելանել Դիմոսթենի և Փիլոկրատեայ՝ գրեթէ զնոցին իրաց՝ զորոց և ձեր կասկածեալ էր զգժտութիւն նոցա[47], — յայսպիսւոյ խռովութեան 'ի ներքս անկանել՝ ընդարբոյս ախտիւքն իւրովք զառաջինկայիցն անձոյր խորհուրդ, վատութեամբն և նախանձուն ընդ Փիլոկրատեայ կաշառառութիւնն. և համարէր՝ զի թէ զորոց ընդ իւրն էին 'ի հրեշտակութեանն՝ և զՓիլիպպոսէ չարախօս ամբարձցի, յայտ իսկ կորնչիցի Փիլոկրատէս, և որ այլ ևս ընդ նմայն էին հրեշտակքն վտանգեսցին, և ինքն հաճոյ եղիցի, և մատնիչն սիրելեաց և ապիրատն՝ երևեսցի հաւատարիմ ժողովրդեանն ։ Իրա-

զգայց եղեալ Թշնամեաց հանգստեան քաղաքիս, ըմբռնու-
Թեամբ հրաւիրէին զնա յատեան, զնա միայն անկաշառ
'ի քաղաքիս անուանեալ։ Իսկ նորա մատուցեալ՝ բանայր
նոցա զդուռն մարտի և ամբոխից։ Դա այդ է, ո՛վ արք աթե-
նացիք, որ նախին եղիտ 'զբերդն Սերրիոս և զԴորիսկոս և
զԵրգիսկէ և զՄիրտիսկէ և զԳանոս և զԳանիդս. վայրք՝ զո-
րոց և ոչ զանուանսն գիտէաք յառաջագոյն։ Եւ յայն տա-
րեալ հասոյց զիրսն, մինչ զի եթէ չառնիցէ հրեշտակս Փի-
լիպպոս, արհամարհատ քաղաքիս առնել զնա. իսկ թէ առ-
նիցէ, լրտեսս առաքել և ոչ հրեշտակս։ Եւ եթէ 'ի քա-
ղաք ինչ հասարակ և հաւասար դատաստան առնել կամիցի
զմիաստուց ինչ դատաստան, ասէ՝ թէ չէք դատաւոր հա-
սարակ ընդ մեզ և ընդ Փիլիպպոս։ Տայր նա մեզ զՀալոնե-
սոս [48]. իսկ դա չներէր առնուլ՝ եթէ տայցէ, այլ ոչ 'ի
դարձս տայցէ, զվանկից միճնելով։ Եւ հուսկ ուրեմն՝ պսա-
կեալ զպատերազմեալսն ընդ Աղեքսանդրեաւ 'ի Թեսալիա
և 'ի Մագնեսիա հակառակ ուխտիցն խաղաղութեան, ըզ-
հաշտութիւնն եղծ, և նիւթեաց զըմբաղ և պատերազմ։

Այո՛. բայց ազնիւ և ազատամտնդեայ պարապաւ, ըստ
խոստում ասելոյ, զաշխարհս մեր պարապեաց նիզակակցու-
Թեամբն Եւբիացւոց և Թեբայեցւոց։ Այլ, ո՛ արք աթենա-
ցիք, յայդմ իսկ մեծամեծս նենգեցայք, և ոչ գիտացէք։
Թէպէտ և փութամ ձեռնիմ առնել զզարմանալի նիզակա-
կցութիւնն Թեբայեցւոց, այլ վասն կարգի խօսիցս՝ զԵւբեա-
ցւոցն արարից նախ յիշատակութիւն։

Քանզի ձեր, ո՛ աթենացիք, բազում և մեծամեծ կրեալ
վնաս 'ի Մնեսարքեայ քաղկիդացւոց՝ 'ի հօրէն Կալլիա-
սայ և Տաւրոսթենի [49], զորս դա այժմ կաշառեալնոց լեալ՝
յանդգնի ընդ աթենացիս 'ի համար արկանել. դարձեալ և
'ի Թեմիսոնէ երետրիացւոյ, որ 'ի խաղաղութեան զՈրո-
պոս 'ի ձէնջ Թափեաց [50]. զայսոսիկ կամաւ մոռացօնս ա-
րարեալ ձեր, իբրև Թեբայեցիք դիմեցին յԵւբեա՝ ջանա-
ցեալք ընդ լծով արկանել զքաղաքսն, յաւուրս հինգ հա-

նայ, զորմէ և Կտեսիփոն զօգտակարագոյնսն ասէ միշտ Ճարտարախօսեալ, զա մասն եղև 'շահից քաղաքիս, և զերաց 'ի նիզակակցութեան անդ՝ երթալ մեզ 'ի Թեկուես քաղկիսացւոց, բան մի ևեթ փոփոխեալ. 'ի փոխարէնս այնմ՝ յօրինուածութեան սակս՝ յաւելեալ 'ի գրին, քաղկիսացւոց գալ յօգնութիւն՝ եթէ ոք յաթենացիս արշաւիցէ: Իսկ զժողովսն և զհարկս՝ որովք գոյր զօրանալ պատերազմին, վասարանդի ետ համօրէն, գեղեցիկ գեղեցիկ անուամբք ըղձայանոց գործն հրաման տուեալ, և բանիւք հրապուրեալ զձեզ, որպէս թէ պարտ իցէ քաղաքիս նախ զօգնութիւնն մատուցանել մշտակարօտ հելլենացւոց, իսկ զնիզակակցութիւնն ապա յետոյ զկնի բարերարութեանցն:

Բայց առ 'ի քաջ խելամուտ ձեզ լինելոյ՝ զի Ճշմարիտ են բանքս, ո՛ն առ ինձ զգիր հրամանին Կալլիասայ, և զնիզակակցութիւնն, և կարդա զվճիռն:

ՎՃԻՌ

Սակայն ոչ այն ինչ է զժնդակ, եթէ օգուտք այնպիսիք վաճառեցան և ժողովք և հարկք, այլ զժնդակագոյն քան զայն երևեսցի ձեզ զոր յասել կամ: Զի Կալլիաս քաղկիսեցի յայն չափ ամբարտաւանութեան և ագահութեան եհաս, և Դիմոսթենէս՝ գովեալ 'ի Կտեսիփոնէ՝ յայն կաշառակերութիւն, մինչև զհարկսն Որէոսի և Երետրիոյ՝ զտասն տաղանդսն, ձերով իսկ տեսանելով և խմանալով և հայելով, գաղտագողի բառնալ 'ի միջոյ, և զերեսփոխանս քաղաքացն այնոցիկ հանեալ 'ի ձէնջ՝ անդրէն 'ի Քաղկիս և յեւբիականն անուանեալ ժողով գումարել[37]: Իսկ թէ որպէս և որով խորամանկութեամբք, զայդ այժմ արժան է լսել:

Քանզի հասեալ առ ձեզ, ոչ ևս 'ի ձեռն հրեշտակացն, այլ ինքնին իւրով անձամբն Կալլիաս, և եկեալ 'ի ժողով ժողովրդեանն՝ խօսեցաւ բանս 'ի Դիմոսթենեայ յօրի-

նեալս ։ Զի ասէր զանձնէ 'ի Պեղոպոննեսեայ եկեալ, նորոգ հրաման տուեալ աշխարհին՝ հանել հարկս հարիւր տաղանդաց չափ 'ի կռիւն ընդդէմ Փիլիպպոսի. և 'ի համար ևս արկանէր՝ որչափ ինչ պարտն էր միում միում հանգանակել. աքայեցւոց և մեգարացւոց համօրէն՝ վաթսուն տաղանդ, և որոց յԵւբէա քաղաքաց առ հասարակ՝ քառասուն. և 'ի գանձէ անտի զօրաժողով լինել ընդ ծով և ընդ ցամաք. և թէ՝ էին այլ եւս բազում քաղաքք հելլենացւոց՝ յօժարեալք 'ի բաժանորդ լինել հարկատուութեանն, մինչ զի ոչ ինչ չքաւորել՝ ոչ արծաթով և ոչ ամբոխիւ։ Եւ այսոքիկ մերկապարանոցք. բայց ասէր և այլ ինչ իրս գործել 'ի ծածուկ, և վկայս այնոցիկ լինել զոմանս 'ի մերոց աստի քաղաքացւոց. և 'ի վախճանել խօսիցն՝ յականէ յանուանէ 'ի մէջ կոչէր զԴիմոսթենէս, և աղաչէր պատասպարան լինել։

Իսկ դորա յառաջ մատուցեալ պարկեշտականանոցանոք՝ 'ի գովութիւն առնոյր զԿալլիաս, և պատճառանէր գիտել ըզդաղտնիսն, և կամել ասէր պատմել ձեզ զհրեշտակութիւնն յոր չոգաւ 'ի Պեղոպոննէս [58] և յԱկառնանիա։ Եւ բանից գլուխ խօսից նորա այս էր, թէ զամենայն պեղոպոննեսացիս և զակառնանացիս ինքն 'ի հարկի կացուցեալ էր ընդդէմ Փիլիպպոսի, և հրամայեալ սակ արծաթոյն՝ էր 'ի լրումն բովանդակութեան սպառուչս նաւաց հարիւրոց, և բիւրուց հետևակամարտ զօրաց և հազար հեծելոց. և թէ՝ յայդոսիկ յաւելուցուն զունդք պետութեանցն, 'ի Պեղոպոննեսէ աւելի քան զերկու հազար ապառազէն, և յԱկառնանեայ այլ եւս նոյնչափ. և այսր ամենայնի առաջնորդութիւն տացի 'ի ձեռս ձեր. և այդ ամենայն բովանդակեսցի ոչ անագան քան զվեշտասան ամսոյն Անթեստերիոնի. զի քարոզեալ և պատուիրեալ էր յիւրմէ քաղաքէ քաղաք, գալ ամենեցուն ժողովել 'ի խորհուրդ յԱթէնս 'ի լրման լուսնի։ Զի այրդ այդ զիւրն եւեթ գործէ, և ոչ զհասարակացն. զի այլ ամբարհաւաճք յորժամ սուտ ինչ խօսիցին, անյայտս և անհաւաստիս հնարին ասել, կասկածեալ թէ գուցէ փա-

չաման ինչ կրեսցեն · իսկ Դիմոսթենէս յամբարտաւանեալն՝ նախ երդմամբ սաէ՝ զանձն 'ի մահ նզովելով, և ապա՝ զոր ինչ քաջ գիտէ թէ չէ լինելոց՝ յանդգնի ասել, համար եւս առնելով թէ երբ լինիցի · և զորոց զդէմսն տեսեալ իւր չեք՝ զնոցա անուանեան սաէ, գողացեալ զունկնդրութիւն և զբա֊ռուպաբանից առեալ կերպարանս: Վասն որոյ և յոյժ ար֊ժանի ատելութեան է · զի որ ինքն չարն է՝ զլաւացն զդրոշմս զեղծանէ: Զայսոսիկ բարբառեալ՝ տայ զայրին ընթեռնուլ վճիռ մի երկայն քան զԻլիականն, և ունայն քան զճառսն զոր սովորն է խօսել, և քան զվարս կենաց իւրոց, բայց լի անլինելի յուսով, և բանակօք՝ որոց չեք ուրեք երբեք խմ֊բել: Եւ զբաղեցուցեալ զձեզ բացէ 'ի բաց արտաքոյ խոհա֊կանացն, և յուսովք զբօսեցուցեալ, անդ ապա ուշ 'ի կուրծս յինքն գալարեալ՝ գիր հանէ հրամանի, ընտրել և առնել հրեշտակս յԵրետրիա, զի երթեալ աղաչեսցեն զե֊րետրիացիս, — զի և պարտ իսկ էր աղաչել զնոսա, — մի՛ եւս ձեզ տալ զհարկն՝ զհինգ տաղանդն, այլ Կալլիասայ · և կրկնել ընտրել այլ եւս հրեշտակս յՈրէոս առ որէոսացիսն, զի աղաչեսցեն՝ զնոյնս համարել ընդ աթենացւոց բարեկամս և թշնամիս համարել: Եւ ապա 'ի վերայ ամենայնի, 'ի հրամանի անդ երեւի ընդ խաբանօն յաւելեալ գրեալ, ա֊ղաչել հրեշտակաց զորէոսացիսն, ոչ ձեզ՝ այլ Կալլիասայ տալ զհինգ տաղանդն:

Եւ թէ ճշմարիտ իցեն ասացեալքս, թողեալ 'ի բաց զպղտորութեան ճոռոմն և զպատերազմիկ ձայնն և զհպարտ ամբարտաւանութիւնն, սա՛ 'ի ձեռս ընթերցիր զպատճէն խաբէութեանն՝ զոր քողապատեաց այրն պիղծ և անօրէն, զորմէ Կտեսիփոն և 'ի գրի առեալ յայսմիկ հրամանին սաէ մեծա յօգտակարագոյնս ժողովրդեանն աթենացւոց բանիւք և արդեամբք անդադրում ջանացեալ:

## ՀՐԱՄԱՆ

Լուարուք դուք ապաքէն բանիւ զնաւատորմն, և զհետեւակախումբ գումարտակսն, և զլուսնեսն լրումն 60 և զժողովոցն ակումբս, բայց զբաժս նիզակակցացն հարկաց կորուսէք արդեամբք։

Մնայ ինձ ասել, թէ տաղանդս երիս վարձս առեալ Դիմոսթենի՝ այնպէս զհրամանն զայն գրեաց. տաղանդ մի 'ի Քաղկիսէ 'ի ձեռն Կալլիասայ, տաղանդ մի յԵրետրիոյ 'ի ձեռն Կլիտարքոսի 60 բռնաւորին, և տաղանդ մի յՈրէոսէ՝ որով և նշաւակեցաւ իսկ. վասն զի որէոսացիքն՝ ընկերահաշտեալք վարին, և զամենայն ինչ 'ի հասարակ կամաց հաւանութեամբ վճարեն։ Քանզի ծախեալք սպառեալք 'ի պատերազմին ընդ Փիլիպպեայ, և 'ի տագնապ տարակուսի մտեալք, առաքեն առ դա զԳնոսիդեմոս, զՔարիդեմի որդին՝ իշխանին կացելոյ երբեմն յՈրէոս, աղաչել զդա՝ թողուլ քաղաքին իւրեանց զտաղանդն, և խոստանալ կանգնել նմա պատկեր պղնձի յՈրէոս. Իսկ դա ետ պատասխանի Գնոսիդեմեայ, չունել ինչ պէտս փոքու իմիք պղնձոյ, այլ զտաղանդն պահանջել 'ի ձեռն Կալլիասայ։ Բռնադատեալ որէոսացւոց և անձեռնհաս գտեալ, գրաւականեցին նմա փոխանակ ընդ տաղանդոյն զհասս պետութեանն, և ածին Դիմոսթենի կաշառատուութեանն ամսոյ ամսոյ վաշխ՝ մի մի դրամ առ մնաս մնաս, մինչև հատուցին զգլուխն։ Եւ գործեցաւ այդ 'ի հասարակաց ժողովրդեանն հրամանէ։

Եւ թէ արդար ասեմ, առ ինձ զգիր հրամանին որէոսացւոց։

## ԳԻՐ ՀՐԱՄԱՆԻ ՈՐԷՈՍԱՑԻՈՑ

Այդ աւադիկ է հրամանն, ով արք աթենացիք, քաղաքիս ամօթ, կշտամբանք ոչ փոքր՝ Դիմոսթենի քաղաքա-

վարութեանցն , և յայտ յանդիման ամբաստանութիւն զԿտեսիփոնէ . զի այսպիսում զօշաքաղ կաշառառուի չէր այր բարի լինել , որպէս խոստեաց սա գրել 'ի հրամանին :

Արդ յայսմ վայրի է տեղի երրորդ ժամանակին , դառնագոյնին քան զամենայն ժամանակ , յորում կորոյս Դեմոսթենէս զիւր քաղաքիս և զՀելլենացւոց՝ ամպարշտութեամբն զոր անօրինեցաւ 'ի դելփիական մեհեան անդր , և հրամանն տալով զանիրաւ և զանարգար նիզակակցութիւնն ընդ Թեբացիս : Սկիզբն 'ի նորա առ աստուածն յանցաւորութեանց արարից աստ :

Կայ , ով արք աթենացիք , Կիրրայինն անուանեալ դաշտավայրին , և նաւահանգիստն՝ որ այժմ անիծեալ և նզովեալն կոչի : Էր երբեմն զի 'ի տեղւոջն յայնմիկ բնակեցին կիրրացիք և ակրագալեանք [61] , ազգք քան զբնաւս անօրէնք , ամպարիշտք առ դելփիական մեհեանն և առ դահամունն , և յԱմփիկտիոնսն [62] մեղանչականք : Զայրացեալ ընդ իրսն , մանաւանդ նախնեացն ձերոց , որպէս ասեն , զկնի ապա և այլոցն Ամփիկտիոնաց , հարցին պատգամ յաստուածոյն , որով արժան իցէ պատժով պատուհասել զարսն : Հրաման պատասխանւոյ տանէ Պիւթիա . Պատերազմ տալ ընդ կիրրացիսն և ակրագալեանս զամենայն տիւ և զամենայն գիշեր ; և զերկիր նոցա աւար հարեալ և զերի վարեալ զնոսա՝ նուիրել պիւթեան Ապոլոնի և Արտեմեայ և Լատոնայ և խնամողին Աթենասայ [63] , խոպան անվար լինել 'ի սպառ , և զվայրն զայն ոչ նոցա ակօսաբեկ առնել , և ոչ այլում թոյլ տալ : Ընկալեալ Ամփիկտիոնաց զպատգամն , հրաման ետուն խորհրդով Սողոնի աթենացւոյ՝ առն հզօրի յօրէնադրութիւն , և դեգերելոյ 'ի քերդութիւն և յիմաստասիրութիւն , զօրաժողով լինել 'ի վերայ նզովելոցն ըստ աստուածեղէն պատգամին : Եւ գումարեալ խմբեալ զօր բազում զԱմփիկտիոնացն՝ 'ի ծառայութիւն վարեցին զորեարն , լիր արկին խցին զնաւակայան , զքաղաք նոցա հիմն 'ի վեր բրեցին , և զերկիրն սրբեալ նուիրեցին ըստ

պատասխանւոյ հրամանին ։ Եւ 'ի վերայ այնր ամենայնի երդուան երդումն անյեղլի, մի՛ ինքեանց հերկս յերկիրն սուրբ հարկանել, և մի այլում ումեք թոյլ տալ, այլ օգնական լինել աստուածոյն և նուիրական գետնոյն ձեռօք և ոտիւք և ամենայն զօրութեամբ ։ Եւ ոչ հերիք եղև նոցա զերդումնն զայն կալ եւեթ, այլ և նզովս և անէծս սաստիկ յաւելին 'ի վերայ ։ Զի այսպէս գրեալ կայ յանէծսն․ « Եթէ ոք, ասէ, անցանիցէ զայսոքիւք, կամ քաղաք, կամ առանձնական ոք, կամ ազգ, նզովեալ լիցի յԱպողոնէ և յԱրտեմեայ և 'ի Լետովայ և 'ի խնամողն Աթենասայ ։ » Եւ անէծս կարգայ նոցա, մի՛ երկրին պտղաբերել, մի՛ կանանց մանկունս ծնանել՝ նմանս ծնողացն, այլ Ճիւաղս, և մի երկեղց ըստ բնութեան զաւակագործել․ պարտութիւն 'ի պատերազմունս և 'ի դատաստանս և յատեանս, և անձանց նոցա կորուստ՝ և տանց նոցա և տոհմի ։ « Եւ մի երբէք, ասէ, սրբութեամբ զոհեսցեն Ապողոնի, մի Արտեմեայ, մի Լետովայ և մի խնամողին Աթենասայ, և մի նուէրք նոցա լիցին ընդունելի ։ »

Եւ թէ Ճշմարիտ ասեմ, ընթերցիր զպատգամն աստուածոյն ։ Ո՛ւնկն դիք անիծիցն, յիշեցէք զերդմունսն զոր նախնիքն ձեր ընդ Ամփիկտիոնսն արարին ։.

## ՊԱՏԳԱՄՆ

« Ոչ բերդի քաղաքիս հասու եղեալ կործանեսջիք,
Մինչև ալիք կապուտակն Ամփիտրիտեայ զանդս աստուածոյն՝
Ցափունսն մռընչելով 'ի սրբազանուէրս՝ ողողեսցեն ։ »

## ԵՐԴՄՈՒՆՔ․ ԱՆԷԾՔ

Մինչ դեռ սակաւքն անէծքդ այդ և երդմունք և տուեալ հրաման պատասխանւոյն արձանացեալ կային, և կան ևս մինչև ցայժմ, Լոկրացիք Ամփիսայ [64], մանաւանդ վերա-

կացուք նոցին , որք քան զամենեսին օրինաւորագոյնք , առօրադիր զգաւշոն արարին , և զնզովեալ և զանիծապարտ նաւահանգիստն պարապեալ մերոյին՝ խոնեցան անդ 'ի բնակութիւն , և ժողովեցին բաժս 'ի նաւելոյն անդր , և յերթեալոյն անդր 'ի դարաստանից կաշառաբեր զոմանս արարին , յորոց մի էր Դիմոսթենէսդ : Զի դարաստան առ 'ի ձէնջ ընտրեալ , առնու դրամս հազար յամփիսացւոց՝ չառնել և ոչ մի ինչ յիշատակ զնոցանէ յԱմփիկտիոնան : Խոստացան նմա և առ յապա ժամանակ տալ նմա յԱթէնս ամի ամի քսան մնաս յանիծեալ և 'ի նզովեալ ստացուածոց անտի , զի ամփիսացւոց զօրավիգն լիցի յԱթէնս ամենայն իրս : Ուստի և առաւել քան զոր յառաջին՝ եհաս նմա անբժշկութեան հարուածովք պաշարել զամենեսին յոր և հուպն մատչէր միանգամ , թէ յայր սոսկական , թէ յիշխան , թէ 'ի քաղաք ընկերահաշտ :

Բայց ամպարշտութեանն ամփիսացւոց տեսէք քանիօն յաղթող զօրու տառուած և բախտն : Զի առ իշխանաւն Թեոփրաստեաւ , մինչդեռ աւանդապահն էր Դիոգնետոս անափլիստացի , ընտրեցէք դուք դարաստանս զՄիդիասն զայն անագիրաստեցի՝ որում կենդանի լինել ցանկալի էր մեզ 'ի բազում դլխոց , և զԹրասիկլէս խռնացի , և երրորդ ընդ նոսա զիս : Ընդ հասանել մեր 'ի Դելփիս՝ դէպ եղև նոյնհետայն Դիոգնետեայ աւանդապահին տենդիւ ջերանել · նոյնպէս էր դիպեալ և Միդեայ [65] : Իսկ այլ Ամփիկտիոնք կային ակմբեալ : Իսկ որ զմտերմութիւն ընդ քաղաքիս յայտ առնել կամէին , ազդ եղև մեզ 'ի նոցանէ , զի ամփիսացիքն նկուն եղեալ յայնժամ , և չարաչար 'ի սպասահարկութիւն մտեալ Թեբացւոցն , հանէին հրաման հակառակ քաղաքիդ ձերոյ , տուգանս տաղանդաց հնգից արկանել ժողովրդեանն աթենացւոց · վասն զի ասպարս ոսկիս նուէր կախեցաք 'ի նոր տաճարին [66] մինչ չև էր օծեալ , և զայս բառ կարգի գրեցաք 'ի վերայ · « Աթենացիք 'ի Մարաց [67] և 'ի Թեբացւոց [68] , 'ի կռուել նոցա ընդդէմ Հելլենաց : »

Կոչեցեալ զնա ատենդապահին՝ աղաչէր երթալ ՚ի ժողովն և ասել ինչ առ Ամփիկտիոնեան վասն քաղաքիս. զոր և իմ իսկ միտք խնդրէին յառաջնագոյն: Յօժարագոյնս մտեալ իմ ՚ի ժողովն, ոչ ուրուք յայլոց դատաստանիցս ՚ի միջի լինելով, իբրև խօսելս սկիզբն արարի, ամփիկտացի ոմն անդուստ զաղաղակ բարձեալ, այր քան զբնաւս ստամբակ, և որպէս ինձ թուէր՝ ոչ միով իւիք խրատու վայելեալ, թերևս և դիւի ուրուք գրգռեալ զնա ՚ի զառանցանս, « Իսկզբանէ իսկ, ասէ, ով արք Հելլենացիք, եթէ զգաստ էիք, և ոչ անուն ժողովրդեան աթենացւոց անուանէիք յաւուրս յայսոսիկ, այլ իբրև զնզովս հերքէիք ՚ի մեհենէն:» Միանգամայն և յուշ առնէր զփովկիսացւոցն նիզակակցութիւն՝ զոր Կրովբիլոսն [69] այն գրեաց. և այլ ինչ բազում և դժընդակ ՚ի հեգնուկս քաղաքիս ՚ի համար արկանէր, խօսելով զոր ոչ յայնժամ ժուժկալէի լսել, և ոչ զարդիս հեշտաբար ինչ ընդ միտ ածեմ:

Զոր իմ լուեալ՝ այնպէս իմն սրտմտեցայ, որպէս ոչ բնաւ երբէք ՚ի կեանս իմ: Զանց զայլով բանիւքս արարից, զի ՚ի միտս իմ եկն յիշեցուցանել զամփիսացւոցն ամպարըշտութիւն ՚ի սուրբ երկիրն, և անդուստ յառնեկելոց անտի ցուցանէի Ամփիկտիոնեայցն, — զի դաշտն կիրրային ընդ մեհենիւն կայ դէմ յանդիման. — « Տեսանէք, ասեմ, ով արք Ամփիկտիոնք, զդաշտդ զայդ գործեալ յամփիսացւոց, և տունս բրուտի և հանդրուանս շինեալ ՚ի նմա. տեսանէք ձերովք աչօքդ զնզովեալ և զանիծեալ նաւահանգիստն կառուցեալ. դուք ձեզէն գիտէք անկարօտ այլոց վկայից, զի հարկս հանեին դոքա և ժողովեցին արծաթ ՚ի սրբանուէր նաւահանգստէն:» Առ միին եստու նոցա ընթեռնուլ զպատգամն աստուածոյն, զնախնեացն երդումն և զկարգադրեալ անէծսն. և կնքեալ յայտ արարի, թէ ես ՚ի վերայ ժողովրդեանն աթենացւոց և զմարմնոյս իմոյ և որդւոցս և տանս՝ հատից ըստ երդմանն յօգնութիւն աստուածոյն և երկրին սրբութեան՝ ձեռօք և ոտիւք և ձայնիւ և ամենայնիւ սրով

և կարօղ էինչ իցեմ'իւիք, և զքաղաքն մեր քաւեցից առ 'ի գլեցն: « Արդ դուք ձեզէն վասն ձեր խորհեցարուք: Սկիզբն առին խանքն որբութեան [70], զենլիքն կան առ բագնօք, զբարիս հասարակաց և զանձանց հանդերձեալ էք խնդրել 'ի գլեց: Տեսէք աղէ՝ որով ձայնիւ, որով հոգւով, որով երեսօք, զո՛ր համարձակութիւն առեալ՝ զխնդրուածս առնիցէք, անպատուհաս զստաս թողեալ զնզովեալս և զանիծապարտս: Զի ոչ եթէ առակօք ինչ օրինակաց, այլ պարզ գրեալ կայ յանէծսն 'ի գլուխս ամպարշտացն և որոց թոյլ տայցեն՝ զոր ինչ արժանն իցէ նոցա կրել պատիժս. և 'ի կատարած կոյս նզովիցն կայ գրեալ. Որ ոչն, ասէ, պատուհասեսցեն՝ մի՛ սրբութեամբ զոհեսցեն Ապոլոնի, մի՛ Արտեմեայ, մի՛ Լատոնայ և մի՛ խնամողին Աթենասայ, և մի՛ զոհք նոցա լիցին ընդունելի: »

Իբրև զայսպիսիս և այլ ինչ բազում առ սոքօք 'ի Ճառ արկեալ իմ՝ մեկնեցայ և 'ի բաց ելի յատենէ անտի, բազում աղաղակ և աղմուկ լինէր Ամփիկտիոնացն, և ոչ ևս բանք էին զվահանացն 'ի մէնջ նուիրելոց, այլ զամփիսացւոցն պատուհասէ: Իսկ 'ի տարաժամել աւուրն՝ մատուցեալ քարոզն ասէ. « Որ միանգամ 'ի Դելփիս երկեմենիւք ըստ արբուն ելեալքն իցեն [71], ծառայ՝ թէ ազատ, եկեսցեն հասցեն ընդ այգանալ աչալրջոցն, առեալ գերանդիս և փայտատս, 'ի Զենարանն [72] անդր անուանեալ վայր: » Եւ նոյն քարոզ կարդայր գործեալ, աւանդապատահաց և զարտասանից զալ ժողովել 'ի նոյն տեղի յօգնականութիւն աստուածոյն և նուիրական երկրին. « Եւ քաղաք որ ոչ անդ գտանիցի, հերքեսցի 'ի մեհենէն և 'ի նզովս և յանէծս եղիցի: »

Ի վաղիւ անդր ընդ առաւօտն խաղացաք գնացաք 'ի նկատեալ տեղին, իջաք 'ի կիրրայեին դաշտավայրն, և զնաւահանգիստն հիմն 'ի վեր բրեալ, և հրձիգ արարեալ զբնակարանսն, դարձաք անդրէն: Մինչդեռ մեք զայնու էաք, ամփիսեան Լոկրացիք՝ վաթսուն վստաւանաւ հեռի 'ի Դելփայց

բնակեալք, եկին հասին միախուռն զինեալք 'ի մեր վերայ. և թէ չէր արշաւակի հազիւ հազ փախստեայ 'ի Դեկելիա անկեալ, սատակման 'ի վերայ կայր մեր վտանգ:

Ի վաղորդեան աւուրն Կոտտիփոս [73], որ հարց և քննին տանէր խորհրդոց, արար հանդէս Ամփիկտիոնաց. զի հանդէս անուանեն՝ յորժամ ոք ոչ միայն զդատաւորսն և զաւանդապահսն կոչիցէ 'ի մի վայր, այլ և զորս 'ի միասին զոհեն և հարցանեն պատգամ յաստուածոյն: Արդ՝ բազում դատախազք լինէին յայնժամ զամփիսացւոցն, և զմեծութիւն շատ մերոյ քաղաքիս: Եւ կնիք ամենայն խօսից, հրաման առնէն աւանդապահացն՝ 'ի կէտ եդեալ ժամու յառաջ քան զպաշտօն ժողովս գալ հասանել 'ի Դրունսն, առեալ ածեալ զզէնսն՝ ընդ որում զդատաստան տալոց էին ամփիսացիք զմեղացն առ աստուածն, առ երկիրն սուրբ և առ Ամփիկտիոնսն:

Եւ թէ զստուգութիւն պատմեմ, ընթերցցի ձեզ դպրապետն զհրամանն:

## ՀՐԱՄԱՆ

Զվճիռ զայդ մատուցեալ մեր առ ատեանն խորհրդոյ, և դարձեալ 'ի ժողովն առ ժողովուրդն, հաճեցաւ ժողովուրդն ընդ գործս մեր, և քաղաքս համօրէն բարեպաշտ զայնս դատեցաւ: Իսկ Դիմոսթենի՝ 'ի պատճառս ամփիսացւոցն գաղտորսակ խոստման՝ հակառակ ընդդիմաբանեալ, և իմ յայտ յանդիման առաջի ձեր նշաւակեալ զնա, իբրև ոչ ևս կարէր այրդ յիրացն յայտնութենէ զեղծուցանել զքաղաքս, մտեալ այնուհետև 'ի խորհրդարանն և 'ի բաց տարեալ զատականսն՝ հանէ առ ժողովուրդն հրաման մի, պատրեալ զանհմտութիւն գրողին. և զնոյն զայն 'ի ժողովն անդ խորամանգեաց հաստատել և լինել վճիռ կամաց ժողովրդեան, մինչ դեռ յարուցեալ էր ժողովն և

ես լինջն մեկնեալ, — զի բնաւ չտայր Թոյլ, — և բազումք 'ի բաց գնացեալ: Որոյ համառօտն այս ինչ է հրամանին. « Աւանդապահն աԹենացւոց, ասէ, և դարպասանք՝ որ հանապազորդ դարպասանքն իցեն, երԹիցեն 'ի Դրունսն և 'ի Դե՛ղփիս՝ 'ի ժամանակս կարգեալս առ 'ի նախնեաց: » Կարի վայելուչ ըստ ձայնիցն, այլ արդեամբք՝ ամօԹալի. զի խափան լինել ժամանելոյ 'ի գումարումն անդր Դրանցն, որ հարկաւ յառաջ քան զօրինաւոր ժամանակն ուղէր լինել: Եւ դարձեալ 'ի նմին մտօք առաւել ինչ հաւաստի և դաժանագոյն յաւելեալ գրէ. « ԱԹենացւոցն, ասէ, աւանդապահ և դարպասանք՝ որ հանապազորդեանն դարպասանքն իցեն՝ մի՛ կցորդ լինիցին անդանօր գումարելոցն, մի՛ բանից, մի՛ գործոց, մի՛ հրովարտակաց և մի՛ բնաւ ինչ իրիք իրաց: » Եւ մի՛ բնաւ հաւան լինել զի՞նչ իցէ: Զճշմարիտն ասասցէք արդեօք, եԹէ զհեշտալուրն: Ասացից զճշմարիտն. զի հեշտալին յանդ խօսեցեալ՝ յայս տեղի հասոյց զքաղաքս: Չտայ Թոյլ յիշել զերդմունսն զոր նախահարքն մեր երդուան, և ոչ զանէծսն և ոչ զհրաման պատասխանւոյ աստուածոյն:

Եւ արդ մեք, ո՛վ արք աԹենացիք, ըստ հրամանիդ ըստ այդմիկ կացաք մնացաք. իսկ այլ Ամփիկտիոնք ժողովեցան 'ի Դրունսն, բայց միայն 'ի միոյ քաղաքէ [74] զորոյ ես զանունն չասայց լեզուիս, և մի՛ այլում ումեք 'ի հելլենացւոց հասցէն հարուածք նորա: Եւ գումարեալ վճիռ արարին զօրախաղաց լինել 'ի վերայ ամփիսացւոց, և սպարապետ ընտրեցին զԿոտտիփոս փարսալացի՝ այն որ զխորհրդոցն կամաց զհարցուփորձ արարեալն էր, մինչ դեռ չէր Փիլիպպոս 'ի տան իւրում 'ի Մակեդոնիա, և ոչ յԵլլադա մօտ, այլ 'ի ՍկիւԹս անդր յոյժ բացական. զոր իսկ և իսկ ժպրհեացի ասել ԴիմոսԹենէս, Թէ իմ դրդեալ ածեալ է 'ի վերայ հելլենացւոց: Եւ խաղացեալ գնացեալ նոցա յառաջնում պատերազմին՝ չափաւորապէս յոյժ վարեցան ընդ ամփիսացիսն: Զի փոխանակ մեծամեծ անիրաւուԹեանցն՝ ընչիւք չափ ևեԹ տուժեցին զնոսա, և ժա-

մանաւանդակէտ եւս յայտ արարքն հաստատեցանելոյ զայն սա-տուածոյն, և զնզովեալսն և զերդումն եղելոց պատճառս հա-լածեալ՝ զվասն կրօնաւորութեան վասարանդեալսն դարձու-ցին անդրէն: Իսկ երբեւ ոչ զարծաթն եսուն 'ի գանձս սա-տուածոյն, և զանկծեալսն անդրէն դարձուցին, և զբա-րեպաշտօնսն որ 'ի ձեռն Ամփիկտիոնացն էին դարձեալ ե-կեալ՝ մերժեցին համնին 'ի բաց, այլա այնուհետեւ զերկրորդ պատերազմն եսուն ընդ ամփիկտիոնսն յետ հարուստ մի ժամանակի, մինչ դարձ առաքեալ հասեալ կայր Փիլիպպոս 'ի սկիւթացւոց աշխարհէն [75]. աստուածոցն պարգեւելով մեզ զառաջնորդութիւն բարեպաշտութեան, իսկ Դեմոս-թենի կաշառակերութեանն՝ խոչ ընդ սուն մեզ լինելով:

Ո՞չ ապաքէն կանխապէսկոյց լեալ ազդ մեզ աստուածն զգեն զգոյշ լինել, բայց միայն մարդկեղէն ևեթ չարաճակեալ բար-բառ: Ո՞չ էք ուրեք տեսեալ երբեք քաղաք աւանել պահ-պանեալ 'ի գլխ, և 'ի Ճարտարապատկոսաց ամենից մնացեալ 'ի կորուստ: Մի թէ չէր ինչ բաւական 'ի զգուշութիւն երե-ւեալն 'ի Խորհրդոս նշան, նորընծայ նուիրեալոցն մախճան մահու [76]: Ո՞չ ապաքէն այսոցիկ նախաքարոզ լինէր Ամի-նիադէս զգուշանալ, և առաքել 'ի Դեղփիս հարցանել զաս-տուածն՝ զի՞նչ պարտ իցէ առնել. և ո՞չ ընդդիմախօսէր Դե-մոսթենէս, ասել՝ թէ Փիլիպպիզէ [77] Պիւթիա, այլոց այդ անխորատ՝ վայելեալ և զմոյլեալ իշխանութեանն 'ի ձէնջ շնորհելով: Ո՞չ ապաքէն հուսկ ուրեմն [78], մինչդեռ անհնուէր և անհաճոյ զոհքն էին, առեալ արձակեաց զզօրականն 'ի յայտնի վտանգ: Եւ սակայն սուղ ինչ յառաջ իշխեաց ա-սել, յայն սակս ոչ առապատուակ ասեալ և միջամտեալ լեալ Փիլիպպեայ յերկիր մեր, վասն զի զոհքն չէին նման բարե-նշանք: Իսկ արդ ո՞ւմ պատուհասի իցես դու արժանի, մեղան-չականդ Ելլադայ: Զի եթէ յաղթօղն 'ի պատերազմին աշ-խարհ ոչ եմուտ՝ վասն ոչ նման բարեզուշակ եղելոյ զոհիցն, և քո ոչինչ նախատես եղեալ հանդերձելոցն լինելոյ, մինչ չև ընդունելի լեալ զոհից՝ յուղարկեցեր զբանակն, մի թէ

պատկէ՞լ ինչ զքեզ արժան իցէ 'ի վերայ Թշուառութեանց քաղաքիս, եթէ տարագիր ըստ աշխարհ հանել:

Քանզի զի՞նչ անակնկալ և անկարծելի որ առ մեօք չկատարեցաւ. զի ոչ կեանս կեցաք մեք զմարդոյ, այլ 'ի նորօրինակ զրոյցս զկնեացն մերոց ծնաք: Ո՞չ ապաքէն Պարսից Թագաւորն, որ զԱթոս եհերձ, որ զՀելլեսպոնտոս կամրջեաց, որ հող և ջուր 'ի Հելլենացւոց խնդրէր, որ յանդգնէր գրել 'ի հրովարտակս իւր՝ թէ տէր իցէ ամենայն մարդկան յելիցն արևու մինչև 'ի մուտս, այժմ ոչ վասն աշխարհակալութեան պատերազմի, այլ իւրոյ գլխոյն փրկութեան [79]: Եւ փառացս այսմիկ, և ընդդէմ պարսկայնոյն զօրավարութեան՝ ո՞չ զնոսա տեսանեմք արժանացեալս, որ զԴելփիական մեհեանն հանին յազատութիւն: Եւ Թեբէ, Թեբէ քաղաք մօտաւոր, ո՞չ 'ի միում աւուր յափշտակեալ խլեցաւ 'ի միջոյ Ելլադայ. թէպէտ և արդարապէս, զի ոչ ուղիղ խորհեալք զբոլորից. բայց զարկածն և զխելագարութիւն ոչ մարդկօրէն, այլ յաստուածուստ կրեալք: Իսկ Թշուառական Լակեդեմոնացիք՝ ձեռն եւեթ մխեալք ի սկզբանէ յիրս աւարառութեան մեհենին [80], որ խնդրէինն երբեմն զգլխաւորութիւն Հելլենացւոց, այժմ առ Աղեքսանդր են առաքելոց [81] կալ 'ի պատանդի և ցոյցս առնել զաղէտս իւրեանց, և անձանց իւրեանց և հայրենի աշխարհին զայն ամենայն չարչարել՝ որ ինչ միանգամ նմա հաճոյ Թուեսցի, և իրաւանց ակն ունել 'ի չափաւորութենէ յաղթողին, առ որ ինքեանք նախ գտեալ են վնասակար: Իսկ քաղաքս մեր, հասարակաց Հելլենացւոցն ապաւէն, յոր գային ժողովքն յառաջագոյն Ելլադայ հրեշտակութիւնք, իւրաքանչիւր ըստ քաղաքի քաղաքի զփրկութիւն գտանել 'ի մէնջ, զարդիս ոչ ևս զՀելլենացւոցն իշխանապետութենէ ոգորի, այլ զհայրենի յատակէն [82]:

Եւ այս ամենայն հասին մեզ յորմէ հետէ 'ի վարչութիւն քաղաքիս եկն ել Դիմոսթենէս: Զի բարւոք հատանէ զայդպիսեաց վճիռ Հեսիոդոսն քերթող: Քանզի ասէ ու-

րէք [83] 'ի խրատ ժողովրդոց և 'ի խորհրդակցութիւն քա-ղաքաց, զչարս 'ի ռամկավարաց մի ընդունել: Այլ ես և զառաջինն իսկ ասացից. զի յայն կարծեմ սակս ուսանել մեզ 'ի մանկութենէ զքերթողացն հանճար, զի յարութեան հա-սակին առցուք 'ի պէտս:

Եւ բազում անգամ ողջոյն տուժի քաղաք յանձնէ չարէ
Որ ապիրատն երևեալ որոճայցէ ոճիր աղուհս.
Զրուանեանն առ նոսա շարժեալ յերկնից ոստայց հարուած,
Սով համայն և սրածութիւն, և ժողովուրդք վատնեալ սպառին.
Կամ նա զայն նոցին բանակ կորուսանէ կամ ըզպարիսպ,
Կամ զնաւս յանդունդս Արամազդ. ահեղամռունչ պատուհասէ:

Եթէ զչափս ոտից քերթողին քայքայեալ՝ զմիտսն կըր-կեսցէք, կարծեմ թէ ոչ հեսիոդեայ թուիցին ձեզ քեր-թուածք, այլ պատգամ զաեսչութեանցն Դիմոսթենի. զի և նաւաստակալն մեր, և հետևակախումբ զինուորութիւն, և քաղաքք միանգամայն սպառասպուռ յափշտակեալ վան-դեցան 'ի դորա քաղաքավարութենէն:

Այլ ինձ թուի, ոչ Փրինոնդաս, ոչ Եւրիբատոս [84], և ոչ այլ ոք երբեք 'ի վաղնջուցն չարաց՝ այսպիսի երևեալ կա-խարդ և խաբեբայ, որ, — ո՛վ Երկիր և դիք և Քաջք և մարդիկ՝ որոց կամք իցեն լսել զճշմարտութիւն, — որ դէմ յանդիման յերեսս ձեր յանդգնի ասել, թէ Թեբացիք՝ ոչ յերեսաց հանգամանաց ժամանակին, ոչ առ. մօտալուտ հասեալ երկիւղին իւրեանց, և ոչ 'ի պարծանս ձեր արա-րին զնիզակակցութիւնն ընդ ձեզ, այլ յատենախօսու-թեանց Դիմոսթենի: Սակայն յառաջ քան զդա բազում հրեշտակութիւնս վճարեցին 'ի Թեբէ՝ որք ընտանեգոյնք ումանք էին նոցա. և նախ Թրասիբուլոս [85] կոլլիտացի, այր հաւատարիմ քան զբնաւս առ Թեբացիս. ըստ նմանէ Թրա-սոն երքիացի [86] Թեբացւոցն ասպնջական. Լէոդամաս աքառնացի՝ [87] ոչինչ ընդհատ 'ի Դիմոսթենեայ հզօր 'ի բանս, բայց՝ դէթ ըստ իս՝ առաւել քաղցրախօս. Արքեդեմոս

ակն՚կեքսացի 88 և բանիւք զօրաւոր և բազում ճգնեալ վասն Թեբայեցւոց յիւրում քաղաքավարութեանն. Արիստոփոն Ազենիացի՝ հարուստ մի ժամանակ կրեալ զպատ բիովտա-նայրդ. Պիւռանդրոս Անափլիստացի, որ արդ ևս կենդանի կայ. համայն և այնպէս՝ ոչ ոք երբէք 'ի սոցանէ կարող զտաւ ածել զնոսա ընդ ձեզ 'ի համբոյր։ Զպատճառսն գի-տեմ, այլ չափաւր ինձ ասել՝ վասն նեղութեան կարեաց ժա-մանակին նոցա։ Բայց կարծեմ թէ իբրև Փիլիպպոս հա-նեալ 'ի նոցանէ զՆիկեա եւ ցԹեսաղացիս 89, և զպատե-րազմ՝ զոր յառաջ պարձոյց յերկիրէն Փոկայեցւոց, զնոյն զայն պատերազմ ած մերասին ընդ Փոկկիս 'ի վերայ բուն իսկ քաղաքին Թեբայեցւոց, և հուսկ ապա առեալ զԵղա-տիա 90 պարսպեաց ամրութեամբ և պահապանս 'ի ներքս արար, անդ յայնժամ՝ յորժամ առ դուրս նոցա հասին չարիքն, առաքեալ կոչեցին զաթենացիս. և դուք ելեալ գնացեալ մտէք 'ի Թեբէ, հանդերձեալք 'ի զէն և 'ի զարդ, հետևակք և այրուձի, մինչ չև էր վանկ մի լուր Դիմոսթենի վասն Թիկանց գրեալ։ Եւ որ եմոյծն զձեզ 'ի Թեբէ՝ ժա-մանակն էր և ահաբեկութիւն երկիւղին և պէտք Թիկունս օգնա-կանութեան առնելոյ, և ոչ Դիմոսթենէս։

Քանզի յիրս յայս՝ երիս մեծամեծս քան զամե-նայն մեղաւ ձեզ Դիմոսթենէս։ Առաջինն, զի մինչ գեռ Փի-լիպպոս՝ յանուանն ընդ ձեզ պատերազմէր, բայց արդեամբք առաւել ատելութեամբ էր ընդ Թեբայեցիս, որպէս և ելք իրացն յայտ արարին 91, — և զի՞ պիտոյ յաճախել զբանս, — զայնուհետև զկարևորան Թողուցեալ գործս, և պատճա-ռեալ՝ թէ նիզակակցութիւնն լինելոց իցէ, ոչ 'ի հարկէ հան-դամանեաց ժամանակին, այլ յիւրոց հրեշտակութեանցն, հանձեալ զմիտս ժողովրդեան՝ մի ևս խորհել թէ որով պայ-մանօք առնել իցէ զնիզակակցութիւնն, այլ չիցէ համարել միայն՝ զի առնիցի։ Եւ այսպէս կանխեալ զամապխս լեալ, ըզ-Բէովտիս համօրէն մատնեաց եւ 'ի ձեռս Թեբայեցւոց, գրեալ 'ի հրամանին՝ զի թէ քաղաք ինչ յետս կացցէ 'ի

Թեբացւոց, աթենացիք 'ի թիկունս հասցեն բիւզանդացւոցն
Թեբայ [92], բառնիւք գողացեալ և վտարանդեալ զերան, որ-
պէս սովորն է, իբրև թէ արդեամբք չարչարեալքն բիւզ-
անդացիք՝ շատանայցեն պաճուճեալ բանիւքն Դիմոսթենի, և
ոչ մանաւանդ զայրանայցեն ընդ կիրս չարեացն որ անցին
ընդ նոսա: Այլ այսու և զերկու մասն ծախուց պատերազ-
մին արկ 'ի վերայ ձեր՝ յորոց հեռի էին վտանգք, և զերիր
մասն նաւէ՝ Թեբացւոց, առեալ կաշառս վասն ամենայնի
այսորիկ: Եւ զզօրավարութիւնն որ ընդ ծով էր հասարա-
կաց, իսկ զծախսն՝ ձեզ միայն առանձինն. և զոր ընդ ցա-
մաք, եթէ չէ պարտ զառանցել, համայն առեալ մատուցիւր
մասոյն Թեբացւոց. մինչև 'ի պատերազմն անդ ոչ իշխան
լինել Ստրատոկլի զօրավարին ձերոյ խորհել 'ի փրկութիւն
զօրականին: Զայսոսիկ՝ ոչ եթէ ես ինչ չարախօսեմ, և
այլք անուանս տանեն, այլ և ես ասեմ և ամենեքեան պար-
տաւէն, և դուք ինքնին իրազեկք էք, և ոչ ցասնուք: Զի
զայս ախտանայք ընդ Դիմոսթենի. վաղ ընդելացեալք լսել
զանիրաւութիւնս նորա, ուստի և ոչ զարմանայք: Բայց
չէ արժան այդմ այդպէս լինել, այլ զայրել և պատուհա-
նել, եթէ իրաց քաղաքիս պարտ իցէ այսուհետև բարւոք
ընթանալ:

Երկրորդ և մեծ քան զայդ անիրաւութեան անիրաւու-
թիւն, զի զխորհրդարան քաղաքիս և զընկերհաշտութիւնն
ինքնին զլխովին խլեալ թաքնաբար՝ փոխեաց 'ի Թեբէ 'ի
Կադմէականն, մտեալ յուխտ ընդ իշխանսն Բիովտաց՝ [93]
հասարակ հաւանութեամբ զերան վճարել: Եւ այնչափ ինքն
իւրում անձինն հանդերձեաց հարստութիւն, մինչև յա-
ռեան այսր անցեալ ասել, թէ ուր և նմա հաճոյ թուեսցի՝
երթայցէ հրեշտակութեամբ, թէ և դուք ոչ առաքիցէք.
և թէ ոք 'ի զօրավարաց նմա բանս ընդդէմ դնիցէ, 'ի ծա-
ռայի սակի կալեալ զիշխանսդ և ուսուցեալ մի ինչ հակա-
ռակ նմա խօսել, ասէր փոխարէն յարուցանել յատենէ ատ-
տի ընդդէմ սպայապետութեանն. զի 'ի բազում ինչ ասէր

վայելեալ ձեզ բարիս 'ի ձեռն իւր յառնէնէ առաւ քան 'ի
զօրագլխաց սպարապետութեանն։ Եւ վարձս գտեալ 'ի
դատարկ տեղեաց այլազգի դումարտակին [94], և զարծաթ
զօրականին գողացեալ, և բիւր մի այլազգի 'ի վարձու կա-
լեալ ամփիսացւոց, մինչ դեռ ես բողոք յոյժ հարկանէի 'ի
ժողովսն և քանքատէի, 'ի բառնալ այլազգեացն 'ի միջոյ՝
ած խառնեաց զվաստանդն ընդ քաղաքս մեր ընդ անպատ-
րաստ [95]։ Զի զի՞նչ կարծիցէք փափաքելի Փիլիպպեայ 'ի
ժամանակի անդ յայնմիկ. ո՞չ ապաքէն ուրոյն ուրոյն ընդ
զօրս քաղաքի քաղաքի, և ուրոյն յԱմփիսսա ընդ այլազ-
գիսն տալ ճակատ, և ըմբռնել զհելլենացիս վհատեալս յե-
րեսաց այնպիսում հասելոյ հարուածոյ։ Եւ այնպիսեաց
չարեացպատրաստ եղեալ Դիմոսթենէս, ոչ շատ համարի՝ զի
չետ վրէժս, այլ և անտղջանկի ևս՝ եթէ ոչ պսակ ոսկի պսա-
կիցի. ոչ շատ է նմա հռչակել առաջի ձեր, այլ եթէ ոչ և
յանդիման հելլենացւոց քարոզեսցի՝ պսակեալ դժոխէ։
Այսպէս ահա բնութիւն չարաշուէր՝ 'ի մեծ իշխանութիւն
հասեալ՝ հասարակաց ոլորէ եղեռն։

Իսկ երրորդ և մեծ քան զճառեալսդ այն է՝ զոր ասելս
հանդերձեալ եմ։ Քանզի Փիլիպպեայ չարհամարհեալ զհե-
լլէնս, և ոչ անգիտացեալ, — զի չէր անհանճար ոք, —
թէ զպարեացն յիւրում ձեռին եղելոյ՝ 'ի դոյզն ինչ մասին
աւուր կռուելոց է, վասն որոյ և ցանկայր իսկ առնել հաշ-
տութիւն, և առաքելոց էր հրեշտակս. և իշխանք Թեբա-
ցւոց 'ի կասկածի կային 'ի սպառնացեալ վտանգէն, և յի-
րաւի. զի ոչ ճարտարախօս ոք անհմուտ մարտի և դասա-
լիք՝ խրատտու էր նոցին, այլ փոկկիսեան տասնամեայ պա-
տերազմն էր խրատեալ զնոսա խրատ յաւերժայիշատակ։
Ի լինել այսմ այսպէս, իրազեկ լեալ Դիմոսթենէս, և խե-
թացեալ յիշխանացն բիովտացւոց ինքնուրոյն զհաշտու-
թիւնն առնելոյ՝ ոսկի 'ի Փիլիպպեայ կաշառս առանց իւր
առնլով, և անկեալ զկենանն համարեալ՝ եթէ անմասն 'ի
կաշառակրութենէ ուստեք ելանիցէ, յարուցեալ ընդոստ

'ի ժողովս ժողովրդեան, ուր ոչ ոք 'ի մարդկանէ ասէր ինչ, թէ արժան իցէ հաշտութիւն առնել ընդ Փիլիպպեայ և թէ ոչ, այլ որպէս ինքեան թուէր, ազդ իմն առ. իշխանն բռնաւորացւոց առնելով հաստուցանել առ. ինքն զբաժինն աւելին, երդուեալ յԱթէնաս, — զոր որպէս թուի՝ 'ի շահ օգտի Դիմոսթենի ճարտարեաց Փիլիպպոս և յերդմնահարութիւն նորա, — ոն և ոն, եթէ արժան լինել ասիցէ ոք առնել հաշտութիւն ընդ Փիլիպպեայ, բուռն զհերոյց այնպիսոյն հարեալ՝ առնուլ տանել զնա 'ի բանտ. նմանօր իմն լինելով քաղաքավարութեանն Կլէոփոնի [96], որ առ. լակեդեմոնացւոցն պատերազմաւ, որպէս աւանդի, զքաղաքս կորոյս։ Այլ քանզի ոչ պատկառ. կացին նմա իշխանք թեբայեցւոց, նա և զչուեալ գնացեալ զօրս ձեր դարձուցին յետս, զի 'ի խորհուրդ վասն հաշտութեանն մտանիցէք, անդ բնաւ իսկ 'ի շամբշութիւն հասեալ, և յատեան ելեալ՝ մատնիչս հելլենացւոց զաւաճանս զբռնաւորացւոց իշխանն կոչեաց. և գրել տալ հրաման, այն որոյ չէր երբեք յերես թշնամեաց զակն կառուցեալ, առաքել ձեզ հրեշտակս 'ի Թեբէ, խնդրել 'ի Թեբայեցւոց անցս 'ի վերայ Փիլիպպոսի։ Իշխանք թեբայեցւոց զամօթի հարեալ, թէ դուցէ արդարև մատնիչս հելլենացւոց լինելոյ կարծիս առնուցուն, յետս կացին 'ի հաշտութենէն և 'ի պատերազմ յորդորեցան։

Աստ արժան է և զարանցն այնոցիկ զքաջաց առնել յիշատակ, զորս դորա, մինչդեռ անսնուէր և անյաջող զոհքն էին, արձակեալ յանշուշտ վտանգ, իշխեաց ապա փախըստեայ և զասպարքն ոտիւքն ելանել կանգնել 'ի շիրիմ [97] վախճանելոցն, և զնոցա առաքինութիւնն դրուատել։ Ո՛վ առ. մեծամեծն և կարևորս՝ քան զամենայն մարդիկ անպիտանագոյնդ, և 'ի յանդգնութիւն խօսից՝ գեր 'ի վերոյ զարմանալիդ, կամիցիս այնհետայն ձեռն 'ի գործ արկանել՝ զակն ակն ունելով յերեսս սոցա՝ և ասել, թէ յաղէտս սոսա քաղաքիս արժան է քեզ պսակել։ Եւ եթէ ասիցէ նա զա, ունիցիք դուք ժոյժ, և ընդ վախճանելոցն մեռանիցի՞ ու-

րեմն և յիշատակք ձեր ։ Եկա՛յք աղէ եղբարք ինձ մտօքդ խուն ինչ ժամանակ, ոչ յաւէտնի սատ, այլ 'ի տեսարանին․ և դիտեսջիք՝ թէ տեսանիցէք զքարոզն յառաջ մատուցեալ, և զոր հանդերձեալն է լինել ըստ հրովարտակին զքարոզութիւնն լսիցէք․ և հարցփորձ արարէք ընդ միտս ձեր, եթէ հաշուեցիք արդեօք թէ ընտանեակք վախճանելոցն տուեալ ինչ արտասուս արկանիցեն յողբերգութիւնն և 'ի կարկս զխեցազանցն, որ սոցին իրաց զհետ 'ի մէջ դայցեն, քան 'ի վերայ ապախտաւորութեան քաղաքիս ։ Զի ո՞ այն ոք այլ հե՛լլէն իցէ և ըստ ազատաց օրէնս դաստիարակեալ, որում ոչ ցաւեսցէ, 'ի յուշ լինել նմա՝ եթէ ոչ այլ ինչ՝ գէթ այսմ, զի անդ ուրեմն երբեմն 'ի սմին յայսմ աւուր, մինչդեռ որպէս այժմս ողբերգութիւնք լինելոց էին, յորժամ բարեկարգ ևս էր քաղաքս և ընտրելագոյն առաջնորդք վարէր, յառաջ անցեալ քարոզն և 'ի մէջ մատուցեալ զորքան՝ որոց անկեալ էին հարքն 'ի ճակատու, պատանեակս սպառազէն զարդարեալս, կարգայր զգեղեցիկն քան զամենայն քարոզ և խրախուսիչ յառաքինութիւն․ զայն թէ « Զպատանեակս զայսոսիկ՝ որոց հարքն կատարեցան 'ի պատերազմին արութեամբ քաջութեամբ նահատակեալք, առաւիկ մինչև յարբունս հասակի իւրեանց մնոյց ժողովուրդն․ իսկ այժմ սոքին սպառազինութեամբ վառեալս արձակէ բարեպատեհ բախտիւ երթալ դառնալ 'ի գործս իւրեանց, և կոչէ զնոսա 'ի յառաջագահս [98] ։ Քարոզէր զայս յայնժամ, բայց ոչ ևս այժմ․ այլ մերձ կացուցեալ զչարեացապարտն որբութեան մանկըտւոյն՝ զի՞նչ քարոզեսցէ, կամ զի՞նչ բարբառ արձակեսցէ ։ Զի եթէ ընդ հրամանս հրովարտակին անցանիցէ ևեթ, համայն ոչ լաւութեամբ ծածկեսցի ամօթն որ 'ի ճշմարտութեանն, այլ ձայնի քարոզին հակառակ ընդդէմ բարբառել թուեսցի, այն զի Զայրս զայս, եթէ դա այր իցէ, պսակէ ժողովուրդ աթենացւոց վասն առաքինութեան՝ զվատացն վատ, վասն քաջութեան՝ զանարին և զդատաւորս ։ Մի,

աղաչեմ զձեզ՝ ով արք աթենացիք, երդմնեցուցեալ յԱրամազդ և յայլ աստուածսն, մի՛ 'ի կաքաւարանին անդ Սպանդարամետին՝ նշան վատթարութեան անձանց ձերոց կանգնիցէք, և մի զաթենացւոցս ժողովուրդ առաջի հելլենացւոց խելագար յանդիմանեսջիք, և մի Թշուառական Թեբացւոցն յուշ արկջիք զանհնարինն և զանբուժելի աղէտս նոցա, զորս վասն դորա վտարանդիս և փախստեայս 'ի քաղաքդ ժողովեցէք, զորոց զմեհեանսն և զորդիս և զգերեզմանս կորոյս կաշառակերութիւն Դիմոսթենի և ոսկին Թագաւորական:

Այլ քանզի անձամբ ոչ դիպեցայք, գոնէ մտօքդ հայեցարուք 'ի տառապանս նոցա, և դիք 'ի մտի՝ թէ ահա տեսանիցէք զքաղաքն յառ և յաւար մատնեալ, զպարիսպն կործանեալ, հրոյ ճարակ զապարանսն, զկանայս և ըզմանկունս վարեալ 'ի գերութիւն, զծերունիս յարանց և ըզպառաւունս 'ի կանանց անապատն ուրեմն մոռացեալ զազատութիւն, կական բարձեալ՝ զձեզ աղերսելով, սրտմտեալ՝ ոչ ընդ վրէժխնդիրս իւրեանց, այլ ընդ եղեռնագործսն այդր ամենայնի, պաղատելով առ ձեզ՝ մի՛ և մի՛ իւիք օրհնակաւ ըզդահիճդ Ելլադայ պսակել, այլ և 'ի դիւէ և 'ի բախտէ անտի որ արքանեկէ առնդ՝ անձնապահ լինել: Զի ոչ քաղաք և ոչ այր ոք սովական՝ Դիմոսթենի խորհրդով վարեալ՝ յանգորր եւ երբէք յաջողութեամբ: Եւ դուք, ո՛ արք աթենացիք, ո՞չ ամաչիցէք, եթէ 'ի վերայ նաւավարացն նաւելոց 'ի Սալամիս օրէնս եդեալ, զի թէ ոք 'ի նոցանէն յակամայ կամս զնաւակն շրջեցէ յանցի անդ, մի՛ ևս օրէն լիցի նմա կալ նաւավար, որպէս զի մի՛. ոք խօլաբար ընդ կեանս հելլենացւոց վարեսցի, իսկ զատապալեցդ Ելլադայ և քաղաքիս համանգամայն, թողուցուք անդրէն միւսանգամ 'ի վարչութեան իրացս հասարակաց 99:

Իսկ առ 'ի ճառել և զչորրորդ ժամանակէն և զայժմու հաստատելոց իրացս, յիշեցուցանել կամ է ինձ ձեզ, զի Դիմոսթենէս ոչ 'ի զօրուէն միայն եղև դասալիք փախստա-

կան, այլ և 'ի քաղաքէս. զի առեալ նաւ մի զձեր պատերազմի, գնաց ժողովեաց արծաթ 'ի հելլենացւոց: Իսկ իբրև անակնկալ իմն փրկութիւն ած դարձոյց զնա այսրէն 'ի քաղաքս, զառաջին աւուրսն զդողանի հարեալ կայր այրն, և կիսամահ յատեան մատուցեալ՝ ստիպեաց զձեզ՝ զինքն ընտրել պահապան խաղաղութեան: Բայց դուք առժամայն ոչ տայիք թոյլ գրել 'ի հրամանին զանուն Դիմոսթենի, այլ Նաւսիկլեսի հրամայէիք զայն. իսկ այժմ և պսակ սա խնդրէ: Իսկ իբրև վախճան եհաս Փիլիպպոսի, և Աղեքսանդր եկաց յիշխանութեանն, անդրէն վերստին բանդագուշեալ գոլա՝ մեհեանս կանգնեաց Պաւսանիայ [100], և ընդ բարերարանօք արկ զատեանդ՝ աւետեաց զոհս մատուցանելոյ. և աւելի անուն եդ Աղեքսանդրի Բոխոյծ. և իշխեաց ասել՝ թէ ոչ ուրեք խլրտեսցի նա 'ի Մակեդոնիոյ. զի շատ համարի, ասէր, ելանել զգնալ 'ի Պէլլա, և ընդերահարց լինել [101]: Եւ զայս ոչ 'ի կարծ ինչ ասեմ, ասէր, այլ Ճշտիւ գաղկաւ, զի զինք արեան է առաքինութիւն: Ինքն զի անարիւն ոք է, և զԱղեքսանդրոս նկատեալ ոչ ըստ բնութեան Աղեքսանդրի, այլ ըստ իւրում անարութեանն: Իբրև թետալացիք հրաման ետուն պատերազմի 'ի վերայ քաղաքիդ ձերոյ, և մանուկն համբակ յիրաւի էր ցասուցեալ յառաջոյ, և բանակն զԹեբաւ կայր, պատգամաւոր առ 'ի ձէնջ ընտրեալ՝ փախստեայ դարձաւ եկն 'ի միջոյ Կիթերոնի [102], ոչ 'ի խաղաղութեան և ոչ 'ի գումարտակի պիտանի ոք զանձն երևեցուցեալ: Եւ որ դժնդակ քան զամենայն է, դուք զդա ոչ 'ի ձեռս ետուք, և ոչ թոյլ արարէք՝ զի 'ի ժողովն [103] հելլենացւոցն դատեսցի. իսկ այժմ, եթէ Ճշմարիտ են որ ասէին, դա աւադիկ ետ զձեզ վտարանդիս:

Զի որպէս նաւաստիքս [104] պատմեն և որ չոգանն հրեշտակութեամբ առ Աղեքսանդրոս, — և յիրաւի հաւատարմանեան իրքն, — Արիստիոն ոմն անուն է պլատէացի, դեղավաճառին Արիստոբուլեայ որդի, թերևս ծանօթ իսկ

տումբք 'ի ձեռն։ Պատասխանեաց այս, քան զայլս գեղեցկակերպ, բնակեաց ժամանակս երկայնս 'ի տան Դիմոսթենի. առ 'ի զինչ գործել կամ կրել՝ յերկբայս են իրքն, և ինձ բնաւ անվայելուչ յասել։ Սա, որպէս լսեմ, թէ զինչ ոք արդեօք իցէ և որպէս կեցեալ՝ յանծանօթս միալով, այլոցի մատանէ առ Աղեքսանդրոս և ընդելանի նմա։ Ի սորա ձեռն գիրս յղեալ Դիմոսթենի առ Աղեքսանդրոս, գտանէ վստահ ինչ և հաճութիւն, և բաղում շողոմս առնէ։ Եւ աստի առէք 'ի միտ, որպէս նման են իրքն ընդ պարսաւանաց։

Զի եթէ խորհէր ինչ յայժմուցս Դիմոսթենէս, և հակառակորդ էր՝ որպէս ասէն՝ Աղեքսանդրի, ժամանակք երեք պատեհագոյնք եկին ելին նմա, յորոց և ոչ մի յօգուտ արկ։

Մի առաջին, զի այն ինչ դեռ յիշխանութիւն յաջորդեալ Աղեքսանդրոս, չև զիրս իւր կարգ յօրինեալ, խաղաց գնաց նա յԱսիա [105]. և Թագաւորն Պարսից՝ հզօր գոյր նաւուք և զանձիւ և ամբոխիւ հետևակազօրու, և յառաջամիտ էր ընդունել զմեզ 'ի նիզակակցութիւն վասն եկեալ հասեալ իւրոց վտանգիցն։ Խօսեցա՞ր ինչ բան յայնժամ, Դիմոսթենէս, կամ հրաման ինչ գրեցեր։ Կամիս զի եդից զքեզ ահաբեկեալ յայնժամ և զքո բարուց առեալ 'ի կիր։ Սակայն աշխարհին ժամանակ ոչ ներէ երկչոտութեան Ճարտարախօսին։

Իսկ իբրև համագունդ ամենայն սպայիւն եկն էջ Դարեհ, և Աղեքսանդրի սպառնալիք 'ի վերայ կային 'ի Կիլիկիա [106], զի ցականեալ ամայի էր յամենայնէ, որպէս դուդ ասէիր, և անդէն հետ ընդ հետ՝ ըստ քում բանիդ՝ սմբակոխ լինելոց էր 'ի պարսկախուռնք այրուձիոյն սատակակէ. և մինչ դեռ քաղաքս ոչ տանէր զքո յաւակնութիւնդ, և զնամականին զոր 'ի մատունս յեռեալ ճեմէիր, և ցուցանէիր ոմանց ոմանց զերեսս իմ իբրև զպակուցելոյ ուրուք և վհատելոյ, և ոսկեզջիւր [107] զիս կոչէիր և ասէիր զենլի պսակեալ 'ի սպանդ, եթէ հարուած ինչ պատահեսցէ

Աղեքսանդրի. համայն և ոչ յայնժամ արարեր ինչ, այլ այլում իմիք բարեպատեհ ժամու թողուիր ։

Արդ զայսու ամենայնիւ զանց արարեալ՝ սատցից զայժմու նորակարգ իրացս ։ Լակեդեմոնացիք և այլազգի [108] զօրականն պատահեցան մարտիւ, և սատակեցին զզօրն որ զԿորրագաւ ։ Բայց էլիացիք 'ի կողմ եղեն նոցա, և աքայեցիք առ հասարակ՝ բաց 'ի պելլենացւոց, և Արկադիա համօրէն՝ բաց 'ի Մեգաղոպոլսէ. այլ և սա 'ի պատնէշ պաշարուածս 'ի նեղ անկեալ և զօր ամենայն յաւնուլ կայր ։ Իսկ Աղեքսանդրոս՝ ըստ Սայլն և գրեա թէ ըստ ոլորտս տիեզերաց 'ի բաց անցեալ գնացեալ էր, և Անտիպատրոս հարուստ մի ժամանակ լինէր զօրաժողով, և առաջիկայն անյայտ ։ Ցայտ արա մեզ աստանօր, ով Դիմոսթենէս, զինչ այն ինչ էր զոր գործեցեր ընաւ, և զինչ այն զոր խօսեցար երբէք. և թէ կամիս՝ տամ քեզ տեղի 'ի բեմիս՝ մինչև ասասցես ։ Այլ զի լռես կաս պապանձեալ առ տագնապի տարակուսանաց, ներողամիտ լինիմ առ քեզ. և զոր յայնժամն ասացեր՝ ես այժմ ասացից ։

Ո՞չ յիշեցէք զնծծի և զանհաւատ բանս դորա, որոց զիա՞րդ դուք, ով արք երկաթիք, համդուրժեցէք 'ի լուր, յորժամ մատուցեալ ասէր. « Իբրև զայգի յատանեն ոմանք զքաղաքս, կոճոպեն կէսք զբարունակս ժողովրդեանն, զջիլս իրացն առնեն կարթակոտոր, տզորակապ յանձուկս կաշկանդիմք, այլք զորբանս իբրև ասղունք կըտտեն ։ » Իսկ զինչ այդպիսիկ իցեն, ով աղուես. բանք, եթէ հրէշք ։ Եւ դարձեալ, յորժամ շուրջ յածեալ զքեզ յատենին՝ կոկողաբանէիր իբրև ախոյանացեալ Աղեքսանդրի. « Վկայեմ՝ թէ ես ապստամբեցի Լակեդեմոնք, վկայեմ զի ես վտարանջեցի թեսաղացիս և Պերրէպք [109] ։ » Դու՞ զգիւղ մի վտարանջեցուցես. դու՞ հուպ մատիցես, չասեմ թէ 'ի քաղաք, այլ 'ի տուն մի՝ ուր կասկած գուցէ վտանգի ։ Բայց միայն՝ թէ ուրեք կարասւոյ ծախք լինիցին, անդ մերձ անցեալ նստիցիս. այլ առն ինչ գործ՝ գործեսցես ոչ ։

Իսկ եթէ ինքնօրէն ինչ դէպ տայցէ, զոր անդէն կերպարա-նեսցիս, և 'ի վերայ եղելոյն և կատարելոյն դրոշմեսցես ըղ-քեզ. այլ եթէ արհաւիրք ինչ 'ի վերայ հասանիցեն, փա-խիցես 'ի բաց, իսկ եթէ քաջալերեալ համարձակիցիմք ինչ, պարգևս խնդրեսցես և պսակ ոսկի պսակիլ:

Այո, բայց ռամկավարութեան նախանձաւոր է: — Այլ եթէ 'ի ճոռոմաբանութիւն խօսից զորս դէտակն ու-նիցիք, խաբեսջիք՝ որպէս և յառաջն. իսկ եթէ 'ի բնու-թիւնն և 'ի ճշմարտութիւն, ոչ պատրեսջիք: Այսպէս մտէք ընդ դմա 'ի հաշիւ, և ես ընդ ձեզ 'ի համար արկից՝ որ ինչ պարտն իցէ լինել 'ի բնութեան առն ռամկավարի և ցած-նոյ. և 'ի հակառակէն եղից՝ որպիսի ինչ ոք լինիցի այր սա-կաւուց իշխանապետութեան սիրող և վատթար. և ձեր ընդ միմեանս համարեալ զերկոսեան զայդ՝ 'ի քննին առէք զդա, ոչ ըստ որում բանիցն իցեն զորա, այլ ըստ որում կենացն:

Արդ ես ամենեցուն ձեզ խոստովանեալ համարիմ, թէ 'ի ռամկավարին պարտին լինել այսոքիկ: Նախ, զի ինքն ազատ իցէ և առ 'ի հօրէ և առ 'ի մօրէն. զի մի վասն տոհմին ան-կածութեան՝ թշնամի օրինաց իցէ որ պահեն զռամկապետու-թիւն: Երկրորդ, զի 'ի նախահարց անտի իւրոց երախ-տիք ինչ գտանիցին առ ժողովուրդն, կամ, որ կարևորա-գոյն ևսն է, մի ինչ խէթ ոխութեան, զի մի առ 'ի զօրա-վիգն լինել նախնեացն տառապանաց՝ չարիս ինչ ընդ քա-ղաքն անցուցանել նկրտիցի: Երրորդ, զգաստ և չափաւոր արժան է լինել նմա 'ի բնէ 'ի հանապազորդ վարսն, զի մի առ ծախուցն շռայլութեան կաշառեսցի 'ի վնաս ժողովր-դեան: Չորրորդ, միտավարժ լինել և կորովի 'ի բան. քանզի բարի է խելամտութիւն յընտրութիւն լաւագունացն, և գիտութիւն ճարտարախօսի և բան՝ առ 'ի հաւան զունկն-դիրսն ածելոյ. իսկ թէ ոչ, զիմաստութիւն նախամեծար ընտրելի է քան զբանից կորովութիւն: Հինգերորդ, քա-ջասիրտ լինել, զի մի 'ի տագնապագունս և 'ի վտանգս՝ ընդ վայր զժողովուրդն հարկանիցէ: Իսկ որ սակաւուց իշ-

խանութեան թեկն ածիցէ, ամենայն ինչ հակառակ ընդդէմքն այդոցիկ գտանիցին 'ի նմա. զի զի՞ եւս պիտոյ իցէ առնուլ ասել վերստին :

Եւ արդ տեսէք, զի՞նչ յայտնանէ գտանիցի 'ի Դիմոսթենէս. եւ քննութիւն առնիցի ամենայն արդարութեամբ : Դորա հայր էր Դիմոսթենէս պէանեցի, այր ազատ, զի չէ պարտ սուտ ասել : Բայց 'ի մօրէն կուսէ եւ 'ի մօրն հաւուն՝ որպիսի՞ ինչ իցէ. ես ասացից : Գիլոն անուն էր ումն 'ի Կերամիկոնէ[110]. մատնեալ սորա 'ի ձեռս թշնամեաց զՆիմփիէոն որ 'ի Պոնտոս[111], մինչդեռ քաղաքիս էր այն տեղին, յարեալ 'ի վերայ նորա փութալից ամբաստանութեան. չեկաց նա չմնաց դատաստանին, այլ տարադէմ փախստեայ գնացեալ[112] եւ 'ի մահ դատակնքեալ՝ երթեալ հասանէ 'ի Բոսպոր, եւ առնու անդ պարգեւս 'ի բռնաւորաց անտի զանուանեալն Բուրաստանս[113]. եւ առնէ կին՝ զմեծատուն ոք՝ անշուշտ, երդուեալ յԱրամազդ, որ եւ ոսկի բազում եբեր նմա. բայց յազգէ՝ սկիւթացի : Ցորմէ լինին նմա դստերք երկու, զորս առաքեալ նորա այսր բազմազանձ ճոխութեամբ, զմին ամուսնացուցանէ ընդ ո եւ պէտ ումեք, — զի մի՞ շատից յաչաց եղանիցեմ. — եւ զմիւսն, արհամարհեալ զօրէնս քաղաքիս՝ առ իւր կնութեան Դիմոսթենէս պէանեցի[114]. եւ 'ի սմանէ ծնեալ է ձեզ կախարդատարդ այդ եւ զրպարտիչ Դիմոսթենէս : Արդ ըստ մայրենի հաւուն՝ թշնամի արդեօք իցէ դա ժողովրդեանս, զի զնախնիս նորա 'ի մահ պարտաւորեալ է ձեր. եւ մայրենեօքն՝ սկիւթացի, խուժադուժ, հելլենացի եւեթ ուսեալ ձայն. վասն որոյ եւ ըստ ժանտութեանն չէ բնիկ :

Իսկ ըստ հանապազօրեայ վարուցն՝ զի՞նչ ոք իցէ : Ի նաւագործէ դալիր եղեալ, զհայրենիսն այպանելի օրինակաւ վատնեալ, եւ կարծիս անհաւատարմի առեալ յայդոսիկ, եւ բանագնաց ընդ ատեան եղեալ՝ դիմեաց ել 'ի բեմ ատենին : Եւ 'ի քաղաքէս առեալ արծաթ առատ՝ սակաւ ինչ մնացոյց. իսկ այժմ ոսկին թագաւորական յորդեալ

զեղեալ ողողեաց զծախս դարա․ բայց և ոչ այն շատ լեալ․ զի և ոչ մի ինչ ճոխութիւն լիացոյց երբէք զչարախտավար վարս ։ Եւ գլուխ ամենայնի, ոչ յիւրոց հասիցն զկեանսն պաճարէ, այլ 'ի ձերոց վտանգից ։

Իսկ ըստ մտաւորութեան և բանից կորովութեան՝ որպիսի՞ ոք իցէ ։ Դժնեայ 'ի խօսել, վատթար 'ի կեալ․ զի և զիւր իսկ մարմին և զզաւակաւորութիւն այնպէս իմն խառնավար արարեալ, որպէս զի չառնուլ յանձն զգործեցեալսն ճառել․ քանզի և տեսեալ իսկ է իմ երբեմն յաչաց ելեալս զայնոսիկ՝ որ զմերձաւորաց զարշելիսն կարի իմն հաւաստեաւ 'ի վեր հանէին ։ Թո՛ղ զայդ, զի՞նչ անտի օգուտ քաղաքիս ։ Խօսքն բարիք, գործքն գառինք ։

Իսկ զարութենէն՝ սուղ ինչ միայն ինձ ասել ։ Զի եթէ յուրաստ կայր յերկչոտութենէն, կամ թէ դուք ընդ իւր չէիք իրազէտ, դեգերեալ յամենայր ինձ արդեօք ստանոր բանս․ այլ քանզի և ինքն խոստովան լինի 'ի ժողովսն, և ձեր իսկ միաքդ վկայեն, ոչ այլ ինչ միայն՝ բայց յուշ ածել զօր 'ի վերայ այսոցիկ զօրէնսն ։ Քանզի վաղեմի օրէնսդիրն Սոլոն՝ նմին պատժոց պարտ համարէր զայն որ չառնուցու յանձն զինուորել, և որ զդաս իւր լքանիցէ, և զերկչոտն ինքնին զլխովին․ զի են են և երկչոտութեան փուրսերք ամբաստանութեան ։ Այլ զարմասցի ոք թերևս 'ի ձէնջ, թէ իցեն և բնութեան դատախազք ։ Ե՛ն ։ Ընդէ՞ր ։ Զի իւրաքանչիւր ոք 'ի մէնջ, քան 'ի թշնամեացն՝ 'ի պատժոց օրինացն երկուցեալ, նահատակ ախոյեան իւրոյ աշխարհին լինիցի ։ Արդ օրինադիրն՝ զչզինուորեալն և զվատն և զզաստալիք փախստականն՝ միապէս արտաքոյ սրբութեան սրսկարանացն[115] հրապարակին արգելու․ չտայ պսակել, և ոչ 'ի հասարակաց քաղաքաժողով մեհեանսն մտանել ։ Եւ դու՝ զանարժանն ըստ օրինաց պսակի՝ հրամայես մեզ պսակել, և քով հրամանաւդ 'ի կոչաւարան ողբերգակացն հրաւիրես զչարժանին, 'ի տաճար Սպանդարամետին զայն՝ որ իւրով վատութեամբն մտանիչ և գահիճ եղև մեհենեացն ։

Այլ զի մի 'ի կարգէ բանիս ըստ արտաքին վարեալ սատե-րիւրեցից զձեզ, զայս յուշ ածէք. յորժամ առմկաւար ոք զանձն լինել ասիցէ, հայեսջիք՝ մի 'ի բանս նորա, այլ 'ի կենցաղն. և միտ եդեալ նայեսջիք՝ ոչ յոր ինչ զանձն ասիցէ լինել, այլ յոր ինչ և էն ։

Եւ քանզի զպսակաց բանք անկան մեզ և զպարգևաց, մինչ դեռ 'ի մտի ունիմ՝ կամիմ ասել ձեզ, ո՛ արք աթենացիք, զի թէ ոչ 'ի բաց խափանիցէք զառատաձիր պարգևաց և զտարապարտ վայրավատնումն պսակացդ, ոչ պատուեալքն շնորհ ինչ ձեզ կալցին, և ոչ քաղաքիս իրք յուղղութիւն գայցեն ։ Զի զապիրատսն ոչ երբեք 'ի լաւութիւն ածիցէք, իսկ զընտիրսն՝ 'ի յետին տրտմութիւն արկանիցէք ։ Եւ 'ի ստուգութիւն բանիցս՝ ակն ունիմ նշանակս ցուցանել ձեզ մեծամեծս ։ Զի թէ հարցանիցէ ոք զձեզ. արդեօք փառաւորագո՞յն ձեզ թուիցի քաղաքս յայժմուժամանակիս, թէ առ նախնեօքն. խոստովան լինիջիք միաբանբառ, թէ առ նախնեօքն ։ Եւ արք յայնժամ արդեօք լաւագոյնք էին, թէ այժմ։ Յայնժամ լաւագոյնք, իսկ զարգիս յոյժ վատթարեալք ։ Իսկ ապա պարգևք և պսակք և հռչակութիւնք և պարէնք 'ի Պրիտանին [116], արդեօք 'ի ժամանակին յայնմիկ յորդեալ էին, եթէ յարդեանս առ մեզ ։ Յայնժամ բարութիւնք չէին ինչ յաճախ առ մեզ, և անուն առաքինութեան պատուական էր. իսկ այժմ՝ վաղ հնացեալ անշքացեալ [117] է բանդ, և զպսակելն՝ սովորութեամբ և ոչ խնամով ինչ առնէք ։

Արդ՝ որ միանգամ զայդ այդպէս զմտաւ ածիցեն, անճահ թուիցի նոցա, զի պարգևք յաճախաւորք իցեն այժմ, և իրք քաղաքիս՝ յայնժամ առաւել քան այժմս բարգաւաճք. և արք՝ այժմ յոռեգոյնք, իսկ յայնժամ ազնուագոյնք ։ Եւ զայս ես ձեռն արկից ուսուցանել զձեզ ։ Միթէ համարիցի՞ք, ո՛վ արք աթենացիք, թէ յօժարիցի ոք ընդ կիրթ ոլիմպիականացն անցանել կամ այլոյ իրիք պսակաբեր մրցանաց, ամենախուսք մարտին կամ այլոյ ուրուք 'ի

ծանր ծանր նահատակութեանց, եթէ ոչ քաջագունին տացի պսակն, այլ որ հայթայթանօքն շահիցի։ Բնաւ և ոչ ոք ընդ վարժան կամեսցի եղանել։ Իսկ այժմիկ, կարծեմ, վասն անօրէնութեանն և դժուարակրկիւն լինելոյ, և վասն գեղեցկութեան և անմահ յիշատակի յաղթութեանն՝ յանձն առնուն ոմանք, զանձն 'ի ձեռն եղեալ, և մեծաց ժուժկալեալ տառապանաց, 'ի ճգնութիւնս մտանել [118]։ Գրեսջիք՝ թէ դուք իցէք քաղաքական առաքինութեանն հանդիսադիրք, և ընտրեսջիք · զի թէ զպարգևս սակաւուց ոմանց և արժանաւորաց և ըստ օրինացն մատուցանիցէք, բազում լինիցին ձեր նահատակք առաքինութեան · իսկ եթէ որում ումեք և կամիցի, և որոց հնարիմաց մարթուչքն իցեն՝ շնորհիցէք, եղծանիցէք յայնժամ և զբարեբարոյ բնութիւնն։

Եւ զի զուղղութիւն խօսիմ, կամիմ փոքր մի ևս առնել զձեզ խելամուտ ։ Արդեօք լաւագո՞յն այր թուիցի ձեզ լեալ Թեմիստոկլէս զօրավարն 'ի նաւամարտի անդ Սալամինայ՝ յորում յաղթեցէք պարսկայնոյն, եթէ Դիմոսթենէսդ դասալիքդ ։ Եւ Միլտիադէս՝ յաղթողն խուժայնոց 'ի Մարաթոնեան ճակատամարտին, եթէ դա ։ Եւս և նոքա՞ որ 'ի Փիլէայ [118] դարձուցին այարէն զխախտեալ ժողովուրդն ։ Եւ Արիստիդէս՝ արդարն յորջորջեալ, անուն ժառանգեալ աննման Դիմոսթենեսին . . . ։ Այլ իմ յաստուածսն ո՛չ իմբականան երդուեալ, ոչ 'ի դէպ վարկանիմ 'ի նոյն աւուրս զգազանդ զայդ ընդ արանն ընդ այնոսիկ յիշատակել։ Ցուցցէ արդ Դիմոսթենէս 'ի խօսսն իւրում, իցէ՞ երբեք եղեալ հրաման պսակելոյ զոք յարանց անտի ։ Ապա ուրեմն ապախտաւոր էր ժողովուրդն ։ Քաւ լիցի · այլ մեծախորհուրդ · և որ ոչն առին պատիւ, արժանաւորք քաղաքին · զի ոչ 'ի նշանագիրս համարէին պատուել, այլ 'ի յուշ յիշատակի երախտաւորելոցն, որ 'ի ժամանակէ անտի յայնմանէ մինչև յօրս յայս կայ մնայ անմահ ։

Իսկ զի՞նչ ընդունէին պարգևս · արժան է և զայն յիշատակել։ Առ նովին ժամանակօք, ո՛վ արք աթենացիք, էին

ոմանք որ բազում ճգանց և կարևոր վտանգաց ժուժկալ եղեալ, առ Ստրիմոն գետով [120] պատերազմեալ յաղթե_ ցին Մարաց: Սոցա այսր հասեալ՝ խնդրեցին պարգև 'ի ժողովրդենէն, և շնորհեաց նոցա ժողովուրդն պատիւ մե_ ծամեծս, որպէս 'ի ժամուն թուէր. երիս Հերմէսս [121] քարեղէնս կանգնել 'ի դահլճին Հերմեայց [122]. բայց ոչ զա_ նուանս իւրեանց դրոշմել 'ի նոսա, զի մի զօրավարացն, այլ ժողովրդեանն համարեսցի արձանագիր:

Չհաւատաս բանիցս 'ի նոցունց իսկ 'ի քերդածացն ծանիջիր. զի յառաջինումն 'ի Հերմեայց անտի արձանա_ գրեալ էր.

Սրտապինդ էին և այնք, որ 'ի Մարացն երկտասարդս
Առ Էիոնիւ անդ ալեօքն ըղորձանօք Ստրիմոնի՝ [123]
Ըզսովըն տապախարշ և զբուռն ահեղ ածեալ Արէս,
Յառաջեցին զըտանել ըզթըշնամեացըն տագնապ:

Եւ յերկրորդումն,

Եւ զայս վարձըս հատուցին զօրագըլխացն աթենացիք
Փոխան արիութեան երախտեացն և մեծի այն քաջութեան.
Զոր տեսեալ ոք յապառնեաց՝ եւ առաւել խրախուսեսցէ
Համաշխարհին 'ի վերայ իրաց տաժանս յանձն առնուլ:

Եւ 'ի վերայ երրորդին Հերմեայ գրեալ էր,

Ի քաղաքէ աստի երբեմըն Մենեսթեւս ընդ Ատրիդայս [124]
Յաստուածայինն առաջնորդ 'ի տրովադայինն եղև դաշտ:
Զոր երբեմն Հոմերոս դանայեցւոց զըահազգեստից
Ռազմայարդար ճակատուց ասաց եկեալ այր շըքեղ:
Այսպէս չէ ինչ անդէպ աթենացւոց անուն առնուլ՝
Պատերազմաց յօրինիչ և քաջօրէն արութեան:

Իցէ՞ն ուրեք զօրավարացն անուանք. և ոչ ուրեք, այլ ժողովրդեանն: Մատերուք արդ մտօք և 'ի սրահն Նկա_ րէն [125]. զի ամենայն առաքինի հանդիսից յիշատակարանք

'ի հրապարակին կան ձեզ առաջի ։ Իսկ զի՞նչ լցէ զոր ասեմս, ո՛ արք աթենացիք ։ Անդ մարաթոնեանն նկարեալ կայ ճակատամարտ ։ Իսկ ո՞վ զօրավարն էր ։ Առ այս հարցումն՝ ամենեքեան տայցէք պատասխանի, թէ Միլտիադէս ․ սակայն չէք անդ անուանն նշանագրեալ ։ Ո՞րպէս ․ միթէ չհայցեա՞ց զպատիւ զայդ ։ Հայցեաց, բայց չետ ժողովուրդն, այլ փոխանակ անուանն՝ զայն եւեթ շնորհեաց նմա, զի առաջին 'ի գլուխ զինուորին նկարեսցի՝ խրախուսելով զզօրականն 126 ։ Եւ 'ի մեհենի Դիցամօրն 127 առ երի Խորհրդարանին, զոր ինչ ետուքն պարգեւ այնոցիկ որ զգաղթական ժողովուրդն այսրէն դարձուցին 'ի Փիլէայ՝ գոյ տեսանել ։ Զի որ զհրամանն զայն գրեաց եւ յաջողեցաւ՝ Արքինոս էր կիլէացին, մի յառաջնորդաց անտի ժողովրդեանն ․ եւ գրեաց նախ տալ նոցա 'ի սպաս զոհից եւ նուիրաց հազար դահեկան, որ չէ եւ ոչ տասն տասն դահեկան առ այր ։ Հրամայէ ապա ձիթենի պսակաւ պսակել զմի մի իւրաքանչիւր, այլ ոչ ոսկեղինաւ ․ զի յայնժամ 'ի շքի էր պսակ ձիթենի, իսկ այժմ եւ ոսկեղէնն արհամարհեալ ։ Եւ զայն ոչ վայրապար հրամայէ առնել, այլ ստուգագոյն քննութեամբ ատենին, թէ քանիք ոմանք իցեն 'ի նոցանէ՝ որ պաշարեալ պնդեալ կային 'ի Փիլէ 'ի յարձակել լակեդեմոնացւոց եւ Երեսնիցն 'ի վերայ ապաւինելոցն 'ի Փիլէ, եւ ոչ թէ որ 'ի դիմել թըշնամեաց դասալիքն եղեն 'ի Քերոնիա ։

Եւ թէ արդար ասիցեմ, զհրամանն ընթերցցի ձեզ ։

## ՀՐԱՄԱՆ ՊԱՐԳԵՒԻ ԴԱՐՁԵԼՈՑՆ Ի ՓԻԼԵԱՑ

Ընթերցիր առ միին եւ զոր Կտեսիփոն գրեաց Դիմոսթենի, մեծի չարեացապարտին ։

## ՀՐԱՄԱՆ

Ի հրամանէ աստի յայտմանէ ընչեալ կոչնչի պատուանոցա՝ որ առաջնորդքն կացին դարձի ժողովրդեանն ։ Եթէ այս վայելուչ է, այն անմօթալից ․ եթէ նոքա ըստ արժանի մեծարեցան, դա տարապարտ պատժի ։

Սակայն լսեմ, զի դա առել հանդերձեալ է, թէ ոչ արդար գործեմ ես յօրինակ առնուլ նմա զնախնեացն գործս ։ Զի և ոչ Փիլամմոն ըմբիշ[128], ասասցէ, յոլիմպիականսն պսակեցաւ՝ Գլաւկոսի վաղնջականին այնմիկ յաղթող եղեալ ըմբշամարտի, այլ որոց առ իւրեաւ էին մարտիկք ։ Նոյնուայն թէ ատէնք էջէք դուք, զի ըմբշաց ընդ իրերաց են մրցանք, իսկ որոց պսակն խնդրիցեն՝ ընդ առաքինութեան ճնքենին գլխովին, որոյ վասն իսկ և պսակին ։ Զի պարտ է քարոզին անսուտ լինել, յորժամ զքարոզութիւնն 'ի ատենարանին առ Հելլենսն առնիցէ ։ Մի ուրեմն ճառեսցես մեզ՝ թէ լաւ քան զՊատեկիոն[129] առաքինացեալ իցես, այլ յարութիւն քաջութեան ժամանեալ՝ այնպէս առա այնուհետև շնորհս 'ի ժողովրդենէն խնդրեսջիր ։

Այլ զի մի խաստորեցուցից զձեզ յառաջադրութեննէս, ընթերցցի ձեզ դպիրն զարձանագիրն որ դրոշմեցաւ 'ի վերայ այնոցիկ որ զժողովուրդն դարձուցին 'ի Փիւլեայ ։

## ԱՐՁԱՆԱԳԻՐ

Արութեան պատիւ պսակս աթենական բնաշխարհիկ դունդ
Սոցա շնորհեաց՝ որ երբեմն նախաձեռն զբռնան
Զանօրէն կրօնիւք իշխօղս քաղաքիս ցածուցանել,
Ի պարանոցս իւրեանց առընկալեալ ըզվտանգ ։

Վասն զի քակեցին դոքա զիշխեցեալսն զոռոզացեալսն արտաքոյ օրինաց, վասն այնորիկ պատուեալս ասէ զնոսա քերթողն ։ Զի 'ի լուր ամենեցուն հնչէր 'ի ժամանակին,

թէ յորմէ հետէ բարձին ոմանք զդատաստանս անիրաւու-թեանց, քակտեցաւ լուծաւ ժողովուրդն :

Եւ յիրաւի իսկ, որպէս և լուեալ է իմ 'ի հօրէն իմմէ, որ զիննսուն և զհինգ ամենիւք կենացն վախճանեցաւ, յա-մենայն 'ի վիշտս քաղաքիս խառն և կցորդ գտեալ· որ բա-զում անգամ խօսէր ընդ իս պարապով· քանզի ասէր, մինչ-դեռ այն ինչ դարձեալ եկեալ էր ժողովուրդն· զի թէ զու-մեքէ փութոկչ ամբաստանութեան յառնիցէ յատենի, ընդ մի համար էր անունն և գործն [130]: Զի զի՞նչ ամպարշտագոյն քան զայր՝ որ անիրաւս խօսիցի և գործիցէ : Եւ զլսելն, որպէս նոյն պատմէր, ոչ այնպէս առնէին որպէս այժմս լինի· այլ դաժանագոյն յոյժ էին դատաւորքն առ անիրաւ-հրամանատուսն քան զդատախազն ինքնին զզետեղին, և յա-ճախ յետս դարձուցանէին զդպիրն, և պատուէր տային կրկնել ընթեռնուլ վերստին զօրէնսն և զհրամանսն· և կորըն-չէին անիրաւ հրամանատուքն, ոչ միայն եթէ զամենայն օրէնսն վազեալ անցեալ լինէին, այլ եթէ և վանկ մի ևեթ փոփոխէին : Իսկ այժմու եղեալքս ծաղու մեծի իրք են : Զի դպիրն ընթեռնու զանօրէն հրամանսն, իսկ դատաւորքն՝ իբրև ցուցս ինչ լսելով կամ օտար ինչ իրս, յայլ ինչ շու-շեալ միտս եղեալ հային : Եւ ահա շարահնար արուեստիւքն Դիմոսթենեայ՝ չարին սովորութեան մտաւ այսք 'ի դատաստա-տանս : Զի փոխեցան ձեզ իրաւունք քաղաքիդ· զի դա-տախազն յաղոյք գեղերեալ՝ ընդ անձին առնէ պատասխանի, և եկամուտ ատենաքարշն՝ դատ եղեալ չարախօսէ· և ատե-նակալքն՝ զորոց իրաւարարքն էին մոռացեալ երբեմն, զո-րոց չէին դատաւորքը՝ այնոցիկ դատակնիք առնել ստիպին : Եւ ամբաստանեալն, եթէ միայն հպեսցի բնաւ 'ի խնդիրն, ոչ զգուշելոյն անիրաւութենէ ասէ ինչ, այլ զի երբեմն և այլոց ուրուք զնոյնս գրեալ յառաջագոյն՝ և արդարացեալ է : Ցայս աղագս և այժմ մեծամեծս փքացեալ լսեմ զԿտե-սիփոն :

Ժպրհեցաւ երբեմն 'ի ձեզ պարծել Արիստոփոնն այն

ազենիեցի և ասել, թէ եօթանասնեկի և հնգիցս անգամ ամբաստանեալ յանիրաւութիւն և արձակեալ էր ։ Այլ ոչ և Կեփաղոսն այն հինաւուրց, ժողովրդասէրն քան զա-մենայն համարեալ, ոչ այդպէս․ այլ 'ի հակառակէն պար-ծէր և ասէր, բազում ինչ քան զբնաւս գիր հանեալ հրա-մանի, չէր երբէք դատափետեալ յօրինազանցութիւն․ գե-ղեցիկս կարծեմ պանծացեալ։ Զի յօրինազանցութիւն ամ-բաստան լինէին զմիմեանց՝ ոչ միայն որ հակառակ վարչու-թեանն էին, այլ և բարեկամք զբարեկամաց, եթէ մեղան-չէին ինչ 'ի քաղաքն ։

Եւ այսմ անտի հասանիջիք 'ի վերայ, զի Արքինոս Կի-լեցի ամբաստանութիւն օրինազանցութեան մատոյց զԹրա-սիբուլեայ ստիրեցւոյ, որոյ գրեալ էր ինչ արտաքոյ օրի-նաց, պսակել ասելով զմի ոք 'ի դարձելոց անտի ընդ իւր 'ի Փիւլեայ․ և պարտաւոր արար զնա, թէպէտ և երախտիք կային նորա դեռադեռ, որոց չառին ինչ ակն դատաւորք․ զի համարէին՝ թէ զոր օրինակ յայնժամ դարձոյց այսրէն զփախստեայս գնացեալսն Թրասիբուլոս, նոյն և այժմ զորս կային՝ խախտեալ վտարիցէ անօրէն ինչ հրամանն տալով ։ Բայց զարդիս ոչ ես․ այլ ամենայն ինչ յետս ընդդէմ գոր-ծի ։ Զի քաջ զօրավարքն ձեր, և ոմանք յորոց ռոճիկս 'ի Պրիտանէին գտեալ են, բողոք արկանեն ընդդէմ ամբաստա-նութեանց օրինազանցութեան․ զորս է ձեզ իրաւամբք առ ապաշնորհս ունել ։ Զի եթէ ոք պատուեալ յընկերահաշ-տիս, յայսպիսում քաղաքականութեան՝ զոր աստուածք և օրէնքն պահպանեն, ժտի թիկունս տալ անօրէն հրա-մանահանաց, քակէ զպետութիւնն յորմէ պատուեալն է ։

Զի՞նչ այսուհետև մնայ մարդոյ՝ որ արդարապէս և ցա-ծութեամբ ջատագովն լինիցի․ ես ասացից ։ Յերիս մասունս բաժանեալ է օրն՝ յորժամ օրինազանցութեան ինչ փոր-սիչ 'ի ներքս անկանիցի յատեան դատաստանի ։ Զի ջուրն 131
առաջին՝ արկանի դատախազին և օրինացն և ընկերհաշտու-թեանն․ երկրորդ ջուրն՝ դատափետելոյն՝ որ ընդ անձին

տայ պատասխանի, և որոց 'ի նոյն նպաստ լինին բանիւք։ Իսկ եթէ առաջնովլ վճռուածն չլուծանիցի օրինազանցութեանն փութսիչ, անդէն ջուրն երրորդ արկանի 'ի հանդէս պատուհասին և չափոյ բարկութեան ձերոյ։ Արդ որ 'ի հանդիսի անդ ոք հարցափորձին զվճիռն ժամէ, զբարկութիւն ձեր յաղերս ածեալ ողոքէ. իսկ որ յառաջին անդ խօսան ժամէ զվճիռն՝ զերդումն ժամէ, զօրէնսն ժամէ, զընկերհաշտութիւնն ժամէ, յորոց և ոչ զմին օրէն է ումեք ժամել, և ոչ՝ յորմէ ժամիցին՝ շնորհել։ Արդ տուք դոցա պատուէր՝ թոյլ տանել ձեզ՝ զառաջին վճիռն ըստ օրինացն ածելոյ, և այնպէս 'ի հանդէս հարցփորձին գալ հասանել։

Եւ ամենևին իսկ, ո՛ արք աթենացիք, ասել իմն կայ ինձ առաջի, թէ պարտ է և օրէնս ինչ դնել 'ի վերայ ամբաստանութեանց օրինազանցութեան ևեթ, զի մի՛ օրէն լիցի՝ ոչ դատախազին և ոչ պատասխանատուին ջատագովս 'ի թիկունս օգնականութեան ածել։ Զի ոչ անյայտ ինչ են իրաւունքն, այլ օրինօքն ձերովք սահմանեալ։ Զի զոր օրինակ 'ի հիւսնութեան, յորժամ գիտել կամիցիմք զուղիղն և զոչն, զքանոնն մատուցանեմք որով ճանաչի, նոյնպէս յամբաստանութիւնս անիրաւութեան՝ հուպ առ ձեռն կայ կանոն իրաւանց՝ տախտակդ այդ [132], և հրամանն նոր, և առընթերադիր նմին գրոշմեալ օրէնքն։ Ցոյց տալ զդոցին ընդ միմեանս միաբանութիւն և էջ. և զի՞ պիտոյ քեզ կոչել զօրավիգն 'ի թիկունս զԴիմոսթենէս։ Իսկ յորժամ զարդար պատասխանատուութեամբն [133] վազեալ՝ կարդաս այր մի խորամանկ չարագործ և ճարտարապետ խօսից, գողանաս թովէս զլսելիս, զեան գործես քաղաքիս, զընկերհաշտութիւնն եղծանես։

Իսկ արդ զի՞նչ հնար խորշելոյ յայնպիսեաց խօսից. ասասցից։ Իբրև մատուցեալ այսր Կտեսիփոն կատարեսցէ առ ձեզ զյառաջաբանն հանդերձեալ յօրինեալ նմին, և ապա ժամավաճառ գեղերեալ՝ չառնիցէ ուղղորդ պատասխանի, յուշ ածէք նմա անխռովաբար՝ առնուլ 'ի ձեռս զդ-

տախտակդ, և կարդալ առընթեր հրամանին եւրոյ զօրէնսն ։ Եւ եթէ խլխլեալ չլուելոյն ձեզ առնիցէ, մի և դուք կամիցիք լսել նմա. զի ոչ եթէ զամբաստանելոյն զանարդար պատասխանիս ժողովեալ եկէք լսել, այլ զորոց ըստ իրաւանց կամիցին տալ պատասխանի ։ Իսկ եթէ զիրաւացի ազերսաբանութեամբն զանց արարեալ՝ զԴիմոսթենէս կոչիցէ, ես առաւել մի ընդունիցիք զայրն եղեռնաւոր՝ որ համարի բանիւք զօրէնսն տապալել ։ Եւ մի ոք 'ի ձէնջ 'ի լաւութիւն ինչ իւր զայն համարեսցի, զի 'ի հարցանել Կտեսիփոնեայ թէ կոչեսցէ զԴիմոսթենէս, ինքն նախ ձայն բարձցէ, Կոչեա կոչեա [134] ։ Զարդ քում կոչես, օրինացն կոչես, ընկերհաշտութեանն կոչես ։ Սակայն եթէ հաճոյ ինչ ձեզ թուեսցի լսել զԴիմոսթենէս, պահանջեսջիք 'ի դմանէ նովին ոճով զպատասխանիսն առնել՝ որով ես զամբաստանութիւնս ։ Իսկ ես որպէս եղէ ամբաստան. զի և զայն յուշ ձեզ արարից ։

Ոչ նախ ընդ անձին առանձին վարս Դիմոսթենի անցի ես, և ոչ 'ի քաղաքական անիրաւութեանց նորա յիշեցի ինչ նախ, թէպէտ և բազում ինչ Ճոխագոյնս արգեօք ունէի ասել. կամ թէ տառապեալ ոք և տարակուսեալ քան զամենեսեան էր ։ Այլ նախ զօրէնսն յանդիմանեցի՝ որ սաստեն չպսակել զհաշուապարտս. ապա զՃարտարախօսն կշտամբեցի՝ զի զհաշուապարտն Դիմոսթենէս հրամայէր պսակել, ոչ ինչ յաւելեալ և ոչ կարգեալ նախ 'ի գրին՝ թէ « Յորժամ զհամարսն տայցէ, » այլ և զձեզ և զօրէնսն բացէ 'ի բաց 'ի սպառ արհամարհեալ. ասացի և զոր յայսոսիկ լինելոց էին մնոտի բաղբաղայք, զորս և ձեզ յիշել աղաչեմ ։ Երկրորդ անգամ, անցի ձեզ ընդ քարոզութեանցն օրէնս՝ յորս անշուշտ մերժեալ է, զպսակեալսն 'ի ժողովըրդենէն մի ուրեք արտաքոյ ժողովոյն քարոզել ։ Եւ ատենաքաղ Ճարտասանդ՝ ոչ եթէ միայն յօրէնսն յանցուցեալ է, այլ և 'ի ժամանակ քարոզութեանն և 'ի տեղին. զի ոչ 'ի ժողովքին հրամայէ զքարոզութիւնն լինել, այլ 'ի թեա-

րանին. ոչ 'ի գումարել աթենացւոց, այլ 'ի հանդերձել ողբերգականցն 'ի հանդէս ելանելոյ: Զայսուիկ ժամանակաւ, սուղ ինչ և զանձին առանձին իւրոց նորա ասացի, և յաճախագոյն զհամաշխարհի ապիրատութեանց իւրոց բողոք հարկանեմ:

Զայսն օրինակ և 'ի Դիմոսթենէ զպատասխանիսն պահանջեցէք. նախ՝ զօրինաց համարատուութեանցն, և երկրորդ՝ զքարոզութեանցն, և երրորդ՝ զմեծն քան զամենայն ասել՝ զի և ոչ արժանի իսկ է պարգևի: Իսկ եթէ խնդրեսցէ 'ի ձէնջ՝ թողութիւն տալ նմա զբանիցն կարգ, խոստանալով 'ի կատարածն կոյս պատասխանատուութեանն լուծանել զօրինազանցութեանն բասիր, մի՛ ներէք. և մի՛ անգիտանայք՝ զի մաքառումն է այդ ատենական. զի համբուն չեն նորա կամք այնուհետև տալ պատասխանի զանօրէնութենէն. այլ քանզի չունի ինչ իրաւաբանել, հրոսազ հինիւ ասպատակաւ իւիք այլոց իրաց 'ի մոռացօնս զձեզ հնարիցի արկանել ամբաստանութեանս: Արդ, որպէս 'ի մերկակռիւմրցանան տեսանէք զըմբիշսն՝ վասն առնկայիցն ընդ իրեարս յերկար գուպար 'ի հենգմոջ կացեալս, նոյնպէս և դուք զօրն ողջոյն վասն կարգի խօսիցն մարտերուք ընդ նմա 'ի վերայ քաղաքիս, և մի՛ տայք նմա թոյլ՝ արտաքս քան զօրինազանցութեան ճառսն թարթափել, այլ զեւող առեալ և յողացեալ 'ի լսարանիդ, վարեցէք զնա 'ի բանս խնդրոյն, և սպաս արարէք յեղյեղուկ շրջիգոյմանց բանիցն իւրոց:

Այլ յորժամ օրինակ զայդ տանիցէք զունկնդրութիւնդ, որ ինչ անդ պատահելոցն իցէ ձեզ՝ և զայն արժան է ինձ կանխել այժմիկն ասել առ ձեզ: Ահա յայնժամ 'ի հանդիսի գործ արարեալ զանձն՝ հանցէ ձեզ 'ի դէմս զկախարդասարին և զքսակահատուն և զպատառօղն և խորամանող կարգաց քաղաքիս: Դիւրաւ ևս լայ դա քան զայլոց ծիծաղել, և քան զամենեսեան առ ձեռն պատրաստ ունի զպատերգմութիւն: Ոչ ինչ զարմացայց՝ եթէ յանկարծ յեղափոխեալ 'ի թշնամանս դարձցի որոց միանգամ շուրջս կան արտաքոյ,

ասելով՝ թէ սակաւապետութեանն ձեռնտուք, 'ի նմին իսկ 'ի ճշմարտութենէն գոգ 'ի համար արկեալք, հասեալ կայցեն յատեան չարախօսին, իսկ ընկերհաշտութեանն՝ 'ի դատափետելոյն: Երբև զայսպիսիս խօսիցի, առ խաղմարար բանսն՝ զայն նմա 'ի դէմս ածէք, զի եթէ, ով Դիմոսթենէս, քեզ նմանօղ ինչ էին որք զգաղթեալ ժողովուրդն դարձուցին 'ի Փիւլեայ, չկայր բնաւ այսօր ընկերհաշտութիւնս: Այդ նոքա՝ 'ի հասանել մեծամեծ չարեաց՝ կեցուցին զքաղաքս, զգեղեցիկն քան զամենայն բարբառեալ բան խրատու. Մի՛ չարայուշ ոխակալ լինել: Իսկ դու՝ հարուածս գործես, և քան փրկութեան քաղաքիս՝ առ օրին բանիցդ փոյթ է քեզ առաւել:

Իսկ յորժամ որ երդմնաստուած է՝ յերդմանցն հաւատս ապաստան լինիցի, զայն նմա յուշ արարէք, թէ որ յաճախն երդնու սուտ, և միշտ առ նոյնս խնդրէ հաւատարիմ լինել երդմամբքն, զմի յերկուց աստի պարտ է նմա ունել, — որոց և ոչ մին կայ Դիմոսթենի, — կամ աստուածս նորանորս, կամ ունկնդիրս ոչ զնոյնս:

Իսկ յաղագս արտասուացն և ոլորակաց ձայնին, յորժամ զձեզն հարցանիցէ. «Ուր յո՞ ապաստան անկանիցիմ, ով արք աթենացիք. հատէք ընկեցէք ապիրատ արարէք զիս 'ի պետութենէդ. չիք ուր ապաւինեցայց,» անդրէն կրկնեցէք առ նա. «Իսկ ժողովուրդս աթենացւոց յո՞վ ապաստան եղիցի, Դիմոսթենէս. յո՞ր նիզակակցաց պատրաստութիւն, յո՞ր գանձս. զի՞նչ ինչ 'ի քաղաքավարութեանդ վասն ժողովրդեանս մթերեցեր. զի զոր վասն անձինդ կալար խորհուրդ՝ ամենեքեան տեսանեմք: Թողեալ լքեալ զոստանս, ոչ որպէս կարծիսն 'ի Պիրէոն բնակես, այլ դիմեալ երթաս 'ի քաղաքէս [138], և թոշակ ճանապարհի ամբարեալ ես՝ քոյով վատութեամբդ՝ զթագաւորական ոսկին և զկաշառակերութիւնդ յիրաց աշխարհիս:»

Եւ զի՞ իսկ բնաւ արտասուքդ իցեն, զի՞նչ կականումնդ, զի՞նչ ձայն բարբառոյդ: Ո՞չ Կտեսիփոն է ամբաստանեալն,

և փուրսիչն անպատուհաս [136]. իսկ դու ոչ զմեչեցդ, ոչ զանձնէ և ոչ զըստուդյդ նահատակիս: Իսկ զիմ՞ ապա իցէ դորա փոյթ և ջան: Զոսկի պսակաց և զքարոզութեանց 'ի տեսարանին արտաքոյ օրինաց. որում թէ և ցնորեալ ժողովուրդն կամ մոռացեալ զեղեալսն, յայսպիսում տարաժամու կամէր զդա պսակել, դմա պարտ էր մատչել առ ժողովն անդր և ասել. « Արք աթենացիք, զպսակդ ընդունիմ, բայց զժամանակն խոտեմ՝ յորում քարոզութիւնն լինիցի. զի զորոց 'ի սուգ և 'ի խղումն [137] կայ քաղաքս, չէ ինձ արժան վասն նոցին պսակիլ: » Այլ զայդ ասել կարծեմ առաքինակրօն առն. իսկ զոր դուդ ասիցես, ասացէ Թերևս ճնճղան ոչնչական՝ կերպարանեալ զառաքինութիւն:

Այլ մի՛ ոք 'ի ձէնջ, երդուեալ 'ի Հերակլէս, մի՛ ոք զանդիտեսցէ, թէ դուցէ Դիմոսթենէս, այր մեծահոգի և քաջապինդ 'ի պատերազմական, վրիպեալ 'ի մրցանակացն, դարձ 'ի տուն և դաւ անձինն արարեալ՝ զիւրովքն երթայցէ, որ այնչափ ծաղր հեղու զառ ձեօք պատուոյն, զի զգլուխն զայն պիղծ և դատապարտ, զոր սա արտաքոյ ամենայն օրինաց հրաման արար պսակել, բիւրիցս ցտեաց և ընդ այնր վարձս էառ, զկամաւոր ինքնահարուած վիրացն եղեալ նամակագիր. և կռուփս 'ի նոյն ընկալաւ, մինչև կարծեմ թէ դեռ ևս կան մնան 'ի նմա ակներև հետք և նշմարանք բռննապատակացն Միդիասայ: Զի այրդ այդ՝ ոչ կառափն մարդոյ, այլ զլուխ տոկոսեաց [138] բարձեալ կրէ:

Եւ զԿտեսիփոնէ՝ որ զհրամանդ գրեաց՝ կամ է ինձ ասել փոքր 'ի շատէ, զշատն թողեալ. զի զհանդէս առից ըզձեր, թէ կարօղ ինչ իցէք զկարի չարագոյնսն ճանաչել առանց ուրուք զգացուցանելոյ. և որ երկոցունցն հասարակ խառն ինչ է և իրաւացի առ ձեզ ճառելոյ, զայն ասացից: Քանզի շուրջ անցեալ ընդ հրապարակն և հաւասարի զմիմեանց առեալ կարծիս ճշգրտաբանեն: Զի Կտեսիփոն ոչ զանձնէ ինչ ասէ կասկած լինել, զի ակն ունի 'ի սոսկականաց լինել համարի, այլ զԴիմոսթենի յիրս տեսչութեանն

զկաշառակերութիւնսն ասէ խիթալ, զախշութիւնսն և զխա-տապարտութիւնսն։ Իսկ Դիմոսթենէս՝ յանձն իւր հայեցեալ՝ վնաս լինել ասէ, այլ 'ի Կտեսիփոնի չարութիւնսն և 'ի բողարածութիւնսն մեծապէս երկնչել։ Եւ որ այսպէս զի-րեարս վնասապարտ առնէն, դուք հասարակաց նոցա բա-րանայն դատաւորք, մի՛ երբէք շնորհիցէք նոցա արձա-կուրդ։

Կամիմ ասել կարճ 'ի կարճոյ և վասն բանբասանաց նո-ցա զինէն։ Աղդ լինի ինձ զի Դիմոսթենէս ասել հանդեր-ձեալ է, թէ քաղաքիս օգուտ բազում է յինքենէ, իսկ յի-նէն վնաս յոյժ, և զՓիլիպպոս և զԱղեքսանդրոս և զառ 'ի նոցանէն տոյժս՝ յիս կրթել հանել։ Զի այնպիսի ոք գըժ-նեայ ճարտարող է բանից, որպէս թուի, մինչև ոչ զայն ևեթ բաւական վարկանել, զի եթէ վարչութիւն ինչ կա-լեալ է իմ առ ձեզ կամ ճառս ինչ հրապարակախօսեալ, զայնցանէ ամբաստան լինել, այլ և զցածութենէ կենացս չարախօսէ և զլռութենէս դատախազէ, զի մի՛ մնասցէ նմա տեղի ազատ 'ի զրպարտանաց. և զյամելս ընդ պատա-նեակն յերիտասարդանոցս՝ պախարակէ. և զդատաստանէ աստի այսմանէ՝ անդէն 'ի գլուխ խօսիցն բաղայս իմն յա-ռաջ մատուցանէ, ասել՝ իբր ոչ եթէ վասն քաղաքիս ինչ զայս ամբաստան լինիցիմ, այլ 'ի ցոյցս Աղեքսանդրի՝ առ ատելութեան նորա առ դա։ Եւ, երդուեալ յԱրամազդ, որպէս լսեմ՝ հարցանելոց ևս է զիս, թէ ընդէ՞ր բովանդակ զքաղաքավարութիւն իւր պարսաւիցեմ համօրէն, և ոչ մի ըստ միոջէ խափանեցի առ ժամայն, և չեղէ ամբաստան, այլ յողն անկեալ, և 'ի գործս տեսչութեանն չյաճախեալ, հուսկ ապա ուրենն եղէ նամակագիր։

Իսկ իմ չէք նախանձեալ ընդ պարապմունս Դիմոսթե-նի, և ընդ իմս ոչ ամաչեմ, և ոչ զբանս իմ խօսեալս առ ձեզ՝ ապախտ ինչ լինել կամիցիմ, և ոչ՝ եթէ զդորայն էր իմ խօսեալ յատենի, զարև տեսանել առնուի յանձն։ Իսկ զլռութիւն իմ, ով Դիմոսթենէս, պարկեշտութիւն կե-

նացս յօրինեաց. զի առակաւիկ ինչ չար է ինձ, և մեծամեծաց ոչ ցանկանամ չարաչար. վասն որոյ և լուռ կամ, և խօսիմ ես՝ եթէ հարցանիցիմ ինչ խորհուրդ, այլ ոչ 'ի հարկէ ծախուց բնութեանս բանադատեալ: Իսկ դու, կարծեմ, 'ի կաշառոյդ կարկեալ կաս, և 'ի վատնեցդ կակաչես. և խօսիս՝ ոչ յորժամ քեզն ինչ բարւոք թուիցի, և ոչ զոր կամիցին, այլ յորժամ վարձահատոյցքդ պահանջիցեն. և ոչ պատկառես ճամարտակել զորոց նոյնհետայն ստախօս յանդիմանիս:

Զմի-ահա ամբաստանութիւնս այս, զոր ոչ վասն քաղաքիս, այլ առ 'ի ցոյցս առնելոյ Աղեքսանդրի ասես յինէն 'ի մէջ ածեալ, յայնժամ մատուցաւ՝ մինչդեռ տակաւին կենդանի կայր Փիլիպպոս, և Աղեքսանդրի չէր պայազատեալ զտէրութիւնն, ոչ քո զՊաւսանիայ զտեսիլդ տեսեալ և ոչ ընդ Աթենասայ և Հերայի գիշերայն եղեալ խօսակից: Եւ զիա՞րդ էր ինձ կանխել յառաջագոյն առ ակամէ ցոյցս և շոշափանս առնել Աղեքսանդրի, բայց եթէ զնոյն անուրջս և իմ ընդ Դիմոսթենի անրջացեալ:

Այլ պատուհասակոծ առնես զիս, զի ոչ առեալ յաճախեմ առ ժողովուրդն, այլ ընդ ժամանակս ժամանակս. և համարիս թաքչել 'ի մէնջ, զի զձոխութիւնդ զայդ ոչ յընկերահաւատեաց, այլ յայլմէ օտար քաղաքականութենէ առեալ 'ի ներքս մուծանես: Վասն զի 'ի սակաւուց իշխանութեան՝ ոչ որ կամին ոք, այլ որ բռւռն ինչ ոք է՝ նա լինի ամբաստան. իսկ յընկերահաւասարս՝ ում ումեք և կամ իցէ և յորժամ հաճոյ նմա թուեսցի: Երբեմն երբեմն յառեան գալ 'ի խօսս՝ նշան է առն ըստ պէտս և ըստ օգտի քաղաքավարելոյ. իսկ և ոչ օր մի վրիպել՝ հարկաւ ընդ գործ մտելոյ և վարձկանելոյ:

Իսկ յաղագս չև ևս յինէն 'ի դատ վարելոյդ [139] և կրելոյ զպատիժ ապիրատութեանցդ, յորժամ 'ի բանս այսպիսիս փախուցեալ անկանիս, կամ զունկնդիրսդ համարիս մոռացկոտս, կամ անձամբ զանձն խաբես: Քանզի զամ-

պարշտութիւնս քո յամփոփատականին և զկաշառաբեկութիւնդ յՆուբիա, 'ի վերայ անցելոց ժամանակաց՝ յորս յայտ յանդիմանութեամբ կշտամբեցար յինէն, ակն ունիս թերևս թէ մոռացեալ իցէ ժողովրդեանս: Իսկ զյափըշտակութիւնդ յիւր նաւացն և նաւակառուցից՝ ո՞ր ժամանակ մոռանել մարթիցէ, յորժամ օրէնս իմն երկց հարիւրոց նաւաց եղեալ, և հրապուրեալ զաթենացիս՝ զքեզ կարգել ստորկան նաւաստականին, յանդիմանեցար յինէն, զի վաթսուն և հինգ երագընթաց նաւաց նաւարարս 'ի բաց խափանեալ, զմեծ ևս նաւական զօրութիւն քաղաքիս անհետ կորուսեր՝ քան յորժամ նաւամարտիւ 'ի Նաքսոս՝ լակեդեմոնացւոց և Պօլլիսի յաղթեցին աթենացիք [140]:

Բայց յայնպիսի իմն հաւահալած խրտուիլ ակնհար բաղբաղայից ցանկեալ պաշարեցեր զվասն քո պատուհասս, մինչև ոչ 'ի քեզ յանխրաւդ, այլ 'ի քո վրէժխնդիրսն հասանել անկանել վտանգին. յաճախ 'ի մէջ բերեալ 'ի բանսարկութիւնս քո զԱղեքսանդրոս և զՓիլիպպոս, խծբծ ըստգտանաց 'ի վերայ եղեալ՝ թէ զի խոչ և խութ ընդ ոտն անկանիցին ոմանք յաջողուածոց քաղաքիս. քո միշտ խանգարեալ զոր կայն, և զհանդերձեալն աւետաւորելով: Ո՞չ ապաքէն, հուսկ ուրեմն, մինչ դեռ ինձ զքէն առաջի կայր ամբաստան լինել, հնարեցար զըմբռնումն Անաքսինոսի ովրէոսացւոյ, որ վաճառս վասն Ողիմպիայ գնոց առնոյր [141], և գեղարանօք խոշտանդեցեր զայրն՝ քով ձեռամբդ գրելով դատավճիռ, մահու զնովաւ ածել պատուհաս: Եւ սակայն առ նմա օթեցար յՈվրէոս, 'ի նմին սեղանոյ կերար և արբեր և նուէրս հեղեր, և աջ յաջ արկեր՝ առեալ զնա յայր բարեկամ և 'ի հիւր: Եւ դու զնա սպաներ. և զայսմ ամենայնէ՝ առ ամենայն աթենացիս փաշտամամբ յինէն կշեալ. և հիւրասպան կարդացեալ, չեղեր յուրաստ յամպարշտութենէ անտի. ետուր պատասխանի, առ որ աղաղակ եբարձ ժողովուրդն և հիւրք ամենայն՝ որ միանգամ շուրջն կային.

զհրապարակաւն, զի տայցէր. Զայս քաղաքիս առաւել մեծարեցի քան զանգամն հիւրասէր[142]։

Լուեալ զսուտ նամականին և զկալանս լրտեսաց և զխոշտանգանս 'ի պատճառս ինդրոյ յանցուածոց. որպէս թէ կամեցեալ իմ միաբանութեամբ ոմանց վեր 'ի վայր զքաղաքս վրդովել։ Եւ յետ այսր ամենայնի, հարցանելոց է զիս, որպէս լսեմ, թէ այն բժիշկ իցէ՝ որ ախտացելոյն չառայցէ ինչ խրատ 'ի հիւանդութեանն. և 'ի մեռանելն՝ 'ի յուղարկաւորն[143] եկեալ նորին, առ ընտանիսն ճառ արկեալ պատմիցէ, թէ եւ ինքն հնարիւք զայր նմա գալ յառողջութիւն։ Իսկ զանձն ոչ հարցանիցես. թէ այն իցէ վարիչ ժողովրդեանն՝ որ կարօղ իցէ սրտակել նմա, և զդէպ ժամանակս փրկութեան քաղաքին տայցէ վաճառանդի, և զքաջախոհսն բանսարկութեամբ արգելուցու 'ի խորհրդոց. և փախուցեալ 'ի վտանգաց և զքաղաքն անհնարաւոր տաժիւք պաշարեալ, եկեալ առա խնդրիցէ առաքինութեան պսակ. բարի և ոչ մի ինչ գործեալ, և ամենայն աղեաց եղեալ պատճառք, և հարցանիցէ ևս զզրպարտեալսն՝ զորկեալսն 'ի քաղաքավարութենէ այնց ժամանակաց՝ մինչ դեռ դայր փրկութիւն, թէ ընդէր ուրեմն ոչ յետս նահանջեցէք զիս 'ի մեղանչելոյ։ Իսկ հասարակ զկնի ամենայնի՝ ընդ քողով ծածկեցի այն, զի 'ի տագնապել մարտի պատերազմին՝ ոչ պարապէաք զքո պատուհասիդ գալ, այլ վասն փրկութեան քաղաքիս 'ի հրեշտակութիւն երթայաք[144]։ Բայց խերև ոչ շատ թուեցաւ քեզ չառալ պատիժս, այլ և պարգևս խնդրես, ծաղր և ծանակ 'ի հելլենացիս զքաղաքս կացուցեալ, յայնժամ 'ի մէջ անցեալ՝ զգիր ամբաստանութեանս մատուցի։

Այլ յորոց լսեմ առել Դիմոսթենի, 'ի դիւն երդուեալ յօլիմպականս՝ ընդ այն առաւել զզարհիմ զոր այժմս եմ մերկանալոց։ Զի որպէս թուի, զբնութիւն իմ առակելոց է 'ի համբարուս. յորոց 'ի լուր՝ ոչ հեշտանալ ասէ զլսելիսն, այլ կորնչել, վասն որոյ և անհաճոյ զհամբարուացն

լինել երգս • նոյն և զխմոց բանիցս փորձ և զընտրութիւն իմ 'ի միտս ունկնդրացն եղեալ : Այլ զբանդ զայդ ես ամենեւին ոչ ումեք վայելուչ վարկանիմ ասել զինէն, զի կորանք իցեն չկարել ապա արդեամբք ցուցանել զեպերն՝ յորժամ պահանջիցի : Իսկ թէ հարկ ինչ էր ասել, ոչ Դիմոսթենի անկ էր բանն, այլ առն ումեմն զօրավարի, որոյ մեծամեծս վճարեալ յօրինուածս քաղաքիս, և անբաւական գոլեալ 'ի խօսս, նմին իրի և յոստխացն բնութիւն նախանձ բերիցէ, գիտելով չափ՝ զի ոչ ինչ 'ի գործեցելոցն իւրոց կարողութիւն է նմա ճառել • իսկ զդատախազն տեսանիցէ կարօղ՝ և զոչ գործեցեալսն իւր ընծայեցուցանել լսելեացն իբրև կատարեալս : Իսկ յորժամ բայիւք բանից աճառեալ և զանդեալ այր, և այն գոռամբք և կախարդա կանոք, հուսկ ուրեմն 'ի պարզմտութիւն և յարդիւնս գործոց փախուցեալ ապաւինիցի, ո՞ հանդարտեսցէ • զորոյ թէ զլեզուն ոք իբրև զփողոց [145] 'ի բաց կորզեսցէ, մնացեալն ոչ ինչ է :

Բայց ես ընդ ձեզ զարմանամ, ով արք աթենացիք, և խնդիր առնեմ • յի՞նչ դէտ ակն կալեալ մերժիցէք զամբաստանութիւնս : Միթէ զի օրինաւո՞ր է հրամանն • այլ չէք երբէք լեալ հրաման անօրէն քան զայդ : Իսկ միթէ զի հրամանահանդ չիցէ՞ արժանի դատ տալոյ • չեն ուրեմն առ ձեզ հարցք և քննիք վարուց, եթէ զդա արձակիցէք : Ո՞չ և այն տրտմութեան իցէ, զի որ երբեմն ձեր պսակահամբարն էր ոսկեղէն պսակաց՝ կուքաւարանն, որովք ժողովուրդս պսակէր 'ի Հելլենաց, մնացեալ կայցէ այսօր 'ի պսակս օտարոտիս, և 'ի Դիմոսթենի առնելոյ՝ դուք անպսակ և առանց քարոզութեան լինիջիք, և դա հռչակեսցի : Եւ եթէ յողբերգակ քերթողացն ոք, որ յետ այսորիկ հանդիսանալոցն են, զթերսիտէս յողբերգութեանն պսակաւոր ցուցանիցէ 'ի հելլենացւոց, ոչ ոք 'ի ձէնջ ունիցի ժոյժ • զի անարի և զըրպարտիչ զնա լինել ասէ Հոմերոս [146] • և դուք յորժամ զայդպիսիդ պսակիցէք այր, ո՞չ կարծիցէք լինել 'ի շչիւն մտացն հելլենացւոց : Քանզի հարքն ձեր զփառաւորս և զվայե-

լուծս իւրաց՝ ժողովրդեան ընծայէին, իսկ զնուաստս և զըղխոնարհս՝ 'ի յոռի ճարտարախօսն տանէին. բայց Կտեսիփոն արժան համարի ձեզ բառնալ 'ի Դիմոսթենէ զանշքութիւն, և զժողովրդեամբն արկանել։

Երջանիկ առէք զանձինս, որպէս և էքդ իսկ 'ի յաջողելդ. իսկ տայցէ՞ք վճիռ հրամանի՝ թէ թողեալ լքեալ 'ի բախտէն՝ 'ի Դիմոսթենեայ դատեալ իցէք բարիս. և որ անպատեհ քան զամենայն է, 'ի նոյն ատեանս՝ զըմբռնեալսն 'ի բասրանս կաշառոց անարգիցէք, իսկ զոր ինքնին գիտէք վարձուք քաղաքավարեալ՝ պսակիցէք։ Եւ որ 'ի Սպանդարամետականսն են դատաւորք, եթէ ոչ ուղիղ դատիցին զըրջաբոլոր կաքաւս պարուց, ընդ պատժով զնոսա արկանէք, իսկ ձեր՝ ոչ պարաւոր խաղալկաց կարգեալ իրաւարարք, այլ օրինաց և քաղաքական առաքինութեան, զպարգևսդ՝ ոչ ըստ օրինաց, ոչ սակաւուց և արժանաւորաց, այլ խորամանգ հնարաւորելոցն շնորհիցէք։ Դատաւոր այդպիսի ելցէ աստ յատենէն՝ զանձն նկուն արարեալ, և զօրաւոր զճարտարախօսն։ Զի այր ռամկական յընկերահաշտ քաղաքի՝ օրինօք և քուէիւն թագաւորէ. իսկ յորժամ առեալ զայդոսիկ տացէ այլում վտարանդի, ելոյծ իւրովի զհարստութիւն իւր։ Առ այսու և երդումն, զոր երդուեալ մխի 'ի դատաստան, զհետ իւր վարեալ՝ խէթ մնացեն լինի. զի 'ի նորա ձեռն, կարծեմ, եղեն մեղքն, իսկ շնորհն՝ առ որ շնորհեացն՝ անյայտ մնաց. քանզի քուէն յաներևոյթս արկանի։

Ինձ այսպէս թուի, ով արք աթենացիք, թէ առ անըզգաստութեան մերում 'ի տեսչութեան՝ երկոքին ես 'ի մեզ ելանեն, և ուղիղն գնալ, և 'ի վտանգի կալ։ Զի 'ի ժամանակի աստ յայսմիկ՝ բազումքդ 'ի ձեռս սակաւուց թողուցուք զմեծամեծս ընկերհաշտութեան, զայդ ոչ գովեմ. իսկ զի առ մեօք չէք եղեալ չար և յանդուգն ճարտասանից առատութիւն, յայսմ բարեբախտիկ եմք։ Զի յառաջ ժամանակաւ այնպիսի բնութիւնս բուսոյց աշխարհս, որ

դիւրաւ իմն խախտեցին զռամիկն, զի հեշտանայր ընդ փա-ղաքշանս: Այլա այնուհետև ոչ յորոց երկնչէրն, այլ յորոց ձեռս մատնեաց զանձն՝ նոքա եղծին զնա: Որպիսիք ոք զատան և յՆրեանից[147] անտի ոմանք, որ առաւել քան զհա-զար հինգ հարիւր 'ի քաղաքայնոցս առանց դատաստանի 'ի մահ վարեցին, առանց և զմինսան անգամ՝ յէր սակս մե-ռանելոցն էին՝ լսելոյ. և ոչ 'ի դիահանման և 'ի թաղուման վախճանելոցն թոյլ տային կարևորացն ջերմոց հուպ մատ-չել: Ո՞չ ընդ ձեօք նուաճիցէք զվարիչս քաղաքիս: Ո՞չ կոր 'ի գլուխ 'ի բաց արձակիցէք զայժմու ամբարձեալսն: Ո՞չ ուշ 'ի կուրծս առնիցէք, զի ոչ ոք երբէք յառաջագոյն մտա-բերեաց 'ի քակտումն ժողովրդեան՝ մինչ չև մոլացեալ կըն-ճացեալ և բուռն եղեալ քան զդատաստանս:

Արդ ես, ո արք աթենացիք, մտադիւր իմն առաջի ձեր 'ի համար արկանէի առ տուող հրամանին, առ որո՞ց երախ-տեաց զԴիմոսթենէս արժանի դատեցի պսակի: Զի թէ առիցես, ուստի սկիզբն արարեալ ես հրամանագրիդ, թէ զի զփոսան զպարսպօքս բարուրք փորեաց, զարմանամ ընդ քեզ. զի քան զայդ բարուրքն 'ի գլուխ տանել, այդմ պատ-ճառն լինել մեծագոյն դարմանք են: Զի ոչ վասն պատնէշ զպարսպօքն ածելոյ, և ոչ զհասարակաց դերեզմանն բրե-լոյ խլելոյ[148] արժան ինչ իցէ ուղիղ քաղաքավարելոյն պար-գևս խնդրել, այլ վասն բարւոյ իրիք քաղաքին սատար լինե-լով: Իսկ եթէ յերկրորդ գլուխ հրամանիդ եկեսցես, յորում իշխեցեր գրել՝ թէ այր լաւ է, և անհանգիստ 'ի բարի ժողո-վրդեանն աթենացւոց ջանացեալ խօսի և գործէ, 'ի բաց տարեալ զկոկոզանս և զպարպատիւն դրուածոյդ, մատիր աղէ 'ի գործսն, ցոյց մեզ զպոռոտախօս բանսդ: Զի ահա՝ զառ ամփիսացին և եւբիացիս զկաշառագնացութիւնն թողեալ, ուր զպատճառս ընդ թեբացիս նիզակակցու-թեանն տանիս հանես 'ի Դիմոսթենէս, զանգէտն պատ-րես, և զփառունսն և զզաստս թշնամանես: Զի՞ զըլացեալ զպատեհ ժամանակին և զփառս սոցա՝ որով եղև նիզակա-

կցութիւնն , զանխլաբար իմն 'ի մէնջ՝ զպարծանս քաղաքիս Դիմոսթենի ընծայել կարծես ։

Իսկ թէ քանիօն եղէ ապերասանութիւնդ այդ , գուն գործեցեր ես ուսուցանել մեծաւ նշանակաւ ։ Զի Պարսից արքայն , ոչ բազում ժամանակաւ յառաջ քան զԱղէքսան-դրի յԱսիա դիմելոյ , առաքեաց առ ժողովուրդս գիր մի թշնամանալից և խուժադուժ , յորում յետ այլոց կարի իմն անպարկեշտ բանից՝ գրեալ կայր 'ի վերջ կոյս նամա-կին . « Ես , ասէ , ոչ տաց ձեզ ոսկի . մի խնդրէք յինէն , զի չառնուցուք ։ » Սակայն նոյն ինքն պաշարեալ յարգել վտան-գիցն հասելոց 'ի վերայ իւր , մինչ ոչ՚ինչ խնդրէին աթենա-ցիք , ինքնին կամաւորապէս յղեաց առ ժողովուրդն երե-քարիւր տաղանդ , զոր իմաստութեամբ չընկալաւ [149] ժո-ղովուրդն ։ Եւ բերող ոսկւոյն՝ էր ժամանակն և երկիւղն և պէտք նիզակակցութեանն . նոյն և զԹեբայեցւոցն նիզա-կակցութիւն միջնորդէր ։ Բայց դու խեղդ արկանես՝ անդա-դար զանուն Թեբայեցւոցն յիշելով և զԹշուառ նիզա-կակցութեանն . իսկ զեօթանասուն տաղանդօքն լռութեամբ անցանես , զոր կանխեալ հատեր խորեցեր յոսկւոյն ար-քունի ։ Ո՞չ առ կարօտութեան արծաթոյ էր , վասն հնգից տաղանդաց , զի օտարազգիքն չետուն 'ի դուրս առ Թեբա-ցիս զմիջնաբերդ ամրոցն [150] . և վասն ինն տաղանդաց ար-ծաթոյ , մինչդեռ արկադացիք առ հասարակ խումբ արա-րեալ կային [151] , և զօրավարքն կազմք յօգնականել մեզ , ոչ չոգաւ գործն 'ի գլուխ ։ Իսկ դու յորանաս 'ի ճոխութիւն , և 'ի հեշտութիւնս անձին մատակարարես . և բանից գլուխ խօսիցս , ոսկին արքունի առ դմա , իսկ վիշտք վտանգաց առ ձեզ ։

Արժան է և զանհանճարութիւն դորա նկատել . զի եթէ ժպրհեսցի Կտեսիփոն կոչել զԴիմոսթենէս խօսել առ ձեզ , և նա ելեալ զանձն գովիցէ , ծանրագոյն ևս եղիցի լսելն այն քան զգործսն որոց համբերեցէք ։ Զի ուր և արանց ստուգիւ քաջաց , որոց բազում բարեաց գործոյն իրազէտ

դիւրաւ իմն խախտեցին զաւրէնսն , զի հեշտանայր ընդ փաղաքչանս : Այլա այնուհետև ոչ յորոց երկնչէրն , այլ յորոց ձեռս մատնեաց զանձն՝ նոքա եղծին զնա : Որպիսիք ոք գտան և յՃրեանից [147] անարի ոմանք , որ առաւել քան զհազար հինգ հարիւր 'ի քաղաքայնոցս առանց դատաստանի 'ի մահ վարեցին , առանց և զմխաան անդամ՝ յէր սակս մեռանելոցն էին՝ լսելոյ . և ոչ 'ի դիահանան և 'ի Թաղումն վախճանելոցն Թոյլ տային կարևորացն ջերմոց հուպ մատչել : Ո՞չ ընդ ձեզ նուաճիցէք զվարիչս քաղաքիս : Ո՞չ կոր 'ի գլուխ 'ի բաց արձակիցէք զայժմու ամբարձեալսն : Ո՞չ ուշ 'ի կուրծս առնիցէք , զի ոչ ոք երբէք յառաջագոյն մտաբերեաց 'ի քակտումն ժողովրդեան՝ մինչ չև մողացեալ կընճացեալ և բուռն եղեալ քան զդատաստանս :

Արդ ես , ո արք աԹենացիք , մտադիւր իմն առաջի ձեր 'ի համար արկանէի առ տուող հրամանին , առ որո՞ց երախտեաց զԴիմոսԹենէս արժանի դատիցի պսակի : Զի Թէ ասիցես , ուստի սկիզբն արարեալ ես հրամանագրիդ , Թէ զի զփոսան զպարսպօքս բարուք փորեաց , զարմանամ ընդ քեզ . զի քան զայդ բարուոքն 'ի գլուխ տանել , այդմ պատճառն լինել մեծագոյն դորովանք են : Զի ոչ վասն պատնէշ զպարսպօքն ածելոյ , և ոչ զհասարակաց դերեզմանան բրելոյ խլելոյ [148] արժան ինչ իցէ ուղիղ քաղաքավարելոյն պարգևս խնդրել , այլ վասն բարւոյ ինչ քաղաքին սատար լինելով : Իսկ եԹէ յերկրորդ գլուխ հրամանիդ եկեսցես , յորում իշխեցեր գրել՝ Թէ այր լաւ է , և անհանգիստ 'ի բարի ժողովրդեանն աԹենացւոց ջանացեալ խօսի և գործէ , 'ի բաց տարեալ զկոկոզանս և զպարպատիւն գրուածոյդ , մատիր աղէ 'ի գործսն , ցոյց մեզ զպոռոտախօս բանդ : Զի ահա՝ զառ ամփիսացիսն և եւբիացիս զկաշառագնացուԹիւնն Թողեալ , ուր զպատճառս ընդ Թեբայեցիս նիզակակցուԹեանն տանիս հանես 'ի ԴիմոսԹենէս , զանգէտսն պատրես , և զգիտունսն և զզգաստս Թշնամանես : Զի՛ զըլլացեալ զպատեհ ժամանակին և զփառս սոցա՝ որով եղև նիզակա-

կցութիւնն, զանխլաբար իմն 'ի մէնջ՝ զպարծանս քաղաքիս Դիմոսթենի ընծայել կարծես ։

Իսկ թէ քանիօն իցէ ապարասանութիւնդ այդ, զուն գործեցից ես ուսուցանել մեծաւ նշանակաւ ։ Զի Պարսից արքայն, ոչ բազում ժամանակաւ յառաջ քան զԱղեքսանդրի յԱսիա դիմելոյ, առաքեաց առ ժողովուրդս գիր մի թշնամանալից և խուժադուժ, յորում յետ այլոց կարի իմն անապշապկեալ բանից՝ գրեալ կայր 'ի վերջ կոյս նամակին ․ « Ես, ասէ, ոչ տաց ձեզ ոսկի ․ մի խնդրէք յինէն, զի չառնուցուք ։ » Սակայն նոյն ինքն պաշարեալ յարգելի վտանգիցն հասելոց 'ի վերայ իւր, մինչ ոչինչ խնդրէին աթենացիք, ինքնին կամաւորապէս յղեաց առ ժողովուրդն երեքարիւր տաղանդ, զոր իմաստութեամբ չընկալաւ [149] ժողովուրդն ։ Եւ բերօղ ոսկւոյն՝ էր ժամանակն և երկիւղն և պէտք նիզակակցութեանն ․ նոյն և զԹեբայեցւոցն նիզակակցութիւն վճարէր ։ Բայց դու խեղդ. տրկանեա՝ անդադար զանուն Թեբայեցւոցն յեղյեղելով և զթշուառ նիզակակցութեանն ․ իսկ զեօթանասուն տաղանդօքն լռութեամբ անցանես, զոր կանխեալ հատեր խորեցեր յոսկւոյն արքունի ։ Ո՞չ առ կարօտութեան արծաթոյ էր, վասն հնգից տաղանդաց, զի օտարազգիքն չետուն 'ի դուրս առ Թեբացիս զմիջնաբերդ ամրոցն [150] ․ և վասն ինն տաղանդաց արծաթոյ, մինչդեռ արկադացիքն առ հասարակ խումբ արարեալ կային [151], և զօրավարքն կազմ յօժանդականել մեզ, ոչ չոգաւ գործն 'ի գլուխ ։ Իսկ դու յորանաս 'ի ճոխութիւն, և 'ի հեշտութիւնս անձին մատակարարես ․ և բանից գլուխ խօսիցս, ոսկին արքունի առ դմա, իսկ վնասք վտանգաց առ ձեզ ։

Արժան է և զանհանճարութիւն դոցա նկատել ․ զի եթէ ժպրհեսցի Կտեսիփոն կոչել զԴիմոսթենէս խօսել առ ձեզ, և նա ելեալ զանձն գովեսցէ, ծանրագոյն ևս եղիցի լսելն այն քան զգործսն որոց համբերեցէք ։ Զի ուր և արանց ստուգիւ քաջաց, որոց բազում բարեաց գործոցն իրազէտ

իսկ եմք, եթէ զանձանց դրուատիս խօսիցին՝ ոչ հանդուր-ժեմք, ապա յորժամ այլ ոք 'ի զարշանս եղեալ քաղաքին՝ զանձն 'ի գովութիւն առնուցու, ո՞ր ուրուք զայն լուեալ և ժուժկալեսցէ :

Արդ՝ եթէ իմաստուն իցես, 'ի բաց կացցես յանպատ-կառ գործոյ այտի, և դու քեզէն առնիցիր զպատասխա-նատուութիւնդ, ով Կտեսիփոն : Այլաքէն ոչ յայն իմիչ յե-նուցուս, թէ չիցես կարող խօսել․ զի և անպատեհ իսկ իցէ քեզ, որ փոքր մի յառաջ յանձին կալեալ ընտրել պատ-գամաւոր առ Կլէոպատրա [132] դուստր Փիլիպպոսի, առ 'ի ցաւակից ընդ նմա լինելոյ ընդ մահն Աղեքսանդրի՝ [133] Մո-լոսաց արքային, եթէ այժմ անբաւական զանձնդ ասիցես 'ի խօսել : Թող զայդ, զկին մի այլազգի սգաւոր՝ կարող գտար մխիթարել, իսկ վարձուք հրաման գրեալ՝ ո՞չ ունիցիս-տալ ընդ անձին պատասխանի :

Կամ թէ որում պսակն տալ հրամայեցեր՝ այնպիսի՞ ոք է որ յերախտաւորելոցն ոչ ծանուցեալ՝ եթէ ոչ ոք ընդ քեզ նմին ջատագով մտանիցէ : Այլ հարց զպատսպարողս, թէ ծանուցէ՞ր զՔաբրիաս և զԻփիկրատէս և զՏիմոթէոս, և ուսիր 'ի նոցանէ՝ ընդէ՞ր ետուն նոցա պարգևս և կանգնե-ցին պատկերս : Զի ամենեքեան ընդ մի բերան տացեն քեզ պատասխանի, թէ Քաբրիասայ՝ վասն առ Նաքսոսիւ նաւ-ամարտին, Իփիկրատեայ՝ զի զլակեդեմոնացւոց զզօրսն սատակեաց [134], Տիմոթէի՝ վասն ընդ Կերկիւրա նաւագնա-ցութեանն [135], և այլոց որոց միոյ միոյ բազում և չքնաղ պատերազմական քաջութեանց գործեցան հանդէսք : Իսկ Դիմոսթենի, հարց թէ իմ իմիք տայցէք փոխարէն : Փոխա-նակ՝ զի կաշառաբեկ, զի վատասիրտ, զի դասալիք : Եւ մի-թէ զդա՞ պատուիցէք, թէ զձեզ անարգիցէք և զ'ի վերայ ձեր մեռեալսն 'ի ճակատու, զորս դիք 'ի մօտ տեսանել յողք և 'ի կական՝ եթէ դա պսակեսցի : Քանզի և անհնա-րին իրք իցեն, ով արք աթենացիք, զի զփայտս և զքարինս և զերկաթ՝ զանմռունչսն և զանիմաստս, եթէ յուրուք

վերայ անկեալ պաղատանիցեն, տարագիր ըստ սահմանս վտարիցեմք[186], և եթէ անձին ոք առնիցէ, զձեռնն որ զայն գործեաց՝ ուրոյն 'ի մարմնոյն թաղիցեմք, իսկ զԴիմոսթենէս, ով աթենացիք, որ զյետին արշաւանն[187] հրամայեաց և զզօրականն մատնեաց 'ի կորուստ, զսա դուք մեծարիցէք: Թշնամանեսցին ուրեմն վախճանեալքն. վհատեալ տարակուսեսցին կենդանիքն, տեսեալ զի առաքինութեանց մրցանակ պահի մահ, և յիշատակ անհետ կորուսեալ:

Եւ որ մեծն քան զամենայն է, եթէ հարցանիցեն զձեզ մանկադոյնք, ըստ որո՞ւմ օրինակի արժան իցէ նոցա զվարս իւրեանց տնօրինել, զի՞նչ ընտրիցէք: Քանզի ճարտար գիտէք, ով արք աթենացիք, զի ոչ կռուանոցք, ոչ վարժարանք և ոչ երաժշտաց գուսանութեան արուեստականք եւեթ հրահանգեալ կրթեն զմանկունս, այլ մանաւանդ հրապարակաւ քարոզութիւնքն: Քարոզի ոք 'ի տեսարանին՝ զի պսակի առ առաքինութեան և քաջութեան և խնամոտ մտացն, որ այր քարուակն իցէ և գարշ վարուք, զայն տեսեալ համբակին՝ եղծաւ զեղծաւ: Ապիրատի ուրուք և բոզարածի իբրև զԿտեսիփոն՝ 'ի պատիժս մտեալ, խրատեցան և այլք: Ընդ հակառակս բարւոյն և արդարոյ գրեալ ուրուք հրաման, դարձ 'ի տուն արարեալ՝ խրատ տայ որդւոյն. իսկ նա արժանապէս հետեւեալ անսաստէ. այլ յիրաւի խեղդ ընդ անձն անուանի անդ խրատն: Այսուհետև՝ որպէս ոչ դատողք եւեթ, այլ և յերևանի կացեալք, այնպէս տուք զվճիռդ, առ արդարանալոյ յաչս քաղաքացւոց, որ ոչ աստ յատենիս դիպեցան, այլ հարցանիցեն ապա զձեզ՝ թէ զի՞նչ իրաւունս հանէք: Քանզի ճարտար գիտէք, ով արք աթենացիք, թէ այնպիսի թուեսցի լինել քաղաքս, որպիսի ոք հռչակեալն իցէ. զի նախատինք իցեն ձեզ՝ ոչ նախնեացդ լինել նմանողս, այլ Դիմոսթենի անարութեանն:

Իսկ արդ զիա՞րդ ճողոպրեսցի ոք յայդպիսի խայտառակութենէ: — Եթէ, որ յանձինս կանխեալ առեալ իցեն

'ի մէջս զբարերար անուանն՝ զորուժանքն բարուք, 'ի նոցանէն զգոյշ լինիցիք : Զի միամիտ մտերմութիւն և ընկերհաշտութեան անուն 'ի միջի կայ, և աճապարեալ յաճախ յայնս ապաւինին բանիւ՝ որ առաւել ուրացեալքն են անտի գործովք: Արդ իբրև ըմբռնիցէք զճարտարախօս ոք՝ օտարոտի պսակաց ցանկացեալ և հռչակութեանց առ համօրէն հելլենացիս, հրամայեցէք նմա, զի որպէս օրէնքն պատուիրեն առնել զառհաւատչեայս տուրևառից, արժանահաւատ երաշխաւոր բանիցն ածել և նմա 'ի մէջ զկենացն ոճ և զզգաստական վարուն : Եւ թէ ումեք դոքա չկամիցեն, մի զգօնութիւնն հաստատուն առնիցէք նմա, և փոյթ խնամոյ տարայք ընկերհաշտութեանն՝ որ 'ի բաց ահա զերծանի 'ի ձեռաց ձերոց : Մինթէ ո՞չ դժնդակ ձեզ թուիցի, զի առաճարն խորհրդոյ և ժողովուրդն ընդ վայր հարեալ, և հրովարտակք և հրեշտակութիւնք գան 'ի տունս սոսկականաց, ոչ 'ի վարկպարազի մարդկանէ, այլ յորոց մեծ ընդառաջինսն են յԱսիա և յԵւրոպէ: Եւ որոց իրաց պատուհաս մահ է ըստ օրինաց, ոչ յուրաստ լինին ոմանք գործեալ զայնս, այլ խոստովան լինին 'ի ժողովրդեանն, և զնամականին ընթեռնուն առ միմեանս. և են՝ որ յանդըգնեալ հոլանեալ հրաւէր առ ձեզ կարդան՝ հայել յերեսս իւրեանց, և են որ պարգևս խնդրեն իբրև կեցուցիչք քաղաքիս: Իսկ ժողովուրդն՝ առ յուսահատութեան եղելոցն՝ իբրև զառամութեամբ զառանցեալ և գաղաշեալ, կամ ըղխօթամտութեան հարեալ, զանուն ևեթ ընկերհաշտութեանն պինդ կալեալ՝ զգործն այլոց եթող: Իսկ տարա յարուցեալ զնայք 'ի ժողովոց, ոչ եթէ խորհուրդ ինչ առեալ զիրացդ, այլ իբրև 'ի հանդամանակաց զմինլքեալ քերթաքաղ խերշեատանն ճաշակեալք [158]: Եւ զի ոչ շաղփաղփեմ, յայս հայեցեալ զննեսջիք զբանն :

Եղև երբեմն տատանօր, — ծանր է ինձ ստէպ ստէպ խարխարել զխարուանս քաղաքիս, — եղև այր ոմն սոսկական, որոյ նաւարկել միայն 'ի Սամոս [159] համարձակեալ,

նոյն օրին յատենէ Արիոպագին, իբրև հայրենի աշխարհին մատնիչ, մահուամբ պատուհասեցաւ։ Եւ այլ ոք սոսկական՝ նաւեալ տարադէմ 'ի Հռոդոս [160], զի վատաբար կրեաց զերկիւղ, ամբաստանեալ փոքր մի յառաջ՝ հաւասար ելին նմա քուէք. եթէ և մի ևեթ 'ի միւս կողմն անկանէր, յաքսորս էր առաքեալ կամ թէ և սպանեալ իսկ։ Աղէ դիցուք առ սմին զայժմուս եղեալքս։ Այր ճարտարախօս, ամենայնիւ չարեացապատ, դասալիք 'ի զօրուէն, փախստական 'ի քաղաքէս, դա պսակ պահանջէ, և հռչակելոյ զանձն արժանի վարկանի։ Ո՞չ 'ի բաց հալածիցէք զմարդդ իբրև զհարուած հելլենացւոց առ հասարակ. կամ թէ ո՞չ մանաւանդ ձերբակալ զնա արարեալ, իբրև զաւազակ հինահար խրաց աշխարհիս՝ սահարկեալ ընդ քաղաքականութիւնս 'ի վերայ լոկ բայից և բանից, առնիցէք նմին պատուհաս։

Յուշ լիցի ձեզ և ժամանակս՝ յորում զվճիռդ էք հատանելոց։ Սակաւիկ միւս ևս աւուրք, և ահա Պիւթեանքն կատարելոց են հանդէսք, և ժողովն հելլենացւոց գումարեսցի [161]։ Ի Դիմոսթենեան վարչութենէ ժամանակացս ապարանեցաւ քաղաքս. եթէ զդա պսակիցէք, միախոհ կարծիցիք ընդ այս որք զհասարակաց խաղաղութեանս ապարթանեալ անցանեն։ Իսկ եթէ զհակառակն գործիցէք, ազատեսջիք զժողովուրդն 'ի բամբասանաց։

Արդ՝ մի իբրև զօտարէ՛ իմիքէ, այլ իբրև զընկեր սեփական քաղաքէ խորհեսջիք. և մի զպատիւս բաշխիցէք, այլ ընդ ընտիրս հանէք, և զպարգևսդ ազնուագոյն անձանց և արժանապատիւ արանց ընծայեսջիք։ Եւ ոչ յականջալուրս միայն, այլ և յականատեսս, 'ի ձեզ ինքեանս հայելով, քննեսջիք՝ ո՞յք ոմանք իցեն 'ի ձէնջ որ օգնականքն իցեն Դիմոսթենի. մի թէ որսակիցք իւր, կամ հանդիսակիցք 'ի մարզս երիտասարդութեան իւրոյ։ Այլ յո՛չ խմբականն երդուեալ իմ Արամազդ, ոչ յորս կինձից վայրի չահատակեալ գորա երբէք, և ոչ առուգութեան մարմնոյ

կալեալ ունիմ, այլ՝ համակ 'ի վարժս խորամանգ հնարից՝ ընդդէմ ընչեղաց ակելով զժամանակն անցուցեալ:

Իսկ յամբարտաւանութիւն դորա հայեցեալ, յորժամ զբիւզանդացիս ըստ ձեռն Փիլիպպեայ իւրով պատգամաւորութեամբն ելեալս մեծարանիւք, զակառնանացիս վտարանդեալ, զարհուրեալ, զԹեբայեցիս հրապարակախօսութեամբքն. — զի յայն սաստութիւն հասեալ համարի զձեզ, մինչև յայդ ևս 'ի բանս պատիրս ելանել, որպէս եթէ զձին հաւանութեան 'ի նմա մնացեալ ձեր 'ի ծոց քաղաքիս, և ոչ քիլ զոք չարաբան. — և իբրև 'ի վախճան ճառիցն ժամանեալ՝ բարեխօսս իւր զհաղորդս կաշառատուութեանցն կարդասցէ, զնե 'ի մէջ տեսանել յատենիս՝ ուր կամս և խօսիմ, զէմ ընդդէմ առ դոցա սատամբակութիւնն ճակատելս զերախտաւորս բարերարս քաղաքիս. զՍոլոն՝ որ զեղեցիկ զեղեցիկ օրէնօք զընկերհաճութիւնս զարդարեաց, զայրն ճարտարամիտ և զօրէնսդիր քաջ, որ իւրով վայելչականաւն իմաստութեամբ հայցէ 'ի ձէնջ, մի և մի բնաւ զԴեմոսթենի խօսս նախամեծար ընտրել քան զերդմունս և զօրէնսն. զԱրիստիդէս, որ զհարկս Հելլենաց բարեկարգեաց, յորոյ 'ի վախճանին՝ զդստերսն ժողովուրդն ամուսնացոյց. որ արդ կոծ առնու 'ի վերայ անարգանաց արդարութեան, և հարցանէ՝ թէ համբուն ամաչիցէք ոչ, զի զԱրթմիոս [162] զԶելիացի, այն որ եբեր եմոյծ յԵլլադա զՄարաց ոսկին, և եղ բնակեցեալ էր 'ի քաղաքիս և հիւր ժողովրդեան աթենացւոց, փոքր միւս ևս և 'ի սպանանել եկեալ էին հարքն ձեր, և 'ի հասարակ կամաց հաւանութենէ տարադիր արարին 'ի քաղաքէս և յամենայն երկրէ տէրութեան իւրեանց. իսկ դուք՝ զԴեմոսթենէս, ոչ զառ 'ի Մարացն զոսկին բերեալ, այլ և զկաշառաբեկն, և արդ ևս կաշառօքն յղփացեալ, ոսկի Պսակահանդերձիք պատախուրել. և զԹեմիստոկլէս, և զմեռեալսն 'ի Մարաթոն և 'ի Պղատէէս, և զնոսին իսկ զնախահարցդ չիրիմս, ո՞չ կարծիցէք անդ հաչել հառաչել յոգւոց հանել,

եթէ գա որ ինքնին իսկ խոստովան լինի խառն ընդ խուժ-դուժան հակառակ հելլենացւոց մրցեալ, պատկի առնիցի արժանի ։

Արդ ես [163], ո՛վ Երկիր և Արեգակն և Առաքինութիւն և Հանճար, և Խրատ՝ որով խտրամուտ եմք բարւոյն և չարին, եղէ ես օգնական՝ և ասացի ։ Եթէ 'ի ճահ և արժանի ըստ մեասուն դատախազեալ, ասացի որպէս և կամէի․ իսկ եթէ նիազ, որպէս ինչ կարող գոայ ։ Իսկ դուք, և ըստ բանիցս ասացելոց և ըստ պակասն մնացելոց, ձեզէն տուք զարդարն և զօգուտ քաղաքիս դատաւճնիք վճռոյ ։

## ՏԵՂԵԿՈՒԹԻՒՆՔ ԻՆՉ

# Ի ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՃԱՌԻՍ

Թիւ 1. Աթենացիք բաժանեալ էին 'ի տասն ցեղս, և ամի ամի 'ի միոջէ միոջէ 'ի ցեղից անտի ընտրեալ յիսուն քաղաքացիք, նոքա փոխհամուռ կացուցանէին զժողով Հնգից հարիւրոցն, որոց գործ էր պատրաստել և 'ի կարգի դնել յառաջագոյն որ ինչ միանգամ յատեան ժողովրդեան ելանելոցն էր:

2. Ժողովուրդն համբարձմամբ ձեռացն յայտ առնէր զկամս հաճութեան իւրոյ. և 'ի վճարել նուիրակին զհամար ձեռացն ամբարձելոց՝ գահերէց ժողովոյն յայտ զընտրութիւնն առնէր. և որք կոչէին ձեռնադրեալք: Թող զայդ, էր միւս ևս ընտրութիւն վիճակաւ, և վիճակաւորք կամ վիճակեալք կոչէին: Բայց ոչ վարկպարագի և յախուռն ինչ լինէր վիճակն 'ի կոյր բախտն ապաստան. այլ նախ հաւանութիւն ժողովրդեանն պիտոյր առ արժանի լինելոյ վիճակի: Այս վիճակարկութիւն յանձն էր Օրէնսպահաց. և լինէր 'ի մեհենին Թեսևսի: Լինէին և 'ի տոհմից տոհմից ոմանք ընտրեալք, և կոչէին ընտիրքն կամ հաճոյքն:

3. Ամենայն ցեղ ունէր բուռ կարգին զգահերիցութիւն 'ի ժողով Հնգ հարիւրոցն: Նահապետք էին յիսուն ատենակալք՝ որ 'ի դիմաց ցեղին կային 'ի գահերիցութիւնն, որոց և միայն էր իշխանութիւն 'ի ժողով կոչելոյ զժողովուրդն: Նախագահք տասն 'ի յիսնից անտի ընտրեալք՝ գահերէց բազմէին մէն մի եօթնեակ, և 'ի ժողովս ժողովրդեանն առաջի առնէին զխնդիրն:

4. Սոլոն, դերագոյն օրէնսդիրն աթենացւոց, որպէս 'ի վերոյ ասաց:

5. Ճարտարախօսք առաջարկին խորհրդոյ թուէին լեալ քաղաքա-ցիքն՝ որ 'ի խորհրդականաց անտի ջատագով կային կամ պաշտպան առաջարկելոցն 'ի ժողովս կարգին իւրեանց։

6. Այս անուն էր վեցեցունց իշխանացն՝ որոց պաշտօն էր հսկել 'ի պահպանութիւն օրինաց, թող զերիս առաջինսն, զիշխանն Յոր-ջորջական, զիշխանն Արքայ, և զիշխանն Ասպարապետ։ Յանուն Յոր-ջորջական իշխանին յորջորջէր տարին, և ամփականագոյն գործ էր նորա տեսչութիւն քաղաքական. Արքայ իշխանն նախաթոռ էր յիրս կրօնից. Ասպարապետի իշխանին յանձն էր հրամանատարութիւն զօրաց։

7. Այս ժողովք ժողովրդեան յընտրութիւն իշխանաց՝ 'ի Պնիքս անուանեալ տեղւոջն լինէին։

8. Հրաման նորոգութեան պարապայն առ Դիմոսթենէս՝ թուի եղեալ յելս առաջնոյ կամ 'ի մուտս երկրորդի ամի հարիւր և տասն Ողիմպիադին, յորում մօտալուտ 'ի վերայ կայր ընդ Փիլիպպեայ պա-տերազմն։

9. Լաւէլեայն իմանի՝ ընթերցցի դիւանադպիրն, զի նորա էր ըն-թեռնուլ առ ժողովուրդն զօրէնսն, զդիւանագիրս և զվճիռս՝ զորս 'ի մէջ կամէր ածել ճարտարախօսն։ Բայց առս և յառաջի-կայսդ ամփարկին միայն 'ի ճառիս Եսքինեայ ատենական վկայու-թիւնքն, այլ ոչ բերին 'ի մէջ որպէս ցանծ կէս պատասխանւոյն Դի-մոսթենի։

10. Մոքա էին գոյաւորքն 'ի քաղաքացիս, որ ըստ պէտս պէտս կատուցանէին կամ հանդիրձեալ կազմէին զնաւս տէրութեանն յըն-չից իւրեանց։

11. Ատեան Արիոպագին էր դատաւոր գլխապարտութեան յանց-անաց. բայց երբեմն և զայլ կարևոր իրաց դատաստանս 'ի նա ապա-տան առնէին արտաքոյ սովորութեան։

12. Միտք բանին այս է. Առանց համարս տալոյ՝ ոչ է պսակիլ. իսկ համարք յետ ելանելոյ յիշխանութենէն էն, ապա ատենակալք Արիոպագին՝ որոց մշտնջենաւոր է պաշտօն իշխանութեան՝ պսակիլ ոչ ունին։

13. Տաղանդն ատտիկեան էր յայնժամ վաթսուն մնաս. մնասն հարիւր դրամ, դրամն՝ իննսուն և երեք դանգ կամ հարիւրորդ այժ-մու գալլիական գահեկանի. և այն էր միակն 'ի հաշիւս հելլենական արծաթոյն։

14. Սա, այս ինքն է Կտեսիփոն, զոր պարտ է իմանալ աստ և զկնի ուրեք ուրեք. որպէս և յորժամ դա ասիցէ, զԴիմոսթենէս ի-մանայ՝ որ անդն կայր անշուշտ, զի ատեալ և առ նա ինքն դարձուցանէ զխօսսն։

15. Արձանագրող կոչէր՝ որ ունէր զյիշատակագիրս արծաթոյն

զոր առնուին գանձապետք . և այն յիշատակագիրք դային առաջ 'ի պէտս Հարցափորձի համարոյ իշխանացն ։ Իսկ իւրաքանչիւր նահապետութիւն յիշատակեալ փոքր մի զկնի, եր ժամանակ երեսուն և հինգ աւուրց յորս ունէր իշխանութիւն նոցա ։

16. Չեղբուլոռ զայդ անափլխաեցի յիշատակէ Պլուտարքոս իբրև զքաղաքացի որ բարեհամբաւ ։ Գանձապետս կացեալ՝ ամենցուցեալ էր զմուտս գանձին ։

17. Հաւանելի է՝ թէ այս այն հեգեմոն է, զորմէ և Դիմոսթենէս խօսի 'ի Պսակի ճառին ։

18. Քաղաքն աթենացւոց և առտիկէատան համօրէն բաժանէր 'ի ցեղս, յերրորդ մի ցեղից և յաւանս կամ 'ի տոհմս ազանց ։

19. Տասնեքին ցեղք աթենացւոց յորջորջէին յանուն տասնեցունց դիւցազանց աշխարհին ։ Ցեղն պանդիոնեան՝ 'ի հինգերորդ արքայէն Աթենայ 'ի Պանդիոնէ առնոյր զանուանակոչութիւնն ։

20. Այս է՝ հնարել քաղել արծաթ յարտաքնոցն Հելլենաց՝ որ տեղեակ լինիցին մեծի անուան իւրում և ցանկանայցեն գնել զայնպիսի հզօր պաշտպան յԱթէնս ։ Սովին և կծանէ զԴիմոսթենէս ։

21. Պնիքս էր տեղի մի բարձրաւանդակ մերձ 'ի դղեակն, ուր լինէին յաճախ ժողովք ժողովրդեանն ։ Արդի նորոգ հատեալ փորուածք տեղեացն 'ի յայտ ածեն զվայրն ուր էր, և զաշտիճանս բեմի ճարտասանիցն ։

22. Երկին էին տօնք Սպանդարամետականք . մեծք , 'ի կարգի երեւելի հանդիսից , 'ի քաղաքի անդ կատարէին մօտ 'ի գարունն , և կոչէին Դիոնիսեանք . փոքունքն կատարէին յանդաստանս մերձ յաշուն , և Հնձանեանք անուանէին ։

23. Յառաջ քան զՍպանդարամետական կացուրդան՝ մատուցանէին քերդողք նորանոր ողբերգութիւնս առ 'ի հանդիսել թէ ո՛ քան զո լիցէ զմրցանակն ։ Ողբերգութիւն որ ընտիր քան զայլսն գտանէր՝ դատաւորք կարգեալք 'ի տէրութենէն պսակէին զայն , և տային խաղալ հանդիսիւ մեծաւ ։ Իսկ որ յերկրորդ և յերրորդ կարգ դասէին , խաղային և զայնս ։ Իսկ այս ամենայն ողբերգութիւնք կոչէին նորք ։

24. Օրինապահացն գործ թուի լեալ, առաջի առնել ժողովրդեան և զդիտոյ փոփոխմունս օրինացն ։

25. Տախտակս ասէին՝ յորս դրոշմեալ հրապարակէին օրէնքն, որոց հաստատութիւն խնդրելի էր 'ի ժողովրդենէն ։

26. Անուանադիրքն էին տասնեքին դիւցազունքն՝ զորոց անուանս եդ Կլիսթենէս 'ի վերայ միոյ միոյ 'ի տասանց ցեղիցն աթենացւոց. որոց և պատկերքն կանգնեալ կային 'ի հրապարակի քաղաքին դէմ յանդիման տաճարին խորհրդոյ ։

27. Կեփիսոդոտ առաքեալ էր յաթենացւոց 'ի Հելլեսպոնտոս զօ-

բագլուխ նաւաց՝ 'ի նուաճել զփառաւորն գնացս Միդիայ, որ տիրանալ կամէր համօրէն Թրակիոյ: Եմուտ նա 'ի նաւն՝ որոյ չինող էր Դիմոսթենէս, և մատեաւ յԱլոպեկոնէս. անդ ըմբռնեալ և պատրեալ 'ի Քարիդեմայ՝ եդ դաշինս և եթող 'ի Կերսոբլեպտէս զիշխանութիւն Թրակիոյ: Սրտմտեալ աթենացւոց՝ ջնջեցին զդաշինսն, և դատապարտեցին զԿեփիսոդոտ 'ի տուգանս տաղանդաց հնգից:

28. Մինչդեռ պարապեալ էր Դիմոսթենէս, ընկալաւ կռուփ մի 'ի Միդեայ 'ի Սպանդարամետական հանդիսին: Պարտաւոր վասն այնր արարեալ էր նորա զՄիդիաս 'ի ծանր ինչ տուգանս, այլ պատերկուցեալ 'ի թշնամութենէ ճոխ և հզօր քաղաքացւոյն, պահանջեալ էր միայն երիս հազարս դրամոց: Պատմէ զայս Պլուտարքոս 'ի վարսն Դիմոսթենի, և յաւելու 'ի պատիւ նորին. «Ոչ կարծեմ թէ երեք հազար դրամք ցածուցանէին զբարկութիւն Դիմոսթենի, եթէ կայր նմա ակն և հնար յաղթանակելոյ:» Կայ և ճառն Դիմոսթենի ընդդէմ Միդեայ:

29. Պարապեալ՝ էր գլուխ դասուն երաժշտաց, որ մրցէին զյաղթանակէ 'ի մեծահանդէս տօնս հելլենացւոց աշխարհին:

30. Այս խաղաղութիւն կամ հաշտութիւն կնքեցաւ յերկրորդում ամի հարիւր և ութ Ողիմպիադին:

31. Տեւեաց խաղաղութիւնն ամս վեց. զի յառաջնում ամի հարիւր և տասն Ողիմպիադին՝ մօտալուտ առ դուրս կայր պատերազմն ընդ Աթէնս և ընդ Փիլիպպոս:

32. Քերսոնեայ ճակատամարտն մղեցաւ յերրորդում ամի հարիւր և տասն Ողիմպիադին, յորում պարտեցան աթենացիք, և Դիմոսթենէս փախեաւ մազապուր:

33. Աթէնք լինելոց էր հանդիսարան ժողովոյ հրեշտակացն հելլենացւոց:

34. Խորհրդականաց ընտրութիւնն վիճակաւ էր: Ընտրէին նոյնպէս և երկրորդ զոմն՝ տեղակալ, որ առաջնոյն յաջորդեսցէ 'ի մահուն նորա կամ 'ի յանցաւորն գտանել:

35. Այս կաշառող՝ Փիլիպպոս է յայտնապէս:

36. Արգելեալ էր յօրինացն ժողովել զժողովուրդն յաւուրս տօնից: Եւ նախատօնով աստանօր հաւանելի է թէ նշանակիցէ զկաճառսն 'ի մրցումն երաժշտականին, որ լինէին յառաջնում աւուր մեծի տօնիցն Ասկլեպեայ՝ խմբելոց յԵպիդաւրոս:

37. Հրեշտակքդ էին Անտիպատրոս, Եւրիլոքոս և Պարմենիոն: Եւ Անտիպատրոս այն իսկ էր՝ զոր Աղեքսանդր 'ի մեկնել իւրում եթող փոխանակ ընդ իւր արքայ 'ի Մակեդոնիա:

38. Ի կճեայ արձանս դրոշմէին դաշինքն որ ընդ թագաւորս կամ ընդ պետութիւնս:

39. Քաղաքական դատալիք կոչէ Եսքինէս զայնոսիկ, որ ըստ ժա-

մանակին՝ կողմանէ 'ի կողմն փոփոխին. զի զնոյն հեղէն ձայն մարէ տատանօք՝ որ և զփախստեայ զինուորէ 'ի կողմ եղանելոյ առի։

40. Այս բարձրերիցութիւն էր իշխանութիւն բազմելոյ ընդ Նախաթոռս ակմբի ատենին։

41. Իմա կառս 'ի զուգից ջորւոց լծեալս, որովք անձանց իշխանականաց էր ճանապարհորդել։

42. Քարիգեմոս որէացի յԵւբիոյ, զինուորեալ ընդ Իփիկրատեաւ՝ արժանի եղեալ էր քաղաքակցութեան աթենացւոց վասն ծառայութեանցն։ Եթէ զմանէ են բանք Եզքինեայ, հաւանութեան է՝ թէ էր նա յարքունիս Փիլիպպեայ 'ի սուսերահար լինել նորա 'ի Պաւսանիայ. քանզի անդէն լռութեա դէտ տուրհանդակաւ ընկեցեալ առէ զնմանէ Եզքինէս առ Դիմոսթենէս զլուր սպանման արքային մակեդոնացւոց։

43. Սոլոնի արգելեալ էր յօրէնսն՝ ապաւորաց չզինուել արջասս. և զայս եւս յաւելեալ բարդեալ Եզքինեայ յառաջինն՝ համարձակ այնուհետև անօրէնէր առէ։

44. Ցիրաւի նկատէ տատանօք Պլուտարքոս, զի այս մեղադրութիւն Եզքինեայ՝ գովեստ է մանաւանդ Դիմոսթենի. զի յայս ազատութեան հայրենեացն յաղթէր հայրադորով աղեաւից ցաւոցն։

45. Նշնկիսի նմանական ձայնք են և 'ի հեղէն բնագրին Եզքինեայ. զի առէ. Οὐ γὰρ τὸν τρόπον, ἀλλὰ τὸν τόπον μόνον μετήλλαξε. ου γαρ τον τρόπον, αλλα τον τόπον μόνον μετήλλαξε։

46. Դրունք կամ Պահակ կոչէին Թերմոպիլայքն, կամ ըստ հայումս՝ Ջերմագրունքն անուանեալ կապան կամ կիրճ լերանց, ընդ որ էր անցք 'ի Մակեդոնիոյ յԵլլադա ընդ Թեսալիա և ընդ հովիտն Իտայ լերին, և դիւրամուտ լինել մինչև յատտիկէաստան։

47. Զայն տայ իմանալ Եզքինէս, որպէս թուի, թէ Փիլոկրատէս չհանէր մասն և բաժին Դիմոսթենեայ յարծաթոյն զոր առնոյր 'ի Փիլիպպոսէ, յորմէ և կաշառեալ նոցին։

48. Հոլոնեսոս կամ Ալոնեսոս կղզի է Եգեան ծովուն առ երի Մակեդոնիոյ՝ 'ի մուտս Թերմեան ծոցոյն։ — Փոքր մի զկնի յիշատակեալն Արիստոդեմ՝ զօրավար էր աթենացի, որոյ 'ի համանուն կատակագրութեանէն զորմէ խօսի Դիմոսթենէս։

49. Մնեսարքոս, Կալլիաս և Տաւրոսթենէս՝ միայն 'ի յիշատակէ առաւ Եզքինեայ ծանօթ են, թէպէտ ճշմարիտ իցեն ճառեալքդ ընդ նոցանէ, թէպէտ սուտ ըստ մասնէ։

50. Այս յափշտակութիւն Որոպոսի եղև յերրորդում ամի հարիւր և երրորդ Ողիմպիադին։

51. Աթենացիք խաղացին 'ի Թիկուհս եւբեացւոց յերրորդ ամի հարիւր և հինգ Ողիմպիադին։

52. Պլուտարքոս՝ բռնաւոր Երետրիոյ՝ կոչեաց զաթենացիս յօգ-

նութիւն ընդդէմ Փիլիպպոսի, որ 'ի չորրորդ ամի հարիւր և վեց Ողիմ-պիադին ապաստանայր Եւբիա. բայց ապա նենգեաց նոցա, և ձեռն եառ 'ի մակեդոնացին :

53. Տամինայք, քաղաք Եւբիա էր 'ի գաւառին Երետրիացւոց. ընդ պարսպօք քաղաքին յաղթեցին աթենացիք քաղկիսեցւոց՝ զօրա-վար զՓոկիոն ունելով: Իսկ Կոտիլէոն՝ լեառն Եւբիա, կարի մօտա-ւոր Տամինայց :

54. Եւրիպոս նեղուց՝ որ բաժանէ զԵւբիա 'ի ցամաքէն Եղլադայ: Ի հնոցն հռոմայեցւոց Սենեկա ողբերգակն և Պլինիոս բնապատում՝ որ ըստ օրէ եօթն անգամ ուռնուլ և ցամնուլ ասեն անդ ծովուն յե-լևէջս երթևեկի ծփանացն: — Քաղկիս էր քաղաք գլխաւոր կառու-ցեալ 'ի ծովափին Եւրիպոսի :

55. Ընթացք կամ արշաւ՝ մեծ իմն էին 'ի գուպարս նահատակաց մրցարանին, յորս երեք էին նշանաւորք. պարզ ընթացք կամ ստադի-րեզ, որ էր իննսուն և չորք ձողաչափ և կէս. կրկինն՝ երկիցս նոյն-չափ. Երկայնն՝ որոյ էր չափ աւելի քան զերկոտասան ասպարիզաց, յոր և յաղթեցաւ Դիոգորի՝ յայն անուն յորջորջէր :

56. Ի քաղաքի աստ լինէին ժողովք նիզակակցացն աթենացւոց, արկանել հարկս քաղաքի քաղաքի 'ի պէտս ծախուց պատերազմի :

57. Զայդ յայն սակս ասնեն Կալլիաս և Դիմոսթենէս ըստ Եսքի-նեայ, զի հեռացուցեալ 'ի ժողովոյն՝ յիւրեանս վստարեցեն զհարկն զոր բերեալ էին: Եւ տաւքեն 'ի ժողովն Եւբիա. զի նոյնպէս՝ ըստ Եսքինեայ՝ անդ գաւակիցք Կալլիասայ գուն 'ի գաղտնիս դնէին յա-րուցանել զկղզին ընդդէմ աթենացւոց :

58. Ի Պելլայոնէս հրեշտակութեամբ չոգաւ Դիմոսթենէս յա-ռաջներորդ ամի հարիւր և ինն Ողիմպիադին: Թերևս 'ի դարձին 'ի հրեշտակութենէ անտի չոգաւ և յԱկառնանիա :

59. Զօր լրման լուսնին, զհնգետասան աւուր ամսոյն, կէտ եդեալ էր Դիմոսթենէս ատենեցուն 'ի ժողով գումարելոյ :

60. ԶՊլուտարքոս հալածեալ Փիլիպպոսի յԵրետրիոյ՝ կացու-ցեալ էր ընդ նորա զԿլիտարքոս :

61. Կիրրացիք բնակիչք էին Կիրրայ՝ որ էր քաղաք վաճառուն մեր-ձաւորանաւ հեռի 'ի Դելփեայ առ ծովեզերին. իսկ ակրագալեանք կամ կրաւալեանք՝ դրացիք էին կիրրացւոց :

62. Ամփիկտիոնք, աշխարհագումար ատեան դաշնակից քաղա-քաց, ժողովէին երկիցս 'ի տարւոջ. գարնանի՝ 'ի Դելփիս, և աշնանի՝ 'ի Ջերմադրունսն. էր զի և այլ ուրեք ըստ հարկի պիտոյից իրացն: Բազմաց 'ի հելլէն ժողովրդոց իրաւունք էին առաքել 'ի ժողովն եր-կուս երկուս խորհրդակիցս, երբեմն երիս կամ չորս, բայց երկու ևեթ քուէայք էին նոցա: Առաջինն՝ գլուխ պատգամաւոր խորհրդակցացն կոչէր Աւանդապահ կամ Դիւանապահ՝ պահապան մեհենագիր ա-

ւանդից կամ դիւանաց, այլքն անուանէին Դատաւանք, այս են՝ դա-տուիրակք ճարտարախօսք առաքեալք 'ի Զերմագրունան: Նոյն ա-նուն էր և պատգամաւորելոցն 'ի ժողովն դելփական: Ատեան Ամփիկ-տիոնացն դատաւոր էր հասարակաց խնդրոց կրօնից և ազգայնոց:

63. ՅԱԹէնս 'ի պաշտօն առեալ էր Աթենաս աստուածուհի խնա-մօղ անուամբ, զի խնամ կալեալ ծննդոցն Լատոնայ՝ մօր Ապողոնի և Արտեմեայ, հոգացեալ էր զամենայն զպէտս աստուածուհւոյն: Բայց իմաստունքն աթենացւոց ընդարձակ առմամբ իմանային նովաւ զաս-տուածեղէն Միտսն և զխնամսն որով վարի ամենայն ինչ:

64. Լոկրացիք որո՛չէին 'ի լոկրացիս Ոզոլս, 'ի լոկրացիս ոպուն-տեանս, և 'ի լոկրացիս եպիկնեմեանս: Լոկրացւոցն Ոզոլաց մայրա-քաղաք էր Ամփիսա՝ այժմ կոչեցեալ Փալէօքա՛սթռօ:

65. Այս այն Միդիաս է՝ որ կափահարեալ էր զԴիմոսթենէս 'ի մեծախումբ տեսարանի:

66. Նորն աւել զտաճարն՝ կարծիս տայ երկուց լինելոյ 'ի Դելփիս. բայց չէր. այլ 'ի հրկէզն լինել՝ վերստին կառուցին Ամփիկտիոնք, և մինչ չև էր վճարեալ գործն և տաճարն սրբեալ՝ կախեցին աթենա-ցիք 'ի կամարսն զվահանսն ոսկիս յիշատակեալս յՇղաքինեայ: Իսկ շինութիւն մեհենին անկատար մնաց մինչև 'ի գալուստն Ներոնի 'ի Դելփիս:

67. Հելլէնք Մարս կոչէին երբեմն և զՊարսիկս. վասն Կիւրոսի յաղթանակաւն 'ի մի գաւազան զերկոսին ազգս խառնելոյ: Այլ առ-մեզ յառաջ քան զայն՝ հաւն Կիւրոսի Աժդահակ մարապարտացի կո-չի 'ի Խորենացւոյն. Ա. ԺԹ:

68. Յառաջնում արշաւանին Պարսից 'ի Հելլենաստան՝ միաբա-նեցին ընդ նոսա և Թեբացիքն:

69. Կրովբիլոս 'ի բնէ, ըստ Հեսիքիոսի, նշանակէ ցցուն հերաց 'ի ճակատէ յետս ընդ գլուխն վարեալ, և ըստ Սուիդասայ՝ զխոպո-պիս վարսից մանկանց: Արիստոկրատիոն զԿրովբիլոսն՝ յորջորջանաց անուն առէ լեալ Հեգեսիպպոսի: Մարթի թէ Եսքինեայ բանք զայնմ ճարտարախօսէ իցեն. զի այնն առել՝ զյայտնի ումեքէ ակնարկէ: Բայց չգիտեմք էր սակս և յոյր դէպս զփովկիացւոցն նիզակակցութիւն գրով յատեան հանեալ իցէ Հեգեսիպպոս:

70. Այս է՝ խանքն կամ ափսեայքն սուրբք՝ բարձեալ կան 'ի ձեռս մատուցանելեաց նուէրն 'ի սկզբան զոհիցն: Եդեալ կային 'ի խանոն դահամունք նուիրացն, դանակն և այլ անօթք կարևորք 'ի պէտս ա-բարողութեանն: Ասացեալ է և Եւրիպիդեայ, (Իփիգ. Ավլ. 1575),

Կալքաս կիւսահըմայն յսակիանձոյն անդ 'ի խան
Ձեռամբ իւրով ըղթուրն 'ի պատենից սայրասուր
Մերկացեալ արկ, և ըզգլուխ օրիորդին պըսակեաց:

71. Իմա զայնոսիկ որ քսանամեայքն էին, որ և էր ամ կատարեալ երիցութեան. զի 'ի կատարեալ արբունս համարեալ համարէին ութուտասնամենի. իսկ սկիզբն՝ որպէս և ցայժմ յամենայն բարեխառն նահանգս՝ 'ի չորեքտասանամենի տիոցն լինէր. վասն որոյ և ոմանք աստ զմետասանամեանսն կամին իմանալ։

72. Թիտոխոն ըստ հելլենականին ասացեալ, որ է տեղի ապանդից, զոհարան։

73. Կոստոխիոս՝ յազգէ արկադացի, յարեալ էր 'ի Թեսաղացիս և եկեալ բնակէր 'ի Փարսաղ քաղաքին 'ի Թեսաղիա, զոր ատտիկեցի բարբառն Թեսալիա ասէ։

74. Մի այն քաղաք՝ Թեբէ էր; զոր կործանեաց Աղեքսանդր յերկրորդում ամի հարիւր մետասան Ողիմպիադին։

75. Փիլիպպեայ առանձինն ոխտունջ կայր զԱթէասայ սկիւթացւոց արքայէ. վասն որոյ խաղաց 'ի վերայ նորա, հար սատակեաց զըստուար բանակ նորա, և թափեաց աւար առատ։

76. Ցանկարծամահ սատակումն իշխանացն 'ի խորհրդատօնս՝ աստուածասաստ պատուհաս համարեալ էր։ Սակայն ըստ հին մեկնչի ուրումն՝ ոմանց 'ի նուիրելոցն 'ի ծով մերձեալ յօրէնի լոգացումն՝ կեր եղեալ են ծովական իմն նհանգի, որպէս աւանդութիւնն ասէր։

77. «Դիմոսթենէս, ասէ Կիկերոն, յառաջ քան զամս իբր երեքարիւր՝ Փիլիպպեան անուանեալ ասէր զՊիւթեայ. այս է որպէս թէ միաբանէ ընդ Փիլիպպեայ. որ յայն ակնարկէ, իբրև զի ասել զնա կաշառաբեկ 'ի Փիլիպպեայ լեալ.» (Կիկ. յղ. դուշակ. Բ)։

78. Հուսկ ուրեմն ասել՝ զՔերոնեայ ճակատամարտն տայ իմանալ։ Անոսունէր և անհաճոյ դից զոհք՝ զչարահմայն նշանակեն և զվատախտարակ։

79. Վասն զի բազում յաղթութիւնս տարեալ էր Աղեքսանդրի 'ի վերայ Դարեհի։

80. Պղծեալ էր փովկիացւոց զհողմն սրբեալս Ապողոնի. վասն որոյ և հարկ եղև նոցա մղել երկարաժամանակեայ մարտ պատերազմի ընդ բազում ժողովուրդս Ելլադայ։ Լակեդեմոնացիք՝ յատենէ Ամփիկտիոնացն տուգանեալք հազար տաղանդաց՝ վասն կադմէականին տիրելոյ Թեբացւոց դղեկին, անցին առ փովկիացիս։ Սոքա 'ի կռուի անդ աւար հարին զմեհեանն դելփական, և կարծիք եղեն՝ լակեդեմոնացւոցն ևս յաւարառման ընդ նոսին խառնելոյ։

81. Մինչդեռ Աղեքսանդր յԱսիա էր, լակեդեմոնացւոց զայն պատեհ համարեալ 'ի թօթափել զլուծն, ապստամբեցուցին զբեթէ բովանդակ զՊելոպոնէս։ Անտիպատրոս՝ յետ յամառ կռուոյ՝ եբեկ զնոսա յերկրորդ ամի հարիւր երկոտասան Ողիմպիադին, և շնորհեաց նոցա դեսպանս առնել առ արքայ, և 'ի բերանոյ նորա լսել զվճիռ իւրեանց։

82. Իմա զՀայրենի երկրէն ։ Նովին մտօք Հելլենականին վարէ զբանդ և Հայ Թարգմանիչ Գրիգորի Աստուածաբանին, և 'ի Նմանէ մերս Յովհ. Սարկաւագ վարդապետ ։

83. Հեսիոդոս. Վաստակք և Աւուրք. տող 223 կամ 238 ։ Բայց վերջին տող յառաջ բերեալ տանցդ փոքր մի այլայլ է ըստ բնաւորին յայժմու օրինակն Հեսիոդեայ. այս ինքն,

Կամ յանդգնութեանցս Զրուանեանն ըղձաւս իւրեանց պատուհասէ ։

Եւ յետ չորրորդ տողին՝ կան 'ի Նմա այլ ևս երկու տողք, զորովք զանց արարեալ Թուի Եսքինէս, որ են սոքա.

Անծընունդ լինին կանայք, և ապարանք դառնան յաւէր
Խորհրդով ոլիմպականն Արամազդայ, և այլ երբեք ...

Զի հին մատենագիրք, ոչ միշտ ճշդիւ 'ի մէջ ածեն զբանս նախնեաց ։

84. Փրինոնդաս և Եւրիբատոս՝ երկու խաբեբայք էին անուանիք, մինչև անուանց նոցա յառակս լինել ։

85. Թրասիբուլոս՝ զօրավար էր աթենացի, որիշ 'ի գլխի յիշատակելոյն ։ Եւ Կոլիտ էր անուն եգէական ցեղին ։

86. Թրասոնի, Արքեդեմոս և Պիւանդրոս ոչ այլ ուստեք ծանօթ են մեզ, բայց 'ի բանից աստի Եսքինեայ ։ — Երքիա էր այլ անուն եգէական ցեղին ։

87. Լէոդամաս յաշակերտութենէ Իսոկրատայ էր. և զատանի անուն իւր 'ի վճարի ուրեք յիշատակելոյ 'ի Դիմոսթենէ ։ Իսկ Աքառնա էր գիւղաքաղաք Էնէական տոհմին ։

88. Պելէքս էր անուն լէոնտեան ցեղին. և որ փոքր մի զկնի Ազենիա՝ անուն էր հիպպոթոոնտեան տոհմին ։

89. Ի փովկիտական պատերազմին՝ զքաղաքն Նիկէա առեալ էր Թեսաղացւոց 'ի ձեռաց փովկիսացւոցն. Փիլիպպոս անդրէն դարձոյց առ Նոսա, զի արասացի զնոսա 'ի կողմն իւր ։

90. Եղատիա էր գլխաւոր քաղաք Փովկիսի առ երի Թեբայ ։

91. Յետ մարտին Քերոնեայ՝ եդ Փիլիպպոս 'ի Թեբէ պահապանս, մինչ դեռ ինքն 'ի հաշտութիւն խօսէր ընդ աթենացիս, և զգերին նոցա դարձուցանէր առանց իրիք փրկանաց ։

92. Ճարտար չըջաբանութիւն Դիմոսթենի էր՝ Թեբայ բէովտացիքն առել, առ խորշելոյ յանուանէ Թեբացւոց՝ Թշնամեաց Աթենայ ։

93. Գերագոյն ատեան Բիովտիոյ գումարէր 'ի Թեբէ, ուր հրեշտակս առնէին գլխաւոր քաղաքքն Տանագրա, Թեսպիէս; Պլատիէս,

և այլք բազումք. և անուն կոչէր նոցա՝ Իշխանք Բիւզանդիոյ, գլուխք կամ գլխաւորք:

94. Դատարկ էին տեղիք զինուորացն որ առ ժամն չէին 'ի զօրուն, բայց տէրութիւնն տայր և նոցա զթոշակն, և գրաւէին զայն զօրագլուխք:

95. Այգոցիկ ոչինչ յիշատակ անէ պատմութիւնն:

96. Այս այն Կլէոփան Թուի՝ զորմէ խօսի Եսքինէս և 'ի Ճառի Անիրաւ Հրեշտակութեանն: Յետ պէղոպոնիսեան պատերազմին՝ նորա մահ դատապարտեալ էր ամենայնիւ, որ խորհուրդ տայցէ ընդունել զհաշտութիւնն ընծայեալ 'ի Լակեդեմոնացւոց առ աթենացիս՝ յետ հարուածոց նոցին 'ի Սիկիլիա: ԶԿլէոփոնէս բանք լինին 'ի բազում կատակերգութիւնս Արիստոփանեայ, մանաւանդ 'ի Գորտսն:

97. Զի ըստ Պղուտարքեայ՝ ժողովուրդն ոչ միայն առ յանցաւորս չկալաւ զԴիմոսթենէս, այլ և 'ի նա ապաստանեալ յանձն առնր զԳերեզմանականն անկելոց 'ի Քերոնեայ ճակատուն, ուստի փոխադրեցան ոսկրոտի նոցին առ յուղարկաւորութիւն անելոյ նոցա հաշտակաւ աշխարհօրէն:

98. Պլատոն ևս խօսի զամոլորութենէդ զայդմանէ 'ի Մենեքսենին իւրում:

99. «Զէ մարթ ժխտել, ասէ Լահաւփ, զճարտարութիւն ընդդիմադրութեանցդ. ամենայնիւ հնարի Եսքինէս ատելի առնել զոսոխ իւր. գումարէ զատենիւն զուրուս եղկելի քաղաքացւոցն, կացուցեալ զնոսա 'ի մէջ ժողովրդեանն և Դիմոսթենի. վրէժխնդիր ուրուականօքն պաշարեալ զնա՝ կարծէ զնովաւ պատնէշ ինձ անճողոպրելի: Սակայն Դիմոսթենէս միով շնչով տապալեցէ զայդ ամենայն կազմութիւն և զհանդերձանս ոգանձև քինախնդրութեան՝ զոր դատախազդ յարուցանէ 'ի վերայ նորա:»

100. Սպանողին Փիլիպպոսի:

101. Ըստ Պոլիբիոսի, յորժամ արքայ Մակեդոնիոյ զահս մատուցանէր, զընդերս սպանողին բերէին առաջի նորա զի խնդրին զհմայսն հարցանիցէ: Եւ ըստ Պղուտարքեայ՝ Աղէքսանդր 'ի յետին ամին յոյժ 'ի խորհրդս զառածեալ անկաւ: — Եւ մանուկն համբակ ասել փոքր մի զկնի՝ ակնարկէ յարհամարհական ինչ ձայն Դիմոսթենի ասացեալ 'ի դէմս նորին:

102. Կայ և այդ առ Պղուտարքեայ՝ 'ի վարս Դիմոսթենի: Զի հրեշտակ առաքեալ ընդ այլս ոմանս առ Աղէքսանդր, յահէ աշխարհակալին եթող զընկերսն 'ի Կիթերոն լեառն, և դարձաւ յետս ընդ կրունկ:

103. Ի բանից աստի հաւանելի է՝ զԱմփիկտիոնեան ժողովն իմանալ աստ:

104. Այս այն նաւաստիք են՝ որ զնաւիրականն նաւն վարէին, որով սովոր էին ծովել պատգամաւորք կամ դեսպանք:

119. Փիւլէ՝ ամրոց էր Ատտիկէի, յոր ապաստան անկեան պաշտպանք ընկերհաշտութեանն, զկնի ունելոյ և առաջնորդ զԹրասիբուլոս և զԱրքինէս, 'ի բառնալ երեսնից բռնաւորացն Աթենայ, զորս և 'ի պարտութիւն մատնեալ բազում անգամ՝ ազատեցին ըզհայրենիսն։

120. Սալամին՝ գետ էր Թրակիոյ, առ որով յաղթութիւն մեծ տարաւ Կիմոն զօրավար աթենացւոց 'ի վերայ գնդին Պարսից։

121. Հերմէսք էին դրօշեալք Տիւր գլխոյ ըստ նախնեաց մերոց, որ է Հերմէս ըստ Հելլենաց. և էին կճեայք, չորեքկուսիք, պատուանդանք յարձանագրութիւնս։

122. Այս դահլիճ, կամ գաւիթ ևս թէ կամիցիս կոչել, էր 'ի հրապարակի ժողովրդեանն։

123. Էիոն կամ Էյոն՝ էր քաղաք Թրակիոյ 'ի բերան Ստրիմոնի՝ ոչ հեռի յԱմփիպոլէ։ Էր յայնժամ 'ի ձեռս Քսերքսի, որ ըստ Պլուտարքեայ աւանդելոյ՝ Բուտեսի յանձն արարեալ էր պահել զայն. որոյ չկարացեալ զդէմ ունել Թշնամեաց՝ հրձիգ արար զբերդն, և հոսեաց զանձն 'ի հուրն։

124. ԶՄեննեսթեւս մարթի տեսանել յԻլիականին Հոմերի. Երգ Բ. 552։

125. Սրահն այն ըստ հելլէն ձայնին Պիկիլէ կոչէր, որ է ըստ մեզ նկարէն, վասն երևելի իրաց ազգին 'ի նմա նկարակերպ լինելոյ։

126. Առ այս և Կոռնելիոս Նեպոս ասէ. «Քանզի և այսմ Միլտիադեայ՝ որ զԱթէնս և զյունաստան բովանդակ ազատեցոյց, այսպիսի տուաւ պատիւ 'ի Նկարէն անուանեալ դահլճին. զի 'ի նկարել Մարաթոնեան մարտին, 'ի դասու զօրավարացն տասանցունց՝ առաջին նորա պատկերն դնիցի, ինքն զզօրն խրախուսեսցէ և զպատերազմն մղիցէ։»

127. Ի տաճարի Դիցամօրն Կիւբելեայ աւանդեալ պահէին աթենացիք զկշռատակարանս աշխարհին և զդիւանագիրս։

128. Ըմբիշ էր Փիլամմոնդ՝ ժամանակակից Եսքինեայ և Դիմոսթենի։ Իսկ Գլաւկոս էր 'ի Կարիստեայ քաղաքէ Եւբիոյ՝ անպարտելի նահատակ առ հինսն։

129. Հազարապետ էր այրդ այդ իրաց քաղաքին աթենացւոց, նշանաւոր՝ չարաչար վարչութեամբն, մինչ զի անուան իւրոյ յառակս փոխել։

130. Այս է, նոյնպէս խոստիւ պատուհասէին զխօսելիսն հակառակ օրինաց, և որ զօրէնսն գործովք լուծանէին։

131. Հելլենացւոց 'ի պէտս՝ էին ժամաչափք ջրեղէնք, որովք սահմանէր՝ այսչափ կամ այնչափ ջրոյ հոսմամբ՝ ժամանակ իւրաքանչիւր ատենաբանի խօսելոյ։

132. Կախէին յատենի դատաստանին զցուցակ հրամանին՝ զորմէ

յաւելեալ յօրինեալ 'ի ճառից, որպէս և այլ ինչ ինչ, զոր օրինակ և համբարեացն նմանութիւն որ խուն ինչ զկնի:

144. Զհրեշտակութենէն ասէ, զոր աթենացիք առաքեցին առ Փիլիպպոս յետ ճակատուն Քերոնեայ՝ խնդրել զհաշտութիւն:

145. Զնոյն նմանութիւն առնու և ասէ Ոսկեբերանն 'ի վերջ կոյս քառասուն և երրորդ ճառին, «Եթէ 'ի փողոյն զլեզուակսն 'ի բաց հանիցես, անպիտան մնայ այլ գործին. բայց ոչ այսպէս փողն հոգևոր:»

146. Հոմերոս յԻլիականն. Բ. 212:

147. Լակեդեմոնացիք, յետ հասու լինելոյ քաղաքին Աթենայ, կարգեալ հաստատեցին 'ի նմա քսանուորս երեսուն, որ բազում եղեռն չարաչար 'ի վերայ քաղաքացւոցն հասուցանէին:

148. Ի նորոգել պարսպացն հարկ եղև Դիմոսթենի, որպէս երբեմն Թեմիստոկլի, քանդել զգերեզմանս. այնու Եսքինէս իբրև մեհենակապուտ զնա ամբաստանէ:

149. Պատմութիւնն ոչ ինչ յիշատակէ զայդ, որպէս և ոչ զթուղթըն ուր ինչ յառաջ 'ի մէջ ածեալ յԵսքինեայ:

150. Միջնաբերդ՝ անուն է կադմէական, ամրակողմն գլուխ քաղաքին Թեբացւոց, դղեակ բերդ 'ի բերդի ամրացեալ, զոր կալեալ էր մակեդոնացւոց:

151. Մինչդեռ Աղեքսանդր յԱսիա էր, Թեբացիք կոչեցին զարկադացիսն 'ի Թիկունս առ զլուծն մակեդոնական ընկենլոյ. արկադացիք պահանջեցին տասն տաղանդ յառաջ քան զիրին ձեռնարկութիւն: Թուէր 'ի գիւտ արծաթոյն ապաստան եղև 'ի Դիմոսթենէս, որոյ առեալ էր յարքայէն Պարսից գանձս առ 'ի յարուցանել Թշնամիս Մակեդոնիոյ: Դիմոսթենէս զլացաւ, չառ յանձն տալ, և Անտիպատրոս փութացաւ հատոյց արկադացւոց զտասն տաղանդն, զի մի խլրտեսցին 'ի տեղւոջէ իւրեանց:

152. Փիլիպպոս զդուստր իւր Կղէոպատրա տուեալ էր կնութեան Աղեքսանդրի եղբօր Ոլիմպիայ, քեռայն Աղեքսանդրի մեծի, Մոլոսաց կամ եպիրացւոց արքայի:

153. Աղեքսանդր, զորմէ արդ իսկ ասացաք, ըստ խնդրոյ տարենտացւոց խաղացեալ յԻտալիա 'ի Թիկունս նոցին, և 'ի պարտութիւն մատնեալ յերեսաց բնակչացն Բրուտիանի՝ կորեաւ ամենայն զօրօքն յերեքարիւր երեսուն և միում ամի նախ քան զմեր Թուաբերութիւնս:

154. Զայս յաղթութիւն տարաւ Իփիկրատէս 'ի կորնթեան պատերազմին ընդդէմ Ագեսիլայ սպարտացւոյ, 'ի չորրորդ ամի հարիւր վեշտասան Ոլիմպիադին: Գունդն յիշատակեալ լակեդեմոնական էր հնգից հարիւրոց այրընտիր նահատակաց, կամ ըստ այլոց՝ եօթն հին հարիւրոց: Գլուխ գնդին կոչէր սպայապետ:

155. Ի խաղալ Տիմոթէի զառաջինն 'ի Թրակիա, շուրջ պատեցաւ

զԵլլադաւ՝ իւրով նաւահանգստիւն, և նաւածնաց յաթենացւոց ըզ-կերկիւրա կամ Կորկիւրա կղզի, այն է Քորֆու:

156. Ցօրէնսն Դրակոնի հրամայեալ էր կորուսանել և զանշունչ իրս՝ որոց անկմամբ թէ ոք մեռանիցի: Եւ զայդ օրէնս պահեաց Սոլոն:

157. Յետին արշաւանն՝ իմանալի է զպատերազմն որ յանկ ել Քսե-րքսեայ ճակատամարտին:

158. Թուի ակնարկել 'ի գանձս տեսարանին, որ յառաջ կարգեալ էին 'ի զօրաժողովս և 'ի կազմս հանդերձանաց նաւուց, և ապա բաշ-խեցան 'ի ժողովուրդն յաւուրս հանդիսից և կացրդից:

159. Թերևս զԱստղիկոնէ են բանքդ, որ յԱրիստագէն 'ի մահ դատապարտեցաւ:

160. Լէոկրատ՝ յետ քերոնեան խորտակմանն՝ եմուտ 'ի նաւ գի-շերի ամենայն կարասեաւն, և ինքնահալած անկաւ 'ի Հռոդոս. յետ հինգ ամի դարձաւ եկն յԱթէնս, և 'ի Լիկուրգոսէ ուժգնէ ամբաստա-նեցաւ յատեանի:

161. Այս գումարումն ժողովոյ յայտնապէս զԱմփիկտիոնացն տայ իմանալ:

162. Իբրև նշկահեաց Եգիպտոս զԱրտաշէս Երկայնաձեռն, խա-ղաց ոսպայ ծանր 'ի վերայ նորա, և չկարաց ինչ առնանել նմա յերի-տաց աթենացւոցն որ պահէին զնա: Ցասումն արքային արքայի դար-ձաւ յայնժամ 'ի վերայ նոցա, և արձակեաց 'ի Պելոպոնէս ընդ Արթ-միոսի գաղտագողի դաւաճանս՝ գանձուք հանդերձ՝ յարուցանել նոցա թշնամիս. այլ ոչ յաջողեաց. Լակեդեմոն ոչ կամակցեցաւ սրտմտու-թեան արքային:

163. Այս վերջին բանք, կնիք խօսիցն Եսքինեայ, ըստգտեալ է 'ի քննաբանից իբրև իմաստակութեան մնոտի պայթիւն՝ անհամե-մատ ընդ նախակարգեալ պերճաբանութիւնսն. որպիսի ինչ ոչ նշմա-րի և ոչ ուրեք առ Դիմոսթենի:

# ԴԻՄՈՍԹԵՆԻ

ՃԱՌ

ՅԱՂԱԳՍ ՊՍԱԿԻՆ

# ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ

Զոր ինչ 'ի Կիկերոնէ ասացաք զճառէն Եսքինեայ 'ի նախա-դրութեան անդ իւրում՝ բաւական է 'ի յայտ ածել զպատճառս մե-ծի խնդրոյն, յորոյ վերայ 'ի պայքար մտին երկոքին հռչակաւոր ճարտարախօսք Աթենայ. նա 'ի դատախազել, և սա 'ի տալ պա-տասխանի ընդ անձին և ընդ Կտեսիփոնի, և արդարացուցանել զանձինս և զհրաման Պսակին: Բայց և զամանէ զեկուցանելի է ինչ ինչ առանձինն համառօտս:

Աթենացիք, յետ պարտութեան իւրեանց՝ Թեբայեցւովք հան-դերձ 'ի մեծի ճակատամարտին առ Քերոնեաւ, կասկածեալ և 'ի խեթի լեալ 'ի մեղմե խորհրդոց Փիլիպպեայ, և անվստահք ընդ նորոգութիւն առաջնոյ ուխտին դաշանց և Թիկանց ընդ նմա, թէ գուցէ յաւուր միում, որպէս ընդ այլսն, և ընդ բուն իսկ քաղաքին իւրեանց գոռայցէ մակեդոնական ամբոխին յաղթօղ գումարտակօք, վասն որոյ պարտ վարկան կազմել և զօրացուցանել զհիմն և զխար-խուլ պարսպաց իւրեանց: Ի տասանց անտի ընտրելոց առ այդ գոր-ծակալաց՝ գլխաւոր հոգաբարձու գտաւ ճարտարախօսս Դիմոսթե-նէս, ոչ միայն ըստ արժանի 'ի գլուխ հանեալ զիրն, այլ և զմասն ինչ հայրենի ընչիցն 'ի վերայ աշխարհին իւրոյ եդեալ ծրի, եւ հա-տանել կրկին փոսս 'ի պատնէշ Պիրէանի:

Մեծի այսր երախտեաց առնն փոխարէն, առաջարկութեամբ Կտեսիփոնի քաղաքացւոյ իւրոյ և բարեկամի, յանձն առ հաճեցա-տեանն պարգևել նմա պսակ ոսկի, և 'ի Սպանդարամետական տօ-նիցն հանդիսի տալ հրատարակել զպարծանսն: Եսքինէս, վաղուց ոխերիմ նորա, հակառակ դատախազ ամբարձաւ այնմ հրամանի. նամակագիր եղև 'ի վերին երեսս զԿտեսիփոնէ, թէ լուծանէ զօ-րէնսն՝ պահանջելով զայն պատիւ վասն իշխանի՝ մինչ չև նորա ըստ

օրինացն տուեալ զհամար գործակալութեանն, և վասն տան միոյ՝ որ ամենայն աղետից աթենացւոցն չարեաց պատճառն էր, և զժամանակէն և զանդուլ քաղաքութեանն, որ ընդդէմ օրինացն էր։ Դիմոսթենէս, որ ամենայն նետիցն Եսքինեայ բուն նպատակն էր, պատճառանի յաղթողական անձէ ամբաստանութեանցն գերահռչակ ճառիւս յաղագս Պսակին, քան զոր չիք ինչ պանծալի 'ի նախնեացն առ մեզ հասեալ ճարտարխօսութիւն, շնորհելով ինչ ինչ եւեթ բարուց և առողջութեանց ժամանակին և ազատաբերան ազգին։

Բայց ոչ անդէն առժամայն եղև դատաստան վճռին մեծի, այլ 'ի հինգ կամ 'ի վեց ամի թագաւորութեանն Աղեքսանդրի, եօթն կամ ութ ամաւ զկնի պատերազմին Քերոնեայ, առ որով նամակագիր լեալ էր Եսքինէս, սուղ ինչ յառաջ քան զԱպանդարամեռական տօնան, յորս պսակացն լինէին քարոզութիւնք։ Ամենայն Ելլադա գրեթէ անդ էր 'ի լուր պայքարին։ Եսքինէս նկուն եղեալ յանհնարին կորովաբանութենէն Դիմոսթենի, վտարանդի գնաց 'ի Հռոդոս։ Ի մեկնել նորա՝ մատոյց նմա Դիմոսթենէս արծաթ բազում 'ի նպաստ, և առիպեաց ընդունել. և նորա ընկալեալ գոչեաց. « Զիա՞րդ ոչ տրտմեցայց ընդ զրկումս 'ի հայրենեաց, ուր այսպիսի մեծանձն ոսոխ թողում, որպիսի և ոչ բարեկամ գտից այլուր։ » Անդ կանգնեաց զհամբաւաւորն ընդ բազում ժամանակս վարժոց ճարտասանութեան, և նախ քան զամենայն արտասանէր զերկուսին ճառս յակումբս աշակերտացն. որոց գովեալ յոյժ զիւրայն և ասացեալ, Իսկ զիա՞րդ յետ այսր ճառի պարտեցայր, ասաց եթէ 'ի Դիմոսթենին գայցին, և 'ի հիացումն իմն կրթեալք՝ կայթիւ և ոստիւ հարկանէին, ուանդի ասացեալ առ նոսա. « Իսկ զի՞նչ ունէիք առնել, եթէ զնորին զվիշապն զայն լուէիք։ » Եւ այս ոչ փոքր գովեստ է, ոչ միայն Դիմոսթենի, այլ և Եսքինեայ առն ոսոխի և նախանձորդի։

Զհնացն դատաստան հաստատէ զճառս առաջին քննաբան աւուրցս և քաջ հելլենագէտն Վիլմէն, զի ասէ. « Փիլիպպեանքն (ճառք Դիմոսթենի) թէպէտ և վեհք իցեն, այլ ճառ Պսակին իրաւամբք դասի առաջին գլուխ գործոցն Դիմոսթենի։ » Առաւել 'ի յայտ գայ մեծութիւն Դիմոսթենի, յորժամ ընթեռնումք առ հնոյն՝ այնչափ հեշտացեալ աթենացւոց ընդ պերճաբանութիւն Եսքինեայ, մինչև զերրեակ ճառս նորա յանուն երեցունց Շնորհացն յորջորջել։ Իսկ զԴիմոսթենէս՝ հին և նոր դարք կոչեցին իշխան ճարտարխօսութեան, հեղեղ յափշտակիչ, որոտընդոստ փայլակն կայծակնատարափ, գեր 'ի վերոյ քան զամենայն հիացումն զարմանալեաց։ « Այրս այս և Բանն մի են » ասաց Լաֆօնթէն։

# ԴԻՄՈՍԹԵՆԻ

## ՃԱՌ

## ՅԱՂԱԳՍ ՊՍԱԿԻՆ

Նախ քան զամենայն, ո՛վ արք աթենացիք, ուխտիւք խնդրեմ յաստուածոց և յաստուածուհեաց բոլորեցունց, զի զխնամամն զոր ընդ քաղաքիս և ընդ ձեզ ամենեսեան ունիմ ես հանապազ, նոյն և 'ի ձէնջ առ իս գտանիցի 'ի հանդիսի աստ յայսմիկ. և ապա, որ վասն ձեր է մանաւանդ և 'ի ձեր բարեպաշտութիւն. և 'ի փառս, զի տացեն ձեզ դիք՝ մի՛ խորհրդակից առնուլ զդատախազն, եթէ զիարդ պարտ իցէ ձեզ լսել ինձ. զի անագորոյն իմն այդ լինիցի. այլ զօրէնսն և զերդումնդ[1], յորում առ այլովք ամենեքումբք իրաւամբք՝ գրեալ կայ և այս. Երկոցուն կողմանցն միապէս դնել ունկն: Որ այն իսկ՝ն է, ոչ միայն մի՛ ինչ կանխեալ առնել դատապարտ, և զնոյն միամտութիւն երկոցունցն շնորհել, այլ և որով կարգաւ և որով ոճով և կամիցի և ընտրիցէ իւրաքանչիւր ոք յատախացն, թո՛յլ տալ նմին և վարել:

Արդ ես յոյժ նուազ գտանիմ 'ի մերում աստ քան զԷսքինէս, մանաւանդ երկուք այսոքիւք մեծամեծօք, ով արք աթենացիք։ Մի, զի ոչ զնոցին իրաց գուպարիմք. քանզի ոչ նոյն է ինձ այժմ 'ի ձերմէ մտերմութենէդ վրիպել, և նմա չյաջողել 'ի դատախազութեանն [2]. այլ ինձ... բայց չկամիմ ասել ինչ գժպատեհ 'ի մուտս աստ ճառիս. իսկ դա՝ վարկպարազի անխէթ յիմէքէ չարախօսէ զինէն։ Եւ միւս ևս, որ յամենայն մարդիկ 'ի բնէ հաստատեալ է, բամբասանաց և ամբաստանութեանց մտադիւր մատուցանել ունկն, իսկ ընդ անձնագովս խոժոռել։ Արդ՝ որ հեշտալին է յայսոսիկ, այն դմա տուեալ է. իսկ որ, որպէս բանից կարգ է ասել, զամենեսեան խեղդէ և մղձկէ, այն ինձ մնայ։ Եւ եթէ սովլին երկիւղած մտօք չարկից 'ի ճառ զառ 'ի յինէն գործեցեալսն, թուեցայց չունել ինչ 'ի հերքումն չարախօսութեանցն, և ոչ՝ որովք խնդրեմն պսակիլ՝ յայտ առնել։ Իսկ եթէ 'ի գործս իմ և 'ի անտեսութիւնս անցանիցեմ, բազում անգամ հարկ լիցի ինձ խօսել զանձնէ։ Այսուհետև գոնէ գործեցից կարի իմն չափով զայն առնել. իսկ զոր իրքն ինքնին ստիպեսցեն, այն մեղս 'ի նա յիրաւի երթեալ կրթեսցի՝ որ յարոյցն զայսպիսի պայքար։

Թուի ինձ, ով արք դատաւորք, թէ խոստովան լինիցիք դուք ամենեքեան, զի այս հասարակ ընդ իս և ընդ Կտեսիփոն է գուպարած, և ինձ ոչ նուազ ինչ փութոյ արժանի։ Զի յամենայնէն անկանել դառն է և դժնդակ, մանաւանդ եթէ յառնէ թշնամւոյ հասանիցէ այդ 'ի վերայ, և ևս առաւել 'ի ձերմէ խնամոտ և մարդասէր կամացդ վրիպել, որչափ և մեծ իսկ է այդմ լինել արժանի։ Եւ քանզի այսպիսի ինչ է պատերազմս այս, աղաչեմ և խնդրեմ յամենեցունց 'ի ձէնջ առ հասարակ՝ ունկն մատուցանել պատասխանատուութեանս իմում առ բողոքսն՝ ըստ ամենայն իրաւանց, որպէս ինչ օրէնքն հրամայեն, զորս օրինագրողն իսկզբանէ Սոլոն, իրաւախոհ առ ձեզ և ժողովրդախնամ, ոչ գրով ևեթ հաստատուն լինել պարտ համարեցաւ, այլ

և ձեռամբ դատաւորացդ երդմամբ ։ Ոչ եթէ թերահաւատ եմ 'ի ձէնջ լինելով, որպէս ինձ թուի, այլ տեսեալ, զի զբանդագայսն և զբամբասանսն՝ ծրովք վասն յառաջագոյն ձա-ներոյն զօրաւոր գտանի դատախազն, չէք դատափետելոյն[3] 'ի բաց անցուցանել, եթէ իւրաքանչիւր ոք 'ի ձէնջ 'ի դա-տաւորացդ՝ ոչ երկխուղածութեան առ դիսն պատկառ կա-ցեալ, երկրորդի եւս խոստովանեն իրաւանցն մեծարանս առնիցէ, և երկոցունցն հաւրթ և հաւասար յունկնդրութիւն մա-տուցեալ՝ այնպէս ամենայնի տեղեակ և խելամուտ լինիցի ։

Արդ, քանզի որպէս թուի՝ զբովանդակ կենաց անձինս առաջի կայ ինձ այսօր տալ համար և զհամաշխարհի քա-ղաքավարութեանս, կամ է ինձ՝ որպէս 'ի սկզբանն՝ մի-անգամ աղաչել առ դիս. և աղաչեմ, ձեզ լու 'ի լու, նախ՝ զի զոր խոր առ քաղաքս և առ ձեզ ամենեսին կալեալ է միշտ խնամս, նոյն և 'ի ձէնջ առ իս լինիցի 'ի մարտի աստ. և դարձեալ, զի որ օգուտ իցէ 'ի հասարակաց ամենե-ցուն փառս և 'ի բարեպաշտօն իւրաքանչիւր, զնոյն ամե-նեցուն ձեզ շնորհեսցեն դիք խորհել և իմանալ զպատէս զայսմանէ ։

Եւ արդ, եթէ Եսքինէս, զորոց միայնգամ նամակագիր ճեալ քախս մատուցեալն էր, զայնցանէ եւեթ ամբաստան կայր, և ես զայնմ հրամանէ[1] տայի ուղղորդ պատասխա-նի ։ Այլ քանզի և ընդ այլոյն անցանէ՝ ոչ սակաւ բանս ծախելով, և բազում ինչ ստեաց զինէն, հարկ համարիմ և իրաւունս, ով արք աթենացիք, սակաւ նախ սուղ ինչ զայն-ցանէ. զի մի ոք 'ի ձէնջ յարտաքուստ արտաքս բանից 'ի քարշ ածեալ՝ այլազգապայս ինչ լուիցէ յինէն զիրաւունս դատաստանիս ։

Յաղագս անձին, որչափ ինչ լուտացեալ հայհոյեաց զաս զինէ, տեսէք քանի պարզ և արդար խօսիցիմ ։ Եթէ այն-պիսի ինչ ոք գիտէք զիս, որպիսի զաս բամբասեաց, — զի ոչ այլ ուրեք երբէք կեցի՝ բայց առ ձեզ, — մի և ձայնիս ան-

զամ բարբառոյ ժուժկալէք, Թէպէտ և զամենայն ինչ զհա-սարակաց՝ յոյժ գեղեցկապէս իցէ իմ անօրինեալ. այլ այժ-մէն տատէն և տուս յարուցեալ պարտաւոր արարէք: Իսկ եթէ լաւագոյն յոյժ քան զդա և 'ի լաւագունից, և ոչ ա-նարգ ինչ քան զդք 'ի համեստից, — զի մի ծանր ինչ տասցեմ, — և զիս և զիմն համարիք և ճանաչէք, մի և յայլում ա-մենայնի հաւատայք դմա. զի յայտ ուրեմն է՝ թէ նոյնպէս յօդեաց սահեղծ զամենայն. և ինձ, զոր 'ի բազում առաջին պայքարս ցուցեալ էք յամենայն ժամանակի, զնոյն և այժմ շնորհեցէք մտերմութեան խնամ:

Թէպէտ և դժնադիր ես, Եսքինէս, սակայն զայդ ամե-նեքին տխմարաբար կարծեցեր, թէ թողեալ իմ զճառս զոր-ծոցն և քաղաքավարութեանց՝ 'ի քո լուտանս դիմեցեմ դէմ: Զայդ ոչ արարից, չեմ ինչ այդպէս անզգայեալ. այլ զանտեսութեանցն՝ զորս ստեալ զարտդեցեր՝ ես ընդ ես մատեայց 'ի քնին. իսկ զպոռնախաւսն հրոսօղ ձաղանացդ՝[5] տապա յետոյ արարից յիշատակ, եթէ սոցա լսել կամ լի-նիցի:

† Իսկ արդ ամբաստանութիւնք բազում և անհնարինք, որոց և ոմանց մեծամեծ և վերջին պատուհաս հրամայեն օրէնքն. բայց ընտրութիւն իսկ այսր դատի՝ զատելոյ զըր-պարտութիւն 'ի դէմս բերէ, և զթշնամանս և զլուտանս և զզուանս միանգամայն, և զամենայն ինչ զայդպիսի. և զե-ղերանցն և զհաստուցն տասցելոյ, եթէ ճշմարիտք էին, չէք քաղաքիս ըստ արժանի վրէժս պահանջել, նա և ոչ սուղ ինչ սակաւ: Զի է պարտ արդարեւ խափանել զմատչելն առ ժողովուրդն և լինել արժանի ատենաբանելոյ. բայց ախտութեան և մախանաց պայմանաւ զայն գործել, ոչ, տա-տուածովքն երդուեալ, ոչ ուղիղ ինչ է, ոչ ազնուական և ոչ արդարացի, ով արք աթենացիք. այլ յորս վնասակար զիս տեսանէր առ քաղաքս, եթէ այնչափ ինչ էին որչափ դա այժմս ողբերգակեալ[6] ճառամաբանէր, զօրինացն պա-տիժս առ յանցանսն 'ի գործ արկանել: Եթէ քնութեան

ինչ՝ արժանի զիս տեսանէր գործեալ, յարուցանել 'ի վերայ իմ փութոյն, և այնպէս յատեան դատաստանի առաջի ձեր զիս կացուցանել. և թէ անիրաւ ինչ երբեք հրամանահան, զանիրաւութեանս ամբաստան լինել: Քանզի չմարթէ ըզ-Կտեսիփոն վասն իմ առնել պարտաւոր. և եթէ ակն ինչ ունէր յանդիմանել զիս, չկարէր ընդ նմա գալ: Իսկ որ-պարև իսկ, եթէ ինչ յորոց այժմ չարախօսէր և ճառա-տէր, և կամ այլ ինչ առ ձեզ մեղուցեալ տեսանէր զիս, զամենայնն օրէնք գոն և պատուհասք և դատք և դատաս-տանք՝ դատել և ահագնատասաս պատահանելեաք էր, և գոյր նմա հանել զայն ամենայն ընդ իմ գլուխ. և եթէ զայդ առ-նել յառնէր զայր 'ի մէջ, և զայդ օրինակ վարէր ընդ իս, գործք նորա մեկայ և երաշխաւոր մնանէին ամբաստանու-թեանն: Իսկ զարդիս՝ մոլորեալ յուղւոյ և յարգար ճանա-պարհէն, և ըստ արտաքոյ խառնըրեալ 'ի յանդիմանու-թեանց՝ որ յարգեանց անտի երայն, յետ այսչափ ժամա-նակաց՝ բարուք և հեզմնութեամբ և կատակաւ կցկցեալ կարկատանս՝ խեղկատակէ: Հուսկ ուրեմն, զինէն են ամ-բաստանութիւնքն, և զստ տանեղաքարշ եկակոչ առնէ. և բռնանդակ ռազմի ճակատու պատերազմիս գլուխ կացու-ցեալ զատելութիւն իւր ընդ իս, բայց ոչ ուրեք նովաւ յայտ յանդիման հարեալ ինձ 'ի դիմի, զայլ ոք կողոպտել արկանել 'ի պատուոյն թուի նկրտեալ: Իսկ 'ի վերայ այ-լոց ամենայնի երասանաց, զոր ունիցի ոք առնել վասն Կտեսի-փոնի, և զայս ես յոյժ 'ի դէպ թուի ինձ առնել, ով արք ա-թենացիք, թէ զմերմէ ատելութեանս մեզ մեղէն արժան էր 'ի խուզափորձ մտանել և պահանջել զանձինս, և ոչ թէ զկռուեալն ընդ միմեանս թողուլ, և երթալ խնդրել չարիս ինչ այլում ումեք հասուցանել. զի այդ՝ ծայր անիրաւու-թեան է: †)

Իսկ արդ, զինու իսկ զամբաստանութեան զատանեցէ ոք ըստ այսմ՝ ոչ արդարութեամբ և ոչ ճշմարտութեամբ ինչ առաջեալ. բայց կամիմ և ես ըստ մերոյն առնուլ զնոսա

'ի խոյզ և 'ի քննին, մանաւանդ որ ինչ միանգամ վասն հաշտութեանն և հրեշտակութեանս առեալ զինէն, զգործեալն իւր ընդ Փիլոկրատեայ` [8] յիս հանելով: Այլ հարկ է, ով արք աթենացիք, և վայելուչ ևս, յուշ առնել ձեզ` թէ զինչ իրք էին 'ի ժամանակին, զոր ըստ այնր ժամու նկատեցէք զամենայն:

Ի յառնել փոկեան պատերազմին [9], ոչ ինև, զի չև էր իմ յայնժամ կացեալ 'ի վարչութեան, յայն միտս էիք դուք զառաջինն` զի ընդ փրկութիւն փոկիացւոցն կամէիք, թէպէտ և տեսանէիք զնոսա անիրաւութեամբ գնացեալս, և խնդայիք ընդ թեբայեցւոցն որ զինչ և է կիրս, ոչ ընդ խոլ ինչ և ոչ տարապարտ ընդ նոսա ցասուցեալք. զի ոչ չափով ինչ վարեցան յորս յաղթեցանն 'ի Լեւկտրա: Եւ այսու, ողջոյն Պեղոպոնէս քայքայեալ պառակտեալ էր, և առեալք լակեդեմոնացւոց [10] չէին բաւական հարկանել կործանել զնոսա, և ոչ զօրս յառաջագոյն արարեալ էր նոցա [11] իշխանս` տեարք էին քաղաքացն. այլ առ նոսա և առ այլս ամենեսին էր կագ և շփոթ անվճար: Զայն տեսեալ Փիլիպպեայ, զի չէր յանյերևոյթս ինչ, ծախեալ ինչս առ իւրաքանչիւր նոցա մատնիչսն, զամենեսեան արկ ընդ միմեանս և վրդովեաց. ապա յոր ինչ սխալէին այլք և չարաչար խորհէին, ինքն կազմէր և զարգանայր ընդդէմ բոլորեցուն: Եւ իբրև երկարելով պատերազմին տառապեալ` հզօրքն յայնժամ, իսկ այժմ նեղեալքն թեբայեցիք, յայտնի էր ամենեցուն թէ հարկաւ առ ձեզ էին ապաւինելոց, Փիլիպպոս` զի մի այդ լինիցի և մի քաղաքքս 'ի մի միաբանութիւն եկեսցեն, ձեզ խաղաղութիւն և նոցա օգնութիւն խոստացաւ: Արդ` զինչ եղև նմա նպաստ յըմբռնել զձեզ գրեթէ 'ի կամաւոր պատրանս: Այլոց հելլենացւոցն խարդախութիւն կամ տգիտութիւն, կամ թէ զերկոսին ևս ասել. որք յորժամ անդուլ և երկայն պատերազմ մղէիք դուք, և այն` առ հասարակաց ամենեցուն օգուտ, որպէս յարդեանց իրացն յայտ եղև, ոչ արծաթով, ոչ անձամբք

և ոչ այլով իւիք ամենևին չեղեն ձեզ զօրավիգն · յորոց յի-րաւի և յարժանի բարկացեալ ձեր՝ յօժարութեամբ ան-սացէք Փիլիպպոսի ։ Ապա ուրեմն , յանձն առեալն յայն-ժամ խաղաղութիւն՝ յայսցանէ , և ոչ՝ որպէս զայդ չարա-խօսեաց , յինէն կատարեցաւ ։ Եւ գտցես 'ի նմին զառակրա-տութիւնս և զկաշառակերութիւնս , եթէ ոք ողջմտու-թեամբ խոյզ և խնդիր առնիցէ , այժմու եղելոց իրացս զատանիցէ պատճառս ։ Եւ զայս ամենայն Ճշգրիւք ստուգա-պատում առնեմ վասն Ճշմարտութեան · զի թէ թուեցի ինչ յայսոսիկ առաւել իմն մեղս , ոչ իմ ինչ է բնաւ , այլ որ առաջին խօսեցաւ և 'ի միտ արկ զխաղաղութիւն՝ Արիստո-դեմոս էր կատակերգակն [12] , և որ առն և գրեաց և զանձն վասն այնր եւ ընդ գմա 'ի վարձկանութիւն՝ Փիլոկրատէս ագնուսացի , քոյդ , Եսքինէս , և ոչ իմ զոլոդ , թէ և պայ-թեսցիս սուտ խօսելով ։ Եւ որ ջատագովն կացին նմա , յոր և է աղագս , զի զայդու զանց առնեմ առ տեղեաւս , Եւբուլոս և Կեփիսոփոն [13] , իսկ ես՝ բնաւ և ոչ ուրեք երբեք ։

Բայց թէպէտ և այսոքիկ այսպէս , և 'ի Ճշմարտութե-նէն վկայեալք , դու սակայն յայն լրբութիւն եկն , մինչև ժպրհել ասել զիս՝ ոչ միայն խաղաղութեանն արարօղ , այլ և խափանիչ քաղաքիս՝ չառնելոյ զայն համաշխարհական հելլենացւոցն ժողովն ։ Իսկ արդ , ո՛վ . . . զի՞նչ արդեօք իսկաբանեալ կարդասցէ ոք քեզ անուն . . . եթէ իցէ՞ ու-րեք , ուր քո անդ մերձ կացեալ՝ տեսեր զի յայնպիսի մեծ գործոյ և 'ի նիզակակցութենէ , որպիսի այժմս ողբերգե-րէն Ճամարտակեցեր , զրկեցի ես զքաղաքս , և զայրացա՞ր ինչ . կամ յառաջ մատուցեալ՝ ուսուցե՞ր և պատմեցե՞ր զայսոսիկ որովք այժմս չարախօսես ։ Եւ սակայն , եթէ իմ վաճառեալ էր Փիլիպպոսի զխափանած միաբանութեան հելլենացւոց , քեզ մնայր չլռել , այլ աղաղակել և վկայու-թիւն դնել և յայտ առնել սոցա ։ Զայդ ոչ ուրեք արա-րեալ քո , և ոչ ուրուք լուեալ 'ի քէն զայդ բարբառ ։ Եւ

յիրաւի. քանզի և չգոյր ինչ յայնժամ առ որ 'ի Հելլենացւոց առաքեալ հրեշտակութիւն, այլ վաղուց ծանուցեալ էին ամենեքեան զմիտս իւրեանց. և դա առողջ ինչ ոչ խօսեցաւ զայսցանէ: Թող զայդ, չարաչար զրպարտէ դա և զքաղաքս 'ի ստութիւնս իւր: Զի եթէ դուք զՀելլէնս 'ի պատերազմ հրաւիրեալ, համայն և առ Փիլիպպոս հրեշտակս առնէիք վասն հաշտութեան, զԵւրիբատեայ [14] իրան, ոչ զգործ քաղաքի և ոչ զարանց բարեաց, լինէիք գործեալ: Այլ չէ և չէ այդ այդպէս: Զի յի՞նչ միտս, յի՞նչ կամս առաքէլոց էիք զնոսա 'ի ժամանակի անդ. միթէ վասն խաղաղութեա՞ն. այլ հաստատեալ կայր առ ամենեսեան. իսկ միթէ վասն պատերազմի՞. այլ դուք ձեզէն 'ի հաշտութիւն խորհէիք: Ապա ես՝ ոչ իսկզբանէ խաղաղութեան առաջնորդ և ոչ միաբանակար ինչ եղեալ դատանիմ. և ոչ յայլում ամենայնի՝ զոր ստեաց դա զինէն՝ ճշմարիտ ինչ ուրեք երևի:

Արդ, իբրև արար քաղաքս զհաշտութիւնն, տեսէք արդ դարձեալ՝ զինչ իւրաքանչիւր ոք 'ի մէնջ ընտրեաց գործել. զի աստի առնիք 'ի միտ, ո՞վ այն ինչ ոք էր՝ որ յամենայնի գործակից էր Փիլիպպոսի, և ո՞վ ոք վասն ձեր ջանահնար և օգտի քաղաքիս 'ի խնդիր: Ես եղեալ իմ խորհրդականն՝ հրաման ետու հանել, նաւել հրեշտակացն ձեպով ընդ կարճոյ ճանապարհ ուր և գիտիցեն լինել զՓիլիպպոս, և առնուլ 'ի նմանէ զերդմունսն. իսկ նոքա և ոչ յետ հրամանին կամեցան առնել զայն: Իսկ առ ինչ էր այդ, ո՞վ արք աթենացիք. ես պատմեցից: Փիլիպպեայ շահ այն էր, զի հարուստ մի ժամանակ 'ի մէջ անցցէ երդմանցն, և ձեզ՝ զի սակաւ: Ընդէ՞ր: Զի դուք ոչ միայն յօրէ յորմէ երդուայքն, այլ յորմէ ակն կալայք լինելոյ հաշտութեանն, զամենայն կազմութիւն պատերազմի լուծէք լքէք. իսկ նա յամենայն ժամ առաւել ևս յայն հանդերձէր, ակն ունելով, որ և ճշմարիտ իսկ էր, թէ որ ինչ յառաջ քան զերդմանցն կալեալ վաղ անձապարեալ զքուածն առիցէ 'ի վերայ քաղաքիս, զայն ամենայն հաստատութեամբ կալցի անխա-

պտուտ. զի ոչ սակս այնր ինչ չերեւցէ որք զհաշտութիւնն։ Որոց իմ՝ յառաջատես և խելամուտ եղեալ, ով որք աթենացիք, հանել ետու զհրամանն զայն՝ նաւել ուր Փիլիպ-պոսն զատանիցի, և վաղագոյն զերդմունս ուխտեցին ընդու-նել. որպէս զի մինչ դեռ 'ի ձեռս Թրակացւոց՝ մերոց նե-ղակակցացն էին տեղիքն, զորս դա 'ի հեռուն արկ այժմիկ, Սերրիոն և Միրտոնն և Եղզիակէ [15], այնպէս կռուեցին զա-շխէքն, զի մի անձապարեալ կալեալ նորա զամուր ամուր տե-ղեան՝ տիրասցի Թրակիոյ, և բազում զանձիւ և զօրու ան-քացեալ, զիւրա այնուհետեւ յայլ եւս իրս ձեռնարկեցէ ըն-նիցի։ Արդ դա զհրամանն զայն ոչ առնէ և ոչ ընթեռնու. իսկ զի ես խորհրդականս՝ պարտ վարկայ մուծանել առ ձեզ զհրեշտակսն, զայն ազդարարէ։ Այլ արդ է զի՞նչ արժան էր առնել. չհրամայեր մուծանել զուղերկեալսն առ 'ի ընդ ձեզ խօսելոյ, կամ պատուէր տալ ճարտարապետացն [16] ար-գելուլ 'ի նոցանէ զտեսիլ հանդիսին. սակայն երկուց դան-գաց գոյր նոցա հասանել կալ 'ի գնոյն տեղեաւոցն, եթէ չէր մեր տուեալ զչէր հրամանսն։ Զինչ շահուց քաղաքիս պա՞րտ զօրութեան էր ինձ տալոյ առնել, և զայլն ամենայն իրաց զդասս վաճառականաց առնել Փիլիպպոսի. քա՛ւ, անէր ծն անգէր 'ի բաց տար։

Այլ արդ առ կարդա ինձ զհրամանն, զոր հաւատար գիտակեալ դորա՝ զանց արար։ Կարդա։

## ՀՐԱՄԱՆ

« Առ իշխանաւն Մնեսիփիլեաւ, որ օր վերջին էր Հեկա-տոմբէոնի, 'ի նախագահութեան [17] պանդիոնեան ցեղին, Դիմոսթենէս զԴիմոսթենեան այէանեցի ասաց. Քանզի Փի-լիպպոս հրեշտակս առաքեալ 'ի հաշտութիւն՝ եդ դաշինս հաւանութեամբ, հանձն թուեցաւ առնելի և ժողովրդեան աթենացւոց՝ 'ի կատարումն հաշտութեանն յանձն առե-լոյ [18] յառաջնում ժողովի ժողովրդեան, ընտրել անդէն

հրեշտակս հինգ՝ յամենայն աթենացւոց, և 'ընտրելոցն չորեքեան գնալ առանց երից յապաղանաց՝ ուր ուրեք եւ[illegible]տուգեսցեն զՓիլիպպեայ, և առնուլ զերդմունսն 'ի [illegible]նէ և տալ փութանակի 'ի վերայ ընկալեալ ուխտից նորա ընդ ժողովրդեանն աթենացւոց, զերկոցունց եւս նիզակակիցս 'ի միասին առեալ: — Հրեշտակ ընտրեցան Եւբուլոս Անափլիստացի, Եսքինէս Ատրոմետեան Կոթոկիդեցի, Կեփիսոփոն Հռամնուսեցի, Դեմոկրատէս Փլիացի, Կլէոնէ Կոթոկիդեցի:»

Յետ զայս իմ հրաման հանելոյ յայնժամ, և օգուտ ըղքաղաքիս հայթայթելոյ և ոչ զՓիլիպպեայն, պատուական հրեշտակքդ այդոքիկ անփոյթ արարեալ նստան 'ի Մակեդոնիա լի և լի ամիսս երիս, մինչև դարձաւ եկն Փիլիպպոս 'ի Թրակիոյ, զամենայն ինչ յիւր վատարեալ անդանօր. մինչ դեռ գոյր՝ յաւուրս սակաւ, նա մանաւանդ յերիս կամ 'ի չորս, հասանել 'ի Հելլեսպոնտոս, և ապրեցուցանել զամուրսն կալեալ դաշանցն, մինչ չև Թափեալ նորա զայնս: Քանզի 'ի լինել մեր անդ՝ ոչ մերձենայր 'ի նոսա, կամ ոչ մտանէաք ընդ նմա յուխտ. ուստի և վկէք գտանէր 'ի հաշտութենէն, և ոչ Թէ զերկոսեան եւս զբռամբ արկանէր, և զամուրսն և զհաշտութիւնն:

Արդ՝ 'ի հրեշտակութեան անդ առաջին գողօնք Փիլիպպեայ և կաշառաբեկութիւն արանցդ այդոցիկ անիրաւաց և ատելեաց դից՝ այդպիսի եղև. որոյ վասն՝ և յայնժամ և այժմ և յամենայն ժամ խոստովան լինիմ պատերազմել և ընդ հակառակս դոցին ելանել: Այլ վաղվաղակի հետ՝ այլ եւս ինչ ահագին քան զայդ տեսանիցէք վրիժագործութիւն:

Քանզի երբև ուխտեաց զհաշտութիւնն Փիլիպպոս, նուաճեալ նախ զԹրակիա 'ի ձեռն դոցա հնազանդելոց 'ի հրամանէս, դարձեալ միւսանգամ կաշառագնեաց ընդ դոսա լինէր, մի գնալ մեկնել 'ի Մակեդոնիոյ՝ մինչև զպայսն 'ի վերայ փոկկիացւոց ամենայն կազմութեամբ պատրաստ յօ-

ընկեսցէ. զի դուցէ 'ի ցուցանել նոցա աստ՝ թէ հանդերձեալ է և կազմի 'ի չու, ելանիցէք խաղայցէք դուք, և ծովեալ պատերազմիկ նաւուքդ 'ի Դրուանն, որպէս յառաջն, փակիցէք զկիրճն. այլ ընդ լսել ձեր 'ի պատմելոյ դոցա զայդոսիկ՝ և նա 'ի ներքս անդ 'ի կապանն 'ի Դրուանն լինիցի, և դուք մի ինչ ունիցիք առնել: Այնպէս յաճի և 'ի մեծի տագնապի կայր Փիլիպպոս, թէ. դուցէ և յետ փութալոյ իւրոյ յայդոսիկ, մինչ չև զփոփոխկնացեան կորուսեալ նորա, ձեր իրազեկ եղեալ՝ հրաման տայցէք խաղալ հասանել նոցա 'ի Թիկունս, և իրքն զերծանիցին ելցեն 'ի ձեռաց իւրոց. վասն որոյ կրկին կաշառէ զԹեքակոծելին զայդ արհամարհ, ոչ հասարակ ընդ այլ հրեշտակսն, այլ ինքնուրոյն առանձինն, զայս ինչ և զայս զալ խօսել առ ձեզ և խոստանալ, որովք ամենայն ինչ գնաց կորեաւ:

Բայց աղաչեմ և խնդրեմ, ո՛վ արք աթենացիք, զայս ձեզ յուշի կալսել ընդ բովանդակ պայքարս, զի եթէ չէր ինչ այլ արտաքոյ ամբաստանութեանն դատախազեալ Եսքինեայ, և ոչ ես այլ ինչ բան ասար 'ի ներքս խառնէի. այլ նորա զամենայն բարբառս և զհայհոյութիւնս միահաղոյն արկեալ 'ի վար, հարկ է և ինձ առ ամենայն չարախօսութիւնս դորա կարճ 'ի կարճոյ տալ պատասխանի:

Արդ զի՞նչ նախատանութիւնք էին դորա յայնժամ, որովք ամենայն ինչ կորեաւ: — Թէ չէ պարտ խռովել ընդ մերձանել Փիլիպպոսի 'ի Դրուանն, զի զամենայն զոր կամիք լինիցի՝ եթէ 'ի հանդարտութեան կացջիք. և յետ երկուց կամ երից աւուրց լուիջիք, զի որոց թշնամի դայ՝ բարեկամ լինիցի, և որոց բարեկամ՝ ընդ հակառակն թշնամի: Ձի ոչ եթէ բանք, ասէր նազաբանելով, սերտեն զմտերմութիւն, այլ միաբանութիւն 'ի նոյն մի շահ օգտի. և Փիլիպպոսի և փոկիսացւոց և ձեզ ամենեցուն օգուտ այն է, զերծանել յանզգայութենէ և 'ի պերճանացն թեբայեցւոց: — Զայդոսիկ մտադիւր իմն լսէին ոմանք 'ի զմանէ վասն յայն ժամու ատելութեանն ընդ Թեբայեցիս: Արդ զի՞ եղև

եա ընդ եա վաղվաղակի, ոչ առ 'ի յերկարս ինչ։ Զաւառա-կան փոկկիսացւոց կործանել, քաղաքաց նոցա բրել և խլել, և ձեզ՝ որ հանդարտեալ կայիք և սորա 'ի բանի, սուղ ինչ զկնի ժողովել զկահ և զկարասի ձեր 'ի վայրաց վայրաց, և զմա՝ ըմբռնել զոսկին․ և առ սոքօք դարձեալ՝ ատելութիւնն առ Թեբացիս և առ Թեսաղացիս՝ քաղաքիս եղև, իսկ շնոր-հակալութիւն 'ի վերայ եղելոցն՝ Փիլիպպոսի։

Եւ զի այս այսպէս է, կարդա ինձ զԿալլիսթենեայ հրա-մանն և զհրովարտակն Փիլիպպոսի, յորոց յերկոցունց ան-տի այս ամենայն յայտնի լինիցի ձեզ։ Կարդա։

## ՀՐԱՄԱՆ

« Առ Մնեսիփիլեաւ իշխանաւն՝ հրամանաւ նախարարե-աց և ատենին ժողովեալ ժողովրդեանն 'ի զօրապլեաց 19, որ օր քսան և մի էր Մեմակտերիոնի, Կալլիսթենէս ետէո-նիկեան փալերացի ասաց․ Մի ումեք յաթենացւոց մի իւիք պատճառանօք 'ի վայրի օթել, այլ յոստանին և 'ի Պիրէո-նի, որոց չիցէ 'ի պահպանութիւն կարգեալ։ Եւ սոցա իւ-րաքանչիւր զտեղին յոր կարգեցանն՝ պահել անմեկնինք 'ի տուէ և 'ի գիշերի։ Եւ որ ոչն հնազանդեսցի հրամանիս այսմ, ընդ մատնչան պարտաւոր լիցի պատժոց, եթէ ոչ յանհնարս ինչ զանձն ցուցանիցէ եկեալ։ Եւ զանհնարիցն դատաստան՝ տեսցէ զօրապետն ստորիկան զինուց, և զան-ձարեան և խորհրդեան դպիրն։ Ժողովել արագ արագ և զամենայն ինչ 'ի վայրաց․ զոր 'ի սահմանի հարիւր և քսան վտաւանաց՝ յոստանն և 'ի Պիրէոն, իսկ զոր արտաքոյ վտա-ւանաց հարիւր և քսանից՝ յԵղեւսիս, 'ի Փիլէ, յԱփիդնա, 'ի Հռամնուս, 'ի Սունիոն։ Ասաց Կալլիսթենէս փալե-րացի։ »

Մինթէ զոյն՞ն ակնկալութեամբք արարէք զխաղաղու-թիւնն, կամ թէ զայդոսի՞կ աւետաւորեաց ձեզ վարձկանդ այդ։

Այլ ընթերցիր և զհրովարտակն՝ զոր յետ այնորիկ առաքեաց այսր Փիլիպպոս ։

## ԹՈՒՂԹ ՓԻԼԻՊՊՈՍԻ

« Թագաւոր Մակեդոնացւոց Փիլիպպոս, աթենացւոց խորհրդեանն և ժողովրդեան խնդալ ։

« Գիտուն լիցի ձեզ, զի անցաք մեք ընդ Դրունսն, ըզփոկկիսաստան ընդ մեօք նուաճեցաք, և որ միանգամ մտադիւր 'ի մեզ յարեցան քաղաքք՝ մուծաք 'ի նոսա պահակապանս. իսկ զատամբակեալսն առեալ ուժով և 'ի հարկի ծառայութեան կացուցեալ՝ յատակեցաք ։ Բայց լուր առեալ զկազմութեան ձերոյ յօգնականութիւն նոցին՝ գրեցի առ ձեզ, զի մի ընդունայն ինչ աշխատ լինիցիք յայդոսիկ ։ Զի համայն ասել, ոչ չափաւորութեամբ ինչ գործել թուիք՝ յետ ընդ իս հաշտութեան դաշանց՝ տակաւին ճակատել յիմ վերայ, և զայդ՝ ուր փոկկիսացիք չեն 'ի մերոց հասարակաց ուխտից համարի ։ Վասն որոյ՝ եթէ չկայցէք մնայցէք 'ի դաշինս, ոչ ինչ աւելի առնիցէք՝ բայց կանխել յանիրաւութիւն ։ »

Լսէք զիարդ հաւաստի յայտ առնէ և կնքէ 'ի թղթի այդր առ ձեզ առ նիզակակիցս իւր, թէ զայս ամենայն արարի ես և կատարեցի յակամայս աթենացւոց և 'ի հեճուկս. վասն որոյ, եթէ բարւոք խորհիցիք, ով թեբայեցիք և թեսաղիացիք, զդոսա առ թշնամիս ունիցիք և յիս հաւատայցէք ։ Ոչ սոյին բանիւք գրեալ, բայց 'ի ներքոյ զայս նշանակեալ կամացն ։ Այսպէս այնուհետև ա՛ռ գնաց զնոսա. մինչև ոչ իմիք յետ այնորիկ նախատես լինել նոցա և ոչ զգալ, այլ թոյլ տալ նմա տէր լինել ամենայն իրաց ։ Յայնմ ամենայնէ թշուառական թեբայեցիք յայժմու վիշտս վտանգին ։ Իսկ այսմ վատահութեան ձեռնտու և զօրավիգն, և

այսր՝ ստութեանց աւետաւոր և ձեր դաւաճան, դա այդ է որ այժմ ընդ կարիս Թեբացւոցն յողբս հարեալ պատմէ զողորմ ողորմ աղէտսն, մինչ դեռ այնոցիկ և փոկկիսացւոցն եղերանց և որոց զամ մի Հելլենք կրեցին չարչարանս, ամենայնի դա ինքնին իսկ է պատճառ: Յայտ իսկ է՝ զի ցաւէ քեզ 'ի վերայ եղելոցն, Էսքինէս, ողորմիս և Թեբացւոցն, զի ստացուածք են քո 'ի Բիովտիա և զհողս նոցա մշակես. իսկ ես խնդամ, որ հետ ընդ հետ 'ի դոցին գործօնէն 'ի դատ պահանջեցայ [20]:

Այլ արդ գնացեալ անկայ 'ի բանս՝ զորս լաւ ես արդեօք պատշաճեցի ասել վայրիկ մի զկնի. վասն որոյ դառնամ զամ անդրէն 'ի ցոյցս անդր, թէ արդի իրացս պատճառք՝ դոցա ապիրատութիւնք եղեն:

Քանզի իբրև պատրեցայք դուք 'ի Փիլիպպոսէ 'ի ձեռն նոցա, որք առ հրեշտակութեամբքն վարձկան մտին նմա և ոչ ինչ ճշմարիտ ոչ պատմեցին ձեզ, խաբեցան և եղկելի փոկկիսացիք, և քաղաքանի իւրեանց սատակեցան, զի՞ ե֊ղև: — Թետալացիքն [21] անգոսնելիք, և ապաուշ Թեբացիք՝ բարեկամ, երախտաւոր և փրկիչ զՓիլիպպոս համարէին. նա էր նոցա ամենայն ինչ. և թէ այլ ինչ ոք ասել կամէր, չլսէին զձայնն: Իսկ ձեր՝ յեղելոցն կասկածեալ և գժգմնեալ, համայն 'ի խաղաղութեանն կայիք. զի և չգոյր ինչ ձեզ գործել առանձին. և այլ հելլենացիք՝ ձեզ նման խարդաւանեալք և վրիպեալք 'ի յուսոյն, ըղձմտութեամբ կային 'ի հաշտութեանն և նոքա, թէպէտ և յեղանակաւ իմն 'ի վաղուց հետէ հարեալք պատերազմաւ: Քանզի յորժամ Փիլիպպոս հրոս հանեալ՝ ասպատակ սփռեալ 'ի Իլիւրիկեցիս և 'ի Տրիբալլս և ուրեք ուրեք 'ի հելլենացւոց [22], վանեալ վկանդէր, և կուտէր առ ինքն զօր բազում և ստուար, և ոմանք հաշտութեանն օճանաւ 'ի քաղաքաց քաղաքաց անդր երթեալք կաշառաբեկ լինէին; յորոց մի էր և դա, յայնժամ ապաքէն յայնժամ ամենեքին՝ յորոց վերայ զայսոսիկ նիւթէր նա, մարտիւ

պատերազմի պաշարեալ կային։ Իսկ եթէ չզգային, այն այլ եւս հանճար է, և ինձ չէ ինչ փոյթ. վասն զի ես կամէի ասէի և վկայութիւն դնէի և առ. ձեզ համառօտ, և յո՛ և առաքէի [23]։ Բայց քաղաքք յախտի կային ջերմեալք, զի վարիչք և գործակալք աւանդին կաշառս և ընչիւք զեղծանէին. իսկ սոսկականք և ամբոխն՝ էր զի չկենէին յառաջատես, և էր զի՛ի հանապազորդ պղերդութեան և 'ի դատարկութեան խառնա ընմբռնեալ կային. և ամենեքեան իսկ այնպիսի կրէին կիրս, զի իւրաքանչիւր կարծեալ այնպէս էր, թէ 'ի նոսա միայն չժամանիցեն չարիքն, չլինիցին դատագիտ. այլ այլոցն վտանգք ակն ունէին զիւրեանցն յամրի և յանկասկածի ունել երբ և կամիցին։ Այնուհետև, որպէս կարծեմ, փոխարէն մեծի և սարաժամ հեղգութեան խառնակաղանձին՝ եհաս նմա յազատութենէն անկանել, և առաջնորդացն՝ որ բաց միայն յանձանց զայլն ամենայն վաճառել վարկանէին, խեղամտեալ լինել՝ զի նախ զինքեանս էին վաճառեալ. զի փոխանակ սիրելեաց և հիւրոց, որպէս կոչէինն 'ի կաշառել իւրեանց, այժմ սուտակապաս և սատուածոց ատելի և այլ ինչ եւ անուանս լսեն վայելչականս զամենայն։ Արժան և իրաւ. զի ոչ ոք, ո՛վ արք աթենացիք, 'ի չահ օգտի մատնչէին ինչս ծախէ. և ոչ, եթէ և գնեալցն տէր լինիցի, խորհրդակից այնուհետև առնու երբեք զմատնիչն. զի ոչ ինչ երջանկագոյն քան զմատնիչն գտանէր յայնժամ։ Այլ չէ այդպէս և չէ։ Իսկ զիա՞րդ։ Տէր օն անդր բացէ 'ի բաց։ Այլ եթէ իշխանութեանն հետամուտ՝ հասու եղեալ զամ մի 'ի բուռն արկ զիրսն, և տէր է նոցին խարդախողացն, և անզգամութեանն տեսող, յայնժամ ապա յայնժամ և ատեայ և չաւատայ և ընդ գուեհ ածէ։ Իսկ արդ. մեա դիք. զի թէպէտ և անց գնաց իւրացն ժամանակ, բայց մնացեալ միշտ է ժամանակ այսոցիկ տեղեակ հմուտ լինելոյ։ Լասթենէս բարեկամ անուանէր Փիլիպպոսի մինչև մատն և տուր եղև Ողինթեայ, Տիմոլաւոս՝ մինչև կորոյս զԹեբէ, Եւդիկոս և Սիմոս Լարիսացիքն՝ մինչև զԹեսալիա

տուարքն ընդ Փիլիպպեաւ. ապա տիեզերք ամենայն լցան խռնեցան մատնչօք, որ հալածականք եղեն և 'ի Թշնամանս, և զի՞նչ մնաց 'ի չարեաց որ չանց ընդ նոսա: Զի՞նչ ընդ Արիստրատոս 'ի Սիկիոնի, և զի՞նչ ընդ Պերիլաոս 'ի Մեգարա. ո՞չ հերքեալ ընկեցան: Յորոց ամենայն հաւաստեաւ տեսանիցէ ոք, զի որ առաւել զգուշանայ իւրում հայրենի աշխարհին և յաճախ ընդդիմանայ սոցա, նա ինքն, Եսքինէս, նա ձեզ մատնչացդ և վարձկանաց նօթձէ որով կաշառակուրծ լինիջիք. և առ նոցաւն բազմութեամբ և հակառակորդաց խորհրդոցդ ձերոց՝ 'ի միջի էք դուք այսօր ողջք և վարձաւորք. ապա թէ ոչ, դուք ձեզէն ձերովկանն՝ վաղու եւս էիք կորուսեալ:

Թէպէտ և այլ ինչ բազում կայր ինձ զայսն ժամու եղելոցն ասել, զայս եւս քան զբաւականն աւելի համարիմ ասացեալ: Բայց պատճառ նորին է. զի զչարութեան իւրոյ և զանիրաւութեանցն շմալով ժայթքեաց յիս զերկեան անզգոյթս, յորոց հարկ էր 'ի բաց լուանալ ինձ առաջի կրտսերագունից քան զիրացն ժամանակ: Ո՛ գիտէ՝ Թախանձ եղեալ մղձկեցայք և դուք, որ մինչ չև ևս իմ ասացեալ ինչ՝ տեղեակ էիք վարձկանութեան դորա 'ի ժամանակին: Իսկ նա բարեկամութիւն և հիւրութիւն [24] զայն անուանէ. և արդ իսկ ասաց ուրեք, թէ զԱղեքսանդրի հիւրութիւնն՝ նախատելով զնէ ինձ: Ե՞ս քեզ զհիւրութիւնն Աղեքսանդրի. ո՞ւստ ուստեք ընկալեալ քո զայն, կամ զի՞արդ եգեալ արժանի: Քա՛ւ լիցի՝ Փիլիպպեայ հիւր կամ Աղեքսանդրի բարեկամ զքեզ ասել. ոչ մոլիմ այդպէս. բայց եթէ զմշակս, կամ որ այլ ինչ իրիք՝ վարձուք 'ի սպասու կայցեն, բարեկամս և հիւրս որոց 'ի վարձու ունիցին արժան իցէ կոչել զնոսա: Այլ չէ և չէ այդ այդպէս: Զի՞արդ: Նա և քաջ 'ի բաց իսկ հեռի: Նա առանիկ ես զքեզ նախ Փիլիպպոսի և այժմ Աղեքսանդրի վարձկան կոչեմ, այլ և սոքա ամենեքին ընդ իս. եթէ ոչ հաւատաս, հա՛րց զդոսա. նա մանաւանդ ես փոխանակ քո հարցից զայդ: Արդեօք

ձեզ, ո՛վ արք աթենացիք, Աղեքսանդրի հետ թուի լինել Եսքինէս, թէ վա՛րձաւոր[25] : . . . Լսեա զինչ ասեն :

Կամ է ինձ արդ և զգիրս ամբաստանութեան դորա առնել պատասխանի, և անցանել ընդ գործեցեալսն յինէն. որպէս զի Եսքինէս, թէպէտ և ինքնին քաջահմուտ, համայն լուիցէ՝ յէր սակս և հրամանատուրելոցս այսոցիկ, և ես մեծագունից քան զսոսա, համարիմ զանձն իմ արժանի հանդիպելոյ պարգևաց :

Աղէ կարդա ինձ զգիրն զայն ամբաստանանաց :

## ԳԻՐ ԱՄԲԱՍՏԱՆՈՒԹԵԱՆՆ

« Առ իշխանաւն Քերոնդեաւ, որ օր վեց էր Եղափեբոլիոնի, Եսքինէս ատրոմետեան կոթովկեցի մատոյց առ իշխանն գիր ամբաստանութեան անիրաւութեանց՝ զԿտեսիփոնէ Լեոսթենեան Անափլիստացւոյ. զի գրեաց հրաման անիրաւ, թէ պարտ և արժան է պսակել զԴիմոսթենէս զԴիմոսթենեան Պէանեցի ոսկի պսակաւ, և հռչակել 'ի տեսարանին՝ 'ի մեծ Սպանդարամետականսն, 'ի նոր ողբերգութիւնսն, թէ ժողովուրդն պսակէ զԴիմոսթենէս զԴիմոսթենեան զՊէանեցի պսակաւ ոսկեաւ վասն առաքինութեանն և խնամոտ մտացն ունելոյ հանապազ առ ամենայն հելլենացիս և առ ժողովուրդն աթենացւոց, և վասն բարեկամութեանն, և վասն զի գործէ և խօսի միշտ զօգտակարագոյնս ժողովրդեանն, և յօժարամիտ է առնել զոր կարող լինիցի զբարին : Զայս ամենայն՝ սուտ և անիրաւ գրեալ, ուր օրէնքն ոչ ներեն՝ նախ գիրս ստութեան 'ի դիւանս աշխարհին արկանել, և ապա՝ զպարտականն համարոյ պսակել, — և է Դիմոսթենէս պարսպաշէն և ոստիկան տեսարանաց[26]. — և դարձեալ չհրատարակել զպսակն 'ի տեսարանի 'ի Սպանդարամետականսն 'ի նոր ողբերգութեան. այլ եթէ ատեանն պսակեսցէ, 'ի խորհրդարանին քարոզել. իսկ եթէ քաղաքն, 'ի Պնիքսի՝ 'ի ժողովս ժողովրդեան :

Տուգանք՝ յիսուն տաղանդ ։ Վկայք [27] դատախազութեանս՝ Կեփիսոփոն Կեփիսոփոնեան Հռամնուսացի, Կլէոմէս Կլէոնեան Կոթովկեցի ։ »

Եւ արդ, ո՛վ արք աթենացիք, զոր ինչ ամբաստան լինի զհրամանէն, այդոքիկ են ։ Եւ ես 'ի դոցունց իսկ յայդեցանէ ակն ունիմ աստանօր յայտ առնել ձեզ, թէ զամենայնէ արդար տաց զպատասխանիս . քանզի զնոյն նման նմին զբասրանացն կալեալ կարգ, զամենայնէ մի ըստ միոջէ առացից կարդալ, առանց ինչ կամաւ պակաս առնելոյ ։ Արդ՝ քանզի գրեալ է թէ գործեմ և խօսիմ հանապազ զօգտակարագոյնս ժողովրդեան, և յորդոր եմ 'ի բարին որում ձեռնհասն իցեմ, և գովեալ զիս 'ի նոսին, զայդոցիկ դատաստան 'ի գործս տեսչութեան իմոյ կարծեմ լինել ։ Զի 'ի նոցին քննութենէ՝ կալ լիցի ձեզ 'ի վերայ, թէ ճշմարիտ արդեօք և 'ի ճահ գրեաց զինէն զայդոսիկ Կտեսիփոն, եթէ սուտ ։ Եւ զի չյաւել 'ի գրին՝ թէ յետ զհամարան տալոյ պսակել, և 'ի տեսարանին զպսակն քարոզել հրամայեաց, և զայդ կարծեմ կցորդ լինել ընդ գործս տեսչութեան իմոյ, և թէ իցեմ ինչ արժանի պսակի և քարոզելոյ 'ի միջի սոցա, և եթէ ոչ ։ Թուի ինձ թէ և զօրէնսն ըստ որոց մարթէր զմա նամակագիր լինել՝ ցուցանելի է ։

Այսպէս իմ, ո՛վ արք աթենացիք, եղեալ է.'ի մտի՝ իրաւամբք և պարզաբար զպատասխանիս առնել ։ Բայց եկից և 'ի գործեցեալսն իմ . և մի՛ ոք համարիցի զիս՝ օտարել զճառս ամբաստանութեանցն՝ յորժամ 'ի հելլենականսն երթեալ անկանիցիմ 'ի գործս և 'ի բանս ։ Զի որ դատախազն է յարուցեալ՝ լաւագունացն խօսող և գործօղ լինելոյս ըստ հրովարտակին, և որպէս ոչ ճշմարիտս զայժմսիկ չարախօսեաց, նա է որ զճառս ամենայն քաղաքավարութեանց իմոց և ըղգործոց՝ կարևոր պիտոյս և հարկաւորս կացուցանէ 'ի փուրսիչ ամբաստանութեանն ։ Թող զայդ, և քանզի բազում ընտրութիւնք են քաղաքավարութեան, ես զհելլենական

իրացն յանձն էնկալայ ․ վասն որոյ և զհաւատարիս՝ 'ի նոցունց առնել արժան է ինձ և իրաւ ։

Արդ՝ զոր յառաջագոյն քան զիմ վարչութիւն և զհրապարակախօսել կանխեաց կալաւ և գրաւեաց 28 Փիլիպպոս, 'ի բաց Թողեալ, զի ոչ յիս ինչ մօտ լինել համարիմ, իսկ յորոց արգելեալ կարճեցաւն նա՝ յօրէ յորմէ յայգունի 'ի մէջ եկեալ երևեցայ ես, զայն ամենայն յիշատակեցից և զնոցին համար կալայց ․ զայս եւեթ յաւելեալ առ տեղեաւս ։

Փիլիպպոսի, ով արք աթենացիք, մեծ ինն առաւելութիւն գոյր, զի առ հելլէնս, ոչ առ ոմանս եւեթ, այլ առ ամենեսեին առ հասարակ, առհմնկանոք բուսան բղխեցին մատնիչք և կաշառակուրծք և աստուածոց ատելի որեար, այնչափ՝ որչափ ոչ ուրեք յուշ զայս երևեալ երբեք յառաջագոյն ։ Զորս մարտակից և օգնական առեալ Փիլիպպեայ, զկանխաւ խեթացեալսն ընդ միմեանս զհելլենացիս և զխեռեալս՝ չար ևս պառակտեաց, էր զոր խաբելով, էր զոր կաշառաւ խթելով, և էր զոր ամենայն օրինակաւ զեղծուցեալ ․ և ձեղքեալ պատառեաց 'ի ծուէնս ծուէնս, ուր ամենեցուն մի էր օգուտ, խափանել զբարգաւաճանս նորին ։ Եւ զի յայսմ պայմանի էին հելլէնք առ հասարակ, և յանգիտութեան՝ առ ոտս բուսեալ չարին, պարտ է ձեզ, ով արք աթենացիք, միտ եդեալ նայել՝ զինչ ընտրել 'ի դէպ էր քաղաքիս 'ի գործել և առնել, և զայնր համարս պահանջել յինէն ․ զի որ յայնմ վայրի վարչութիւն զանձն մատոյց, ես ինքնին իսկ եմ ։ Արժա՞ն ինչ էր արդեօք քաղաքիս, Եւքինէս, Թողեալ զհմաստութիւն և զպատիւ իւր, 'ի Թետալացւոց և 'ի Դոլոպացն դասու գործակից Փիլիպպոսի մտանել՝ զի 'ի ձեռս բերցէ նա զիշխանապետութիւն հելլենացւոց, և զնախնեացն պարծանս և զիրաւունս աղարտել ․ կամ Թէ զայդ չառնել, քանզի արդարև զժնդակ իսկ է, այլ զոր ինչ տեսանէրն մօտ առ դուրս հասեալ 'ի չխափանել ուրուք, և զոր 'ի հեռուստ իսկ՝ որպէս Թուի՝ նշմարէր, զայն ամենայն 'ի դալ հասանելն ընդ վայր հարկանել ։

Այլ որ զգործեցեալսն սաստկակոծ առնէ սանդարամականօք, ես այժմ մտադիւրութեամբ պահանջեցից 'ի նմանէ : Ցորմէ կողմանէ կամէր լինել զքաղաքս. արդեօք ընդ սատամբս աղետիցն և ձաղանաց հասելոյ հեղինակացւոց, զոր 'ի Թեսաղիացիսն և յընկերշականս նոցին պատաշաճեցուցանէ ռք. կամ ընդ արհամարհօղս լինելոցն՝ 'ի յոյս զօշաքաղութեան իւրեանց, յորս դասեցուք զարկադացիս, զմեսնացիս և զարգիացիս : Բայց և յոլովք 'ի սոցանէ, նա և բնաւք իսկ, չար են քան զմեզ կոր 'ի գլուխ ելին վատթարեալք : Զի եթէ ընդ սիրեսն և անցեալ զնայր վաղվաղակի Փիլիպպոս, և խաղաղ մնայր այնուհետև, և ոչ ինչք զոք 'ի դաշնակցացն և ոչ յայլոց հելլենացւոցն խռովէր, համայն և այնպէս գոյր ինչ բարիք և գործ որոց ոչն կացին հակառակ զնացից նորա : Իսկ եթէ զամենեցուն սպառասպուռ զղատիւ, զպետութիւն և զազատութիւն բառնայր ընդէր, մանաւանդ թէ և զքաղաքավարութիւն ես զորոց և կարէր, զիա՞րդ ապա ձեր ըստ իմում խրատուս եկեալ՝ և չիցէ առեալ խորհուրդ փառաւորագոյն քան զամենայն :

Բայց անդրէն դարձ առնեմ : Զի՞նչ անկ էր, Եսքինէս, առնել քաղաքիս, 'ի տեսանելն զՓիլիպպոս՝ զի հարդէր յարդարէր անձին զիշխանութիւն և զբռնակալութիւն հելլենացւոց . և կամ զի՞նչ պարտ էր ինձ խօսել կամ գրել՝ խորհրդականնիս յԱթէնս, — զի և յայդմ խոհր մեծ կայ, — որ ընդ ամենայն ժամանակսն՝ մինչև յօրն յորում ամբարձայ ես յատեան՝ տեսանէի զաշխարհն իմ ցանդ 'ի մերայ զգլխաւորութեան և պատուոյ և փառաց նահատակեալ, և վասն այնր պարծանաց և օգտի ամենայն հելլենացւոց՝ տուաւեալ ծախսեալ ինչս և անձինս քան զծախս այլոց իւրաքանչիւր հելլէն ժողովրդոց վասն իւրեանց : Եւ զինքնին զՓիլիպպոս՝ ընդ որում էր ձեզ կռիւ, տեսանէի՝ զի վասն իշխանութեան և հարստութեան մի ական խոց կալր[29], անրակ խորտակեալ, խեղ և հաշմ ձեռն և ազդր, և զոր և յանդամոց մարմնոյն կամիցի առնուլ բախտն, 'ի պատրաստ

տի ունէր ընկենուլ զամենայն հեշտարար, եթէ միայն մնա-ցէ լռին՝ 'ի պատիւ և 'ի փառս կեցէ: Սակայն իշխէր ասել և ոչ ոք, թէ սնեալն 'ի Պէլլա գիւղ անշան յայնժամ և փոքրիկ՝ այսչափ ինչ մեծանձնութիւն անկ իցէ 'ի հոգւոջն, մինչև հելլենացւոցն իշխանութեանն ակն դնել, և զայն 'ի միտ արկանել, և թէ ձեզ աթենացւոցդ՝ զօր ամենայն յա-մենայն ատենախօսութիւնս և 'ի տեսարանս՝ նախնեացդ առաքինութեանն յիշատակաց ականատես և ականջալուր եղելոցդ՝ այսքան վատթարութիւն ընկեցի, մինչ զի կամա-կար մտօք ինքնաձեռն մատուցանել Փիլիպպեայ զհելլե-նացւոցն ազխկամութիւն: Զայդ և ոչ ոք ունէր ասել:

Մնայր ուրեմն և հարկ իսկ էր, զամենայն զոր նայն ընդ-դէմ անիրաւեալ գործէր՝ ձեզ այժմ իրաւամբք ընդդէմ կալ: Զայն և գործէիք դուք իսկզբանէ վայելուչ և ըստ արժանի. եւ գիր հանէի և խորհուրդ տայի՝ որչափ ժաման-նակս 'ի քաղաքավարութեանն կայի. զայդ և ընծիմ իսկ խոստովան: Իսկ զի՞նչ արժան էր ինձ առնել. ահա հար-ցանեմ զքեզ, թողեալ զայլն ամենայն, զԱմփիպոլիս, զՊիդ-նա, զՊոտիդէա, զՀալոննեսս. և ոչ զմի յայդցանէ ոչ յի-շեմ. զՍերրիոն, զԴորիսկոս և զՊեպարեթեայ աւերածն, և զօր այլ ևս այսպիսի զրկանս զրկեցաւ քաղաքս, և գիտեմ իսկ ոչ թէ եղեն բնաւ: Եւ սակայն՝ դու ասացեր, թէ զայ-դոցիկ ճառս 'ի մէջ առեալ իմ՝ առելի զսոսա արարի. ուր այդոցիկ հրամանքն՝ Եւբուլեայ և Արիստոփոնի, և Դիո-պիթեայ [30] էին, և ոչ իմ, ով որ դիւրահեշտի խօսիս զա-մենայն զինչ և կամիս: Արդ՝ ոչ ևս ինչ ասացից զայդցանէ: Այլ որ զԵւբիա [31] յիւր վարեալ՝ պատուար պատրաս-տեաց ընդդէմ Ատտիկէսատանի, որ ձեռն արձակեաց 'ի Մեգարա [32], որ զՈրէոսն առ, որ զՊորթմոս քակեաց, որ կացոյց յՈրէոս զՓիլիստիդէս բռնաւոր և յԵրետրիա զԿլի-տարքոս, որ զՀելլեսպոնտոս նուաճեաց, որ պաշարեաց զԲիւզանդիոն, և զհելլենական քաղաքանին՝ էր որ սատա-կաջինջ արար, էր յոր վտարանդիս տարեալ զաղութ բնա-

կեցոյց. որ զայս ամենայն արար և կատարեաց՝ բռունն ինչ եղև արդեօք, և զրկեաց զկայցաւ և դրժեա՞ց զդաշանցն և եղծ զհաշտութիւնն, թէ ոչ. և արժա՞ն էր արդեօք երևել ումեք 'ի հելլենացւոց՝ կանգնել կալ նմա կրճիմ 'ի գնացից անտի, թէ ոչ: Եթէ այդմ չէր արժան, այլ Եղլադայ երևել կալ Միւսացւոցն անուանեալ առ և աւար[33], մինչ դեռ տակաւին ողջ են և 'ի միջի աթենացիք, ապա ընդ վայր վաստակ եղէ ես խօսել զայդդանէ, ընդունայն ճգնեցաւ և քաղաքս՝ ինձ անսացեալ. և այն ամենայն որ գործեցաւն՝ լեալն վնասք, և իմ վնասք: Իսկ եթէ պարտ էր յառնել ումեք ընդդէմ այդոցիկ ախոյեան ընդդիմահար, ո՞ւմ այլ արժան էր լինել՝ բայց միայն ժողովրդեանն աթենացւոց: Արդ զայդ անօրինեցի ես յայնժամ. և դէտ ակն 'ի վերայ եդեալ՝ զի զամենայն մարդիկ նա 'ի ծառայութիւն արկանէր, ընդդէմ կացի, և անդադար եղէ 'ի փոյթ խօսելոյ և խրատելոյ՝ մի թողուլ լքանել զայդոսիկ Փիլիպպոսի:

Սակայն զխաղաղութիւնն նա՛ եղոյծ՝ յաւարի առեալ զնաւսն, և ոչ թէ քաղաքս մեր, Եսքինէս: Բե՛ր աղէ զնոյն ինքն զհրամանն և զնամակն Փիլիպպեայ, և կարդա կարգաւ. զի 'ի գոյցէն քննութենէ 'ի վեր ելցէ՝ ո՛ իմ իմիք իցէ վնասապարտ: Կարդա:

## ՀՐԱՄԱՆ

։ Առ Նէոկլէս իշխանաւ՝ յամսեանն Բոէդրոմիոնի՝ ժողով ժողովրդեան կոչեցեալ 'ի զօրավարաց, Եւբուլոս Մնեսիթեան կիպրացի ասաց. Քանզի ցուցին զօրավարքն 'ի ժողովի ժողովրդեան, թէ զԼէոդամաս նաւապետ և զորս ընդ իւր առաքեալ նաւք քսան՝ յուղարկաւորք ցորենոյ 'ի Հելլեսպոնտոս, զօրավարն Փիլիպպեայ Ամինդաս վարեալ է 'ի Մակեդոնիա և 'ի զինապահոջ եդեալ, փոյթ տարցին նահապետք և զօրավարքն՝ զի առեալ գումարեսցի, և ընտրեսցին հրեշտակք առ Փիլիպպոս, որ երթեալ խօսեսցին

ընդ նմա՝ Թողուլ զնաւապետն և զնաւն և զզօրականն․ և եթէ յանդէտս ինչ արարեալ իցէ զայն Ամինդաս, ոչինչ դնիցէ նմա մեղ ժողովուրդս․ իսկ եթէ յանցաւոր ինչ ըստ օրէնս պատուիրանին զնա ըմբռնեալ, զի այց և խնդիր արարեալ աթենացւոց, արժանի ըստ անհոգութեանն ածցեն 'ի վերայ պատուհաս․ իսկ եթէ և ոչ մի ինչ յայսցանէ գտանիցի, այլ խռովք անիրաւեալ առաքօղն կամ առաքեալն, յայտ առնել և զայս, զի խելամուտ եղեալ ժողովրդեանն՝ խորհեսցի զինչ պարտն իցէ առնել։ »

Արդ զհրամանդ զայդ գրեաց Եւբուղոս, և ոչ ես․ և զոր ըստ զմանէն՝ Արիստոփոն, ապա Հեգեսիպպոս, ապա դարձեալ Արիստոփոն, ապա Փիլոկրատէս, ապա Կեփիսոփոն, ապա այլք ամենեքին, իսկ ես՝ և ոչ մի ինչ յաղագս այսոցիկ։

Ա՛ռ կարդա զհրամանն։

## ՀՐԱՄԱՆ

« Առ իշխանաւն Նէոկլէսիւ, որ օր վերջին էր Բոէդրոմիոնի ամսոյ, խորհրդով ատենին նախապետք և զօրագլուխք 'ի մէջ մատուցեալ զբանս ժողովոյ ժողովրդեան՝ յայտ արարին, թէ հաճոյ թուեցաւ ժողովրդեանն ընտրել հրեշտակս առ Փիլիպպոս՝ պահանջել զնաւսն, տալ պատուէրս և զհրամանս ժողովոյն։ Եւ ընտրեցին զայսս․ զԿեփիսոփոն Կլէոնեան Անափլիստացի, զԴեմոկրիտոս Դեմոփոնեան Անագիրասեցի, զՊոլիկրիտոս Ապեմանտեան Կոթոկիեցի։ Ի նախապետութեան հիպպոթոոնտեան ցեղին՝ Արիստոփոն Կոլիտեցի գահերէց՝ ասաց։ »

Արդ զոր օրինակ ցուցանեմ ես զհրամանսդ զայդոսիկ, ցոյց նոյնպէս և դու, Եսքինէս, զո՛ր հրաման գրեալ իմ՝ պատճառ իցեմ պատերազմին։ Այլ ոչ ունիցիս․ զի թէ ունէիր, ոչ ինչ յառաջ քան զայն այժմ ածէիր 'ի մէջ։ Նա և

ոչ Փիլիպպոս՝ որ զայլս մնասակար առնէ, ամբաստան ինչ լինի զինէն յաղագս պատերազմին։

Բայց աղէ ընթերցիր և զթուղթն ևս զՓիլիպպոսի։

## ԹՈՒՂԹ ՓԻԼԻՊՊՈՍԻ

« Թագաւոր մակեդոնացւոց Փիլիպպոս, աթենացւոց ատենին և ժողովրդեան խնդալ։

« Եկեալ՝ի ձէնջ հրեշտակք առ իս, Կեփիսոփոն և Դեմոկրիտոս և Պոլիկրիտոս, խօսեցան վասն արձակելոյ նաւացդ՝ որոց նաւապետ էր Լէոդամաս։ Ամենևին իսկ՝ի միամտութեան մեծի թուիք ինձ լինել, եթէ զանխլանալ յինէն համարիք, զի այն նաւք առաքեցան՝ի վերին երեսս պատճառանօք իբրև թէ յուղարկ երթալ ցորենոյ՝ի Հելլեսպոնտոսէ՝ի Լեմնոս [34], բայց՝ի ներքոյ՝ օգնել սելիմբրիացւոց [35] պաշարելոցն յինէն, որ չգտանին ընդ մեզ յուխտի դաշանց բարեկամութեան մերոյ։ Եւ այդ հրաման տուաւ նաւապետիդ՝ առանց ժողովրդեանդ աթենացւոց՝ յիշխանաց այտի ոմանց, և յայլոց՝ որ այժմ արտաքոյ պաշտաման են, բայց ամենայն հնարիւք ջերդին զի ժողովուրդդ, փոխանակ այժմու բարեկամութեանն ընդ իս՝, ձեռն արկցէ դարձեալ՝ի պատերազմ, առաւել յոյժ նախանձ բերեալ այդմ դաւմադիր լինելոյ քան զօգնելն սելիմբրիացւոց. և զայդ՝ի շահուց կողմանէ գնեն։ Սակայն ոչ ձեզ և ոչ ինձ օգտակար թուի այդ։ Վասն որոյ և այժմիկ ահա արձակեմ ձեզ զգեբեալ նաւսդ, և տալա այսուհետև, եթէ հաճեսջիք չհամարձակել առաջնորդաց ձերոց՝ի խորամանկ տեսչութիւն, այլ պատուհաս՝ի վերայ կապեցէք, ջանացայց և ես զգուշանալ խաղաղութեան։ Ողջ լերուք։ »

Ոչ ուրեք՝ի սմա գրեալ զԴիմոսթենէս, և ոչ իրս ինչ մնասու զինէն։ Արդ՝ զի՞ է զի զայլոց որոտունիչ եղեալ, զի-

մոց գործոցս չառնէ ինչ յիշատակ ։ Վասն զի եԹէ գրէր ինչ զինէն, զանիրաւութիւնս իւր յիշատակելոց էր, զի ես ընդդէմ գայի, և նոցին կայի պատերազմող ։ Եւ նախ զհրեշտակութեանն 'ի Պելոպոնէս [36] գրեցի զհրաման, մինչ այն ինչ նա դեռ սողոսկէր սպրդէր 'ի Պելոպոնէս ․ և ապա զԵւբեայն, յորժամ ձեռն յԵւբեա մխէր ․ և ապա զարշաւանսն, ոչ եւս հրեշտակութիւն, յՈրէոս [37] և յԵրետրիա, իբրև նա բռնաւորս 'ի քաղաքսն յայնոսիկ կարգեալ հաստատեաց ։ Յետ այնորիկ զնաւամարտին նաւացս գումարտակ առաքեցի, որով Քերրոնեսոս փրկեցաւ և Բիւզանդիոն, և ամենայն իսկ նիզակակիցք առ հասարակ ։ Յորոց և ժամանեցին ձեզ բարիքն մեծամեծք, գովութիւնք, փառք, պատիւք, պսակք, գոհաբանութիւնք յերախտաւորելոց անտի ․ և հարստահարելոցն՝ որոց ձեզն անսացին յայնժամ՝ եհաս փրկութիւն, իսկ անփոյԹ եղելոցն՝ զբազումանգամ առ 'ի ձէնջ զաւշակեալսն եղև յիշատակել, և առ այնուիսիս ունել զձեզ՝ որ ոչ անձանց եԹէ խնամ ունիցին, այլ և արք իցեն խորագէտք և հմայօղք ․ զի ամենայն ինչ եկն եղ՝ զոր միանգամ կանխեցէք ասացէք առ նոսա ։ Եւ զի զանձ սաստիկ մատուցանէր Փիլիստիդէս՝ առ 'ի պահել իւր զՈրէոս, սաստիկ և Կլիտարքոս՝ առ 'ի պահել զԵրետրիա, սաստիկ և ինքն իսկ Փիլիպպոս՝ զի յինքն զայդասիկ գրաւեսցէ ընդդէմ ձեր, և մի ինչ վասն այլոց իրացն կրեսցէ փրաշաման, և մի ոք ուրեք ընդ նա խոյզ ինչ և խնդիր անիրաւութեան գործոցն արասցէ, զայդ ամենայն չանգիտանայ և ոչ ոք, և քան զամենեսեան՝ դու ։ Քանզի հրեշտակքն եկեալք յայնժամ աստ 'ի Կլիտարքոսէ և 'ի Փիլիստիդեայ՝ առ քեզ իջան, Եսքինէս, և դու էիր նոցին ասպնջական, զորս քաղաքս՝ իբրև Թշնամիս և ոչ իրաւանց ինչ և ոչ օգտի բանբերս՝ հալածեաց ․ բայց քո սիրելիք էին ։ Ապա և ոչ մի ինչ յայդցանէ ոչ գործեցաւ, ով հայհոյիչդ իմ, որ ասես՝ Թէ 'ի կաշառելդ կարկեալ կաս, և 'ի վատնելդ կակաչես ։ Իսկ դու հանապազ և ոչ երբեք ․ այլ և 'ի յղփանալդ կակա-

չես, և համբաւեսցիս բնաւ ոչ, եթէ ոչ սոքա պապանձեցու-ցեն զքեզ՝ անարգեալ արհամարհեալ այսօր :

Իսկ իբրև պսակեցէքն դուք զիս յայնժամ վասն այնր ամենայնի, և զհրամանն գրեաց Արիստոնիկոս՝ նովին ոճով այժմ այս Կտեսիփոն բանիւք, և պսակն 'ի տեսարանին քարոզեցաւ, և էր այն ինձ հռչակ երկրորդ, Եսքինէս որ անդէն էր՝ ոչ զխմախօսեաց և ոչ զհրամանահանէն ինչ եղև ամբաստան :

Ա՛ռ կարդա ինձ և զայս հրաման : Կարդա :

## ՀՐԱՄԱՆ

« Առ իշխանութեամբն Քերոնդիդեայ հեգեմոնեան, որ օր քսան և հինգ էր Գամէլիոնի, 'ի նախագահութեան Լէոնտեան ցեղին, Արիստոնիկոս փրէարեցի ասաց. Քանզի Դիմոսթենէս Դիմոսթենեան Պէանեցի զբազում և զկա-րևոր պէտս ժողովրդեանն աթենացւոց պաշտեաց, և յո-գունց 'ի դաշնակցացս յառաջագոյն և առ ժամայս նպաստ եղև հրամանօքն, և զոմանս 'ի քաղաքացն Եւբէոյ եհան յազատութիւն, և անդադար խնամ տանի ժողովրդեան ա-թենացւոց և այլոց Հելլենաց, հաճոյ թուեցաւ ժողովոյ խորհրդեան և ամբոխին՝ 'ի գովութիւն տանել զԴիմոս-թենէս Դիմոսթենեան Պէանեցին, և պսակել պսակ ոսկե-ղէն, և զպսակն հռչակել 'ի տեսարանին, 'ի Ցպանդարա-մեծատօնեան, 'ի նոր ողբերգութիւնս. և քարոզութեան պսակին փոյթ յանձին կալցի նախագահական ցեղն և հան-դիսադիրն : Ասաց Արիստոնիկոս փրէարեցի : »

Արդ՝ իցէ՞ ոք 'ի ձէնջ, որ գիտիցէ 'ի հրամանէ աստի յայդմանէ յամօթ ինչ մատնեալ զքաղաքս կամ յայլոյն կա-տականաց կամ 'ի ծաղր, զորոց այժմ դա դաւ հաստանել ասէ՝ եթէ եմ պսակեցի: Եւ սակայն՝ յորժամ նոր և ծա-նօթ ամենեցուն են իրքն, և եթէ քաջիկ վճարեալ, շնորհս

դատանէ. իսկ եթէ այլ ինչ ասէ, պատուհաս : Այս թուիմ ես՝ շնորհի յայնժամ եղեալ արժանի, և ոչ պատուհասի կամ պատժոյ :

Այս ուրեմն՝ մինչև 'ի ժամանակն յորս այդոքիկ վճա-րեցան՝ մնացեալ թէ զլաւագոյնն գործեալ եմ հանապազ քաղաքիս, յաղթելով 'ի խորհրդեան ձերում 'ի բանն և 'ի գիր, և զգլխաւորն 'ի գլուխ տանելով, որովք և պսակք ե-կին քաղաքիս և ինձ և ձեզ բոլորեցունց, և դուք զոհս դից և ուղերձս մատուցէք՝ իբրև 'ի վերայ բարեաց եղելոց :

Արդ իբրև յԵւբիոյ հալածեցաւ Փիլիպպոս, զինուք առ 'ի ձէնջ, իսկ վարչութեամբ և հրամանօք, թէ և հերձ-ցին ոմանք 'ի դոցանէ, առ 'ի յինէն, այլ ինչ մարտկոց խըն-դրեաց ընդդէմ քաղաքիս : Տեսեալ՝ զի քան զընաւ մարդիկ առաւել ունիմք պէտս արտաքուստ ցորենոյ, և կամեցեալ տէր լինել մուծից ցորենոյն, անցեալ 'ի Թրակիա՝ աղաչեաց նախ զառաջինն զնիզակակիցսն իւր զբիւզանդացիս՝ մտել ընդ իւր ընդդէմ ձեր պատերազմին : Իբրև չառնուին նոքա յանձն, և ոչ 'ի նիզակակցութեանն ասկի զայն լինել ասէին, և արդարև ասէին, յայնժամ պահ պատնէշ պաշարումն տուեալ զքաղաքաւն, և մանգղիոնս կանգնեալ, արկ զնոսա յարգել և 'ի նեղ : Ի լինել այդոցիկ՝ որ ինչ արժան էր մեզ առնել՝ ոչ ես հարցանեմ, զի յայտնի է ամենեցուն : Իսկ ո՞վ օգնականն էր բիւզանդացւոց և ապրեցուցիչ, ո՞վ որ չետ հելլեսպոնտոսի տարանալ և 'ի կողմ եղանել զայնու ժամա-նակաւ : Դուք, ո՞վ արք աթենացիք : Եւ յորժամ դուքն ասիցեմ, զքաղաքս ասեմ : Իսկ ո՞վ էր 'ի քաղաքիս բերան և գրիչ և գործօն, և զանձն համակ անխնայ յիրսն տուեալ : Ես :

Եւ թէ այն ամենայն քանի՞ օգուտ եղեն բոլորեցունց, չպիտոյ 'ի բանից ուսուցանել ձեզ, այլ արդեամբք առէք զհանդէսն : Զի որ յայնժամ պատերազմն էր, թող զոր եբերն զգեղեցիկ փառսն, նա և յամենայն իսկ կենցաղօ-գուտս՝ առատաղէղս և դիւրագիւտս զձեզ յարգարեաց քան զարդեան խաղաղութիւնս, զոր դոքա առ եղերանէ

աշխարհիս այնդ պահեն ազնիւքդ՝ յուսով առաջիկայիցն անկեալութեանց. յորոց եղեւ թէ վրիպեսցին, և մի զոր բարեսէրքդ դուք խնդրէք 'ի դից՝ վայելեսցեն 'ի նոսին, և մի յորոց նոքայն ախորժեցին՝ կարկառեսցեն առ ձեզ:

Բայց կարդա առ դոսա և զբիւզանդացւոց պսակն և զպերինթացւոցն, որովք պսակեցին վասն այսոցիկ ըզքաղաքս:

## ՀՐԱՄԱՆ ԲԻՒԶԱՆԴԱՑԻՈՑ

«Առ նուիրապետաւն [38] Բոսպորիկեա՝ Դամագետոս ասաց 'ի ժողովի, յատենէ խորհրդարանին առեալ օծման. Քանզի ժողովուրդն աթենացւոց՝ և յանցեալ ժամանակին անդուլ ջանացեալ խնամ տարեալ է միշտ բիւզանդացւոցս և դաշնակցացս և տոհմայնոց պերինթացւոց, և արդէն իսկ բազում և մեծամեծս հարեալ սպասս 'ի պէտս այժմու ժամանակիս, մինչդեռ Փիլիպպոս Մակեդոն զօրաժողով լեալ 'ի վերայ աշխարհիս և քաղաքիս 'ի խափանումն բիւզանդացւոց և պերինթացւոց՝ հրձիգ առնէ զշէնս և հարկանէ զծառաստանս, հասեալ նոցա մեզ 'ի թիկունս հարիւր քսան նաւուք և պարենիւ և զինուք և ասպառազինօք [39], թափեցին զմեզ յահագին վտանգաց, և կանգնեցին զհայրենի պետութիւնս և զօրէնս և զշիրիմս, հաճոյ թուեցաւ ժողովրդեան բիւզանդացւոց և պերինթացւոց՝ տալ աթենացւոց ընդ մեզ խնամութիւն ապաստանութեան, քաղաքակցութիւն, կալուածս գետնոյ և տանց, բարձերեցութիւն 'ի հանդէսս մրցարանաց, մուտ յատեանն և 'ի ժողովուրդն անընդմէջ զկնի պատարագացն. և որոց կամիցէ բնակել 'ի քաղաքիս՝ ապահարկ լինել նոցա յամենայն հարկաց: Կանգնել և պատկերս երիս վեշտասանկանգնեանս 'ի Բոսպոր, զժողովուրդն աթենացւոց պսակեալ 'ի բիւզանդացւոց ժողովրդենէն և 'ի պերինթացւոց: Առաքել և նուիրակութիւնս [40] յաշխարհաժողովուրդս

Ելլադայ, յԻսթմեանսն, 'ի Նեմեանսն, յՈլիմպեանսն և 'ի Պիւթեանսն, և քարոզ կարդալ զպսակն, թէ ժողովուրդն աթենացւոց պսակի առ 'ի մէնջ· զի ծանիցեն հելլէնք ամենայն զաթենացւոցն զառաքինութիւն, և զբիւզանդացւոց և զպերինթացւոց շնորհակալութիւնն:» »

Ընթերցիր և զպսակն որ 'ի քերրոնեսացւոց անտի :

ՀՐԱՄԱՆ ՔԵՐՐՈՆԵՍԱՑԻՈՑ

« Ի քերրոնեսացւոց բնակելոցն 'ի Սեստոս, յԵղէոս, 'ի Մադիտոս, յԱլոպեկոննէս [41], պսակեն զատեան խորհրդոյ և զժողովուրդն աթենացւոց 'ի պսակ ոսկի վաթսուն տաղանդաց· և կանգնեն բագին Շնորհի և ժողովրդեան աթենացւոց, զի մեծին 'ի բարիս պատճառք եղեն քերրոնեսացւոց՝ Թափելով 'ի Փիլիպպեայ և անդրէն շնորհելով զհայրենիս բնապատուաս, զօրէնս, զազատութիւն, զմեհեանս: Եւ յայսմ հետէ և առ յապա յամենայն յաւիտեան մի պակասեսցեն գոհանալ և բարի առնել՝ որ զինչ և ձեռն իւրեանց պատահիցէ: Զայս 'ի հասարակաց տաճարին խորհրդոյ եղեւ հրաման: »

Այս ուրեմն՝ ոչ միայն զՔերրոնեսոս և զԲիւզանդիոն փրկել, զՀելլեսպոնտոս ապրեցուցանել 'ի լծոյ ծառայութեան Փիլիպպոսի, և 'ի պատճառս այսոցիկ՝ մեծարանք քաղաքիս՝ եղեն հանդէպք իմոյ մտադիւրութեանս և վարչութեան, այլ և ամենայն մարդկան յայտ յանդիման ցուցանել զբարեկամութիւն քաղաքիս և զՓիլիպպեայ չարութիւնն: Զի որ բարեկամ և նիզակակիցն էր բիւզանդացւոց, ամենեքին տեսին զի պաշարումն ած զնոքօք, քան զոր զինչ այլ անպատեհ և անօրէն: Իսկ ձեր, որոց գոյր բազում ինչ արդարութեամբ և յիրաւի [42] տրտնջել զնոցանէ, զոր անզգամեցանն առ ձեզ յանցեալ ժամանակին, ոչ միայն

անտխակալ եղեալ և ոչ լքեալ զզրկեալսն, այլ և կեցուցիչք երևեցարուք, որով փառս և մեծարմութիւն և պարծանս ժառանգեցէք յամենեցունց: Եւ զի զբազումս 'ի քաղաքավարացդ պատկեալ է ձեր, գիտեն ամենեքեան. իսկ յոյր այլոյ ուրուք ձեռն պատկեալ իցէ քաղաքս, խորհրդականի ասեմ և ատենախօսի, չունիցի ոք զայլ ոք ասել բայց միայն յինէն:

Եւ արդ, որպէս զի և զհայհոյութիւնն՝ զորս ընդդէմ եւբիացւոց և բիւզանդացւոց ասեղծ և խօսեցաւ, ուր ուրեք դժուարին ինչ ընդ ձեզ գործեալ էր 'ի նոցանէ՝ զայն յուշ արարեալ, առ 'ի ցուցանել ասեմ և զայնոսիկ զըպարտութիւն լեալ, ոչ միայն այնու՝ զի սուտ են, զի այժմ գիտուն լինել կարծեմ զձեզ, այլ և այնու՝ զի Թէպէտ և ճըշմարիտ յոյժ էին, օգուտ այն էր՝ որով ես վարեցայ օրինակաւ՝ նոցին և վարել, կամիմ անցանել ընդ մի կամ ընդ երկուս 'ի բարեացն գործեցելոց քաղաքիս առ ձեզ, և զայն կարճառօտիւք: Զի այր այր առանձինն և քաղաք միաբանութեամբ՝ պարտի միշտ կրթել ջանալ զառաջիկային ըստ եղելոց լաւագունացն գործել:

Արդ դուք, ո՛ արք աԹենացիք, 'ի տիրապետել լակեդեմոնացւոց ընդ ծով և ընդ ցամաք, և 'ի գրաւել զշրջակայս Ատտիկեայ քաղաքապետօք և պահնակօք, զԵւբիա, զՏանագրա, զԲիովտիա ողջոյն, զՄեգարա, զԷգինեա, ըզԿլէոնէս և զայլ կղզիս, մինչ չև էր դեռ քաղաքիս ոչ նաւ և ոչ պարիսպ, ելէք խաղացէք դուք 'ի Հալիարտոս [43], և դարձեալ՝ յետ ոչ բազում ինչ աւուրց՝ 'ի Կորինթոս [44], Թէպէտ և բազում ինչ կայր յիշել աԹենացւոց ոխակալ լինել ընդ կորնԹացիս և Թեբայեցիս՝ յերոց ամաւ որ 'ի դեկելեան [45] պատերազմին գործեցան, այլ չարարին զայդ, ո՛չ անդր ամենևին իսկ ոչ: Եւ զերկոսին զայդ յայնժամ, Եսքինէս, ոչ առ երախտաւորս ոմանս արարին, և ոչ անվտանգ ինչ տեսանէին, սակայն ոչ յայն սակս անտես արարին զապաւինեալսն 'ի նոսա· այլ 'ի քաջափառութեան

և պարծանաց աղագս՝ փութայորդոր լինէին տալ զանձինս 'ի վիշտս անհնարինս, խորհուրդ բարի և ուղիղ արկեալք 'ի միտ: Զի ամենայն մարդկան կենաց կատարած է մահ, թէպէտ և 'ի անկան ուրեք ոք զանձն արգելեալ՝ այնմ սպասիցէ. իսկ արանց բարեգործաց պարտ է միշտ յամենայն բարիս ձեռն 'ի գործ առնել՝ պատսպարեալ 'ի յոյս աստուածական, և զոր աստուածն տայցէ՝ տանել առաքինաբար:

Զայս նախնիքն ձեր առնէին, զայս՝ երիցագոյնքդ 'ի ձէնջ, որք յորժամ Թեբացիքն հարստացեալք 'ի Լևկտրա բան 'ի գործ առնէին սատակել զլակեդեմոնացիսն՝ ոչ սիրելիս ձեզ և ոչ երախտաւորս, նա և բազմաց և մեծամեծ վնասելոյ քաղաքիս վրիժապարտս, սակայն արգելէք [46] զնոսա, ոչ ինչ երկիւղած լեալ յուժոյ և 'ի փառաց Թեբացւոցն 'ի ժամանակին. և ոչ զմտաւ ինչ ածեալ՝ թէ զինչ ինչ ընդ ձեզ անցուցեալ էր արանցն որոց վասն զինուէիք 'ի վտանգ: Եւ զայնն յայտ արարէք ամենայն հելլենացւոց, զի եթէ և մեղիցէ ինչ ոք ձեզ, նմա զպարկութիւն յայլ ինչ պահէք. իսկ եթէ փրկութեան կամ ազատութեան ինչ վտանգ հասանիցէ նոցա, չլինիք քինաթաղքոյց, և առ ոչինչ դրէք:

Եւ ոչ ընդ դոսա միայն այսպէս վարեցայք, այլ զարձեալ 'ի վատարել Թեբացւոց զԵւբիա՝ ոչ անփոյթ արարէք. և ոչ զոր 'ի Թեմիսոնէ և 'ի Թէոդորէ զրկեցայքն վասն Որովպայ՝ [47] ընդ միտ տարայք, այլ և նոցա ևս հասէք 'ի թիկունս, մինչդեռ նաւակալին այն առաջին նուագ էր կարգելոյ քաղաքիս կամաւոր նաւապարտաց, յորոց մի և ես էի: Այլ զայսցանէ չև ևս է ժամ: Բարւոք արարէք ապաքէն փրկել զկղզին. բայց լաւ ևս քան զայդ, զի իշխան կացեալ անձանց նոցա և քաղաքաց՝ դարձուցէք զդոսա արդարութեամբ 'ի մեղուցելոյն առ ձեզ, և ուր 'ի ձեզ էին ապաստան եղեալ՝ չհայեցայք անդ ինչ 'ի սոյժս ձեր:

Թիւրք այլ ևս կան ինձ ասել, այլ զանց առնեմ, նաւակռիւս, հետևակամարտս, զուամարտակս բանակաց, և 'ի

հնումն եղեալս և այժմուս առ ձեօք, զոր արարեալ է քաղաքիս զամենայն 'ի վերայ ազատութեան և փրկութեան այլոց հելլենացւոց:

Յայտնի իսկ և յայսքանս ուսեալ իմ զքաղաքս յօժարամիտ 'ի գուպարել յօգուտ այլոց, իսկ առաւ մինչդեռ զնդրմէ իսկ էր խնդիր՝ զի՞նչ պարտ էր ինձ առաջնոյ հրաման, կամ զի՞նչ խորհուրդ 'ի գործ: Ո՞հս պահել, յԱրամազդ երդուեալ, ընդ այնոսիկ որ զփրկութիւն խնդրէին, և բարուրս յուզել՝ առ 'ի կործանել զամենայն: Եւ ո՞ ոչ իրաւամբք սաստիկէր զիս, եթէ և բանիւ և եթ լոկով լրբէ յամօթ առնել մի ինչ 'ի բարեաց քաղաքիս: Եւ զի դուք ոչ 'ի գործ առնէիք զբանն, իմ ճշմարտիւ հասեալ է. զի թէ կամէիք, զի՞նչ կայր խոչ ընդ առն. միթէ չէ՞ր ինչ մարթ, միթէ ո՞չ գոյին զորս խրատտուքդ այդոքիկ:

Կամիմ այսուհետև զաւանել զալ յորս յետ այդոցիկ քաղաքավարեցայ, և 'ի սմին դարձեալ միւսանգամ մտադիք՝ զի՞նչ այն ինչ էր որ օգտակարագոյնն էր քաղաքիս: Քանզի տեսեալ, ով արք աթենացիք, զնաւատորմն ձեր խաթարեալ, և զմեծատունսն ապահարկս ինն եղեալ՝ առ նուազութեան սակի նպաստիցն իւրեանց, իսկ զչափաւորսն կամ զանսուաղսն ընչիւք 'ի քաղաքացիս՝ 'ի գոյիցն անգամ թափուցեալս, և զքաղաքս այնր աղագաւ զձեռեալ տառապեալ 'ի պատեհ պէտս ժամանակին, եդի օրէնս՝ որով զմեծատունսն տանջեցի առնել իրաւունս, իսկ զաղքատսն՝ 'ի զրկանացն հանգուցի. և որ կարեւորագոյնն էր՝ արարի քաղաքիս, պատրաստ ունել 'ի ժամու զամենայն կազմութիւն հանդերձանաց: Եւ եկեալ ոչ եղեալ 'ի փոքր-ունչ անիրաւութեան, եկի մատ առ ձեզ և արձակեցայ, և զմասնն քուէից [48] չըմբռնեաց դատախազն: Եւ ո՞րչափ ինչ զանձս կարծիցէք մատուցանել առ իս զլխաւորաց զմեծութեանցն [49], կամ երկրորդացն կամ երրորդաց, մանաւանդ առ 'ի ձեռնթափ ինձ լինելոյ յօրէնադրութենէ անտի, կամ եթէ ոչ՝ դնել թողուլ արկանել ընդ յամով երդման [50]:

Այնչափ ինչ, ո՛վ արք աթենացիք, որչափ զանդրադարձեալն է ինձ ասել առ ձեզ։ Եւ զայս 'ի դէպ յոյժ առնէին նոքա։ Քանզի էր նոցա ըստ նախկին օրինացն՝ վեշտասանեցունց միանգամայն զհարկ պաշտամանն հարկանել, սակաւիկ ինչ և ոչինչ իսկ ծախսեալ յանձանց, և զչքաւոր քաղաքացիսն ճնշեալ․ իսկ յիմմէ օրինաց՝ որ ինչ անկն է իւրաքանչիւր ըստ իւրում զայլն բերել 'ի մէջ։ Եւ որ յառաջին վեշտասաներորդ միայն էր հարկակից 'ի ընկերակցութիւն միոյ եւեթ նաւի, երկուց այնուհետև երևեցաւ նաւակալաց․ զի և ոչ իսկ նաւակալս կոչէին զանձինս, այլ հարկատու գործակիցս։ Վասն որոյ 'ի խափանել զայդ և մի՛ ստիպել յարդարութեան իրաւունս՝ չիք ինչ զոր ոչ տային։

Եւ արդ կարդա ինձ նախ զհրամանն ըստ որում եղէ եկակոչ, և ապա զհանդէս համարոյն՝ որ ըստ նախնին օրինացն և որ ըստ իմումս։ Կարդա։

## ՀՐԱՄԱՆ

« Առ Պոլիկլեաւ իշխանաւն՝ որ օր վեշտասան էր ամսոյն Բոյեդրոմիոնի, 'ի նախագահութեան հիպպոթոոնեան տոհմին, Դիմոսթենէս Դիմոսթենեան Պէանեցի մատոյց օրէնս մի նաւագործական փոխանակ առաջնոյն, ըստ որոյ 'ի բովանդակութիւն գործոյն զայլն հարկակից նաւակալացն․ և ժողով խորհրդեանն և ժողովրդեան ձեռն ետուն հաւանութեան։ Եւ զԴիմոսթենէս յանխրատութիւն ամբաստան եղև Պատրոկլէս փլիացի․ և չունելով զմասն քուէից՝ տուժեցաւ զկիսոյն դահեկանն։ »

Բե՛ր աղէ և զգեղեցիկ հանդէս համարոյն։

## ՀԱՆԴԷՍ ՀԱՄԱՐՈՑ

« Առ նաւ նաւ կոչեսցին նաւապետք մեշտապան 'ի միասին՝ 'ի գնդաց գնդաց հարիւրեկացն հարկակցաց, 'ի քսան և հինգամենից ցքառասնամեանս, հաւասար զմասն բաժինն մատակարարելով։ »

Այլ է բեր առ սմին զոր յիմն օրինացս հանդէս համարոյ։

## ՀԱՆԴԷՍ ՀԱՄԱՐՈՑ

« Նաւակառոյցք առ մէն մի նաւ ընտրեսցին ըստ սակի ընչիցն [31] 'ի տասն տաղանդէ. իսկ եթէ ընչիցն սակ առաւել գոյաւոր հաշուիցի, ըստ համեմատութեան՝ մինչև յերիս նաւս և 'ի մակոյկ մի՝ մտցեն ընդ հարկաւ։ Ըստ նմին համեմատութեան լիցի և որոց քան զտասն տաղանդ նուազ իցեն ինչք, մինչև 'ի մի եկեալ բովանդակեսցին 'ի տասն տաղանդ։ »

Արդ մինթէ սակաւ ինչ օգնութիւն թուիցի մատուցեալ աղքատացդ 'ի ձեզ, կամ թէ գո՞յզն ինչ արդեօք ծախելին մեծատունք առ 'ի զիրաւունսն չառնելոյ։ Այսա ոչ միայն ընդ չթողանելս յայսմանէ զուլիմ, և ընդ ամբաստանելս և արդարանալ, այլ և ընդ օգտակար օրէնադրութիւնս և զփորձն արդեամբքն ցուցանել։ Զի ընդ պատերազմն բովանդակ, իբրև հանդէսք համարոյն ըստ իմում օրինացս լինէին, ոչ ոք երբեք 'ի նաւակառուցից՝ իբրև հարստահարեալ ոք ուղերձեաց առ ձեզ ոստ ձիթենի [32], ոչ 'ի Մունիքիա նստաւ, ոչ յոստիկանաց [33] նաւահանգստացն 'ի կապանս մատնեցաւ, ոչ մի նաւ քաղաքիս՝ արտաքոյ ընկլունեալ կորեաւ, և ոչ յետնեալ անպատրաստ 'ի չու՝ կայց մնաց աստէն. որ ըստ առաջնում օրէնադրութեանն լինէր

համարոյ, որպէս զսա այժմիկ բազում անգամ չարախօսէր և անգէր, որպէս զի և խոստովան եմ լինիմ զամենայն աւուրս կենաց իմոց պարտապան լինել համարոյ զայնմ ամենայնէ, որոց զամ մի մատակարար կամ անօրէն երևեցայ 'ի միջի ձերում։ Իսկ զորոց յիմոց ընչիցս ինձէն 'ի կամակարութեան ժողովրդեան, և ոչ մի օր պարտ զատիմ զանձն համարս տալոյ, լռէս, Եպքինէս, և ոչ զայլ ոք ամենևին, թէ և յինուոց անտի ոք իշխանացն լինիցի։ Զի՞ որ այն օրէնք իցեն՝ այդչափ անիրաւութեամբ և ամարդութեամբ լի, մինչ զի և որ յիւրոցն ինչ տայցէ, և գործ մարդասիրութեան և առատութեան գործիցէ, զեկել զնա 'ի շնորհակալութենէ, և մատնել 'ի ձեռս զրպարտչաց, և զնոսա՝ համարապահանջս տրոցն կացուցանել 'ի վերայ գլխոյ նորա. փարգաստ, և ոչ մի ամենևին։ Իսկ թէ զա ասէ, թող ցուցանէ, և ես համերոյց և լուռ եղէց։ Այլ չիք ուրեք, ով այր աթենացիք։ Բայց զսոս զրպարտել առեալ, քանզի 'ի տալն զինչս 'ի վերայ տեսլարանացն կայի յայնժամ, ասեւանն, ասէ, գովեաց զնա մինչ դեռ ասկաւոյն պարտականն էր հաշիւ տալոյ։ Ոչ և վասն միոյ իրիք յորոց հաշուի պարտականն էի, ով զրպարտիչ, այլ վասն որոց ետու։ — Բայց և պարսպաշէն էիր, ասէ։ — Եւ յայդ իսկ սակս իրաւամբք գովեցայ, զի զծախսն մատուցի, և ոչ ինչ հաշուեցայ։ Զի հաշիւք՝ հաւաստեաց և քննողաց կարօտին, իսկ տուրք՝ գոհութեան և գովեստի է արժանի։ Վասն այսորիկ գրեաց և սա զինէն զայգոսիկ։

Եւ զի այս այսպէս անզարտեալ կայ, ոչ միայն յօրէնս, այլ և 'ի սովորութիւնս մեր, դիւրաւ ցուցից ձեզ բազում ուստեք։ Քանզի Նաւսիկլէս մինչ դեռ սպարապետն էր՝ բազում անգամ 'ի ձէնջ պսակեցաւ վասն որ յիւրոց անտի ընծայեալցն. երկրորդ, զի զվահանսն ընծայեաց Դիոտիմոս, և դարձեալ Քարիդեմոս, պսակ ընկալան. և աստ Նէոպտոլեմոսդ այդ, շատ ինչ գործոց կացեալ ոստիկան, պատուեալ է 'ի տուրսն իւր։ Քանզի դժնդակ էր ապաքէն

տան ուրուք գործակալի, կամ չմարթել վասն գործակալութեանն տալ քաղաքին զիւրսն, կամ զորոյն՝ փոխան շնորհակալութեան՝ համարս պահանջել:

Եւ թէ արդար առնեմ զայդ, ահա կարգս ինձ զորս վասն նոցա եղեալ են հրամանք: Կարգս:

## ՀՐԱՄԱՆ

« Առ իշխանութեան Դեմոնիկոսի փիլիացւոյ, որ օր քսան և վեց էր Բոէդրոմիոնի, կամաւ առենի խորհրդեան և ժողովրդեան, Կալլիաս փրէարեցի ասաց, թէ հաճոյ թուի հրապարակի խորհրդարանին և ժողովրդեանն՝ պսակել զՆաւսիկլէս զԱնապեա. զի յորժամ երկու հազար սպառազէնք աթենացիք յԻմբրոս էին 'ի թիկունս օգնականութեան աթենացւոցն բնակելոց 'ի կղզւոջն, և Փիլոն՝ կարգեալն 'ի մատակարարութիւն՝ չկարէր յերեսաց ձմերոյնոյն նաւել և զհռոգսն մատուցանել սպառազինացն, նա յիւրոց անտի ընչից ետ, և չպահանջեաց 'ի ժողովրդենէն: Եւ զպսակն քարոզել 'ի Սպանդարամետականսն, 'ի նոր ողբերգականն: »

## ՄԻՒՍ ՀՐԱՄԱՆ

« Ըստ բանից նահապետացն խորհրդով առենին՝ ասաց Կալլիաս փրէարեցի. Քանզի Քարիդեմոս՝ իշխան առաջնորդ սպառազինաց՝ առաքեալ 'ի Սալամին, և Դիոտիմոս ասպահապետ, իբրև զօրականք ոմանք զինաղերծ եղեն 'ի թշնամեաց՝ 'ի ճակատուն որ առ գետովն, իւրեանց ծախուք վառեցուցին զերիտասարդսն յութ հարիւր ասպար, հաճոյ թուեցաւ ակմբի խորհրդեան և ժողովրդեանն՝ պսակել զՔարիդեմոս և զԴիոտիմոս ոսկեով պսակաւ, և հռչակել յաւագ համաթենականսն 'ի մերկամարտիկ մրցանսն, և 'ի Սպանդարամետականսն, 'ի նոր ողբերգականն: Եւ

հռչակելոյն հող՝ օրինապահացն լերի, նահապետաց, հան- գստարանաց : »

Իւրաքանչիւր ոք 'ի սոցանէ, Եսքինէս, իշխանութեանն որում իշխէր՝ պատասխան էր համարոյ, իսկ որոց վասն պատկերին՝ չէր ինչ պատասխան. այլ և ոչ ես. զի 'ի նոյնս անշուշտ նոյն իրաւունք են և ինձ ընդ այլս : Ետու, և վասն այնր գովիմ. և որոց ետու՝ չեմ պարտական համարոյ. իշխան կացի, և զայնր զհամարն հատուցի, ոչ զորոց ըն- ծայեցիս, երդուեալ յԱրամանդ : — Այլ անիրաւութեամբ իշխեցի : — Իսկ դու որ անդ էիր, 'ի մուծանել զիս համա- րակարացն 'ի ներքս, չլինէիր ամբաստան :

Այլ զի գիտասջիք՝ թէ դա ինքնին իսկ վկայէ ինձ, զի ոչ զորոց համարապարտն էի պսակիմ, ո՛ն առ կարդա ինձ զհրամանն ողջոյն զվասն իմ գրեալ : Զի որովք 'ի գրոց ա- ռաջարկութեանն չեղև ամբաստան, որովք դատախազէն՝ զրպարտիչ լինել յանդիմանեսցի : Կարդա :

ՀՐԱՄԱՆ

« Առ իշխանաւն Եւթիկլեաւ, որ օր քսան և մի էր Պիանեփսիոնի, 'ի նախագահութեան Ինէեան ցեղին, Կտե- սիփոն Լեոսթենեան Անափլիստեցի ասաց. Քանզի Դիմոս- թենէս Դիմոսթենեան Պէանեցի՝ հողապարձու կարգեալ նորոգելի պարսպացս, և յիւրոց ընչիցն յաւելեալ ծախեալ եա 'ի գործն տաղանդս երիս, ընծայեաց զայն ժողովրդեանն. և զի հազարապետ տեսարանացն կացեալ, յաւել 'ի դրա- մոր ծախուց ցեղիցն բոլորեցունց և ետ յիւրմէ հարիւր մնաս 'ի պէտս զոհից, հաճոյ թուեցաւ ատենի խորհրդեան և ժողովրդեանն աթենացւոց՝ գովաբանել զԴիմոսթենէս Դիմոսթենեան զպէանեցին՝ վասն առաքինութեանն և քա- ջարութեան, զոր անպակաս յամենայն ժամ ցուցանէ առ ժողովուրդն աթենացւոց. և պսակել զնա 'ի պսակ ոս-

կի, և հռչակել հարկանել զպսակն 'ի թատերանին, 'ի Սպան-դարամետականսն, 'ի նոր ողբերգականսն. և հանդիսադրացն՝ խնամ տանել հռչակելոյն: »

Այդ ուրեմն՝ յորոց ետու և ոչ զմիոյ յայնցանէ եղեր ամբաստան, իսկ զոր նոցին փոխարէն արժանի ինձ համարի տալ սա՝ զայնմանէ դատախազես. այսպէս զտուրսն առնուլ՝ կրաւունս խոստովանես, իսկ զշնորհսն հատուցանել՝ յանիրաւութիւն ամբաստանես: Իսկ մարդ այն որ իցէ ամե-նաչար այր և աստուածոց ատելի և արդարև չարակն, եր-դուեալ 'ի գլխս, ո՞չ տայաքէն զա այդ այդպիսիք:

Իսկ յաղագս 'ի թատերանին քարոզելոյ, թողում ասել զբիւրիցս բիւրոց քարոզելն, և զիս իսկ ինքեան բազում անգամ պսակեալ. այլ ասէ, աստուածքդ, այդպէս չամ-բուշ և անզգամ եղես, Եսքինէս, մինչև չկարել 'ի միտ առ-նուլ, թէ պսակելոյն՝ զնոյն խոստանայ ընդէ պսակն ուր և քարոզեսցի, իսկ 'ի թատերանին լինել քարոզութեանն՝ յօգուտ պսակողացն է: Զի որ լսիցենն, յորդորեսցին առ հասարակ 'ի բարի առնել քաղաքիս, և քան զպսա-կեալն՝ զերախտահատոյցսն գովեսցեն առաւել: Դմին իրի և քաղաքս գրեաց զօրէնս զայս: — Այլ սա ինձ ընթերցիր զնոյն ինքն զօրէնսն:

ՕՐԷՆՔ

« Զորս պսակեն ոմանք 'ի դրոհից, զքարոզութիւն պսա-կացն արասցեն իւրաքանչիւր 'ի դրոհս իւրեանց, բայց միայն յորժամ ժողովուրդն աթենացւոց կամ ատեանն զոք պսակիցէ, նոցա օրէն լիցի քարոզել 'ի թատերանի 'ի Սպանդարամետականսն: »

Լսես, Եսքինէս, զօրէնսն որ ասէ յայտնապէս. Բայց միայն զորս ժողովուրդն կամ ատեանն հրամայիցէ, զնոսին և քարոզեսցէ:

Արդ ընդէ՞ր զըպարտես, այր չուառ. զի՞ բան 'ի բան կարկառես, հնմ 'ի վերայ այդոցիկ չառնուս արբադեղ ըղկոճ վրացի: Նա և չամաչես ևս՝ յուսամարեալ մախանօրդակ ածել 'ի մէջ դատաստան ատենից երբեք միասու լինելոյ, և օրէնս փոփոխել, և զկերպս միայն՝ քաղ հանել, որոց համակ արժան էր 'ի կարգացումն գալ այնոցիկ՝ որ երգուեալքն են ըստ օրինացն հատանել վճիռ: Եւ աստ՝ այդոցիկ գործոցդ դու, 'ի մէջ անցեալ ճառես, թէ յաւէտ ընկերահաշտի զինչ ինչ արժան է լինել: Որպէս զի ոք անդրի մի տայցէ գործել ըստ օրինակի, և ապա առանց լինելոյ 'ի նմա պահանջեալ պայմանաց օրինակին՝ ընդունիցի զայն. և որպէս թէ բանիւ, և ոչ արդեամբք և քաղաքավարութեամբք ծանօթականք իցեն այրք ընկերահաշտք: Եւ ձայն բարձեալ գոչես, զասելիս և զանասելիս 'ի բան ձգեալ՝ իբրև 'ի վաչէ [ՃՃ] ուստեմն, որ քեզ և ազգիդ քում վայելուչ են, ոչ ինձ:

Բայց խուն ինչ ևս, ո՛ այրք աթենացիք: Ինձ թուի՝ թէ այլ է լուտանք, և այլ ամբաստանութիւն. այնու՝ զի ամբաստանութեան պատճառք անիրաւութիւնք են, որոց և պատիժք կան յօրէնսն. իսկ լուտանաց՝ հայհոյութիւնք և յերոցք՝ զոր ըստ բնութեան իւրեանց պատահէ թշնամեաց լեզուագարել առ իրեարս: Եւ զդատարանս զայս կարծեմ կառուցեալ 'ի նախահարց մերոց, ոչ զի ժողովեալ զձեզ այսր 'ի տանց ձերոց՝ անարժանս զմիմեանց շաղփաղփեացուք, այլ եթէ անիրաւեալ ինչ ոք գտանիցի առ քաղաքս՝ զնա յանդիմանել: Ոչ ինչ ընդհատ յինէն այդմ հմուտ Եսքինէս, փոխանակ դատախազելոյ՝ ընտրեաց կոկողանել: Բայց և ոչ աստանօր արժան ինչ է պարտեալ կոր 'ի գլուխ ելանել. մեկեցայց տակա և յայդոսիկ, զայս ինչ եւեթ հարցեալ զնա:

Զքեզ, Եսքինէս, արդեօք քաղաքիս ոք ասասցէ լինել թշնամի, եթէ իմ. յայտ է թէ իմ: Եւ սակայն, ուր գոյր դատաստան յինէն պահանջել յայդոսիկ ըստ օրինաց, եթէ

Զօրովք երկեամն էինչ է, որպէս թէ փոխանակ քաղաքիս խօսեալ էիցէ, թողից ասել զայնոսիկ. իսկ զոր յայտնապէս յուցիւք 'ի կողմ թշնամեաց գործեալն է, զայնոսիկ յիշատակեցից։ Զի ո՞վ ոք 'ի ձէնջ ոչ գիտէ զվճռաւ տարագրեալն Անախինոն, որոյ բան կապեալ ընդ Փիլիպպեայ՝ հրձիգ տանել զնաւարանսդ ձեր, եկն 'ի քաղաքս. զոր իբրև իմ ձերբակալ արարեալ զթաքուցեալն 'ի Պիրէոնի՝ կացուցի 'ի ժողովի ժողովրդեան, չարայաչողդ այդ՝ խանչեալ և զաղաղակ հարեալ, իբր այն թէ յընկերհաշտութեան զանհնարինս գործիցեմ, զանկածան 'ի քաղաքայնոց թշնամանել, անհրամանն 'ի տունս տունս երթեւեկել, եւ արձակուլոդ չնորհել։ Եւ եթէ ատենի Արիոպագին լեալ իրազեկ, և անպատեհ եղելոյ անփութութեան ձերոյ կացեալ 'ի վերայ, չէր 'ի խնդիր ելեալ առնն, և ըմբռնեալ վերստին ածեալ առ ձեզ, խլեալ այնպիսին և 'ի գառն տալոյ ճողոպրեալ՝ 'ի բաց արձակեալ լինէր 'ի պերճաբանէ այտի յայդմանէ։ Իսկ ձեր յայնժամ 'ի տանջանս խոշտանգանաց տուեալ զնա՝ սատակեցէք, որպէս պարտ իսկ էր և զդա ճչնեին գլխովին։

Տեսեալ այնուհետև ատենի Արիոպագին զգօրեա գործեցեալսն յայնժամ, յընտրել ձեր զդա 'ի բարեխօս մեհենին Դելոսի[60], 'ի նմին անխորձութենէ՝ որով բաղդեալ էինչ 'ի համաշխարհի իրաց ետուք վաստանդի, իբրև զդա նախապատիւ ընտրեցէք և տէր արարէք իրին, նոյնժամայն 'ի բաց մերժեաց զդա իբրև զմատնիչ ոք, և Հիպերիդեայ ետ հրաման ատենախօս լինելոյ. և զայս արար՝ անդստին իսկ 'ի բագնէ տուեալ զվճիռն. և պղծոյդ այդմ՝ և ոչ մի քուէ ոչ անկաւ։

Եւ զի ճշմարիտ ասեմ զայս ամենայն, կարդա ինձ զվըկայս այսոցիկ։

## ՎԿԱՅՔ

« Ի դիմաց ամենեցուն վկայեն Դիմոսթենի առքա․ Կալլիաս սունիեցի, Զենոն փլիացի, Կլէոնէս փալերացի, Դեմոնիկոս մարաթոնացի, թէ յընտրել ժողովրդեանն երբեմն զԵսքինէս բարեխօս վասն մեհենին Դելեայ առ Ամփիկտիոնսն, ատենակալ ընդ նոսին նստեալ և մեր՝ զՀիպերիդէս առաւել արժանի դատեցաք ատենաբանել փոխանակ քաղաքիս․ և առաքեցաւ Հիպերիդէս ։ »

Արդ մինչ դմա կայր խօսել, և ատեանն հալածեաց զդա և զայլ որք 'ի տեղին հրամայեաց, նովին իսկ դաւաճան և նենգամիտս ձեզ յայտ արար ։ Արդ այդ մի է 'ի քաղաքավարութեանց խօլականաց, ապաքէն նման յոյժ, և զիարդ ոչ, այնոցիկ՝ որովք զինէն չարախօսէ ։ Բայց դուք և զմիւս եւս այլ յուշ ածջիք ։

Զի զբիւզանդացին Պիւթոնն յորժամ առաքեաց Փիլիպպոս, և յիւրոց անտի դաշնակցաց՝ յամենեցունց հրեշտակս արար ընդ նմին, յամօթ առնել զքաղաքս և անիրաւ յանդիմանել, յայնժամ ես յանդուգն խիզախելոյն Պիւթոնի և յորդահոսանս ընդդէմ ձեր մխեթողին՝ ոչ խորշեցայ յերեսացն, ոչ տեղի ետու․ այլ յոտն կացեալ՝ ընդդէմ դարձայ, և զիրաւունս քաղաքիս չետու կորուսանել, այլ ակն յայտնի զՓիլիպպոս կշտամբեցի անիրաւ․ մինչև նոցին իսկ ուխտակցաց իւրոց յառնել՝ խոստովանել և վկայ լինել․ իսկ դա պատերազմակից նմա եղեալ՝ հակառակ վկայէր իւրում հայրենի աշխարհին, և դայն՝ սուտ ևս ։

Եւ այս ամենայն չէր շատ, այլ և դարձեալ միւսանգամ փոքր մի զկնի ըմբռնեցաւ, զի ընդ Անաքսինոսի լրտեսին 61
գնայր 'ի տուն Թրասոնի ։ Իսկ արդ որ ընդ առաքելումն 'ի թշնամեաց միայն ընդ միայն կայր զբանիւք անկանէր,

նոյն նա յախտաւորակաց բուռն խոկ ինքնին լրտես զուշակ զտանէր և մխերիմ իւրում զաւառին :

Ծնեալ հաւատասեաւ առնեմ զայդպիսին, կարդա ինձ զվկայսն :

## Վ Կ Ա Յ Ք

« Տէլեդեմոս կլէոնեան, Հիպերիդէս կալլիկլեայրեան, Նիկոմաքոս դիոփանտեան վկայեն Դեմոսթենի, և երդմնի խոկ եղեն առ զօրագլուխսն, թէ առնին զԷսքինէս Ատրոմետեան Կոթոկկեցի, զի ժողով գիշերայն 'ի տուն Թրասոնի, և խորհեցան լինել Անաքսինոսի՝ որ Փիլիպպեայ լրտես գատեցաւ : Այս վկայութիւնք տուան առ Նիկիաւ, որ օր երրորդ էր Հեկատոմբէոնի : »

Բիւրք են այլք առ ձեռն են ինձ ասել զգմանէ, բայց զանց առնեմ, զի դայնօրինակք սմանք են : Եւ ինձ այժմ և շատ ինչ յայտնեանէ 'ի գէտս ածել՝ որոնք զա զայնու ժամանակօքն՝ թշնամեաց առաջնահարկու և ինձ ամբաստանար զասաւ · բայց այդոքիկ չկան պահին առ ձեզ 'ի հաւատոյ յիշողութիւն, և ոչ յարդարադատ բարկութիւն · այլ 'ի սովորութենէ չարէ իշխանութիւն բազում տուեալ է ձեր ում և կամք իցեն խարդաւանել և զրպարտել որ ոք օգուտ ձերոյ թելադիր լինիցի, ընդ լուտանացն հեշտութեան և շողոմից՝ փոխանակել զօգուտ քաղաքին : Վասն որոյ յոյժ դիւր և հարթ է միշտ և անքոյթ յապահով թշնամեաց արբանեկել և վարձս առնուլ, քան թէ զձեր կողմն մեծարել 'ի քաղաքավարութեան :

Եւ մինչ չև սկսեալ 'ի պատերազմ, - մերկապլուխ թեկն ածել Փիլիպպեայ՝ դժնդակ է ապաքէն, ով երկիր և դիք, — զի զինչ ոչ, — ընդդէմ հայրենեաց · այլ շնորհեցէք, թէ կամիք, շնորհեցէք զմա զայդ : Իսկ իբրև յայտ յանդիման նաւքն յառ յապուշ մնանեցան, առար հալածա

բնաւրս իմն կրէր նա չարիս ։ Զի ոչ մի ինչ յարդեանց յա-
ռաջոց երկրին ելանէր 'ի դուրս, և ոչ որ ինչ նմա պէտք
էին՝ մտանէր 'ի ներքս • և ոչ զօրագոյն ինչ քան զձեզ էր
յայնժամ ընդ ծով, և ոչ յԱտտիկէ միջամուխ արշաւել
կարօղ՝ առանց Թեսաղիացւոցն զկնի իւր գալոյ և առանց
Թեբայեցւոցն տալոյ նմա անցս ։ Բայց և յետ մարտիւ վանե-
լոյ զձեր որպիսի և իցէ առաքեալ զօրավարսդ, — զի զայ-
դու զանց առնեմ, — 'ի նմին իսկ 'ի վայրացն բնութենէ և
յուժոյ հարստութեան կողմանցս երկոցունց՝ [64] եհաս նմա
ջան և աշխատութիւն ։ Եթէ առ իւրում օգնութեան զԹե-
տաղիացիս կամ զԹեբայեցիս 'ի բանս առնէր՝ խաղային վերայ
ձեր, ոչ զոք համարէր այնմ միտ դնել 'ի նոցանէ • իսկ եթէ
զնոցա հասարակաց բարուրս պատճառեալ՝ ընթրեալ կայր
նոցա 'ի գլուխ, զիւրեաւ այնուհետև ակն ունէր՝ ուրեք
լարել 'ի հաղբս, ուրեք 'ի բանս հանել ։ Արդ զի՞նչ • ձեռն
արկանէ, — անսէք զխօրդ ճարտարարպէս, — յարուցա-
նել պատերազմ ընդ Ամփիկտիոնեան և ազմուկ շփոթի 'ի
ժողովի անդ նոցուն որ 'ի Դրունսն • զի անդէն 'ի նոյնս ակն
ունէր թէ ինքեան կարօտեսցին նոքա ։ Եւ եթէ զայդ յա-
ւանդապահաց [65] իւրոց առաքելոց կամ 'ի նիզակակցացն
ոք առաջի առնէր, 'ի կասկած անկանել համարէր զերան՝
Թեբացւոց և Թեսաղիացւոց, և զամենեսին զգոյշ անձնա-
պահ լինել • իսկ եթէ աթենացի ոք լինիցի՝ որ զայն առնի-
ցէ, և 'ի ձէնջ 'ի հակառակորդացդ, զիւրաւ ծածկեսցի • որ-
պէս և եղեն իսկ ։ Իսկ զի՞արդ 'ի գլուխ եհան զայդ • • • կա-
շառեալ վարձեալ զդա ։ Եւ ոչ ուրուք, որպէս կարծեմ,
նախատեսս եղեալ իրին և ոչ զգուշացեալ, — որպէս սովո-
րեցին լինել առ ձեզ այսպիսիք, — առաջարկեցաւ դա զա-
ռապան [66] երթալ 'ի Դրունսն, և երից կամ չորից ընտրե-
լո՜ւ քարոզ կարգացաւ ։ Եւ իբրև առեալ զպատիւ քաղա-
քիս գնաց եհաս յԱմփիկտիոնեան, զայլն ամենայն Թողեալ
և ապախտ արարեալ, յոր վարձկանեալն էր՝ զայն վճա-
րեալ տարաւ 'ի գլուխ ։ Եւ սաստկեալ և ճառեալ խօսս

պաճուճեալս և տաւաղելս, թէ ուստ ուստեք կիրրայինն երկիր դիցանուէր էղէ, զարմն անխորձ ճառեց և առ համ-գերձեալն զաչացուս՝ զաւանդապահն՝ հրապուրէ հրաման առնել, շրջել պատել զգաւառաւն, զոր ամփիսացիք իբրև զերբեանց ինչ սակին մշակել, իսկ դա բաղբէր նուիրական զերկիրն լեալ, ուր Լոկրացւոցն չէր ինչ ընդ մեզ եղեալ դատ, և ոչ 'ի մէջ մատուցեալ զօրս դա զարդիս բաղբաղէ՝ ոչինչ պատմելով ճշմարիտ: Եւ անտի ծանիջիք: Անմարթ էր Լոկրացւոց դատ ինչ վարել ընդ քաղաքիս առանց նկակոչ առնելոյ: Իսկ ո՞ զձեզ ձայնեաց 'ի դատաստան, առ որո՞վ իշխանութեամբ. ասա զոք որ դիտիցէ, ցո՛յց: Այլ ոչ գտանիցես, այլ զուր և սուտ պատճառեցար զայդ:

Արդ 'ի շրջել Ամփիկտիոնեաց ընդ երկիրն ըստ դորա սադրելոյ, անկեալ Լոկրացւոց 'ի վերայ՝ նետահար արարին զբեթէ զամենեսեան, և զոմանս յաւանդապահացն յափշտակեցին: Եւ իբրև գամ մի յայդցանէ մեղայք և պատերազմ 'ի վերայ ամփիսացւոցն յուղեցաք, նախ Կոտտիփոս եկաց զօրավար բանակին Ամփիկտիոնեաց. այլ զի կէսք չեկին, և եկեալքն անգործ կային, 'ի յաջորդ ժողովն Դրանցն զՓիլիպպոս կացուցին զօրագլուխ՝ որք պատրաստեալքն էին և յառաջագոյն իսկ 'ի բնէ անզգամք 'ի Թեսալացւոց և յայլոց ևս քաղաքաց, և բարուրս պատշաճաւորս պատճառեցան. զի կամ ինքեանց պարտ էր, ասէին, մաքսիլ և հոգալ այլազգիս, և պատժել զորս ոչն հաւատարեցին, և կամ զնա ընտրել: Եւ զի՞ պիտոյ է առաւել ինչ ասել. զի այդոքիւք ընտրեցաւ, և անդէն վաղվաղակի զօրաժողով լեալ Փիլիպպոս և խաղացեալ իբրև 'ի վերայ Կիրրայի, և ողջոյն յոյժ ասացեալ կիրրացւոց և Լոկրացւոց՝ երթայ առնու զԵլատիա: Արդ, եթէ ընդ առաջնովն զայս՝ չէր Թեբացւոց փոխեալ 'ի խորհրդոց մտաց իւրեանց և 'ի մեզ հասեալ, իրք այդ ամենայն՝ իբրև զհեղեղատ 'ի քաղաքս անկանէր: Այլ արդ նոքա յեղակարծումն յանկար-

ծակի զգէմ կալան նորա , 'ի վեր քան զամենայն՝ ով արք աթենացիք՝ 'ի դէպն ուրուք խնամոց , և այսպ՝ ըստ կարի առն միոյ՝ յիմմէ առնելոյ :

Աղէ առուր ինձ զհրամանն զայնոսիկ , և զժամանակն յորս գործեցաւ ամենայն . զի տեսջիք՝ քանի՛ քանի՛ խռս աղմկեալ՝ և չետ վրէժս զլուխդ այդ պղծալից : Կարդա ինձ զհրամանն :

## ՀՐԱՄԱՆ ԱՄՓԻԿՏԻՈՆԱՑ

« Առ քրմաւն Կլինագորաւ , 'ի գարնային ժողովի Դրանց , հաճոյ թուեցաւ գարաստանեցն և ատենակալաց Ամփիկտիոնացն և հասարակութեան Ամփիկտիոնաց , — քանզի ամփիսացիք ոտնակոխ առնեն զսրբանուէր երկիրն , և վարեն , և պաճարս արածեն 'ի նմա , — ելանել անդր գարաստանեաց և ատենակալաց , և արձանաշար պատել զսահմանսն , և սաստել ամփիսացւոց՝ մի եւս կոխել անդր : »

## ԱՅԼ ՀՐԱՄԱՆ

« Առ Կլինագորաւ քրմաւ , 'ի գարնային ժողովի Դրանց , հաճոյ թուեցաւ գարաստանեաց և ատենակալաց Ամփիկտիոնացն և հասարակութեան Ամփիկտիոնաց , — քանզի ամփիսացւոց լարաբաժին արարեալ զնուիրական գետինն՝ մշակեն և արօտականս ճարակեն 'ի նմին , և արգելեալք յայդմանէ՝ զինուք յարձակեալ խափանեցին բռնութեամբ զհամաշխարհի ժողովն հելլենացւոց , և զոմանս եւս վիրաւորեցին , — զօրավարին ընտրելոյ Ամփիկտիոնաց՝ Կոտտիփոսի արկադացւոյ՝ հրեշտակագնաց լինել առ Փիլիպպոս Մակեդոն , և աղաչել՝ զի օգնեսցէ Ապողոնի և Ամփիկտիոնաց , և մի՛ անփոյթ արասցէ զաստուածոյն թշնամանելոյ յամփիսացւոց անտի ամպարշտաց . և զի զօրագլուխ վիրա-

հեծան ընտրեն զնա Հելլէնք ժողովականքն Ամփիկտիոնաց ատենին : »

Կարդա և զժամանակն յորս եղեն այսոքիկ · քանզի են՝ յորս զօրավար եկաց դա : Կարդա :

ԺԱՄԱՆԱԿՔ

« Իշխան Մնեսիթիդէս, որ օր վեշտասան էր Անթեստերիոն ամսոյ : »

Տուր ինձ աղէ զհրովարտակն, զոր 'ի սաստանդանել Թեբայեցւոց առաքէ Փիլիպպոս առ ուխտակիցսն 'ի Պելոպոննէս · զի և անտի հաւաստի տեսանիցէք, թէ ծածկէր թաքուցանէր զբուն պատճառս իրացն · այն զի զայսդուրիկ ընդդէմ Ելլադայ և Թեբայեցւոց և ձեր իսկ գործէր, և ձևանայր առնել զհասարակացն և զհաճոյս Ամփիկտիոնացն : Բայց որ պատճառս մատոյց նմա և պատճառանս, դա այդ այր է : Կարդա :

ՀՌՈՎԱՐՏԱԿ ՓԻԼԻՊՊԵԱՅ

« Թագաւոր մակեդոնացւոց Փիլիպպոս, պելոպոնեսացւոց որ 'ի մերում ուխտակակցութեան, գործակալաց և բարձակցաց և այլոց ուխտակակցաց [67] ամենեցուն խնդալ :

« Քանզի Լոկրացիք, անուանեալքն Ոզոլք, բնակեալք յԱմփիսայ, յանցաւորք են 'ի մեհեանն պիւթականն Ապողոնի, և եկեալ զինուք աւար հարկանեն զսրբեալ երկիրն, կամիմ ձեզք համագէրձ հասանել 'ի Թիկունս օգնականութեան աստուածոյն, և վրէժ խնդրել յանարգողաց սրբութեան ինչ իրիք 'ի մարդիկ : Վասն որոյ զինու զարդու ընդառաջ ելերուք ինձ 'ի Փոկիս, բարձեալ պաշար քառասնօրեայ ; 'ի գլուխ Լոոս ամսոյ՝ որպէս մեքս հաշուեմք, իսկ

ըստ աթենացւոց՝ Բոյեդրոմիոնի, և ըստ կորնթացւոցն՝ Պանեմոսի ։ Զմիահամուռ ընդառաջեալսն՝ առ խորհրդակիցս կալջուք ; իսկ զչեկեալսն 'ի մեզ՝ առ պատժապարտս ։ Ողջ լերուք ։ »

Տեսանէք զի քողարկէ զիւր պատճառն և յամփիկտիոնեանն լինի ապաստան ։ Արդ՝ ո՞ պատրաստեաց նմա զայգոսիկ, ո՞ մատոյց նմա զպատճառանսդ, ո՞վ որք եղելոցն գլուխ չարեացապատր ․ ո՞չ ապաքէն դա ։ Մի՛ ուրեմն, ով արք աթենացիք, ձեռն առեալ յածեալ ասիցէք, թէ յերեսաց միոյ մարդոյ այս անցք անցին ընդ Եղլադա ։ Ոչ 'ի միոջէ, այլ 'ի բազմաց և յապիրատաց որ առ ամենեսեան, ո՞վ երկիր և դիք ․ յորոց մի է և դա ․ զոր, եթէ համարձակ առել պարտ իցէ զճշմարտութիւն, ոչ ինչ դանդաղեցից ես հասարակաց պատուհաս ասել՝ ամենայնի որ ըստ նոցանէն տուժից տուգանաց, մարդկան, տեղեաց, քաղաքաց ։ Զի որ զսերմն վարեաց, նա էր բուսելոց չարեացն հաւակ ։ Զոր ընդ տեսանելդ միանգամ՝ զխո՞րդ ոչ սոսկացեալ արկէք զաչս, զարմանամ ․ բայց եթէ, զի որպէս թուի, խաւար թանձրամած անկեալ կայ կրճիմ ընդ ձեզ և ընդ ճշմարտութիւն ։

Արդ քանզի 'ի հակառակ հայրենեաց գործեցեալսն գորա ձեռնարկի, եհաս ինձ գալ մտել յայնս՝ զորս հակառակ նոցին ես խնդրեաց տուաքինացայ ․ զոր ըստ բազում գլխոց արժան է ձեզ լսել յինէն, և մանաւանդ՝ զի անպատեհ իմն է, ով արք աթենացիք, եթէ ես արդեամբք վասն ձեր ընդ փորձ երկանց անցեալ ժուժկալեցի, իսկ դուք և ոչ բանիւք չափ ևեթ նոցին համբերիցէք ։

Զի հայեցեալ իմ 'ի Թեբայեցիս, գո՛գ և 'ի ձեզ ես, զի որ երկացուցն ահաւորն և մեծի զգուշութեան արժանին էր ․ Թո՛յլ տալ Փի՛լիպպոսի բարգաւաճել, զայնու անփոյթ արարեալ, և ոչինչ բնաւ եղեալ անձնապահ, 'ի նոցա հնարից՝ որ զՓի՛լիպպեայ միաբան ունէին և կաշառեալք էին յեր-

կուսանց կողմանց , նա՝ և մեք և յորդոր եա էիք 'ի Թշնամութեան և յառաջնել ընդ միմեանս , դէտ ակն 'ի վերայ եդեալ՝ սաէալ կայի հանապազ , զի մի այդ լինիցի • ոչ յիմմէ իւիք կամիմ յօժարութեամբ ևեթ օգուտ զայն մարկուցեալ , այլ գիտելով եա՝ զի Արիստոփոն , և Եւբուլոս եա , յամենայն ժամ զայս սէր կամէին առնել • և որ յայլ իրս ընդդիմադարձ միմեանց էին , յայսմ համամիտ միամիտ միահաւան դատանէին • որոց դու , ով աղուես , 'ի քծինս հարեալ առ կենդանեաւն նոցին զհետ կրթէիր , իսկ յետ մահուանն չէ մանեաս չամնուս 'ի միտ՝ զի զնոցանէն չարախօսես : Զի զոր յաղագս Թեբայեցւոց յես պախարակես , քան զինեն՝ զնոցանէ մանաւանդ լինիս ամբաստան , որ յառաջ քան զիս ընդ նոյն նիզակակցութիւն հաճեցան :

Այլ անդրէն դառնամ • զի յորժամ դրդեաց յարոյց դա զպատերազմն յԱմփիսսա , և գործակիցք իւր կատարեցին զԹշնամութիւն առ Թեբացիս , յայնժամ եկն Փիլիպպեայ 'ի մեր վերայ գալ , յոյր սակս զդէտ ընդ իրեարս արկանէին զքաղաքս • և եթէ փոքր մի ևս չէր մեր վաղայարոյց զարթուցեալ , և ոչ անձինս անգամ մարթէաք ըղձալ • այնչափ յառաջադէմ յաջողեալ դոցա զիրսն : Իսկ թէ որպէս էիք յայնժամ ընդ միմեանս , զհրամանքս և զպատասխանիս զայսոսիկ լուեալ 'ի միտ առնուցուք :

Առ կարդա ինձ զհրամանս զայսոսիկ :

## ՀՐԱՄԱՆ

« Առ Հերոպիթոս իշխանաւ , որ օր քսան և հինգ էր Ելափեբոլիոն ամսոյ , 'ի նախագահութեան Երեքթէական ցեղին , խորհրդով ատենին և զօրագլխացն • քանզի 'ի սահմանակից քաղաքաց՝ էր զոր առ Փիլիպպոս , և էր՝ զոր տապալեաց , և հուսկ ուրեմն կազմի դիմել յԱտտիկէ , յոչինչ համարեալ զդաշինս մեր • և նկրտի լուծանել զերդմունս և զխաղաղութիւն , դրժեալ միաբան ուխտին հաւատար-

մուԹեան, հաճոյ Թուեցաւ ատենին և ժողովրդեան՝ տալ քել առ Նա հրեշտակս, խօսել ընդ Նմա և փարելի առնել, զի մնասցուանք զառ մեզ միաբանուԹիւն և զդաշինս ցանկ անվԹար պահեսցէ. ապա Թէ ոչ, ժամ տացէ քաղաքիս խորհել, և զու՛ արասցէ զինուց մինչև յամիսն Թարգէլիոնի: Ընտրեցան 'ի միջոյ ատենին Սիմոս Անագիրասեցի, ԵւԹիդեմոս Փլիասեցի, Բուլագորաս յԱլոպեկեայ:»

## ԱՅԼ ՀՐԱՄԱՆ

« Ար իշխանուԹեան ՀերոպիԹեայ, որ օր վերջին էր Մունիքիոնի ամսեան, խորհրդով զօրապետացն. քանզի Փիլիպպոս ջանացեալ լինի օտարացուցանել 'ի մէնջ զԹեբայեցիս, և պատրաստ եւս է ամենայն զինու զօրուԹեամբ 'ի մերձակայս Ատտիկոյ գալ հասանել, անցեալ զուխտիւ դաշանցն որ ընդ մեզ, հաճոյ Թուեցաւ ատենի առագանւոյն և ժողովրդեանն՝ առաքել առ Նա քարոզ մի և հրեշտակս, խնդրել աշխարհախաղաղաւ պատերազմօք՝ զու՛ առնել մարտի. որպէս զի ըստ մարԹելոյ խորհեսցի ժողովուրդն, որոյ չև է ցայժմ եդեալ 'ի մտի՝ ձեռն յայս կամ յայն ինչ տալ 'ի վայելչականաց: Ընտրեցան յատենակալաց անտի Նէարքոս Սովսինոմեան, Պոլիկրատէս Եպիփրոնեան, և քարոզ՝ Եւնոմոս Անափլիստացի 'ի ժողովրդականաց:»

Կարդա և զպատասխանիսն:

## ՊԱՏԱՍԽԱՆԻ ԱՌ ԱԹԵՆԱՑԻՍ

« Թագաւոր Մակեդոնացւոց Փիլիպպոս, աԹենացւոց ատենի և ժողովրդեան խնդալ:

« Զոր ի սկզբանէն ընդ մեզ ձեր կամք էին՝ ոչ անգիտանամ, և Թէ զի՛ր փոյԹ տանիք՝ զուն գործեալ զՀեօք ածել

Իբրև դարձեալ դայլեք դուք և Թեբայեցիք : Իսկ նախեալ յայնժամ 'ի քաղաքիս՝ գիտէք ամենեւք համայն և սակաւս ինչ կարի կարեւորս :

Ընդ երեկս էր, եկն ոք պատմել նախապետացն, թէ առեալ Ելատիա : Այլ յարուցեալ ոմանց իսկ և իսկ յընթրեաց անտի[68], հալածեցին զկրպակաւորսն 'ի տաղաւարաց հրապարակին, զխորձիլթսն հրձիգ արարին. այլք զզօրագլխացն յղեցին, ձայն եռուն փողարին, և շփոթ և շշուկ լի էր քաղաքս : Վաղիւ ընդ այգն 'ի խորհուրդ կոչեցին նախապետքն զատեանն. և դուք 'ի ժողով չոգայք. և մինչ չև նոցա 'ի խորհուրդ մտեալ և խորհեալ ինչ յառաջագոյն, ժողովուրդն ամենայն բազմեալ նկուռք կայր 'ի վեր անդր[69] : Եւ ապա իբրև եմուտ ատեանն, և ցուցին նախապետքն որ ինչ յառաջագոյն պատմեալն էր նոցա, և զեկեալն 'ի մէջ անդր մատուցին, և նա կաց խօսեցաւ, եհարց քարոզն. « Ո՞վ կամի հրապարակախօս լինել. » ոչ ոք մատ չէր 'ի մէջ : Եւ քարոզին բազում անգամ զնոյն հարցեալ, ոչ ոք բնաւ յարեաւ եկաց, մինչ դեռ անդ էին զօրավարքն ամենայն և ամենայն ճարտարախօսք, և աշխարհն միաբաբառ ձայնիւ հրաւէր կարդայր՝ խօսել ումեք 'ի փրկութիւն. զի զոր ըստ օրինաց քարոզն ձայն արձակէ, հասարակ համաշխարհի զայն համարել արժան է և իրաւ : Բայց եթէ պարտ էր ամենեցուն որ ընդ փրկութիւն քաղաքիս կամէին՝ 'ի մէջ անդր երևել. ամենեքին դուք և այլ ևս աթենացիք յարուցեալ յատեան ելանէիք. զի ճշմարտութեամբ համեալ եմ՝ թէ ամենեքին դուք զփրկութիւն նորա կամէիք. իսկ եթէ ճոխագունից, երեքարիւրքն[70]. իսկ եթէ երկոցունց այնոցիկ՝ խնամարկուաց քաղաքիս և մեծատանց, նոքա՝ որք յետ այնորիկ զատատուր ընծայեն մատուցին. զի և 'ի խնամոտ մտաց և 'ի մեծութենէ արարին զայն : Բայց թուի ինձ այնպէս, թէ ժամանակն այն և օր՝ ոչ զայր ոք խնամոտ և ընչեղ միայն հրաւիրէր, այլ և որ ի սկզբանէն քաջ զհետ կրթեալ իցէ իրացն, և ուղիղ հա-

ականրագոյնքն և Թարմատարք․ զի ոչ Քիոս, ոչ Հռոդոս և ոչ Կերկիւրա ընդ մեզ էին․ և արծաթոյ կշիռ՝ քառասուն և հինգ ևեթ տաղանդաց չափ, և այն՝ յառաջնագոյն ժողովեալ համբեալ էր․ իսկ ապստամբքն կամ՝ այրուձի՝ բաց 'ի մերոցս՝ և ոչ մի ։ Եւ որ քան զամենայն ահաւորն էր և 'ի չահ Թշնամեաց, գոցա՝ զամենայն սահմանակիցս յառաւելութիւն քան 'ի մեր պատրաստեալ էր, զՄեգարացիս, զԹեբացիս, զեւբէացիս ։ Քաղաքքս այսպէս էին երբ, և չէք ումեք ասել ինչ այսմ համառօտ ։ Իսկ Փիլիպպեայ երբ, ընդ որում էր մեզ մրցութեան հանդէս, առանց որպէս ։ Նախ ինքն էր իշխան ընդ իւր եղելոց ամբոխին, և ինքն միահեծան, որ քան զամենայն մեծ է 'ի պատերազմի․ և ապա, նոքա համապատ զէն 'ի ձեռին կային․ և ապա, ինքն ճոխութեամբ յօրացեալ՝ տանէր զոր համայն թուէր նմա, ոչ 'ի հրամանս ինչ առաջարկեալ, ոչ յայտ յանդիման յատենի հրապարակաց առնեալ խորհուրդ, ոչ 'ի զրպարտչաց խածբածեալ, ոչ անիրաւութեան ամբաստանեալ կրեալ, և ոչ համարոյ պարտ եղեալ ումեք․ այլ համարձակ ինքն տէր, ինքն առաջնորդ, ինքն ամենայնի իշխան ։ Իսկ ես՝ ընդդէմ նորա ճակատեալս առնելոց, — զի և զայս արժան է կըշռել, — զի՞ն իմիք իշխան էի․ և ոչ իմիք ։ Քանզի զատենաբանելն իսկ նախ, որում միայն հաղորդ էի ես, միապէս շնորհէիք դուք վարձկանաց նորա, որպէս և ինձ․ և յորս առաւել էին դոքա քան զիս, — և շատ իսկ այն էին ընդ իւրաքանչիւր պատճառանաց դանելոց, — զայն ամենայն 'ի նպաստ Թշնամեացն խորհուրդ հաստատեալ ձեր, այնպէս 'ի բաց գնայիք ։

Այլ սակայն սովին իսկ նիզակցութեամբս՝ նիզակակիցս ձեզ արարի զեւբէացիս, զաքայեցիս, զկորնթացիս, զԹեբացիս, զՄեգարացիս, զԼեւկադացիս, զԿերկիւրացիս․ յորոց գումարեցան բիւր մի և հինգ հազար այլազգիք, երկու հազար այրուձի, Թող զքաղաքական զօրս ։ Եւ արծաթոյ՝ որչափ մարթացայ՝ յաճախութիւն յոյժ ժողովեցի ։

Իսկ եթէ զարդար բաժին Թեբայեցւոցն 'ի դէմս անձես, Էսքինէս, կամ զբիւզանդացւոցն, կամ զեւբիացւոցն, կամ թէ զհաւասար բաժնեանց ինչ ճառես այժմ, ագխտա-նաս նախ, զի 'ի բովանդակ երից հարիւրոց անտի նաւաց պատերազմելոց 'ի վերայ Հելլենաց՝ զերկերիւրսն քա-ղաքս մատոյց. և ոչ տեսաւ զեան ինչ զայն համարել, ոչ զխորհրդականս իրին 'ի դատ վարել, և ոչ զայրանալ ընդ այն. — զի և անպատեհ իսկ էր. — այլ աստուածոցն շնորհս կալաւ, զի 'ի հասարակ հասեալ վտանգի հելլենա-ցւոց՝ ինքն կրկնապատիկ քան զայլսն նպաստ եղև 'ի փրկու-թիւն ամենեցուն ։ Ապա 'ի նանիր շնթես սլոկես շողոմս առնես դու սոցա՝ զիս զրպարտելով ։ Զի՞ է՝ զի զոր պարտն էր առնել՝ այժմ ասես. իսկ յայնժամ, զի աստ 'ի քաղաքիս և մերձ էիր, չեդեր ամբաստան. եթէ միայն հնարաւոր ինչ էր՝ յերեսաց հանգամանաց ժամանակին, յորս ոչ զոր կա-մեցաքն, այլ զոր իրքն առաջի մատուցանէին, պարտ էր ըն-դունել ։ Զի որ գնէրն ընդ մեր, և զմերժեալսն 'ի մէնջ ընդ-դրկէր վաղվաղակի, և յաւելոյր արծաթ 'ի գլին, անդ պատ-րաստական կայր ։

Սակայն, եթէ այժմ զգործոցս ամբաստանութիւն կրեմ, զի՞նչ կարծէք, եթէ 'ի ճղճմել իմում 'ի խոյզ և 'ի խնդիր այդոցիկ՝ սորսորեալ թօթափէին 'ի մէնջ քաղաքք, և 'ի Փիլիպպոս երթեալ յարնչէին, և համայն Եւբիոյ և Թեբայ և Բիւզանդիոյ տէր լինէր, զի՞նչ կարծիցէք թէ առնէին և խօսէին յայնժամ արքդ այդ ամպարիշտք. ո՞չ ապաքէն՝ թէ դաւ և մատնութիւն գործեցաւ, ո՞չ ապաքէն՝ թէ որ ընդ մեզն լինել կամէին՝ հերքեալ մերժեցան ։ Եւ դարձեալ, թէ 'ի ձեռն բիւզանդացւոց հաս կալաւ զՀելլեսպոնտոս, և պարենի ցորենոյն հելլենացւոց տէր եղաւ. պատերազմ ծանր և դրացի 'ի Թեբայեցւոց անտի յԱտտիկէ եհաս. ծով յերեսաց յարձակմանց հինից Եւբիոյ՝ եղև աննաւելի ։ Ո՞չ ապաքէն զայսոսիկ բարբառէին, և այլ ևս բազում ինչ առ սոքօք ։ Չար է, ո՜վ արք աթենացիք, միշտ չար՝ այր զրպար-

տող, և յամենայն չարակնող և պարսաւադէտ: Իսկ այրուկդ այդ՝ բնութեամբ իսկ աղուես է, ոչինչ առողջախորհուրդ արարեալ զորս խնդրանէ և ոչ ապաստանիւ ինչ, 'ի բնէ հոպլիտ կապիկ, գեղջուկ Խնամայրա, բեմբասաց վատանշան: Զի յի՞նչ պէտս հայրենեաց եկն քո զօրութիւնդ. զանցելոց գնացելոցն այժմ խօսիս առ մեզ. որպէս զի բժիշկ որ մեռեալ առ աշխատեալ հիւանդան՝ չասիցէ և չուսուցէ թէ յախտէն թափեսցին. և իբրև վախճանեցաւ որ 'ի նոցանէ և յուղարկեցաւ, զհետ 'ի գերեզմանն ընթացեալ պատմիցէ. « Եթէ զայս ինչ և զայս արարեալ էր այրդ այդ, ոչ մեռանէր: » Բանդագուշեալ դու, այժմ ուրեմն խօսիս:

Նա աւանիկ և զպարտութիւնն, — եթէ յայն ինչ պերճացեալ ես՝ ընդ որ հեծել քեզ արժան էր մանաւանդ, այլ նզովեալ, — ոչ իւիք ինչ յինէն կողմանէ զատանիցէք եղեալ քաղաքիս: Եւ այսպէս առնէք 'ի քնին: Ոչ ուրեք երբէք՝ ուր հրեշտակութեամբ առաքեցայ ես 'ի ձէնջ, յաղթահարեալ դարձայ 'ի հրեշտակացն Փիլիպպոսի, ոչ 'ի Թեսաղիոյ, ոչ յԱմբրակիոյ, ոչ 'ի Իլիւրիկեցւոց, ոչ 'ի Թագաւորացն Թրակացւոց [84], ոչ 'ի Բիւզանդիոյ, ոչ այլ ուրեք բնաւ, և ոչ հուսկ ուրեմն 'ի Թեբայեցւոց: Սակայն, յորս հրեշտակք իւր նկուն լինէին բանիւ, հասեալ նորա զէնուքն 'ի վերայ՝ տապալէր զամենայն: Իսկ արդ յինէ՞ն պահանջես զայնոսիկ. և ո՞չ ամաչես, զայր մի՝ զոր և 'ի կնատութիւն կատակես, նմին միում միայնում արժան զատել՝ զի յաղթող լինիցի զօրութեանն Փիլիպպեայ, և այն՝ բանիւք եւեթ: Քանզի ի՞մ այլ ինչ էի ես իշխան. ոչ անձին իւրաքանչիւր, ոչ բախտի ճակատելոցն 'ի մարտ, ոչ զօրավարութեանն՝ զորոյ յինէն պահանջես զհամարս. այդչափ անզգամ ես: Բայց զորոց միանգամ առն ճարտարախօսի անկ իցէ համարս տալ, զամենայն ա՛ռ 'ի մէջ հարց և քնին, ոչ հրաժեշտ տուեալ խուսափեմ: — Իսկ զի՞նչ այն իցէ: — Տեսանել զիրսն անդստին 'ի վերուստ խնդրանէն, զգաստ լինել ինքնին յառաջագոյն, և այլոց կանխագուշակ: Այ-

ատքիկ և պատշաճեցան յինէն ։ Առ սոքօք՝ և զհեղգութիւնս , զդանդաղանս , զանփութութիւնս , և զխարդս , որ յամենայն քաղաքս կարեւոր մնացին են վարչութեան , զայդոսիկ եւս կարծել ըստ կարի , և նմին հակառակ՝ 'ի միաբանութիւն՝ 'ի սէր և 'ի ջանս պատշաճ ախոյեան տանելոյ դարձուցանել ։ Եւ այդ իսկ ամենայն վճարեցաւ առ յինէն , և ոչինչ ուրեք գտցէ ոք՝ յինէն կուսէ պակաս մնացեալ ։ Իսկ եթէ հարցանիցէ ոք զիք · Ի՞ւ իւիք այսպ 'ի քաղաքում ինչ իրս՝ յորս ձեռն արկ՝ յաղթեցաւ Փիլիպպոս · ասասցեն ամենեքեան , թէ զօրօքն և պարգեւօք և կաշառաբերելն առնելով զիրացն գործակալս ։ Արդ ուրեմն սպայիցն ոչ իշխան էի ես և ոչ զօրավարութիւ , վասն որոյ և ոչ զգործոց նոցա ինձ ինչ անկ իցէ տալ համարս ։ Եւ 'ի չլինել կարաւեալ կաշառաբեկ՝ զօրագոյն քան զՓիլիպպոս գտայ · զի որպէս որ զգնեալն տայ՝ յաղթէ առնողին՝ եթէ վաճառականուր լինիցի , նոյնպէս և որ չառնու ինչ և չկաշառի՝ յաղթէ գնողին ։ Այսպ ուրեմն , որչափ իմովսանն , անպարտելի եկաց քաղաքս ։

Արդ առաջնիկ , որ ինչ 'ի մէջ բերել էր ինձ՝ թէ յարժանի և յիրաւի գրեաց սա զինէն զայսոսիկ , առ այլովք բազմօք՝ այդոքիկ են և դոցին նմանք ։ Իսկ զոր ամենեքին իսկ դուք գիտէք , զայն այժմ ասացից ։

Քանզի անդէն և անդ զկնի ճակատամարտին , զխառնեալ և տեսեալ ժողովրդեան զամենայն զոր ես գործեցի՝ յահագինն և 'ի սարսափելիս եղեալ ձեռնհասութիս , յորժամ չէր ինչ զարմանք ապախտառողել առ իս բազմութեան , նախ՝ որ ինչ իմ խորհուրդք էին 'ի փրկութիւն քաղաքիս՝ ընտրեալ կալաւ զնոսին · և որ ինչ 'ի պահ զգուշութեան գործեցաւ , զնդի զնդի պահապանացն կարգ յօրինուածոյ , պարկէնք փոսից , արծաթ 'ի պէտս պարսպացն , իմով հրամանօքս վճարեցան ։ Եւ ապա յընտրելն զոք համբարակապետ[88] , զիս քան զամենեսեան կամեցաւ ժողովուրդն ։ Յետ այսորիկ , երբև ամբոխ արարեալ կուտեցան 'ի վերայ իմ՝

քէն եւ վկայեցայ, զոնէ ոչ ինչ քան զԿեփալ՚ոս վատթար լինել քաղաքացի։

Բազում ուսանք տեսանիցէ ոք զդորա ապիրատութիւն եւ պյաչաղկոտութիւն, այլ մանաւանդ յորոց զբախտէն խօսեցաւ։ Այլ եւ ընաւ իսկ, որ մարդ ոք է եւ մարդոյ զբախտն յանդիմանն հարկանէ, ամենեւին անմիտ զնա համարիմ եւ անխրատ։ Զի որ երջանիկ եւ բարեբաստ զանձն կարծէ, ոչ գիտէ եթէ կացցէ նոյնպիսի բախտ իւր եւ մինչեւ ցերեկոյ․ ո՞րպէս ապա արժան իցէ խօսել զնմանէ, կամ զի՞նչ զայլոյն նախատել։ Այլ քանզի դա առ այլովք բազմօք եւ ՚ի մասինդ յայդմիկ ամբարտաւանս բարբառեցաւ, մի՛ա գիք, ո՛վ արք աթենացիք, եւ տեսէք՝ քանի՛ ճշմարտագոյնս եւ մարդավայելչագոյնս զբախտէն քան զդա ճառեցից ես։ Ես զբախտ քաղաքիս բարի վարկանիմ, եւ ՚ի Դոդոնեանն Արամազդայ եւ ՚ի Պիւթեանն Ապողոնէ տեսանեմ գուշակեալ ձեզ զայն․ իսկ զմարդկանն առ հասարակ, որպէս ինչ այժմս գտանի, դժուարին եւ դժնդակ։ Զի ո՞վ ՚ի հելլենացւոց կամ ո՞ ոք ՚ի խժդժից այժմիկ ընդ բազում եւ մեծամեծ եղերանց ընդ փորձ չանցանէ։ Վասն որոյ՝ զլաւագոյնսն ընտրելդ եւ զբարեբախտագոյնդ քան զայլ հելլենացիսն [88] լինել, որ կարծէին երջանիկ կեանս վարել ՚ի լքանելն զմեզ, բարւոյ մասին քաղաքիս վարկանիմ զայդ․ իսկ զդայթելն եւ ոչ յամենայնի ըստ կամս յաջողել, համարիմ բաժանորդ լինել քաղաքիս ՚ի մասն վիճակի այլոց մարդկան, որ ինչ եւ մեզ անկեալ էր։ Իսկ զիմոյ անձին բախտ, եւ զմիոյ միոյ իւրաքանչիւր ՚ի ձէնջ, արդար կարծեմ յիւրանն ինքնութեան ՚ի քննին առնուլ։ Արդ ես զբախտէն այսպէս արժան դատիմ ուղղութեամբ եւ իրաւամբք, որպէս ինձ թուի, կարծեմ թէ եւ ձեզ։ Իսկ դա զիմ առանձին բախտ քան զհասարակացն քաղաքիս՝ տիրագոյն լինել ասէ, զփոքրս եւ զտրուպ քան զազնիւն եւ զմեծ։ Եւ զի՞արդ մարթի այդպէս լինել։

Ես սակայն, եթէ քեզ, Եսքինէս, հաճոյ է ապաքէն ցապաք զիմ բախտն կրկնել, ՚ի քո՛յդ հայեաց․ եւ եթէ լա-

ւադոյն զինն քան զգոյգ գտանիցես , դադարեա 'ի բամբասելոյ զայն ։ Հայեաց արդ աստէն և աստ անդստին խնդրբանէ ։

Եւ մի՛ ոք , երդումն յԱրամազդ տուեալ և 'ի դիս , ոյծ ինչ և անհամ յիս ըստադացէ ։ Զի եթէ զաղքատութիւն ոք այայն տանիցէ զուրութք , ես և ոչ միտս անգամ համարիմ ունել նմա , և ոչ՝ եթէ 'ի Ճոխութեան սնեալ , և այնիւ սիգացեալ նազիցի ։ Այլ յերեսաց հայհոյութեան և ամբարտաւանութեան ժանտիդ այդորիկ սոփեալ յայսպիսի բանս գալ անկանել , որովք պաշտեցայց չափ ևեթ ըստ մարթելոյ 'իմովսանն ։

Արդ ինձ՝ մինչ մանուկն էի , Եսքինէս , եղև ցանկորդել յարժանաւոր վարժարանս , և առ ձեռն ունել զինչ և վայելէ ունիլք՝ որ առ կարօտանաց չառնիցէ ինչ անպատեհս ։ Եւ իբրև ելի ըստ մանկութիւն , որ ինչ այնուհետև պատշաճն էր՝ զայն առնել . պարապեալ կալ հանդիսից խաղուց , նաւս հանդերձել պատերազմի , հարկս հարկանել , ոչ ուրեք պակասել յառանձին և 'ի համաշխարհի տասնատեղունութեանէ , այլ քաղաքիս և բարեկամաց պիտանի լինել ։ Իսկ իբրև հաճոյ թուեցաւ ինձ մատչել 'ի գործ հասարակաց , այնպիսի առաքինութիւնս ընտրել՝ որպէս զի բազում անգամ պսակ ժառանգել 'ի հայրենեաց և յայլոց հելլենացւոց , և ոչ ատելեացդ իսկ համարձակել դէթ բերանել պարսաւել զընտրութիւնս իմ ։ Արդ ես այսպիսեաւ կենցաղավարեցի բախտիւ ։ Բայց թէպէտ և բազում ինչ է ինձ ասել զինմանէ , զանց առնեմ . զգուշացեալ՝ մի՛ դուցէ տրտմեցուցանիցեմ զոմանս որովք գովիցիմն ։

Իսկ դու , մեծարոյդ այր և այլոց անգոսնիչ , առ սովաւ միտ եդեալ նայեաց , որո՛վ իւիք վարեալ ես բախտիւ . յորում , 'ի մանկութեանդ յետնին կարօտութեամբ սնեալ , ընդ հօրդ կանխեալ սկէիր առ դպրոցին , զսևակն լեսուլ , զնստարանն սրբել սպունգով , աւել ածել զդասատանն մանկտւոյն , 'ի ծառայի կարգ , և ոչ մանկան ազատի ։ Իսկ

Իբրև եղեր այր, մայր քո որ ծէսս նուիրէր՝ զոր առ նմա գրակարդաց կայիր, և այլ ևս ընդ նմին ստանձնէիր սպաս. և զցայգ՝ մորթովք եղջերուաց վերարկեալ, և լցեալ թասկուկօք արբեցուցեալ և սրբեալ զնուիրեալսն, և շփեալ կաւով և թեփով, և յարուցեալ[87] 'ի սրբութենէն՝ հրաման տայիր ասել. «Փախեայ 'ի չարէն, գտի զլաւն.» և պանծայիր՝ թէ չիք ուրուք երբեք այնպիսի ոռնացեալ: Այնպէս համարիմ և ես իսկ և իսկ. զի մի կարծիցէք՝ թէ այսպէս մեծամեծս զխօսէ բարբառել, այլ ոչ և զերախանոյս ղօղանջել: Իսկ 'ի տուէ, պչրանօք կաքաւիչսն ընդ փողոցս ածեալ, պսակեալս 'ի շուշմբայ և 'ի սօսի[88], վիշապականս լորտուս 'ի ձեռաց ճմլելով, և 'ի վեր քան զգլուխդ ամբարձեալ աղաղակելով. «Եւ՛հ եհէ, վա՛շ վաշ Սպանդարամետ,» և կայթս հարկանելով «Կեցցէ Ատտէս[89], Ատտէս կեցցէ:» Եւ 'ի պառաւականց՝ նահապետ, պարագլուխ, առէջապարած և նշուաբակիր և այլ ինչ այսպիսի կարդացեալ հաչակէիր. և վարձս առնուիր 'ի նոցանէ կարկանդակս՝ քաքարս և բլիթս. ընդ որոց ո՛վ ո՛չ երանեսցէ արդարև զմա և զբախտին իւրում: Իսկ յորժամ ընդ քաղաքացիս գրեցար իւ և է օրինակաւ, — զի զայդու զանց առնեմ, — սակայն իբրև մտեր 'ի գիր համարոյ, ընտրեցեր առեր քեզ անդէն զգեղեցկագոյնն 'ի գործս. դպիր կալ և սպասաւորել տառրին իշխանութեանց: Եւ իբրև անտի ևս ընկեցար, զամենայն զոր զայլոց չարախօսես՝ քո ինքնին արարեալ և կատարեալ, ոչ յամօթ արարեր, երդուեալ յԱրամազդ, և ոչ մի ինչ յառաջինոց գնացիցդ՝ վարուքդ որ զկնի. այլ 'ի վարձու առեալ զքեզ առ մեծահառաչ անուանեալ խեղկատակսն, առ Սիմիկեան և Սոկրատէս, գուսանանմանս լինէիր 'ի կարգ երրորդ, թուզս և ողկուզուկս[90] և ձիթապտուղս քաղելով իբրև մրգավաճառ ոք՝ յօտարին ագարակաց, և յաճախագոյնս առեալ անտի վէրս՝ քան 'ի ճակատամարտիցն յորս դուք ընդ ոգւոց ձերոց ճգնեալ նահատակէիք[91]: Զի անհաշտ և անողջ պատերազմ էր ձեր ընդ հանդիսա-

Օն առեալ և զպաշտամանցն վկայութիւնս զոր պաշ-տեցի՝ ընթերցայց ձեզ զամենայն. և դու փոխարէն կարդա մեզ զտուռնսն զորս ապականէիր.

« Ջրատորդեաս և զխաւարին Թողեալ զդրունս եկեալ կամ. 92 »

Եւ զայն եւս,

« Գիտասջի՛ր զի ոչ կամիմ լինել գուժկան բոթաբեր . »

Եւ դարձեալ . . . հէ՛, զչարդ չարաւ կորուսցեն նախ դիք, և ապա ամենեքին սոքա, զապիրատ քաղաքավարդ, և ըզ-խեղկատակդ յերրորդաց:

Ընթերցիր զվկայութիւնսն:

## ՎԿԱՅՔ

Արդ ես 'ի քաղաքականսն այսպիսի. իսկ յանձնա-կանս, եթէ ոչ ամենեքին գիտակ իցէք՝ թէ ընտանի և մար-դասէր և ամենայն կարօտելոց ձեռնտու, լուռ եղէց և ոչինչ բարբառեցայց, և ոչ մի ինչ առ այդ ածից 'ի մէջ վկայու-թիւն. ոչ զայն՝ զի ոմանց յաստախացս գերեդարձ արարի, ոչ՝ զի չքաւորաց ոմանց դստերացն նպաստ եղէ 'ի հարսա-նիս, և ոչ ինչ այլ յայսպիսեաց: Զի ես այսպէս ածեմ զմտաւ. թուի ինձ՝ թէ երախտաւորելոյն է յամենայն ժամ յիշատակել, իսկ բարերարին մոռանալ նոյնժամայն, եթէ պարտ իցէ միումն լաւի առն գործ մշակել, և միւսումն՝ մի զհեքի և զփոքրոգւոյ: Զի զիւր երախտիսն յուշ ածել և առել՝ հանգոյն իմն է նախատելոյ. քան յինէն առնել ինչ այսպիսի, նա՝ և ոչ մտօ երթալ: Այլ որպէս ինչ և հա-մարեալս եմ յայսմիկ, ինձ շատ է:

Կամիմ յիմոցս 'ի հասարակացն դարձեալ դարձուցա-նել զբանս, և սակաւիկ ինչ եւս ասել առ ձեզ: Զի եթէ

ունիցիս ասել, Եսքինէս, ով ոք 'ի մարդկանէ ընդ արեգակամբս, 'ի Հելլենաց կամ 'ի խուժայնոց, անիշխան ապրեցաւ 'ի բռնութենէ՝ նախ Փիլիպպոսի, և այժմ Աղէքսանդրի, քաջ է. ներեալ քեզ՝ թէ իմ բախտս, կամ անբախտութիւն թէ կոչել կամիցիս, ամենայնի եղև պատճառ։ Իսկ եթէ, որոց չև ուրեք երբեք տեսեալ զիս և ոչ զբարբառ իմ լուեալ, 'ի նոցունց եւս՝ բազումք բազում ինչ և անհնարինս չարչարեցան, ոչ արամբք չափ եւեթ, այլ և քաղաքք ողջոյն և ազգք, քանիօն ուրեմն արդարագոյն և ճշմարտագոյն իցէ՝ զհասարակաց բախտ ամենայն մարդկան, և զդըժուարին և զտարապարտ ընթացս իրաց ասել այնոցիկ պատճառս։ Այլ քո թողեալ զայսոսիկ, զիս զքաղաքավարեալս առ սոսա ըստգտանես. և զայդ՝ գիտելով չափ, զի թէ և ոչ զբովանդակ, գէթ զմասն մի հայհոյութեանդ՝ յամենեսին հասես, և մանաւանդ 'ի քեզ։ Զի եթէ իմ ընդվզեալ կնճռացեալ՝ ինձէն խոճոճեալ էր զիրան, գոյր ապաքէն ձեզ այլոց ճարտարախօսացդ զիս կշտամբել. իսկ եթէ մերձ կային միշտ յամենայն ժողովս, և հասարակ ամենեցուն առաջի դնէր քաղաքս՝ տեսանել զօգուտն, և այնք լաւագոյն թուեցան յայնժամ ամենեցուն, և մանաւանդ քեզ, — զի ոչ եթէ առ մտերմութեան ինչ՝ յիս ապաստանէիր զամենայն զյոյսդ և զնախանձդ և զպատիւսդ, որ գոյին յայնժամ համօրէն յամենայն 'ի գործս իմ, այլ յայտնապէս 'ի ճշմարտութենէն յաղթահարեալ, և առ 'ի չգոյէ քեզ լաւագոյն ինչ ասելոյ, — զիա՞րդ ապա չիցես անիրաւ և գժնեմ, ուր այժմ պատուհասեալ դոքաս ընդ այնս՝ քան զորս չգտեր ինչ յայնժամ ասել ազնուագոյն։

Արդ ես առ այլ ամենայն մարդկան այսպէս տեսանեմ կարգեալ և հաստատեալ զայսոսիկ։ Մեղա՞ւ ոք կամայ, բարկութիւն և պատուհաս 'ի վերայ նորա. յանցեա՞ւ ոք ակամայ, փոխանակ պատժոյ՝ ներել նմա։ Ո՞չ մեղաւ ինչ ոք և ոչ յանցեաւ, տուեալ զանձն յայն ինչ որ օգուտն թուեցեալ էր ամենեցուն, այլ չաջողեցաւ խառն ընդ ամե-

նեաւն, ոչ նախատակոծ առնել արժան է զնա և ոչ սան-դարտակս 'ի վերայ կալեալ, այլ տրտմակից լինել և սրտա-հատել: Եւ այս ամենայն այսպէս երևի, ոչ միայն յօրի-նականսն, այլ և բնութիւնն ինքնին դնելովն անգիր օրէնօք և 'ի բարս մարդկան զնոյն յայտ արար: Արդ վայրենու-թեամբ և զրպարտութեամբ այնչափ անցոյց զանցոյց Ես-քինէս զհամօրէն մարդկաւ, մինչև զորս ինքն իսկ իբրև ձախողանս յիշատակէր, զնոսին եւս զինէն չարախօսել:

Եւ թող զայլսն, որպէս թէ զամենայն զբանս իւր անըղ-ձունթեամբ և միամտութեամբ խօսեցեալ, պատուէր եւս տայր ձեզ՝ պատրաստ և զգոյշ լինել, զի մի նենգ ինչ և դաւ գործեալ՝ խաբեցից զձեզ, ստախիկ և կախարդ և խա-բեբայ անուանս ինձ կարդացեալ, և այլս սոյնպիսիս. որ-պէս թէ ոք զիւր պատշաճն՝ զայլմէ ումեքէ կանխեսցէ ա-սասցէ, և յիրաւի այնպէս ինչ իցեն, և ունկնդիրք չգիտիցեն միտ՝ ո՛ այն ոք իցէ որ զայնս ասիցէ: Բայց ես գիտեմ՝ զի ամենեքին ճանաչէք զդա, և քան ինձ՝ զմա առաւել զայնս 'ի դէպ համարիք: Գիտեմ եւս, զի զպատկառութիւնն իմ, — թող լիցի. այլ եւս տեսանեմ, զի ոչ փոքու ինչ մասին ուժ-գնութեան խօսելեացն՝ լսելիքն են իշխան. զի ըստ ձերում ընդունելոյ և առ իւրաքանչիւրսն մտերմութեան՝ ըստ նմին և խօսողն կորովամիտ և ուժգնաբար համարեցաւ. — արդ՝ եթէ իցէ ինչ և յիս հմտութիւն այնպիսի, տուգեալ զա-նիցէք զայն ամենեքին՝ համակ 'ի ձեր նպաստ, և ոչ երբէք 'ի վնաս, և ոչ իսկ առանձինն ինչ ուրեք. իսկ զդորայդ՝ ընդ-հակառակն, ոչ միայն 'ի շնորհս թշնամեաց խօսել, այլ և եթէ ոք զդա տրտմեցոյց ինչ կամ ընդհարաւ ընդ դմա, ընդ-նոսին եւս սաստկել խածանել. զի ոչ ըստ արժանի և ոչ յօգուտ ինչ քաղաքիս վարէ զայն: Զի ոչ զպատառումն և ոչ զատելու-թիւն, և ոչ այլ ինչ այսպիսի, վայելէ բարւոյ և արժանի քա-ղաքացւոյ՝ զհասարակաց իրաց ժողովեալ դատաւորսն ա-ղաչել, զի հաստատուն առնիցեն նմա, և ոչ յայն աղագս ինչ առ ձեզ մատչել. նա մանաւանդ մի՛ ունել իսկ զայնս 'ի

թեան․ իսկ թէ հարկ հասանիցէ, հեզաբար և չափով վարել։ Իսկ արդ յո՞րս պարտ իցէ առն քաղաքավարի և ճարտարախօսի սաստիկ լինել։ Յորս ինչ մի յամենայն երաց՝ քաղաքին 'ի վտանգ դնիցի, և յորս կայցէ ինչ ժողովրդեան ընդ թշնամիս․ զի այս է քաջի և բարւոյ քաղաքացւոյ։ Իսկ որ ոչն է երբեք արժանի զանեալ՝ զաշխարհիս ինչ վնասու, յաւելցի թէ և զանձինն, առնուլ յինքն վրէժ, ոչ վասն քաղաքիս և ոչ վասն իւր ինչ, գալ նմա այժմ, պսակի և գովութեան ամբաստանութիւնս կազմ և պատրաստ ունելով, և այսչափ բանս ժայթքել, անձին առեղութեան՝ մխիթարանաց և փոքրոգութեան է նշանակ, առն՝ յոչինչ պիտանացուի։ Իսկ թողուլ և զընդ իս մրցամանարանն, և սմա այժմ 'ի միւսոյ երթալ, բնաւ իսկ չարութեան է։

Վասն որոյ և թուիս ինձ, Եսքինէս, ցուցս ինչ առնելոյ կամօք խօսից և քաղցրաձայնութեան՝ ընտրեալ զայս հանդէս, և ոչ թէ զանիրաւութեան ինչ զատաստան պահանջել։ Բայց ոչ ճառք ճարտարախօսին, Եսքինէս, պատուական ինչ են, և ոչ ձայնին ոլորանք, այլ 'ի նոյնս միաբանութիւն ընդ բազմաց, և զնոյնս ատել և սիրել՝ զորս և հայրենիքն․ զի որում այս միտք իցեն, նա և զամենայն ինչ մտերմութեամբ ասասցէ։ Իսկ որ յորոց քաղաքն վտանգ ինչ անձին ակնունէ՝ զայնոսիկ պաշտէ և գգուէ, ոչ 'ի նոյն խարիսխ ամրանայ ընդ բազմաց․ ուստի և ոչ զնոյն ակնկալ զգուշութեան ապահովութիւն ունի։ Այլ ես, — տեսանես, — քանզի զնոյն ընդ սոսա ընտրեցի օգուտ, վասն որոյ և ոչ սեփական և առանձինն ինչ արարի։ Իսկ միթէ և ո՞չ դու։ Եւ զիա՞րդ․ որ անդէն վաղվաղակի յետ ճակատամարտին հրեշտակ չոգար առ Փիլիպպոս, որ 'ի ժամանակին՝ աղէտից պատճառ էր հայրենեացս․ և այն՝ մինչդեռ զամենայն յառաջագոյն ժամանակն 'ի բաց հրաժարէիր 'ի գործոյ անտի, որպէս գիտեն ամենեքեան։ Իսկ արդ ո՞վ է որ զքաղաքս խաբէ․ ո՞չ ապաքէն որ չասէ զոր խորհին․ և

ում՛ քարոզն անէծս կարդայ իրաւամբք յամենայն ժողովս · ոչ ապաքէն այնպիսումն · և զի՞նչ մեծագոյն ունիցի ոք ասել ապիրատութիւն զանձնէ ճարտարախօսէ քան զայն՝ զի խորհուրդք իւր և խօսք չիցեն միաբան ։ Արդ դու աւագիկ այդպիսի իսկ գտար ։

Եւ դու տակաւին կաս բարբառելով, և իշխե՞ս հայել յերեսս սոցա ։ Համարիցի՞ս թէրևս անգիտանալ սոցա՝ թէ ով ոք իցես · կամ այնչափ քուն և թմբիր ունկեալ զամենեքումբք, մինչ չյիշել զճառսդ զոր հրապարակախօս եղեր յատենի ժողովրդեան, նզովիւք և երդմամբք հաստատելով՝ թէ չկայ ինչ քո և Փիլիպպոսի, այլ թէ ես սա քինալ արկանեմ զքեզ զայդ անուն վատութեան ։ Բայց անդէն իբրև մարտն պատմեցաւ, ոչինչ զայսցանէ փոյթ արարեալ՝ վկայեցեր իսկ և իսկ, և պատճառեցար բարեկամութիւն և հիւրութիւն ունել ընդ նմա, զայս անուանս ընդ վարձկանութեան փոխանակեալ ։ Զի որո՞վ հարթայարմար և արդարակ բարբառնոց՝ Եսքինեայ որդւոյ Թմբկահարին Գլաւկոթէայ՝ հիւր կամ բարեկամ· կամ ծանօթ էր Փիլիպպոս · ես ոչ նշմարեմ · այլ վարձկանեցար նմա յեղծանել զօգուտ սոցին · համայն և այնպէս՝ ականերև մատնիչ և դաւիճ ըմբռնեալ քո, և անձին քում դուշակ նշաւակիչ գտեալ ՚ի դէպս դէպս, զիս հայհոյես, և ինձ նախատինս դնես զայն ինչ իրս՝ յորս զամենեսեան մանաւանդ գտանիցես բասրելիս ։

Բազում ինչ և գեղեցիկ և մեծամեծ ընտրեաց կալաւ քաղաքս, Եսքինէս, և ինև յաջողեաց, զորս և ոչ մոռացաւ · և նշանակ՝ նուաստիկ ։ Քանզի ընտրել առեալ ժողովրդեանս զոք, որ զդամբանականն ատենախօսեսցէ զկատարելոցն յայն անցս արկածից, ոչ զքեզ ընտրեաց, թէպէտ և բարձայեցար, ոչ զքեզ զքաջաձայնդ, ոչ զԴեմադէս՝ որոյ այն ինչ մնճարեալ էր զհաշտութիւնն, ոչ զՀեգեմոն [93], և ոչ զայլ ոք ՚ի ձէնջ, այլ զիս ։ Եւ ՚ի մատչել քո և Պիւթոկլի ստամբակօրէն և լրբաբար, ով Արամազդ և դիք, և ՚ի չարախօսել զինէն զայդոսիկ զորս դու այժմ՝ և ՚ի հայհոյել ,

*ոչինչ ընդհատ դարձեալ զիս ընտրեաց ։ Ոչ անգիտանաս զպատճառսն, սակայն և ես ասացից քեզ ։ Զերկոսին զայս գիտէին սոքա. և զիմ մտերմութիւն և զկամս սրտիս որով զերամն պաշտէի, և զձեր ապիրատութիւնդ ։ Զի յորոց 'ի յաջողել իրացն՝ երդմամբ բացէ 'ի բաց յուրաստ կային, զնոյնս 'ի գլթել քաղաքիս խոստովան լինէին ։ Վասն որոյ, զնկզախեալսն 'ի խորհուրդս մտաց իւրեանց 'ի վերայ հասարակաց աղետից՝ համարէին վաղուց թշնամիս, այլ յայնժամ նոցա 'ի ծանօթումն եկեալ ։ Եւ դարձեալ՝ 'ի դէպ վարկանէին, զի ատենախօսն վախճանելոցն, որ զնոցա առաքինութիւնն պանծացուցանելոց էր, մի յարկակից և մի հաւանընկեր հոմանի գտանիցի ընդ ոսոխիմ ախոյեանս նոցին լինել. և մի անդ ընդ նոսին շուայտել և յաղթութեան նուագել երգս 'ի վերայ հարուածոցն Հելլենաց՝ ընդ բուն իսկ սատակչացն, և այսր եկեալ՝ մեծարանս ընդունել. և մի կերպարանեալ ձայնիւքն արտասուել զնոցին դիպուած, այլ 'ի սերտ սրտէ վշտակից լինել ։ Եւ զայդ՝ յանձինս իւրեանց տեսանէին և յիս. իսկ 'ի ձեզ ոչ. վասն այսորիկ զիս ընտրեցին, և ոչ զձեզ ։ Եւ ոչ եթէ ժողովուրդն զայս, իսկ վախճանելոցն հարք և եղբարք, ընտրեալք յայնժամ 'ի ժողովրդենէն 'ի դիահանս նոցին, այլազգ ինչ. այլ զի պարտ էր նոցա մեռելոյթս առնել, իբրև առ ընտանեգունի ումեք զննջեցելոցն, որպէս սովոր է լինել, յիմում տանս արարին զայն ։ Արդարև յիրաւի. զի ծննդեամբ մէն մի առաւել քան զիս ընտանիք էին միմեանց, բայց հասարակ ընդ բոլորեսին՝ ոչ ոք մերձաւորագոյն. զի որում փրկութիւն նոցա և յաջողութիւն առաւել փոյթ էր, նա՝ և 'ի մեռանել նոցին, որ քա՛ւ մի լինէր, առաւել ևս տրտմակից գտանէր 'ի վերայ ամենեցուն ։*

*Համայս կարդա զմա զարձանագիրս զայս, զոր աշխարհախոհ ձուլիւք հաւանութեամբ ընտրեաց քաղաքս դրոշմել 'ի վերայ նոցա. զի տեսցես, Եսքինէս, և յայնմ իսկ՝ ապաշնորհ և քիլ չարաբան եղեալ զանձինդ և պիղծ անօրէն ։ Կարդա ։*

## ԱՐՁԱՆԱԳԻՐ

Հայրենիք վասն աշխարհին արկան առքա զէնս 'ի գուպար,
Եւ ըմբերախտութիւն վանեալ փարատեցին զատոխոց 94.
Եւ մահուամբ չափ արութեամբ կռուեալ՝ զոգիս փրկեցին ոչ,
ԶԱնդըմէդեհայեան ընտրեցին զամենեցուն դատաւոր,
Ի շնորհս հելլենացւոց, զի զգերութեան մի զամենեքեան
Ի պարանոցս ընկալեալ՝ 'ի Թշնամեաց անկցին զուժ:
Հարցն երկիր կրէ 'ի ծոց զհանգուցելոցն յոլով մարմինս,
ՅԱրամազդայ քանզի այս մահկանացուաց եղ բաժին:
Դիցն է ոչ ինչ սխալել, և յաջողել համակ 'ի կեանս,
Իսկ 'ի բախտէն Հրամանաց ճողոպրել չէր ինչ երբեք:

Լսէք, Եղբիննէս, և յայամ խակ, որպէս աստուածոց միայն է ոչ ինչ սխալել և յաջողել յամենայնի. ոչ խորհրդականին եդ զզօրութիւն ուղիղ առաջնորդելոյ պատերազմացն, այլ աստուածոցն: Զի՞ ուրեմն, ով անիծեալ, զիս վասն այդոցիկ հայհոյես, և ասես՝ զորս 'ի քո և 'ի քոյոցդ գլուխ դարձուսցէն դիքն:

Բազում և այլ ինչ, ով այրք աթենացիք, չարախօսեաց դա և սուտս, այլ ընդ մին առաւել զարմացայ: Զի յիշատակ արարեալ անցիցն անցելոց յայնժամ ընդ քաղաքս, ոչ մտերիմ և արդար քաղաքացւոյ միտս եդեր, ոչ արտօսր կաթեցոյց, և ոչինչ այսպիսի յանձին զգածաւ. այլ ամբարձեալ զձայնն խնդագին և կոկորդալիր՝ կարծէր անշուշտ զինէն ամբաստան լինել. բայց ցոյցս տայր զանձնէ, զի ընդ վշտալից պատահարսն ոչ ինչ նման այլոց ազդեցեալ: Սակայն որ զանձն առ խնամոտս օրինաց և ընկերհաշտութեան առնէ, որպէս դա առաջիկ, թէ և ոչինչ այլ, փարթամ զայս պարտի յանձին կրել, տրտմակից և ուրախակից լինել բազմութեան, և մի 'ի խնամս իւրաց հասարակաց՝ 'ի թշնամեաց թեր կալանել: Զոր դու այժմ յայտ եղեր արարեալ, զիս ամենայնի ճառաւաւեալ պատճառ, և զքաղաքս

ինև անկեալ 'ի հողս և 'ի տողապապանս , Թէպէտ և ոչ իմով քաղաքավարութեամբս , և ոչ իմով ինչ կամաց խնամով սկսայք դուք օգնել Հելլենացւոց : Զի թէ զայդ շնորհեալ լինէիք ինձ , թէ դուք ինև զխմոկաց եղերուք ելմանութեանն՝ ընդդէմ յարուցելոյ Հելլենաց , զմեծագոյնն յամենայն պարգևս տուեալս այլոց՝ ինձ լինէիք ընծայեալ : Այլ ոչ ես ինչ տայցեմ զայդ , — զի անիրաւէի առ ձեզ , — և քաջ գիտեմ՝ զի և ոչ դուք ներեսջիք . իսկ դա , եթէ իրաւ առնէր , ոչ առ ընդ. իս ոխակցն՝ 'մեծագունի պարծանացդ ձերոց աղամանակ ածեր 'ի վերայ :

Այլ զի՞ է ինձ պատուհասակոծ առնել զայդպիսիկ , ուր այլ ևս զժնդակագոյնս ամբաստան լեալ է դորա և ստեալ . զի որ զինէն Փիլիպպեան պատասխանէ , ով երկիր և դիք , նա զի՞նչ ոչ բամբասեսցէ : Սակայն , 'ի Հերակլէս և յամենայն 'ի դիս երդուեալ , եթէ զստուգութիւն և զստախօսաւոր բանից զստուգութիւն 'ի միջոյ 'ի բաց պարուրեալ՝ Ճշմարտիւ ուշ առնել պարտ իցէ , թէ ո՞յք ոմանք իցեն արդարև , որոց վայելչապէս և՞ իրաւամբք զեղելոցն ոճիր ձեռս արգասեաց 'ի գլուխ կուտեսցեն ամենեքեան, յամենայն քաղաքս զտանիցէ ոք զնմանեալսն դմա , և ոչ ինձ . որք յորժամ Փիլիպպեայ իրք տկարք և յոյժ յետնեալք էին , և մեք կանխեալ ժամանեալ աղդ. առնէաք , և փարեալք առէաք , և 'ի մեծի զնէաք նոցա զլաւագոյնսն , առ իւրեանցն զօշաքաղութեան զհասարակաց օգտակարսն վաճառանօք եստուն , խաբեալ իւրաքանչիւր զքաղաքացիս իւրեանց , և կաշառաբեկ արարեալ՝ արկին 'ի ծառայութիւն . զԹեսաղացիս՝ Դաւոքոս , Կինէաս , Թրասիդէոս . զարկադացիս՝ Կերկիդաս , Հերոնիմոս , Եւկամպիդաս . զարգիացիս՝ Միրտիս , Տելադամոս , Մնասէաս . զէլիացիս՝ Եւքսիթէոս , Կլէոտիմոս , Արիստեքմոս . զմեսենացիս՝ որդիքն Փիլիադեայ՝ ատելւոյն աստուածոց՝ Նէոնն և Թրասիլոքոս . զսիկիոնացիս՝ Արիստրատոս , Եպիքարէս . զկորնթացիս՝ Դինարքոս , Դեմարատոս . զմեգարացիս՝ Պտիոդորոս , Էլիքսոս , Պերիլաւոս .

զԹեբացիս՝ Տիմոլաւոս, Թէոգիտոնն, Անեմիտաս. զեւբէա-ցիս՝ Հիպպարքոս, Կլիտարքոս, Սոսիստրատոս . . . . Կար-ճատեալ՝ ոչ եղիցի ինձ օրս բաւական 'ի զրուցել զմատնչացն անուանս: Սոքա ամենեքեան, արք աԹենացիք, միախոր-հուրդք են յաշխարհս իւրեանց ընդ գործն որ 'ի ձեզ, արք պիղծք, սուտակապապաք և աղաչուրք, որ ծայրակտուր յոտից և 'ի ձեռաց եղին իւրաքանչիւր զաշխարհ իւրեանց, արբեալք զմայլեալք, և խրախամիտ մատռուակեալք[98] զա-զատուԹիւն՝ նախ Փիլիպպեայ, և այժմ Աղեքսանդրի, որք որովայնիւ և եա ամօԹալեօքն չափեն զերջանկուԹիւն. իսկ զազնիկամի ազատուԹիւն և զչունելն զոք անձանց տէր, որ նախնի հելլենացւոցն ծագ և սահման բարուԹեանց էին և օրէնք, խախտեալ և վեր 'ի վայր հարեալ տապալեալ:

Արդ յայսմ ամօԹալի և աշխարհադոյժ աղմկէ և 'ի զըմ-բաղէ, նա մանաւանդ՝ եԹէ չէ պարտ բարբանջել, ով արք աԹենացիք, 'ի մատնուԹենէ ազատուԹեան հելլենացւոց, և քաղաքս առ ամենայն մարդիկ անբաստանելի եղև իմով տեսչուԹեամբքս, և ես առաջի ձեր: Եւ մի՛ պակաս հար-ցանես զիս, ընդ որո՞ւմ առաքինուԹեան խնդրեցեմ ինձ պա-տիւ փոխարէն: Եւ ես ասեմ քեզ. փոխանակ՝ զի ուր ամե-նայն քաղաքավարք 'ի Հելլէնս կաշառագնաց եղեն, սկսեալ 'ի քէն, նախ ընդ Փիլիպպոսի և այժմ Աղեքսանդրի, զիս ոչ ժամանակ, ոչ քաղցրաբանուԹիւն, ոչ մեծուԹիւն խոստ-մանց, ոչ յոյս, ոչ երկիւղ, ոչ շնորհ և ոչ այլ ինչ ընու-դրդուեցոյց, և ոչ հրապուրեաց վաճառանդել ինչ յորոց միանգամ իրաւունս և օգուտ հայրենեացս դատեցայ: Եւ ոչ, զոր ինչ խրատն ետու սոցա, ձեզ՝ նման իբրև 'ի կշիռս ինչ՝ 'ի շահն կոյս մեծ լինելով ետու, այլ յուղիղ և յար-դար և յանկաշառ մտաց գործեցի զամենայն. և իրաց մե-ծամեծաց առ ինև մարդկանս վերակացու եղեալ, զամե-նայն ողջմտուԹեամբ և արդարապէս և պարզաբար տնտե-սեցի: Սոցին ահա սակս՝ խնդրեմ առնուլ պատիւ:

Իսկ զպատրաստաչինուԹիւնն զայն՝ զոր դու ինձ ընդ

քարշ ածեալ զորովէս՝ և զխոստահատութիւն, զոհութեանց և գովեստից զատուն արժանի. զի զիմ՞րդ ոչ. բայց հեռի ուրեք յիմոց տեսչութեանցս կարգեալ: Զի ոչ միմակաւոյց քարակարկառ պարսպեցի ես զքաղաքս և ոչ աղիւսաշար, և ոչ յայդմ զմեծ ինչ յիմոցս խմանամ. այլ եթէ զպարիսպն իմ արդարև յիրաւի կամիս ուշ եդեալ նկատել, գտանիցես զէնս և քաղաքս և գաւառս 96 և նաւահանգիստս, և նաւս և երիվարս և զօրսն մերամարտիկս: Զայսոսիկ հանի արկի կանգնեցի ես պատուար շուրջ զԱտտիկէաւ, որչափ էր կար զօրութեան մտաց մարդոյ, և սոքիմբք պարսպեցի զաշխարհն, ոչ զշրջապատ Աւեթ Պիրէոնի կամ զոստանին: Եւ ոչ ես ինչ սխալեցի 'ի հաշուեցն Փիլիպպեայ, ձն անդր փարգաստ, և ոչ 'ի հանդերձանացն. այլ նիզակակցացս զօրք և զօրավարք՝ 'ի բախտէն: Զի՞նչ այդոցիկ ցուցակութեան հանդէս: Պայծառ և յայտանշան. բայց դէտ ակն կալարուք:

Մտերիմ քաղաքացւոյ զի՞նչ արժան էր առնել, ամենայն խնամով և փութով և արդարութեամբ 'ի վերայ աշխարհին առաքինեալյն զի՞նչ: Ո՞չ զԵւբիա 'ի ծովէն կուսէ՝ առաջի Ատտիկոյ կանգնել ամբարտակ, և 'ի միջերկրեայ կողմանէն՝ զԲիովտիա, և 'ի պէլոպոնիսական ծագաց՝ զսահմանորդս իւր 97. ո՞չ զպէտս համբարոցն հոգալ, զի համակ ընդ մարդս բարեկամաց մինչև 'ի Պիրէոն հասանիցէ. և յորոց մեզն կային՝ զկէսս պահպանել՝ առաքելով Թիկունս և խօսելով և գրելով զարժանն, զՊրոկոննեսոս 98, զՔերրոնեսոս, զՏենեդոս. և զայլս առնել յանկս 'ի մեզ և նիզակակիցս, զԲիւզանդիոն, զԱբիդոս, զԵւբիա. և զզօրս Թշնամեաց զհաստատագոյնս քակել 'ի նոցանէ, և որոց պէտք ինչ էին քաղաքիս՝ զայնս բովանդակել: Այս ամենայն պաշտեցաւ ձեզ իմով առաջարկութեանցս հրամանօք և իմով վարչութեամբս. զորս, ո՛ արք աթենացիք, եթէ առանց խանդաւորութեան կամիցի ոք նկատել, գտցէ և ուղիղ խորհեցեալս, և գործեալս ամենայն արդարութեամբ. ոչ

զինքն պատուեաց գերև տարաբեալ, ոչ ապախտացեալ և ոչ վատա-րանդի տուեալ յինէն, և որ ինչ միանգամ 'ի կարի և 'ի խե-լամտութեան միոյ առն էր՝ ոչինչ պակաս տարաբեալ ։ Իսկ եթէ աստուածոյ ուրուք ոխութիւն, կամ բախտին բռնու-թիւն, կամ զօրավարացն վատթարութիւն, կամ չարու-թիւն դաւաճանաց քաղաքաց ձերոց, կամ այս ամենայն միահաղոյն, ամենայնի հասուցանէր վթար, մինչև յետս ընդդէմ կործանեաց, զինչ մեղս 'ի Դիմոսթենէս ։ Իսկ եթէ, որպէս ինչ որք ես էի առ ձեզ ըստ իմում պաշտման, 'ի մէջ մի հելլէն քաղաքացն մի եւեթ այր գտանէր, նա աւա-նիկ եթէ այր մի եւեթ 'ի Թեսալիա, և մի այր յԱրկադիա կայր ընդ իս միաբան, ոչ ումեք 'ի հելլենացւոց ներքոյ և արտաքոյ Դրանցն՝ ժամանէին չարիքս այս. այլ ամենեքեան ազատք և ինքնօրէն ազնկամեք, ամենեւին աներկիւղ և ան-հոգ, երջանիկք և երանիք 'ի հայրենիս իւրեանց նստէին, այսչափ և այսպիսի բարեաց փոխարէն՝ ձեզ և այլոց աթե-նացւոց ինև կալեալ շնորհս ։

Եւ զի ծանիջիք, թէ յոյժ իմն 'ի վայր են բանքս քան զիրացն արդիւնս՝ առ 'ի զգուշութենէ նախանձու, ահա ինձ զայսոսիկ, ա՛ռ ընթերցիր զհանդէս համարոյ օգնու-թեանցն որ յիմմէ հրամանաց ։

## ՀԱՄԱՐ ՕԳՆԱԿԱՆՈՒԹԵԱՆՑ

Զայս և զայսպիսիս, Եսքինէս, պարտ է գործել բարւոյ և քաջի քաղաքացւոյ, — յորոց 'ի յաջողելն, մեք երկիր և դիւք, գոյր մեզ մեծամեծս լինել անշուշտ. և խրատամբքն լի-նել՝ յար և կեց էր. իսկ եթէ ընդդիմամբքն պատահեցին, կայ մնայ գտնէ համբաւ բարի՝ և անպատիր լինել քաղաքիս, և ոչ կամաց նորա, այլ բախտին մեզ դնել՝ որ այսպէս կշռեաց զիրան, — և ոչ թէ, երդնում յԱրամազդ, յետս ընկեցեալ զօգուտ քաղաքին՝ և թշնամեաց մտեալ 'ի վարձու, փոխա-նակ իւրոյ աշխարհին՝ ոսոխացն գիտօղ ժամու սպաս առ-

նել. և ոչ, որ զիրաց զք արժանի քաղաքին բուռն հարեալ իցէ խօսել և հրաման տալ և ընտրեալ պինդ կալ մնալ ՚ի նոսին, յաջողել զայնպիսին. և թէ զք առանձինն ինչ արդամեցուցեալ իցէ՝ զայն քէն ունել ՚ի մտի և ոխս պահել. և ոչ ՚ի վերին երեսս անօրէն և մեղմիւ հանդարտութիւն ցուցանել, որպէս բազում անգամ առնես դու: Քանզի է իսկ է արդարամիտ հանդարտութիւն և օգտակար քաղաքին, որով բազումք ՚ի քաղաքացւոց վարին՝ պարզմտութեամբ. այլ ոչ զոմին վարի և զա հանդարտութեամբ. ծն անդր, ամենեքին իսկ ոչ. այլ յետս կացեալ ՚ի վարչութենէ՝ երբ և նման հաճոյ Թուկիցի, և յաճախ Թափի, զեստակն եղեալ պատանէ՝ թէ երբ յափրացեալ տաղտուկ լինիցիք ՚ի սակաւ և անպարզար խօսողէ ումեքէ, կամ եթէ հակառակ ինչ ՚ի բախտէն պատահեաց, կամ դժուարին ինչ այլ ՚ի վեր եւ, որ ոչ սակաւ են ՚ի մարդիկ, անդ յայնժամ ՚ի հանդարտութենէ անտի յանկարծակի իբրև այս մի եղեալ սառուցեալ՝ երևի ճարտասան. և խրոխտաձայն պտուտ բարբառոյն հանդէս արարեալ, և հաւաքեալ բայս և բանս՝ աղխողխեալ տողէ զնոսին՝ համարձակ առանց արթալոյ և հեծեծալոյ և ոգի կլանելոյ. յորս ոչ շահեկանութիւն ինչ է և ոչ բարւոյ իմիք գիւտ, այլ վնաս ում և է քաղաքացւոյ, և հասարակաց խայտառակութիւն:

Սակայն այդմ փութոյ և խնամոց, Եւփանէս, եթէ յարդարումնութենէ էին և զաշխարհին օգուտ մեծարելոյ, պարտ էր բերել պտուղ բարի և ազնիւ. և բոլորեցունց արդասաւոր. դաշնաւորութիւնք քաղաքաց, արծաթոյ պաճարանք, շահավաճառի յօրինուածութիւն, օրէնադրութիւնք օգտակարք, յարուցելոց թշնամեացն ընդդէմ կազմութիւնք: Զի այդր ամենայնի էր անդ ուրեմն երբեմն խոյզ և խնդիր. և անցեալ ժամանակն յոլովս եւ պատճառս առն բարւոյ և քաջի. յորս դու ոչ ուրեք երևեցիս՝ ոչ առաջին, ոչ երկրորդ, ոչ երրորդ, ոչ չորրորդ, ոչ հինգերորդ, ոչ վեցերորդ, և ոչ յոր և ասիցեմք կարգ.

մն և մն ոչ, յորս բարգաւաճութիւն ինչ մերոյ աշխարհիս լինէր ։ Զի որ նիզակակցութիւն քով ջանիւք հաստատեցաւ քաղաքիս, որ օգնականութիւն կամ որ կահուցումն բարեկամութեան կամ փառաց, որ հրեշտակութիւն, որ սպաս պաշտաման՝ որով յառաւել պատիւ վերացաւ քաղաքս ․ զի՞նչ 'ի մերոց սատի կամ 'ի հելլենականաց և յօտարոց՝ որոց դամ մի վերակացու եղեր՝ 'ի քո ձեռն ուղղեցաւ ․ ո՞ր այն նաւք պատերազմիկք, ո՞ր զէնք, ո՞ր նաւաց հանգըրուանք ․ զի՞նչ նորոգումն պարսպաց, զի՞նչ առնուձիոյ կազմութիւն ․ յի՞մ իմիք յամենայնէ պիտանացու ինչ ոք եցես դու ․ զի՞նչ գոյաւորաց կամ կարօտելոց՝ քաղաքական և աշխարհահող ինչ առ 'ի քէն նպաստաւորութիւն արծաթոյ ․ և ոչ ինչ ։ — Բայց, ա՛յր դու, եթէ և ոչ մի՛ ինչ յայդցանէ, սակայն գոնեայ խնամ և յօժարութիւն ։ — Ո՞ւր, Եւբ․ դու, ով անիրաւդ քան զամենայն, որ և ոչ յորժամ որոց դամ մի բարբառ արձակեալ էր 'ի բեմիս՝ հանդանակեցին 'ի փրկութիւն, և հուսկ ուրեմն Արիստոնիկոս՝ զարծաթն անդամ ժողովեալ իւր 'ի տոյժս տուգանացն [99], և ոչ յայնժամ երեւեցար, և չետուր ինչ ․ ոչ առ չքաւորութեան ․ զի զխո՞րդ, որ ժառանգեցերդ զինչս անեւրոյ քոյ Փիլոնի՝ առաւել քան զտաղանդաց հնգից, և առեր կաշառ տաղանդս կրկին՝ որ անկան քեզ հանգանակ 'ի գըլխաւորաց զօղողակից գասակարգացն, փոխանակ զի խանգար ածեր յօրէնսն նաւակառուցական ։ Այլ զի մի՛ բան 'ի բանէ բարբառեալ՝ յառաջիկայիցն ․ ազմիցիմ, թողից զայնոսիկ ։ Բայց յայտ է յայսցանէ, զի ոչ առ 'ի չգոյէ չետուր, այլ զգուշացեալ՝ մի՛ ինչ հակառակ գործել այնոցիկ՝ յորոց պէտս զամենայն ինչ 'ի գործ արկանէիր ։ Իսկ արդ դու յի՞մ աշխոյժ և կայտառ, և Ե՞րբ պայծառափայլ ։ Յորժամ ընդդէմ սոցա ասել ինչ պիտոյ լինիցի, յայնս ոգեզաբարբառ, քաջուշեղ, կատակ գերագոյն, ողբերգակ Թէոկրինէս [100] ։

Եւ ապա՝ վաղնջուց արանցն քաջաց առնես յիշատակ ․

և բարւոք առնես ։ Սակայն ոչ է իրաւացի, ո՛վ արք աթենացիք, առնուլ 'ի ձէնջ զհաւաստի հաճութիւնդ ձեր ընդ վախճանեալսն, և ընդ նոսին 'ի քննին և 'ի կշիռ արկանել զիս՝ որ 'ի միջի ձերում կեամ։ Զի ո՞վ ոչ գիտէ, թէ ընդ ամենեսին որ կենդանի են՝ առաւել կամ նուազ տեղի ունի նախանձ, իսկ զմեռեալսն՝ և 'ի թշնամեաց ոք ոչ ևս ատեայ։ Եւ զի այս այսպէս է անդստին 'ի բնութեան, այժմ ես ընդ առաջի՞նեան քան զիս կշռեցայց և զննեցայց. քաւ, մի՛ երբէք. զի ոչ արդար և ոչ հարթ ինչ է, Եսքինէս. այլ ընդ քեզ և ընդ այլում ամենայնի՝ զոր ոք և կամիցիս 'ի կամակցացն քոց և կենդանեաց։ Տես և ս, արդեօք գեղեցիկ և լա՞ւ իցէ քաղաքիս, վասն առաջնոցն երախտեաց մեծամեծս յոյժ լինելոյ, մինչև ոչ ումեք զորչափն կարել ասել, զգըտեալսն յայժմու կեանս՝ յապախտս և յարհամարհանս դնել, թէ ամենեցուն՝ որոց 'ի բարւոք մատէ ինչ գործիցեն՝ պատիւ և մարդասիրութիւն 'ի սոցանէ ժառանգել։ Եւ սակայն, եթէ պարտ իցէ ասել զամենայն, յորժամ ուղիղ ոք հայիցի 'ի քաղաքավարութիւն իմ և յընտրութիւն, հաւասարս գտցէ և համականս ընդ այնր ժամու գրուատելի որերոյն. իսկ զքոյդ՝ ընդ նոցին զրպարտչացն։ Զի յայտ իսկ է թէ և յայնժամ կային գարոմիչք ոմանք ժամանակակցաց և առաջնոցն գովիչք, չարայաչաղք և քո դործակիցք։ Եւ ապա ո՞չ ինչ համբուն նման նոցին ասես զիս. իսկ դու նմա՞ն, Եսքինէս, և եղբա՞յրդ քո, և ա՞յլ ոք բնաւ յայժմու ճարտասանից. զի ես ոչ զոք ասեմ։ Այլ զկենդանին և զորս 'ի նմին կարգէ, ո՛վ քաջդ, զի մի՛ այլ ինչ ասացից, ընդ կենդանիսն 'ի հարցփորձ մատո՝ որպէս զայլն ամենայն, զբանաստեղծս, զպարուսոյս, զըմբշամարտիկս։ Փիլամմոն[101], քանզի քան զԿարիստեանն Գլաւկոս և քան զայլս ոմանս 'ի յառաջագունիցն ըմբշաց նուաստագոյն էր, ոչ վասն այնորիկ անպսակ ելանէր յՈղիմպիայ. այլ քանզի ճարտար քան զմտեալսն յասպարէզ անդր առ նա՝ կռուէր, պսակ առնոյր և յաղթող քարոզէր։ Եւ դու զիս առ այժ-

մու ճարտարախօսօքն ամս, առ քև, առ որում և կամիս 'ի բոլորեցունց · ոչ խորշիմ յուսմքէ: Յորոց միջի, մինչդեռ առաջին կայր զօգտակարագոյնսն քաղաքիս ընտրել, և աշխարհիս խնամք' բարեյօրդոր ամենեցուն 'ի միջի կայրն, քաջախօս էն երևեցայ, և ամենայն ինչ խնով հրամանօք և օրինօք և պատգամաւորութեամբք անօրինէր · իսկ 'ի ձէնջ չէր ոք ուրեք, բայց եթէ յանհարութեան սոցա ակնոյ ինչ լինէր: Իսկ երբև եկին ելին ընդ մեզ, որոց չէր պարտ պատահել, և ոչ են խորհրդականաց էր խնդիր, այլ արբանեկաց հրամանաց, և ընդդէմ հայրենեաց կազմ և պատրաստ եղելոց 'ի վարձկանութիւն, և ախորժելոց 'ի ուղակել այլոց, յայնժամ դու և մէն մի 'ի դոցանէ յօրինեալ և մեծ և պայծառ ասէր երևելարաց · իսկ ես' անաւագ, խոստովան լինիմ, այլ քան զձեզ առաւել առ սոսա խնամոտ և մտերիմ:

Ի ընէ համեստ քաղաքացւոյ, ով այրք աթենացիք, զերկուս զայս պարտ է յանձին ունել, — զի այսպէս ասել 'ի խօսելս զանձնէ' աննախանձագոյն է · — յիշխանութեան' զառաջինսոյ և զգլխաւորի կարգն պահել քաղաքիս · և յամենայն ժամ և 'ի գործ' զմիամտութիւն · զի այսմ բնութիւնն տէր է, իսկ կարելոյն և զօրելոյն' այլ ինչ իրք: Արդ զայս առ իս մնացեալ գտանիցէք մինչև 'ի սպառ: Նա տեսէք: Ոչ 'ի պահանջել զգլխոյս, ոչ յածել թափել 'ի վերայ իմ զամֆիկտիոնեանն դատաստանն, ոչ 'ի սպառնալիսն, ոչ 'ի խոստմանցն աւետիս, ոչ յարձակելն յիս զնզովեալս զայսգունակ իբրև զգազանս, ոչ երբեք զառ ձեզ միամտութիւնն եսոու ես մատուցանելի: Զի իսկզբանէ հետէ' անդէն և անդ զուղիղ և զարդարագետս ճանապարհ քաղաքավարութեան ընտրեալ կալայ · պատուոյ, ճոխութեան և փառաց հայրենիս աշխարհիս սպաս տանել, զնոսին աճեցուցանել, 'ի նոսին համակել: Ոչ ես 'ի յաջողուածս օտարաց ուրախ և զուարթ ընդ հրապարակն ճեմիմ, աջ կարկառեալ և աւետիս տուեալ այնոցիկ' յորս ակն ունիմ թէ առ նոսա պատմեսցեն, իսկ զուրախութիւնս քաղաքիս' սա-

կալերգք լսեմ և հեծութեամբք և զերկիր ՚նշմարելով, որպէս ամպարիշտաքդ այգողբիկ, որ զքաղաքս գարովեն՝ որպէս թէ ոչ ՚նովքին զանձինս իւրեանց գարովիցեն. աչք ՚նոցա ՚ի գուրս հայքն, և յորս ՚ի թշուառանալ հեղձենայոց՝ այլ ոք 102
երջանկացաւ, զայնս գովեն. և պարտ է, ասեն, սկել՝ զի մինչ ՚ի սպառ յաւերժացին։

Բայց մի՛ ոք ՚ի ձէնջ, ով դիք համօրէն, մի՛ զայսոսիկ յանձն առեալ ակնարկեսցէ, այլ՛ մանաւանդ և ՚ի նոսին միտս իմն և իմաստս ազդեսջիք ազնուագոյնս. իսկ եթէ այնպէս կայցեն մնասցեն անզգուշեալք, զմեն մի իւրաքանչիւր կորուսջիք զնոսա, և տարաժամ սատակեսջիք ընդ ծով և ընդ ցամաք. և մեզ մնասցելոցս առաջ արագահաս փրկութիւն ՚ի սպառնալեաց երկիւղիս, և անընդդատ խաղաղութիւն։

34. Լեռնոս կղզի եղեւան ծովուն աթենացւոցն էր։

35. Սելիմբրիացիք՝ որպէս դաշնակիցք աթենացւոց, էին յայնժամ 'ի հնազանդութեան Բիւզանդիոյ Թրակացւոց. զի էր Սելիմբրիա, որ է այսօր Սէլէվրէ, քաղաք Թրակիոյ։

36. Այն հրեշտակութիւն եղեւ յերկրորդում ամի հարիւր և իննն Ողիմպիադին. մի էր 'ի նոցանէ և Դիմոսթենէս։

37. Այս արշաւանն 'ի վանել յԵւբիոյ զբռնաւորսն՝ զօրավարութեամբ Փոկիոնի եղեւ։

38. Ցայս անուն յորջորջէր քուրմն Պոսիդոնի 'ի Մեգարա՝ քաղաք գլխաւոր բիւզանդացւոց։

39. Սպառազէնք՝ էին հետեւակ գունդք վառեալք ամենայն զինու զարդու պատրաստութեամբ։

40. Նուիրակութիւն կամ այցելութիւն կոչէր՝ մեծ և հանդիսաւոր հրեշտակութիւնն, զոր ազգք ազգք առաքէին 'ի տեսիլ խաղուց կացուցդիցն Ելլադայ։

41. Այդ ամենայն քաղաքք էին Քերսոնեսոսի Թրակիոյ։

42. Ակնարկէ յընկերական պատերազմն՝ զոր Քիոսիւ հանդերձ և Հռոդոսիւ մղեցին բիւզանդացիք ընդդէմ Աթենայ։

43. Անդ կռուեցան Թեբացիք ընդ Լիւսանդրի՝ որ և անկաւ. կոչեալ էին իւրեանց յօգնութիւն զաթենացիս, որոց գնացեալ հասին ընդ առաջնորդութեամբ Թրասիբուլոսի։

44. Աթենացիք, բիովտացիք, կորնթացիք և արգիացիք դաշնաւոր եղեալ՝ զդէմ կալան Սպարտայ ութ ամ 'ի պատերազմին կորնթական անուանեալ, զի մեծ ասպարէզ նահատակութեանցն Կորնթոս էր։

45. Որ եղեւ 'ի յետին ամս պեղոպոնեսեան պատերազմին, սկսեալ 'ի չորեք հարիւր տասն ամէն յառաջ քան զՔրիստոս։ Զդեկելիա ամրացուցեալ էր լակեդեմոնացւոց առ 'ի զետեղել անդ, և անտի դիւրաւ ասպատակել յԱտտիկէաստան։

46. Ցարշաւել Եպամինոնդայ 'ի Լակոնիա, առաքեցին աթենացիք զԻփիկրատէս բիւրաւ մի և երկու հազար արամբ 'ի թիկունս օգնականութեան սպարտացւոց։

47. Թեմիսոնն բռնաւոր Երետրիոյ յափշտակեալ էր զՈրովպոս յաթենացւոց 'ի խոր խաղաղութեան, գործակից ունելով զԹէոդոր։ Ցանձն առեալ միաբանեցին աւանդել զքաղաքն 'ի Թեբացիս, մինչև ժողով ամփիկտիոնեան ատենին եղիցի՝ 'ի դատաստան. բայց ապա ոչ հաւանեցան տալ 'ի դուրս զքաղաքն։

48. Ի սովորութենէ զօրութեամբ իմանի հինգերորդ մասն. զի եթէ ամբաստանն չգտանէր յիւր կողմն զկէս և զէթ զհինգերորդ մասն քուէից, դատապարտէր 'ի տուգանս. օրինակ իմն, եթէ 'ի հարիւրոց չստանայր եօթնասունս։

49. Առ 'ի կազմել զնաւուց պատերազմի՝ զհազար երկերիւր ընչե-

# ՄԱՐԿՈՍԻ ՏՈՒԼԼԻՈՍԻ

# ԿԻԿԵՐՈՎՆԻ

ՃԱՌ

ՎԱՍՆ Ա. ԼԻԿԻՆԻՈՍԻ ԱՐՔԻԱՑ ՔԵՐԹՈՂԻ

# ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ

Արքիաս անտիոքացի, յազգէ Յոյն, անդստին 'ի պատանութենէն համբաւեալ քերթողական հանճարով 'ի քաղաքի անդ խուռն և շուրջ յասիական կողմանսն և ընդ բնաւ Ելլադա, իբրև եկն յԻտա-լիա, տարենտացիք՝ հռեգինացիք և նէապոլսեցիք 'ի քաղաքակցու-թիւն իւրեանց ընկալեալ զնա՝ բազում այլ եւս մեծարանօք պատուե-ցին: Եւ զի վասն համբաւոյն յառաջածանօթ էր յոգունց հայա-կաց արանց հռովմայեցւոց պանծալեաց, չոգաւ 'ի Հռովմ. ուր ա-ռա Լուկուլլեանք առանձնականութեամբ յապարանս իւրեանց հիւ-րընկալեցին զնա: Եւ յետ թեարկութեամբ նոցին՝ քաղաքացի Հռովմայ գրեալ, 'ի նոցանէ իսկ թուի ընկալեալ և զԼիկինիոսդ ա-նուն հռովմէացի զտոհմին իւրեանց: Հաճոյ և մեծարոյ եղեալ անդ յաչս ոչ սակաւ աւագաց, որպէս Կ. Մետելլոսի Նումիդեան, և որդւոյ նորա Պիոսի, Մ. Եմիլիոսի Սկաւրոսի, Կ. Լուտատիոսի Կա-տուլոսի՝ հօր և որդւոյ, և Լ. Կրասոսի, իսկ ընդ Լուկուլլեանց եղ-բարց և Մ. Լիւիոսի, Դրուսոսի և Հոկտաւեանց, և Կատոնի հօր Ուտիկեցւոյն՝ և Հորտենսեանց մտերմութեամբ ընտանեցեալ, ապա յետոյ ընդ Մ. Լուկուլլոսի գնաց 'ի Սիկիլիա վասն առանձին գոր-ծոց ինչ իւրոց: Ի փոխել նորա անտի՝ եկեալ գնաց ընդ նմա 'ի Հե-րակլիա քաղաք Մեծին Յունաստանի՝ որ ընդ մէջ Մետապոնտոսի և Տարենտոնի: Հերակլիացւոց արժանի անեալ զինքն և միջնորդեալ եւս մեծի առնն Լուկուլլոսի՝ գրեցին զնա յիւրեանց քաղաքակցու-թիւն: Իբրև 'ի Պղաւտիոսէ Սիլուանոսէ և Պապիրիոսէ Կարբոնէ օրէնքն եդան 'ի Հռովմ, զի որոց միաբանեալ դաշնակից քաղաքաց քա-ղաքացի գրեալքն իցեն, եթէ 'ի ժամանակի անդ օրէնսդրութեանց՝ կալեալ իցեն յԻտալիա տուն բնակութեան, և ընդ աւուրս վաթ-սուն առ դատաւորին զկամս իւրեանց յայտ արարեալ, շնորհեսցի

նոցա՝ Հռովմայ քաղաքացւոց անցանել 'ի Հռոմայր: Սովին օրինօք անդէն առաջեալ էր նոքենն Արքիաս զՀռովմէական քաղաքակցութիւն. զի էր իսկ դաշնակից քաղաքին Հերակլեայ քաղաքացի, և առն բաղումս բնակութիւն 'ի Հռովմ կալեալ, և զկամսն յայտնեալ Կ. Մետեղղոսի Պիոսի՝ սերա մտերմի իւրում, որ 'ի նմին ամի դատաւորն էր: Բայց զկնի՝ ընդ Լ. Լիկինիոսի Լուկուղղոսի գանձաւորին չոգաւ յԱսիա, և անդ եկաց ընդ նմա մինչև 'ի դարձ նորին: Իսկ 'ի գնալ նորին այսպ բղեշխ 'ի պատերազմն միՀրդատեան, գնաց դարձեալ ընդ նմին, և ընդ իւր դարձ առար անդրէն 'ի Հռովմ վաթսնամեայ: Անդ ըստ Պապեան օրինաց, զի մերժեսցին նժդեհք՝ որ իբրև քաղաքացիս կան և չեն, Գրակքոս ամն փութայիչ ամբաստանութեան յարույց 'ի վերայ քաղաքակցութեան իւրոյ՝ Հերքել զնա: Կիկերոնն ասէն ճառախօս, յորում և յիշատակէ զայդ ամենայն, պաշտպան եկաց նմա, առ դատաւորաւն՝ որպէս թուի՝ Կ. Հոկտաւիոսիւ, այն որ ապա Հայրն եղև Հոկտաւիոսի Կեսարու Աւգոստոսի: Թէպէտ և են որ դատաւոր ժամանակին Համարին զԿ. Վերգիլլիոս, կամ զԿ. Կիկերոնն՝ զեղբայր ճարտարախօսին, բայց Հաշիւք ամացն ոչ ներեն:

---

# Մ. Տ. ԿԻԿԵՐՈՎՆԻ

## ՃԱՌ

## ՎԱՍՆ Ա. ԼԻԿԻՆԻՈՍԻ ԱՐՔԻԱՑ ՔԵՐԹՈՂԻ

Եթէ գուցէ ինչ յիս հանճար, դատաւորք, որոյ իրա-զէտ եմ նկատողութեանն, կամ թէ խօսից վարժութիւն՝ յորում ոչ ժխտեմ փոքր 'ի շատէ զիս պարապեալ, կամ թէ ինչ այսր իրի[1] հմտութիւն՝ 'ի կրթութենէ ազնուական արուեստից և 'ի հրահանգաց, յորոց վկայեմ զի ոչ երբէք ապարտուցեալ եմ 'ի կեանս իմ, զայնր ամենայնի նախ Ա. Լիկինիոս այս[2] յիրաւի պահանջեսցէ յինէն զպտուղ՝ գրեթէ սեփական իմն իրաւամբք։ Զի որչափ հեռագոյնս զօրէն ակնարկել միտք իմ յետս անցեալ զառանցեալ ժամանակաց՝ և զմանկութեանս յուշ ածել խորին յիշատակ, անդուստ 'ի վերուստ առեալ արկեալ 'ի միտ՝ զսա տեսանեմ իշխան առաջնորդ ինձ կացեալ 'ի սկսանել և 'ի զարգանալ 'ի կիրթս ուսմանցս այսոցիկ։ Զի եթէ ձայնս այս բարբառոյս, սորա խրախուսանօքն և օրինօքն յարդարեալ, եղև երբեմն ումանց 'ի փրկութիւն, ապա յորմէ զայլս ըն-

կալցք առ 'ի զօրավիգն այլոց լինելոյ և զայլս կեցուցանելոյ, սմին ինքեան ապաքէն, որչափ 'ի կարի մերում է, և օգնութիւն և փրկութիւն արժան է մատուցանել: Եւ մի ոք ընդ այս բանս մեր զարմասցի թերևս, որպէս զի այլ իմն 'ի սմա [3] իցէ հանճարոյ զօրութիւն քան զայս գիտութիւն և զհրահանգս խօսից, և ոչ մեք յայս ևեթ ջանս համակ նուիրեցաք զանձինս: Զի և ամենայն արուեստք առ մարդկութիւն պատկանաւորք՝ ունին ինչ ընդ միմեանս աղերս, և իբրև ազգախառնութեամբ իմն ընդ իրեարս յեռեալ են:

Այլ զի մի ումեք 'ի ձէնջ զարմանս թուեսցի, յօրինական [4] յայս խնդիր և 'ի հրապարակաւ դատաստան, ուր դատ վարի առ դատաւորի [5] հռովմէական ժողովրդեան, առ առն ընտրականի, և առաջի անաչառ քննողաց [6], 'ի ժողովի և 'ի խուռն այսքան մարդահոյլ բազմութեան, այսպիսիս արկանել ինձ ճառս, որ ոչ միայն 'ի սովորութենէ դատաստանաց, այլ և յատենական ոճոյ խօսից օտար են, աղաչեմ զձեզ՝ շնորհել ինձ 'ի դատի աստ զայս ներումն վայելչական դատապաշտելոյս, և ձեզ՝ որպէս ակն ունիմ՝ ոչ ինչ դժպհի, զի 'ի ճառելս զգերապատիւ քերթողէս և զբանիբուն առնէս՝ 'ի հրապարակի աստ արանց գիտնաւորաց, և առ բարեխրատութեամբ [7] ձերում, և 'ի դատաւորութեան այսր դատաւորի, թողութիւն առնիցէք ինձ խօսել փոքր մի համարձակագոյնս, և վասն առն այսպիսւոյ, որոյ առ խաղաղական և ուսմնասէր կենացն՝ չիք երբէք 'ի դատ ինչ և 'ի վտանգ անկեալ, վարել նոր իմն և անսովոր օրինակ բանից: Զոր եթէ տեսից շնորհեալ ինձ առ 'ի ձէնջ, արարից անշուշտ, զի զԼիկինիոս զայս՝ զմեր քաղաքացի՝ ոչ միայն չդատեցիք արժանի վտարելոյ 'ի համարոյ քաղաքացւոցս, այլ մանաւանդ ընդունելոյ, թէպէտ և չէր իսկ բնաւ:

Քանզի իբրև անց Արքիաս ըստ տիս մանկութեան, և

յարուեստից անտի որովք մանկականն հասակ ստէպ է կրթիլ 'ի մարդկութիւն՝ եւ զանձն 'ի ջանս գրաւոր վաստակոց՝, զառաջինն անդ յԱնտիոք, ուր ծնեալն է. յազնուական տանէ, յերբեմն հռչակաւոր և 'ի ճոխ քաղաքի և քաջահմուտ արերով և ազատական ուսմամբք պերճացեալ, անդէն վաղվաղակի եհաս նմա անցանել զամենեքումբք 'ի փառս հանճարոյ: Ապա յայլ կողմանս ասիացւոց և յամենայն յունաստան այնպէս հռչակ հարկանէր զգալստեան նորա, զի քան զհանճարոյն համբաւ՝ ակնկալութիւն առնն, և քան զակնկալութիւն նորա՝ մուտք իւր և հիացումն մարդկանն առաւել զտանէին: Էր յայնժամ Իտալիա՝ յունական արուեստիւք և գիտութեամբք բարգաւաճ, և 'ի Լատիոն եւս այս ուսմունք սիրելի յոյժ էին քան այժմ՝ յաւանսն յայնոսիկ, և աստ 'ի Հռովմ՝ վասն խաղաղութեան տէրութեանն՝ ոչինչ անխնամ և ապախտ կային: Վասն որոյ և տարենտացիք և հռեգինոնացիք և նէապոլսեցիք [8] պարգևեցին նմա զքաղաքակցութիւն իւրեանց և այլ եւս մեծարանս. և յորս զայր ինչ ընտրութիւն հանճարոյ՝ ամենեքեան արժանի ծանօթութեան և ասպնջականութեան զնա համարեցան: Սովին մեծանուն համբաւով մինչդեռ ծանօթ էր հեռաւորաց մերոց [9], յարեաւ եկն 'ի Հռովմ 'ի բդեշխութեան Մարիոսի և Կատուլեայ: Եգիտ նախ բդեշխս զայնոսիկ, որոց մին՝ [10] իբրև մեծամեծս մատենագրութեան արժանիս, միւսն՝ և զգործս քաջութեան և զփոյթ և զունկն եւս կարօղ էր մատուցանել: Մինչ դեռ եւս պատանեակն էր Արքիաս, անդէն և անդ ընկալան զնա Լուկուլլեանք 'ի յարկս իւրեանց: Այլ այս ոչ հանճարոյն եւեթ և դպրութեանցն, այլ և բնութեանն և առաքինութեան. զի որ պատանեութեան իւրում առաջին եղև յարկ, նոյն և ծերութեան նորա գտաւ ընտանեգոյն: Էր 'ի ժամանակին սիրելի Կ. Մետելլոսի, զՆումիդեանն ասեմ, և որդւոյ նորա Պիոսի, քաղցրախորժ 'ի լուր Մ. Եմիլեայ, կենակից Կ. Կատուլոսի՝ հօր և որդւոյ,

արդոյ յաջս Լ. Կրասսոսի. իսկ զԼուկուլլեանս և զԴրու-սոս և զՕկտաւեանս և զԿատոնն[11] և բովանդակ զտունն Հորտենսեանց ընտանութեամբ յինքն յարեցուցեալ՝ 'ի մեծաշուք պատիւ վայելէր. զի ոչ միայն որ ճշմարտիւ ու-սանել ինչ և լսել ցանկամիտ էին, այլ և որ ձևանային՝ յար-գէին զնա :

Զայնու ժամանակաւ յետ ոչ անկաւուց, երբև չոգաւ ընդ Մ. Լուկուլլոսի 'ի Սիկիլիա, և երբև 'ի գաւառէ ան-տի մեկնեցաւ ընդ նմին Լուկուլլեայ՝ եկն 'ի Հերակլիա[12]. որ քանզի արդարադոյն իրաւամբք և դաշամբք[13] քաղաք էր մեր, կամեցաւ սա քաղաքակից նմա լինել. և այսմ ինքնին արժանաւոր գտեալ՝ և զօրութեամբ և շնորհիւն Լուկուլլոսի ընկալաւ 'ի հերակլիացւոցն : Ցօրինաց Սի-լուանոսի և Կարբոնի առաւ քաղաքակցութիւն « որոց միանգամ 'ի դաշնաւոր քաղաքս 'ի համար մտեալքն իցեն, եթէ 'ի ժամանակի անդ օրինադրութեանն՝ յԻտալիա իցեն բնակաւորք, և ընդ աւուրս վաթսուն[14] առ դատաւորին զկամս իւրեանց ցուցեալ : » Եւ զի սա ամս բազումս 'ի Հռոմ բնակեալ նստէր, յայտնեաց զկամսն առ Կ. Մե-տելլոսի դատաւորի՝ իւրում մտերմին :

Արդ, եթէ զիրաւանց քաղաքակցութեան են մեզ բանք, չասեմ ինչ այլ. վճարեալ է դատս : Զի ո՞ր իմիք յայսցանէ, ով Գրատիոս[15], մարթիցի եղծանել : Զհերակ-լիայ քաղաքակցութիւնն արդեօք ժխտեցես : Մերձ է այր մեծազօր իշխանութեամբ և կրօնիւք և հաւատով Մ. Լու-կուլլոս, որ ասէ զանձնէ՝ ոչ 'ի կարծ ինչ վկայել, այլ հա-ւաստի գիտութեամբ. ոչ յականջալուրս եւեթ, այլ ան-ձամբ ականատես եղեալ. ոչ անդ գիտակլով եւեթ, այլ ար-դեամբք եղեալ գործակից : Աստ են և դեսպանք հերակ-լիացիք, որեար ազնուականք, 'ի պատճառս այսր դատաս-տանի՝ պատուիրանաւ և համաշխարհի վկայութեամբ հա-սեալ կան, և Հերակլիայ քաղաքացի տան զնա գրեալ :

Աստանօր դու զհերակլիացւոց քաղաքականն դիւանս-

գիրսն պահանջես, զորս յիտալական մարտին 'ի հրայրեացս անդ գիւանին ամենեքին գիտեմք յաջիւն դարձեալ: Ծաղու բանք են, զորոց առ ձեռն ունիմք՝ ոչինչ ասել, և զոր անհնարին է ունել՝ խնդրել. լսել զմարդկան յիշատակէ, և զմատենից յիշատակարանին յուզել. և ուր առ քեզն կայցեն մեծի առն երկիւղածութիւն և անխարդախ մարդկան երդումն և հաւատ, որոց չէք իւիք աղաւաղել, զայնս մերժել, և ցանկալ յիշատակագրոց՝ զորոց դու իսկ ինքնին վկայես թէ սուտք են զեղծանիլ:

— « Բայց ոչ կալաւ բնակութիւն յԻտալիա: » — Սա՞, որ այնչափ ամօք յառաջ քան զքաղաքակցութիւնն՝ ընդ Հռոմ առար իւր օթեւան ամենայն իրաց և բախտին: — « Այլ չէք յայտ զկամս իւր արարեալ: » — Նա մանաւանդ յայն գիւանագիրս գրոշմեալ կայ, որ 'ի պաշտամանէ անտի և 'ի դատէ դատաւորաց՝ նոքա միայն առնուն զօրութիւն հասարակաց դպրութեանց: Քանզի յորժամ գիւանագիրք Ապպեայ[16] ոչ 'ի պահ զգուշութեան լինել համբաւէին, և թեթեւամտութիւն Գաբինեայ[17] մինչդեռ ողջանդամն էր, և յետ դատապարտութեանն թշուառութիւն նորա՝ զամենայն հաւատս արձանագրոց ապախտ արարին, Մետելլոս՝ այրն սուրբ և պարկեշտագոյն քան զընաւ՝ այնչափ փոյթ և խնամ կալաւ, մինչեւ առ Լ. Լենտուլոս դատաւոր և առ իրաւարարսն երթեալ՝ զմիոյ անուան քերուածոյ ասել զանձն խռովեալ: Իսկ արդ 'ի գիւանագիրս յայսոսիկ ոչինչ տեսանէք քերուած յանուան Ա. Լիկինիոսի:

Որ զի այս այսպէս, առ իմէ՞ երկմտիցէք զքաղաքակցութենէ սորա, մանաւանդ յորժամ և այլոց քաղաքաց 'ի համար քաղաքացւոյ թուեալ է: Քանզի ուր բազմաց չափաւորաց և ոչ իւիք արուեստիւ կամ դուզնաքէիւ իւիք պանծացելոց՝ ձրի տարապարտուց զքաղաքակցութիւն բաշխէին մարդիկն 'ի յունաստան, կարծեմ[18] թէ հռեգինացիքն կամ լոկրացիք կամ նէապոլսեցիք կամ տարենտացիք՝

զոր Թատերական ճարտարացն սովոր էին պարգևել տաստաքար, զնոյն սմա՝ գերագոյն փառօք հանճարոյ ճոխացելումն՝ չիցեն կամեցեալ։ Զի՞նչ ապա, մինչ դեռ այլք՝ ոչ միայն յետ շնորհելոյ քաղաքակցութեանն, այլ և յետ Պապեան օրինաց յեղանակաւ խելք 'ի դիւանագիրս ժողովրդոցն այնոցիկ սպրդեալ իցեն. իսկ սա, որ և ոչ 'ի պէտս իւր առնու զայնոսիկ՝ յորս և գրեալ իսկ է, զի միշտ հերակլիացի լինել կամեցաւ, ընկեցցի՞ 'ուրեմն արտաքս։

Բայց սակայն զաշխարհագիրս [19] մեր որոնես։ Իբրև զի Թաքուն [20] իմն է, թէ առ վերջին աշխարհամարօքն՝ սա ընդ մեծափառ զօրավարին Լուկուղղոսի 'ի բանակին [21] էր, առ միջնովքն՝ ընդ Նմին որ զանձապետն էր՝ յԱսիա գտանէր. իսկ առ առաջնովքն [22], առ Յուլեաւ և Կրասոսիւ, և ոչ մասն միոյ ժողովրդեան եղեալ է աշխարհագիր։ Բայց քանզի աշխարհագիրն ոչ զիրաւունս քաղաքակցութեան հաստատէ, այլ ցուցանէ միայն՝ զի որ յաշխարհամար մտեալն իցէ՝ այնպէս իբրև քաղաքացի ձևացեալ է յայնժամ, սա զայնու ժամանակօք, զորովք դու ամբաստան լինիս, թէ ըստ իւրում իսկ մտաց՝ և ոչ յիրաւունս համմեական քաղաքացեաց վայելեալ իցէ, բազում անգամ կտակ գրեաց ըստ մերոցս օրինաց, և զհռովմայ քաղաքացւոց ժառանգութիւնս ընկալաւ, և վասն բարերարութեանց՝ 'ի գանձս աշխարհին արձանագրեցաւ [23] 'ի Լ. Լուկուղղոսէ դատաւորէ և բդեշխէ։ Ե՛րթ ապա խնդրեա զուքեզ հաւաստիս, եթէ կարես. զի ոչ երբէք ըմբերանեսցի սա, ոչ ըստ իւրոց և ոչ ըստ բարեկամացն մտաց։

Հարցանիցես Թերևս զմեզ, Գրատիէ, թէ զի՞ այսչափ անուամբս այսուիկ հեշտանայցեմք։ — Վասն զի զայն ինչ նոթճէ մեզ՝ յոր կազդուրեսցին ոգիքս յատենական աղմկէ աստի, և հանգիցեն ականջք պարտասեալք յամբոխ աղաղակէս։ Համարիցես թէ առ ձեռն մեզ կայցէ խօսել հանապազօր յայսչափ զունակ զունակ կերպարանս իրաց, եթէ չհրահանգիցեմք զմիտս մեր գիտութեամբ. կամ թէ

միոյ մեր առկայծեն այդքանոյ ճգնութեան, եթէ ոչ նովին գիտութեամբ անգորր ինչ առնիցեմք: Այլ ես խոստովան լինիմ, թէ զսովին ուսմամբք զանկեալ և զգածեալ է իմ․ յամօթ լիցին այլք, եթէ այնպէս 'ի դպրութիւնս խթեցան ոմանք, զի չուժիցեն ինչ անտի հասարակաց հանել արդասիս, և ոչ 'ի տեսիլ և 'ի լոյս ընծայել: Իսկ ինձ առ ինչ իցէ ամաչել, որ այսչափ ամք են՝ այնպէս կեամ, դատաւորք, զի ոչ երբէք 'ի կարիս ինչ ուրուք կամ 'ի բարիս՝ յետս զիս ընկրկեաց հանգիստ իմ, կամ 'ի բաց դարձոյց հեշտութիւն, կամ յուլացոյց քուն: Վասն որոյ՝ ո՞ այն իցէ որ զիս կշտամբեսցէ, կամ ո՞ իրաւամբք ցասուցու ընդ իս, եթէ զժամն՝ որ այլոց շնորհին 'ի վճարումն պիտոյից իւրեանց, որ 'ի հանդէս տօնական աւուրցն խաղուց, որ առ այլ ևս զբօսանս զուարճութեանց, և որ առ ինքն իսկ հոգւոյ և մարմնոյ հանգիստ, և զոր այլք նուիրեն կանխեալ յերկարեալ խրախճանաց, և զոր ուլանց և գնդի խաղալոյ, զայն ես ինձ 'ի զեղերանս առից ախորժակացս այսոցիկ: Եւ այնչափ ևս առաւել ներելի է ինձ այս, զի 'ի վարժից սորա յարգեալ հանճարի [24] և այս բանախօսութիւն և ճարտարութիւն․ որ որչափ ինչ և իցէ յիս, ոչ երբէք ապաժամման գտաւ 'ի վտանգս բարեկամաց: Որ եթէ ումեք թեթև ինչ թուիցի, և զմեծագոյնն թէ յորմէ աղբերէ առնուցում՝ այնմ ես քաջ խելամուտ եմ: Զի եթէ ոչ 'ի մանկութենէ՝ բազմաց խրատուք և բազում դպրութեամբք զմիտս յայն հրահանգուցեալ էր, թէ չիք ինչ 'ի կեանս առաւել քան զգովութիւն և զպարծանս փափաքելի, և թէ 'ի զհետ նոցին՝ դոյզն ինչ է զրկելի զամենայն չարչարանս մարմնոյ և զամենայն վտանգ մահու և աքսորանաց, ոչ երբէք վասն փրկութեան ձերոյ տայի զանձն յայնքան 'ի մեծամեծ մաքառմունս և 'ի հանապազորդ հէնս խուժանի արանց ապականելոց և անուանարկաց: Բայց լի են մատեանք ամենայն, լի իմաստնոցն ձայնք, լի և հնծեալ օրինակօք վաղք ժամանակաց, որք առ հասարակ 'ի խաւարի անկեալ մնային,

եթէ ոչ հատանէր դպրութեանցն լոյս: Քանզի՞ն յաճախ նկարագիրս, ոչ՚ի նկատել ևեթ, այլ և՚ի նախանձաւոր լինել, թողլին մեզ օրինակագիրք յոյնք և լատինք զարանց քաջաց կենդանագրեալս. զորս իմ ցանգ առաջի աչացս արձանացուցեալ՚ի վարչութեան պետութեանս, զմիտս իմ և զհոգիս՚ի նոյն իմաստս արանցն ընտրականաց տպաւորէի:

Հարցանիցէ ոք թերևս. Իսկ զի՞արդ. միթէ և այրքն այնոքիկ մեծամականք, որոց առաքինութիւնք՚ի գիրս գրոշմեալք են, սովին գիտութեամբք հմտացան՝ զորս դու գովութեամբք պանծացուցանես: Դժուարին է հաւաստել զայդ զբոլորեցունց. բայց աներկեան է իմ առ այդ պատասխանի: Զբազումս վկայեմ ես առանց գիտութեան արս վսեմամիտս և առաքինիս լեալ, և իբրև յաստուածեղէն իմն բուռայ բնութեան՝ համեստս և զգօնս: Այս աւասիկ և զայս յաւելում, զի բազում ուրեք բնութիւն առանց գիտութեան բաւական գտաւ՚ի փառս և յառաքինութիւն, քան գիտութիւն առանց բնութեան: Բայց սակայն և զայս վիճիմ, զի ուր ուրեք յընտիր և յազնիւ բնութիւն զուգաւորեսցին հրահանգք իմն և յօրինուածութիւն գիտութեան, անդ սքանչելին այն և անհամեմատ՝ չգիտեմ զինչ՝ սովոր է՚ի վեր երևել: Զի՚ի թուոյ աստի էր զոր հարքն մեր տեսին զայրն աստուածային՝ զԱփրիկեցին [28], աստի Կ. Լէլիոս, Լ. Փուրիոս, արք ժուժկալք և զգաստացեալք. աստի այրն արիական և գիտնաւոր՚ի ժամանակին՝ ծերունին այն Մ. Կատոն. որք եթէ ոչ ինչ շահէին՚ի դպրութեանց՝ ՚ի գիւտ և՚ի կիրթս առաքինութեան, ոչ բնաւ յուսումն նոցին ճգնէին պարապ: Բայց թէպէտ և ոչ արդիւնքս այս մեծ ծնանէին, և զուարճութիւն ևեթ էր ջանիցս կատարած, համայն՝ որպէս իմն թուի՝ յոյժ վայելուչ վարկանէիք մարդոյ և ազատական՝ զմտագիւրութիւնս զայս: Զի այլք՝ ոչ ամենայն ժամանակի են, ոչ ամենայն հասակի և ոչ տեղւոյ. իսկ այս ուսմունք՝ զմանկութիւն

վարժեն [26], զծերութիւն զբօսուցանեն, զարդ են 'ի յաջո-ղուածս, 'ի ձախողանս' ապաւէն և ափափանս ընձեռեն, հեշտութիւն են տանեկն, արտաքոյ' ոչ ինչ խափան լինին, ընդ մեզ հսկեն, ճանապարհ առնեն, 'ի հովեւլանսն։

Զի թէպէտ և մեզ անձամբ անձին չգոյր հնար յոյնս ժամանել, և ոչ մերով ճաշակելեաքս առնուլ զհամ, սակայն և 'ի տեսանելն յայլս' զարմանալ պարտ էր ընդ այնոսիկ։ Ո՞ 'ի մեզ այնպէս վայրենամիտ և խստասիրտ երևեալ, որ գեռ ընդ գեռ ոչ ազխառացաւ 'ի մահն Ռոսկիոսի [27]. զի թէ-պէտ և ալևոր վախճանեալ, այլ վասն մեծի արուեստին և շնորհացն' թուէր թէ չէր պարտ մեռանել։ Արդ նա՛, մարմ-նոյն միայն շարժուածովք զամենեցուն մեր զսիրտս յինքն էր յանկուցեալ. մեք անփոյթ առնիցեմք զանհաւատալի շարժմանցն մտաց և զարութեանս հանճարոյ։ Եւ զայս Արքիաս քանիցս տեսի, դատաւորք, — զի ձերովդ ներո-ղամտութեամբդ վարեցայց, որովհետև այդչափ ուշիւ ունկնդրութիւն ինձ մատուցանէք յայս նորօրինակ բանա-խօսութիւն, — քանիցս տեսի ես զսա' առանց ինչ նշանա-գրելոյ' ընտիր ընտիր ոտանս բազմաթիւս ակն յական յան-կարծաթափ ածել, ճառել զնորաց իրաց առժամայն պատա-հելոց։ Քանիցս դարձեալ անդրէն վերստին զնոյն բանս կրկնել յեղյեղել այլափոխ բայիւք և իմաստիւք։ Իսկ զոր խնամովին և ուշի ուշով գրէր, այնպէս 'ի գովութիւն առեալ տեսի զայնս, մինչև 'ի վաղեմեաց մատենագրացն ժամանել լի-նել 'ի փառս։ Իսկ արդ զսա ես ո՞չ սիրիցեմ, ո՞չ սքանչացայց ընդ սա, և չհամարիցի՞մ ամենայն իրաւամբք պաշտպանու-թեան արժանի։ Այլ յարանց ականաւորաց և բազմահմուտ-ից այսպէս ընկալաք, թէ այլոց իրաց ուսմանց գոյ գի-տութեամբ և օրինօք և արուեստիւ կատարել, իսկ բանա-ստեղծին' անդստին 'ի բնութենէն է ունել զօրութիւն, և իւրոյ մտացն կորովով շարժել, և հոգւոյ իմն գոգցես աս-տուածեղէն կրել յանձին շունչ։ Վասն որոյ մերն այն Են-նիոս յիրաւի նուիրականս կոչէ զբանաստեղծսն, զի իբրև

յաստուածոց իմն պարգևաց և շնորհաց երևէին 'ի մեզ աւանդեալ: Լիցի արդ սուրբ առ ձեզ, դատաւորք, առ արդ մարդասէրս՝ անուն բանաստեղծի, զոր ոչ մի ինչ գուժ վայրենութիւն պղծեաց երբէք: Վէմք և ափափայք 'ի ձայն նորա դունչեն արձագանգս, գազանք ամեհիք ողոքին յաճախ երգովքն և ռանսակաւն 28. մեք 'ի լաւագոյնսն ընդելաւկրթեալքս ո՞չ շարժիցիմք 'ի քերթողացն բարբառ: Զհոմերոս քաղաքացի իւրեանց ասեն լինել կոլոփոնացիք, քիացիք յիւրեանս վարեն, պահանջեն սալամինացիք, իսկ զմիւռնացիք՝ իւրեանց լինել հաստատեն. վասն որոյ տաճար եւս սրբեցին նմա յաւանի անդ. թող զչոսա, այլ և այլ յոլովագոյնք մարտ եդեալ կռուին ընդ միմեանս:

Արդ նորա զօտարն, քանզի բանաստեղծ էր, յետ մահուն եւս 'ի միմեանց խլեն. մեք զսա զկենդանիս՝ որ արտի կամաւ և օրինօք մերս է՝ 'ի բա՞ց հանեմք. ուր զի երբեմն և զամենայն ճիգն և զհանճար թափեալ է Արքիայ 'ի քարոզել զփառս և զպարծանս հռովմէական ժողովրդեանս: Զի և 'ի կիմբրացւոցն իրս 'ի պատանութեան ձեռն արկեալ՝ նմին իսկ Գ. Մարիոսի, որ անարգելի ոք թուէր այսց ախորժակաց, հեշտալի գտաւ: Զի և չիք ոք այնպէս գժոխահեռ ընդ Մուսայս, որ ոչ մատադիւր ողջունեսցէ՝ թէ ոք զյաւէրժայիշատակ հաչակ վաստակոց իւրոց հարկանիցէ 'ի տաղս: Զթեմիստոկլէս՝ զայրն մեծ զաթենացի, իբրև հարցաւ թէ ո՞ր լուր կամ ո՞յր ուրուք ձայն քաղցրագոյն յունկն իւր, աւանդեն ասացեալ. «Նորայն՝ որ զիմ քաջութիւնս սքանչելապէս քարոզ կարգայցէ»: Վասն որոյ և ինքն Մարիոս առանձինն իմն սէր կալաւ առ Լ. Պլոտիոս 29, որոյ հանճարոյն ակն ունէր թէ համբաւեսցին հանդէսք քաջութեան իւրոյ: Իսկ 'ի սմանէ՝ պատերազմն միհրդատեան մեծ և տաժանելի և բազմօրինակ ընդ ծով և ընդ ցամաք յածեալ, նկարագրեալ է բովանդակ. որ ոչ զԼ. Լուկուլլիոս միայն՝ զայրն քաջ և զանուանի, այլ և զանուն հռովմէական ժողովրդեանն փառաւորեն մատեանքն

այն: Զի ժողովուրդն հռովմէական զօրավարութեամբն Լուկուլլեայ փեռեկեալ եբաց զՊոնտոս, զպարսպեալն երբեմն Թագաւորական հարստութեամբ և նովին իսկ բնութեամբ աշխարհին. բանակ ժողովրդեանն Հռովմայ նորին առաջնորդութեամբ սակաւաձեռն գնդաւ խորտակեաց զանթիւ զօրս Հայոց. հռովմէական ժողովրդեան են պարծանք, զի սերտ մտերիմ քաղաքն Կիւզիկեցւոց, նորին խորհրդով, յամենայն հինէ արքային և 'ի բոլոր պատերազմին բերանոյ և յորկորոյ կորզեալ ապրեցաւ. մեր հանապազ պատմեսցի և քարոզեսցի՝ մարտիւ պատերազմացն Լուկուլլեայ՝ սատակմամբ զօրապլխացն խորտակեալ նաւատորմն Թշնամեաց, և անհաւատալին այն առ Տենեդեաւ նաւամարտ. մեր են նշանք յաղթութեան, մեր արձանք յիշատակի, մեր յաղթանակք: Այսպ որոց հանճարովն այտոքիկ հռչակին, հռովմէական ժողովրդեան համբաւն անուն: Սիրելի եղև երիցուն Ափրիկեցւոյ մերս Ենիոս. վասն որոյ և 'ի շիրմին Սկիպիոնեանց համարի նա պատկեր կանգնեալ 'ի կճոյ [30]: Բայց նորա գովութեամբք ապաքէն ոչ դրուատեալքն միայն, այլ և հռովմէական ժողովրդեանն զարդարի անուն: Նախահաւ սորա [31] Կատոնն՝ յերկինս բարձրանայ. պատիւ մեծ առաւելու յիրս հռովմէական ժողովրդեան: Միով բանիւ, ամենեքեան նոքա առ հասարակ՝ Մաքսիմոսք, Մարկելլոսք, Փուլուիոսք՝ ոչ առանց ամենեցուն մեր համօրէն պարծանաց շքեղանան: Արդ զայրն զայն Ռուդիեցի [32] որոյ զայսոսիկ արարեալ էր՝ նախնիքն մեր 'ի քաղաքակցութիւն ընկալան. մեք զհերակլիացիս զայս, զցանկալիս քաղաքաց բազմաց, և զօրինօք հաստատեալս 'ի սմա, վարեսցուք արտաքս 'ի մերմէ քաղաքէս:

Իսկ թէ ոք դոյզն ինչ ևեթ համարիցի ժողովել արդասիս փառաց 'ի տաղիցն յունականաց [33] քան 'ի լատինականաց, անհնարին սխալէ. վասն զի յունականքն ընդ համօրէն իսկ գրեթէ ազինս ընթեռնուն, լատինականք յանձկացոյն սահմանս իւրեանց գրաւեալ ամփոփին: Վասն

որոյ, եթէ արարուածք քաջութեանց մերոց ընդ ամենայն ծագս տիեզերաց ընդարձակեալ են, յոր վայր ժամանեալ իցեն զէնք բազկաց մերոց՝ անդր և փառաց և անուան մերոյ ցանկալի է խաղալ անցանել. զի եթէ պանծալի են այսոքիկ ազգացն որոց իրք 'ի գիր եղանեն, ապա և առաւել որոց միանգամ զգլուխս վասն փառաց 'ի կշիռս դնիցեն՝ քաջալերութիւն են 'ի վտանգս և 'ի ճգնութիւնս: Քանի՞ ամբոխ մատենագրաց իւրացն իւրոց ընդ իւր ունել պատմի Մեծն այն Աղէքսանդր. և սակայն յորժամ 'ի Սիգէոն առ Աքիլլեայ գամբարանին հասեալ եկաց, « Ո՜վ երանելիդ, ասէ, պատանեակ, որ քաջութեանդ քում զՀոմերոս գտեր քարոզ: » Եւ արդարև յիրաւի. զի եթէ չէր Իլիականն այն 'ի մէջ, գերեզմանն այն՝ որ զմարմին նորա ծածկէր՝ և զանուն նորա կորուսեալ էր հեռախաղաղ: Զի՞նչ այլ. և մերս այս Մեծ [34], որ զբախտն յաջողութիւն ընդ քաջութեան հաւասարեաց, ո՞չ ապաքէն յատենի զօրականին պարգևեաց քաղաքակցութիւն Թէոփանեայ միտիլենացւոյ՝ վիպագրի գործոցն իւրոց. և արի արքն մեր այնոքիկ, բայց շինականք և զինուորք, քաղցրութեամբ իմն փառաց յորդորեալք, իբրև նոցին պարծանաց հաղորդս, մեծամեծ ձայնիւք հնչմամբք հաճեալ ընդ այն հաւանեցան: Իսկ արդ Աղքիաս, եթէ չէր օրինօք քաղաքացի հռովմէական, չկարաց՝ կարծեմ՝ [35] 'ի զօրավարէ ումեքէ զքաղաքակցութեան անուն պարգև: Ի շնորհել զայդ Սիլլայի Սպանիոսաց և գաղղիացւոց, մերժելո՞ց իմն էր զսա՝ եթէ խնդրէր, այն որ տեսաք մեք զնա յատենի հրապարակին, զի յորժամ քերթող ոք անպիտան 'ի ժողովրդենէն մատոյց առ նա գրկոյս իմն, յորում երգս իմն զնմանէ յօրինեալ էր միայն՝ փոխ առ փոխ տողիւք անդ իմն երկայնիւք [36], անդէն առ ժամայն՝ յորոց վաճառէրն [37] յայնժամ՝ հրամայեաց տալ նմա վարձս, պայմանաւ՝ « զի մի՛ ևս այլ գրեսցէ իմն այնուհետև: » Որ զՋանս չմարթուն քերթողին վարձուց իմն գէթ համարեցաւ արժանի, սորա հանճարոյն և հարստութեան

'ի գէր և ճոխութեանն ոչ ըղձանայր: Եւ զի՞նչ. միթէ և 'ի մտերմէն իւրմէ Կ. Մետելլոսէ Պիոսէ, որ բազմաց շնոր-հեաց զքաղաքակցութիւն, ո՞չ անձամբ և ո՞չ 'ի ձեռն Լու-կուլլեանց չմարթէ՞ր 'ի ձեռս բերել, որոյ մանաւանդ այն-քան ձեր անձկացեալ արձանագրութեան գործոց իւրոց, մինչև քերթողաց անգամ ումանց՝ 'ի Կորդուբա[38] ծնելոց՝ խոշոր ինչ և օտարախորթ հնչմանց մատուցանել զունկն իւր: Զի և չէ պարտ թագուցանել զայս, որում անմարթ իսկ է աղօտանալ, այլ խոստովան լինել. ամենեքեան զովու-թեան տենչանօք ձգիմք, և ամենայն ոք վեհանձն՝ առաւել ևս վարեալ՝ընթանայ 'ի փառս: Նոքին իսկ իմաստասէրք՝ 'ի գիրսն անգամ զոր յաղագս արհամարհութեան փառաց մատենագրեն, զանուանս իւրեանց դրոշմեն 'ի նոսին. և 'ի նմին իսկ յորում զհամբաւ և զքաջատոհմութիւն խոտեալ անարգանեն, քարոզիլ և անուանի լինել փափաքեն: Մեծն այն այր և զօրաւոր՝ Դեկկիմոս Բրուտոս, տաղիւք սերտ սիրեցելոյն իւրոյ Ակկիոսի՝ զդրունս տաճարաց և մահար-ձանաց իւրոց զարդարեալ պճնեաց: Նա և այն ևս՝ որ զԷն-նիոս ընդ իւր տարեալ ուղեկից՝ ընդ Ետոլացիսն կռուե-ցաւ, Փուլուիոս, ոչ ինչ երկմտեաց զանկածն իւր յաւա-րէն Արեսի՝ նուիրել Մուսայից: Վասն որոյ, քաղաք՝ յո-րում զօրավարք զոգցես զեռ ևս 'ի զէն և 'ի զարդ պատե-րազմի՝ զքերթողացն անուանս և զտաճարս Մուսայից մեծարեալ պատուեցին, չէ արժան 'ի նմա խաղաղազգեաց պատմուճանեալ դատաւորաց հեռանալ 'ի պատուելոյ Մու-սայից և կեանս ածելոյ բանաստեղծաց:

Եւ զի մտադիւրագոյնս զայդ առնիցէք, զանձն ձեզ, դատաւորք, արկից առաջի օրինակ, և զիմմէ առատ սաստ-կագին թերևս՝ սակայն արդարավայելուչ փառասիրութե-նէ՝ եղէց առ ձեզ խոստովան: Զի զոր մեքս 'ի բդեշխու-թեան մերում ընդ ձեզ գործեցաք իրս՝ 'ի փրկութիւն սա-տանիս և պետութեանս, և 'ի վերայ կենաց քաղաքայնոցս և 'ի վերայ տէրութեանս առ հասարակ, ձեռն արկ սա 'ի

նոսին և սկիզբն արար տաղից. զորս լուեալ իմ, քանզի մեծ ինչ էր և հեշտալի թուեցաւ ինձ, յորդորեցի զսա 'ի կատարումն ածել: Զի առաքինութիւն ոչ այլ ինչ խնդրէ փոխարէնս վաստակոց և վտանգից` բայց 'ի փառաց տուր և պարծանաց. որ եթէ 'ի բաց կողոպտիցի, զի՞ է զի յանձուկ ասպարիսի աստ կենաց և 'ի սուղ` յայսչափ 'ի ծանր աշխատութիւն զանձինս արկանիցեմք: Այսպէս, եթէ ոգիքն չունէին ինչ զգայութիւն յապայս, և եթէ 'ի սահմանս յորս ժամանակ կենացս բովանդակի` 'ի նոյն և եթ զամենայն խորհուրդս միտացն վճարէին, ոչ յայնքան երկս տոչկէին զինքեանս, ոչ յայնչափ հոգս և 'ի տքնութիւնս տառապէին, և ոչ զկենացն անգամ մրցեալ մաքառէին այնչափ: Այլ արդ յամենայն քաջալաւս` ընդաբոյս իմն արկեալ կայ *առաքինութիւն, որ զտիւ և զգիշեր փառացն խթանօք զմիտսն ընդաստուցանէ, և յուշ առնէ` թէ ոչ ժամանակիւ ինչ կենացս պարտ է չափել զանուանցս յիշատակ, այլ առ ամենայն ապագայ հանդերձեալն յորդորեալ տարածանել: Իսկ արդ` միթէ այնչափ նկնախոհ թուեսցիմք ամենեքեան, որ 'ի պետութեանս և յայս վիշտս և 'ի վտանգս կենաց յամենամք, զի երբև մինչև ցվախճան ասպարիսին ոչինչ խաղաղ և անդորր ոգի առնուցումք, զամենայն ինչ միանգամայն ընդ մեզ համարիցիմք մեռանել: Ուր գրոշեալս և պատկերս, ոչ ոգւոցն նմանութիւնս, այլ մարմնոց, մեծաւ փութով թողուցուն բազում արք հոյակապք, միթէ չիցէ՞ արժան առաւել զխորհրդոցս և զառաքինութեանց ցանկալ թողուլ զախպս 'ի չքնաղ հանճարան կենդանագրեալ և ողորկատեսակ: Ես զամենայն ինչ զոր և գործէի, անդստին 'ի ժամանակէ անտի իբրացն համարէի սփռել և ցանել 'ի յիշատակ յաւիտենական ծագաց տիեզերաց. Թէպէտ և յետ մահու չէք լինելոց իցէ այն յիմմէ զգայութենէս, թէպէտ և ըստ կարծեաց ոմանց ամենիմաստից` 'ի մասն ինչ իմ պատկանիցի, զարդիս ապաքէն մտախոհութեամբ և յուսով զուարճանամ անշուշտ:

Վասն որոյ, դատաւորք, պահեցէք զայրդ նովին պատկառելի պատուովն՝ զոր տեսանէք սիրելի եղեալ բարեկամացն շքոյ և հնութեան [39], և այնքանեաւ հանճարովն՝ որչափ արժանն իցէ զայն վարկանել, զոր հանճարոյ արանց աւագաց տեսանէք եղեալ ցանկալի. իսկ իրաւամբք դատաստանի՝ որ օրինացն շնորհիւ, բանիւ ազատ քաղաքին, Լուկուլլեայ վկայութեամբ, և արձանագրօքն Մետելլոսի հաւաստեալ է: Եւ զի այս այսպէս, խնդրեմք 'ի ձէնջ, դատաւորք, եթէ ոչ մարդկեղէն ևեթ, այլ և աստուածեղէն [40] իմն ընծայութեան հարկ է 'ի մէջ անցանել, զի զայն՝ որ զձեզ, որ զզօրագլուխս ձեր, որ զարիական հանդէսս հռովմէական ժողովրդեան յաւէժ գեղազարդեաց, որ և յայս 'ի մեր և ձեր աւանին արդի վտանգս՝ խոստանայ տալ անեղծական վկայութիւն գովութեանց, որ և յայնմ թուոյ է՝ որ միշտ առ ամենեսեան ընդ սուրբս են համարեալ և՝ քարոզեալ, այնպէս 'ի ձեր հաւատս ընկալջիք, որպէս զի ձերով մարդասիրութեամբդ 'ի դարմանս լինել երևեսցի, քան 'ի վիշտս՝ յերեսաց խստութեան: Զոր ինչ զդատէս, ըստ իմում սովորութեան, համառօտ և պարզ խօսեցայ, դատաւորք, վստահ եմ թէ ամենեքեան հաճ և հաւան իցէք ընդ այն. իսկ զոր ոչ ըստ ատենից և ոչ ըստ դատաստանական օրինի զհանճարոյ առնն ճառեցի և զուսմանէ նորա առ հասարակ, յուսամ 'ի ձեզ, դատաւորք, թէ 'ի բարւոյ մասին զայն ընդունիցիք. իսկ որ զբուն դատողութեանն պաշտօն ունի՝ [41] զնմանէ գիտեմ աներկբայ:

25. Պօպլիոս Կոռնելիոս Սկիպիոն երէցն, պարտութեամբն Աննիբաղայ և ափրիկեցւոցն կարքեդոնացւոց՝ Ափրիկեցի կոչեցաւ, արդարև մեծ և զարմանալի այր, պատերազմական քաջութեամբ և առաքինութեամբք դիւցազն Հռոմայեցի, որում զուգական միայն Եպամինոնդաս Թեբայեցին 'ի Հելլէնս:

26. Օրինակք ինչ ընթեռնուն զմանկութիւն անուանեն կամ դրափէտարանն:

27. Կուինտոս Ռոսկիոս Գալլոս, անուանի 'ի Հռոմ կատակերգութեան՝ բարեկամ Կիկերոնի, այն ինչ մեռաւ:

28. Աւանդութիւն որ կարդեաց դայր զոմանց վարկեալ երգողաց, որպէս զՈրփէոսէ, զԱմփիոնէ:

29. Զսա ասեն առաջին կացեալ վարժապետ 'ի Հռոմ լատին դպրութեան. և Սուետոնիոս ընդ երևելի հռետորսն դասէ զնա:

30. Այնչափ սերտ սիրելի և մեծապէս հաճելի Ենինիոս բանաստեղծ մեծին Սկիպիոնի, մինչև հաղորդ զնա առնել դամբարանական պատուոյ և իւրև զնի 'ի նախնեացն:

31. Իմա Կատոնին Ուտիկեցւոյ, որ թերևս անդ էր, և ընդ դատաւորսն ևս բազմեալ:

32. Այս ինքն զԵննիոս, որ էր 'ի Ռուդիէ գաղթաւոր աւանէ Ապուլիոյ, քերթող վիպասանութեանցն՝ յորս Կատոնի և այլքն յիշատակեալք գովաբանին, և այժմ չեն 'ի միջի, բայց միայն հատուածոքք ինչ մնացեալք:

33. Ցայտ է թէ 'ի տաղսն Աղբինոյ ակնարկէ, որ քանզի յոյն էր՝ 'ի յոյն լեզու և գրէր:

34. Կնէոս Պոմպէոս՝ որ անդ ուրեմն էր, կամ դէթ 'ի քաղաքին յառաջնախօսութեան ճառին:

35. Հեգնական է և այս կոչումն, որպէս և 'ի վեր անդր ազդ արարաք:

36. Իմանան յեղերական տաղեալ տաղից ասեն՝ որ երկոտղեն. առաջինն վեցոտանի՝ երկայն, երկրորդն հնգոտանի՝ սուղ ինչ քան զայն կարճ:

37. Վաճառէր յայնժամ Սիլլա հրապարակաւ զինչս Մարիանեանց, զորս պարտեալ էր և տարադիր արարեալ և սպանեալ:

38. Քաղաք Սպանիոյ, ուստի էր և Սենեկա և Լուկանոս և Մարտիալիս, զորոց ևս ճշմարտեալ է գաւառականեքդ կիկերոնեան մինչև ցայսօր: Զի ընդ Մուրենայի բանիբուն առն և ընդ այլոց բազմաց, յետ աւգոստեան և տիբերեան աւուրց, որ շատ և որ սակաւ առաջինք եղեն յաղագականեւ իւրեանց ինքնագլուրդ և ընդ դերայս հռոմէական բարբառոյն և բանաստեղծութեան, որ զընտութիւն ունէր իւր առաջնորդ և կաղապար, և օրինակ՝ զՀելլէնս:

39. Ոչ վարկպարագի և ժամանակ ինչ բարեկամաց, այլ պա-

# ԿԻԿԵՐՈՎՆԻ

ՃԱՌ

ՎԱՍՆ Կ. ԼԻԳԱՐԻՈՍԻ

# ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ

Կ. Կոնսիդիոս Լոնգոս, որ կայր փոխանակ կուսակալի յԱփրիկէ, 'ի մեկնելն անտի 'ի Հռովմ կոյս՝ զփոխանորդ իւր զԿ. Լիգարիոս կացոյց անդ ընդ իւր իշխան։ Իսկ իբրեւ պատերազմն բորբոքեցաւ 'ի մէջ Կայիոսի Կեսարու եւ Կնէոսի Պոմպէոսի, քաղաքացիք եւ գաւառականք՝ կուսակիցք Պոմպէայ՝ կամեցան առնուլ զԼիգարիոս՝ իբրեւ զօրավար ընդդէմ կեսարեանց. այլ նորա աչք իւր 'ի տուն, եւ առ ընտանիսն դառնալ անձկացեալ, չառ յանձն շաղել այլ եւս 'ի գործ պետութեանն։ Ատտիոս Վարոս զկուսակալութիւն Ափրիկոյ յառաջագոյն տարեալ եւ հասեալ յՈւտիկէ, սիրով կալաւ յանձին զմատուցեալ նմա իշխանութիւնն։ Մինչ այս մինչ այն, 'ի փոփոխել պաշտամանց, Լ. Ելիոս Տուբերոն վիճակաւ ընտրեալ կուսակալ 'ի ծերակուտէն, երթայ 'ի մարզ անդր՝ որ ընդ ձեռամբ Վարոսի, եւ մերժեալ 'ի նմանէ որդւովն հանդերձ Կուինտոսիւ, անցանէ 'ի Մակեդոնիա առ Պոմպէոս։ Լիգարիոս մնայ յԱփրիկէ. 'ի պարտութիւն մասանցն Պոմպէոսեանց եւ յԱփրիկէ։ Կայիոս Կեսար, թէպէտ եւ ցասմամբ ընդ յամառեալսն անդ ընդ իւր 'ի կռիւ եւ յետ անկանելոյն Պոմպէոսի, սակայն զկնի առմանն Ադրումետոսյ՝ շնորհեաց Լիգարիոսի զկեանսն. այլ նորա չիշխեցեալ կամ չկամեցեալ դառնալ յԻտալիա, եկաց անդէն ինքնակամ յաքսորս, մինչ դեռ եղբարք իւր եւ մերձաւորք եւ բարեկամք, ընդ որս եւ Կիկերոնն եւ մտերիմն իւր Կ. Պանսա, ոչ դադարէին աղերսել զԿեսար վասն դարձի նորին։ Կուինտոս Ելիոս Տուբերոն՝ զժտութեամբ եւ ներողութեամբ Կեսարու դարձ արարեալ ընդ հօրն 'ի Հռովմ, առ քինել ընդ Լիգարիոսի, զի նա մնաց յԱփրիկէ, եւ ինքն երեւամ մի յառաջ ընդ հօր իւրում մերժեցաւ յԱփրիկոյ, եւ դիտելով եւս ատելիս Կեսարու զմնացեալսն յԱփրիկէ, չարախօս եղեւ զնմանէ առ ներողամիտն Կեսար, զի չեկն յԻտալիա եւ եկաց մնաց

յԱփրիկէ։ Կունտիլլիանոս յիշատակէ և զճառ նորա ընդդէմ Լիգարիոսի, որում յետ ափրիկեան պատերազմին՝ պաշտպան եկաց Կիկերոնն առ Կեսարու. ասելն ճարտար և գեղեցիկ հրապարակախօսութեամբ, զոր իրաւապէտն Պոմպոնիոս ամենապերճ կոչէ, և յոյժ հաճոյ եղեալ է Ատտիկոսի, Բռուտոսի, Ոպպիոսի և այլոց բանիբուն արանց ժամանակին՝ բարեկամաց Կիկերոնի, որպէս յայտ է 'ի թղթոյն որ առ Ատտիկոս, և յարդեանցն ևս, զի սովոր յաղթահարեալ Կեսարու 'ի գթութենէն, ներելոյ և շնորհելոյ զարծ Լիգարիոսի. որ ապա հրապուրանօք այլոց երախտամոռաց դաւեալ առ բարերարն՝ ընդ այլ դաւաճանս նորա կործեաւ ինքն և եղբայր մի ևս իւր։ Կունտիլլիանոս 'ի ճառէ աստի առնու յաճախ օրինակս՝ բազում գովութեամբ 'ի ճարտարխօսութեան հրահանգաց մատենին։ Ցայս ճառ և 'ի յաջորդդ՝ որ վասն Դիոտարայ արքայի, գիտելի է մեծ ճիգն և ճարտարութիւն Կիկերոնի յարդարացուցանել և զանձն իւր, որ 'ի նոյն կողմնածութիւն Պոմպէոսի բամբասեալ էր։

# ԿԻԿԵՐՈՎՆԻ

## ՃԱՌ

## ՎԱՍՆ Կ. ԼԻԳԱՐԻՈՍԻ

Նոր ոճրայ, Կ. Կեսար, և յառաջ քան զօրս զայս՝ անլուր [1], քսեաց առ քեզ մերձաւորն [2] իմ Կ. Տուբերոն, թէ Կ. Լիգարիոս կացեալ մնացեալ է յԱփրիկէ. և զայս՝ այրն գերահանճար Կ. Պանսա, յուսացեալ թերևս 'ի մտերմութիւն իւր ընդ քեզ, իշխեաց խոստովան լինել։ Վասն որոյ յո՛ դարձայց ոչ գիտեմ։ Իմ, քանզի դու զայդ քեզէն գիտել ոչ մարթէիր և ոչ այլուստ լսել, պատրաստեալ եկեալ էր զանգիտութիւնդ քո պատարել 'ի փրկութիւն առնն հիքացելոյ։ Այլ քանզի 'ի փութոյ անդուլթեան առաջին հետազօտեալ 'ի վեր ելեալ են գաղտնիքն, մանաւանդ զի և մտերիմն իմ Կ. Պանսա խլեաց եհան զայն 'ի ձեռաց իմոց [3], այսպէս է՝ կարծեմ՝ խոստովան լինել, զի թողեալ զպայքարելն՝ զամենայն բանս 'ի գթութիւն քո արժան իցէ յանդուգանել առնել ապաստան, որով բազումք իսկ գտին զփրկութիւն [4], ընկալեալ 'ի քէն՝ ոչ զա-

զատութիւն յանցանաց, այլ զվրիպանացն ներումն։ Ունիս արդ, Տուբերոն, զյաւէտ ցանկալին առն դատախազի, զպարտաւոր ոք՝ որ խոստովան լինի․ բայց զայն լինի խոստովան, թէ յայնմ կողման գտաւ՝ յորում և դու ինքնին, Տուբերոն, յորում և այրն ամենապատուելի՝ հայր քո։ Ապա հարկ է նախ ձեզ զձեր յանցանս խոստովանել, քան թէ մեղս ինչ ստգտանել ՚ի Լիգարիոս։

Վասն զի Կ․ Լիգարիոս, մինչ չև ինչ դեռ կասկած էր պատերազմի, ընդ Կ․ Կոնսիդիոսի տեղապահ չոգաւ յԱփրիկէ․ յորում տեղապահութեան այնպէս սիրելի ընծայեցոյց զանձն քաղաքացւոց և նիզակակցաց, զի ՚ի մեկնել Կոնսիդիոսի [5] ՚ի նահանգէ իշխանութեան իւրոյ՝ չէր հնար հաճել զմիտս մարդկանն, եթէ զայլ ոք կացուցանէր ՚ի վերայ նահանգին։ Արդ Կ․ Լիգարիոս, իբրև յետ բազում հրաժարելոյ՝ ոչ ինչ շահեցաւ, յակամայ կամս յանձն առ զիշխանութիւնն․ որում և այնպէս իշխեաց ՚ի խաղաղութեան, զի քաղաքացւոց և նիզակակցաց հաճոյ եղև յոյժ ուղղութիւն նորա և արդարամտութիւն։ Հքւալ ընդ հուպ լուցաւ պատերազմն, զորոյ եղեալքն յԱփրիկէ՝ յառաջ քան զպատրաստութիւնն՝ զմղելն լուան։ Որ իբրև լու եղև, է որ անխորհուրդ ցանկութեամբ, և է որ առ կոյր իմն երկիւղի՝ նախ կենաց, ապա և գործոյն իւրեանց, խնդրէին զոք իւրեանց զօրավար․ այլ Լիգարիոս ՚ի տուն իւր ակըն-կառոյց՝ և առ իւրսն խանդակաթ, չառ յանձն մտել ՚ի գործ ինչ։ Առ այնու ժամանակօք Պ․ Ատտիոս Վարոս [6], որոյ զկուսակալութիւն Ափրիկոյ ընկալեալ էր, երթայ հասանէ յՈւտիկէ․ ամենեքեան առ նա ընթանան վաղվաղակի, և նա ոչ սակաւ տենչանօք ընդգրկեաց զիշխանութիւնն․ եթէ իցէ ինչ իշխանութիւն՝ տուեալն սոսկականի ումեք աղաղակաւ տխմար ամբոխին, և ոչ հասարակաց ինչ խորհրդով։ Արդ, Լիգարիոս՝ որոյ իղձք սրտին էին փախչել յամենայն այնպիսի գործոց, հանդէաւ [7] փոքր մի դադա-

տեառնըն Վարոսի: — Ցայս վայր, Կ. Կեսար, յամենայն յանցուածոյ ազատ է Լիգարիոս: Եւ նա 'ի տանէն՝ ոչ միայն և ոչ 'ի մի ինչ պատերազմ, այլ և ոչ 'ի դոյզն ինչ նշմար մարտի. տեղապահ երթեալ 'ի խաղաղութեան, այնպէս եկաց 'ի հանդարտեալ մարզի անդ, զի օգուտ նմա էր տեւել բնակել անխռով խաղաղութեամբն: Երթ նորա չունի ինչ անշուշտ վշտացուցանել զսիրտ քո: Իսկ արդ՝ մինչ անդէ՞նն մնալ. ամենևին իսկ ոչ. զի երթն ոչ 'ի չար կամաց էր, իսկ մնալն՝ յօրինաւոր հարկէն: Այսպէս երկոքին այս ժամանակք առանց իրիք յանցանաց լինելոյ են. մին՝ զի տեղապահ չոգաւ, միւսն՝ զի թախանձեալ 'ի գաւառէն կարգեցաւ իշխան Ափրիկոյ: Երրորդ ժամանակ է՝ յորում յետ գալստեան Վարոսի մնաց անդէն յԱփրիկէ. որ եթէ յանցաւորութիւն ինչ է, հարկին էր յանցումն [8], և ոչ կամաց: Եթէ կարօղ լինէր հնարիւք ինչ խոյս տալ անտի, մինչ յՈւտիկէ՞ առաւել քան 'ի Հռոմ, ընդ Պ. Ատիոսի՞ քան ընդ միաբան եղբարսն, ընդ օտարս՝ քան ընդ իւրսն սիրէր լինել: Մինչ դեռ և տեղապահութիւն իւր լի էր անձկաւ և հոգովք յանհնարին գթոյ հարազատացն, էր ինչ նմա հնար կալ անալէկոծ մտօք՝ պատառմամբ պատերազմին յեղբարցն ձեղքեալ:

Արդ ուրեմն, Կեսար, չգտանես ինչ տակաւին 'ի Լիգարիոս նշան ինչ կամաց 'ի քէն օտարելոյ. որոյ ես, միտ դիր՝ աղաչեմ, որով վստահութեամբ ջատագով կամ դատին, ուր խմուեմս մատն լինիմ [9]: Ո՛վ գթութիւն սքանչելի, և ամենայն գովութեանց և հռչակաց և մատենից և արձանաց արժանի փառաւորութեան: Մարկոս Կիկերոն յատենի քում պաշտպան կայ այլում, թէ չէր յայն ինչ կամս՝ յորում խոստովան լինի եղեալ զանձն. ոչ 'ի լուէն խորհրդոցդ երկնչի, և ոչ՝ թէ 'ի լսելդ անդ զայլմէ՝ զինչ 'ի միտսդ եղանիցէ՝ զարհուրի: Տես զիարդ աներկիւղ եմ. տես քանի՛ն լոյս առատութեանդ քոյ և իմաստութեան յիս նշողէ 'ի խօսելս առ քեզ: Ամենայն զօրութեամբ ամբարձից ըզ-

ձայնս, զի լուիցէ զայս ժողովուրդն հռովմէական: Ի բառնալ դրանց պատերազմին, Կեսար, և 'ի խաղալ նա մեծաւ մասամբ յառաջ, ոչ 'ի բռնութենէ ինչ տագնապեալ, խորհրրդով և կամաւ յայն զէնս ընթացայ՝ որ հակառակ քեզ էին առեալ: Իսկ արդ առ ո՞ դք տամ զայս: Առ նոյն ինքն իսկ՝ որ մինչ տեղեակն էր այսմ, չև տեսեալ զիս, դարձոյց սակայն 'ի քաղաքս. որ թուղթս առ իս յԵգիպտոսէ առաքեաց՝ զի կացեմ նոյն որ ինչ էի. որ յորժամ ինքն միայն էր 'ի բովանդակ տէրութեան հռովմէական ժողովրդեան Սպարապետ, համեցաւ լինել զիս երկրորդ [10]. յորմէ, աւետաւորելով ինձ սորին ինքեան Կ. Պանսայի, զշնորհեալ խուրձսն սարդենապսակս առ իս կալայ՝ որչափ և արժան զատեցայ պահել. և որ յայնժամ համարեցաւ տալ ինձ զփրկութիւն, յորժամ եթէ անկապուտ ամենևին 'ի զարդուցս տայցէ: Տես, աղաչեմ, Տուբերոն, զի զոր զինչն համարձակաձայն բարբառիմ՝ չիշխեմ խոստավան լինել զԼիգարիոսէ: Եւ յայն աղագս ասացի զինէն զայսոսիկ, զի յորժամ և զինքենէ ասիցեմ զնոյնս, ներեսցէ ինձ Տուբերոն. որոյ ես ճարտարութեանն և փառացն թեկն ածեմ, կամ վասն մերձաւոր ազգախառնութեանն, կամ զի նորա հանճարով և ախորժակօքն զուարճանամ, կամ զի այնպէս համարիմ՝ թէ փառք մերձաւոր պատանւոյս՝ պտուղ ինչ և ինձ ընծայեսցէ: Այլ զայս հարցանեմ. ո՞վ այն ոք՝ որ առ յանցանս ունի Լիգարիոսի զլինելն յԱփրիկէ: Նա, որ և ինքն իսկ 'ի նոյն Ափրիկէ կամեցաւ լինել, և արտնջէ ևս՝ զի արգելաւ 'ի Լիգարիոսէ. և անշուշտ զէն իսկ 'ի ձեռին ընդդէմ Կեսարու 'ի կռիւ ճակատեալ եկաց: Զի զի՞նչ այլ գործէր, Տուբերոն, սուսերն քո այն մերկացեալ 'ի պատենից 'ի փարսալեան ճակատու. զո՞յր կողս խնդրէր սայրն այն. զի՞նչ միտք էին զինուցն քոց, զի՞նչ քո խորհուրդք, աչք, ձեռք, եռանդն սրտի. յի՞նչ ցանկայիր, յի՞նչ ըղձանայիր: Կարի յոյժ տագնապեմ. խռովեալ տեսանի պատանին [11]. առ իս դարձայց: Ի նոյն զէնս եղէ: Եւ

յի՞նչ այլ ջանայցաք, Տուբերոն, բայց զի զոր սայս կարէ՝ մեք կարասցուք։ Իսկ արդ, Կեսար, որոց անպատուհասն մնալ՝ քոյոյ գթութեանդ պարծանք են, նոցին բանքն զքեզ յանդգնութիւն զինեսցեն։ Սակայն 'ի դատս աստ, Տուբերոն, ոչ սակաւ և զքոյդ եւս, այլ մանաւանդ զհօրդ իմաստութիւն խնդրեմ. զի այրն՝ հանճարով և գիտութեամբ վեհագոյն՝ չէ ածեալ 'ի միտ զդատիս բնութիւն. զի թէ էր տեսեալ, այլով օրով և է ոճով և ոչ այսու ընտրէր քեզ վարել։

Կշտամբես զխոստովանողն. ոչ է շատ. ամբաստան զնըմանէ լինիս, որոյ լաւագոյն է դատն ըստ քո քան զքոյդ, կամ որպէս դու կամիս՝ հաւասար։ Այսորիկ զարմանալոյ արժանի. բայց զոր 'ասելոցս եմ՝ 'ի սքանչելեաց իմն սակի է։ Այդ դատախազութիւն ոչ զայն ազդէ՝ զի դատապարտ եղէ Լիգարիոս, այլ զի 'ի մահ վարեսցի։ Զայդ ոչ ոք յառաջ քան զքեզ արար Հռովմայ քաղաքացի. օտար և եկամուտ են այդ բանք [12]։ Արեամբ չափ բորբոքիլ գիտէ ատելութիւն Յունացն ցոփոտեաց կամ գազանաբարոյ խուժդժիցն։ Զի զի՞նչ այլ պահանջիցես. զի մի՞ լինիցի 'ի Հռովմ, զի 'ի տանէն տարադի՞ր լիցի, զի մի՞ ընդ ամենալաւ եղբարսն, մի՞ ընդ ամին Տ. Բրոկքոսի՝ քեռւոյ իւրում, մի՞ ընդ որդւոյ սորա՝ քում քեռորդւոյդ և մի՞ ընդ մեզ կեցցէ. զի մի՞ 'ի հայրենի աշխարհին լինիցի։ Եւ միթէ իցէ՞. միթէ մարթիցէ՞ ինչ նմա առաւել քան զոր էն՝ թափուր և ամայի յայդմ ամենայնէ լինել։ Արգելեալ է յԻտալիոյ, յաքսորս կայ։ Արդ ուրեմն ոչ 'ի հայրենեացն արկանել կամիս դու զնա, յորմէ անկեալ իսկ է, այլ և յարևէն։ Այլ զայդ և ոչ առ իշխանապետին այնմիկ [13] դատախազեաց ոք, որ զամենայն ատեցիս իւր մահուամբ պատուհասէր. ինքնին նա հրաման տայր սպանանել առանց ուրուք դատախազի, և վարձուք անգամ հրապուրէր։ Այլ անագորոնութեանն այնորիկ յետ ամաց ինչ խնդրեցաւ վրէժ յայնմանէ իսկ՝ զոր դու այժմ անողորմ լինել կամիս [14]։

Բայց ոչ զայդ պահանջեմ ես՝ ասիցես ։ Այդպէս աներկբայ հաւատամ և ես՛, Տուբերոն․ քանզի ծանեայ զքեզ, ծանեայ զհայրդ, ծանեայ զտունդ և զանունդ ձեր․ նա և փոյթ և խնամք զարմի ձերոյ և ազգատոհմի յառաքինութիւն՝ 'ի մարդասիրութիւն և 'ի գիտութիւն այնպէս պատուական արուեստից՝ ծանօթ են ինձ առհասարակ․ վասն որոյ առոյգ զտակաւ հաստեալ եմ, թէ ոչ արիւն խնդրէք դուք․ այլ ոչ մանր միտ դնէք․ քանզի բանն յայն ակնարկէ, զի ոչ շատ համարիցիք զպատիժն յորում կայ դեռ ևս Կ․ Լիգարիոս․ արդ զի՞նչ այլ մնայ՝ բայց մահ․ զի եթէ յաքսորս է, որպէս զի և է իսկ, զի՞ ևս այլ պահանջէք ։ Արդեօք զի մի՛ ներեսցի նմա․ այլ խիստ ևս է այդ և առաւել դաժանագոյն ։ Մարտիցես ուրեմն՝ զի մի՛ ընկալցուք զոր հայցեմքս մեք 'ի տան՝ մաղթանօք և արտասուօք անկեալ առ ոտս, ոչ այնչափ յիրաւունս մեր յուսացեալք՝ քան թէ 'ի սորա մարդասիրութիւնն․ հինահա՞ր առնիցես զողբումն մեր, և զթաւալելոցս առ ոտս զաղերսական բարբառ հատանիցես ։ Եթէ մինչդեռ զայս 'ի տան անդ առնէաք, զոր և արարաք իսկ, և ակն ունիմ թէ ոչ 'ի նանիր արարաք, դու յանկարծահաս 'ի ներքս անկեալ և զաղաղակ հարկանէիր․ Զգոյշ լեր, Կեսար, չներել, զգոյշ լեր մի՛ ողորմեսցիս եղբարց որ զեղբօր փրկութիւն պաղատին, ո՞չ ապաքէն յամենայն մարդկութենէ մերկանայիր․ քանիօ՛ն դժնդակ ևս է, զի զոր մեք առ տնին աղերսիցեմք՝ դու այնմ յատենի հրապարակիս հակառակ կայցես, և յայս աղէտս բազմաց՝ զողորմածութեանն ապաստան բառնայցես 'ի բաց ։ Պարզ ասացից, Կ․ Կեսար, զոր գիտեմս ։ Եթէ 'ի մեծի աստ յաջողուածի քում չէր այն քաղցրութիւն զոր դու քև, քև ասեմ, ժառանգես, — գիտեմ զոր խօսիցիմս, — առուգ դառնութեան անհնարին՝ յորդեալ փեղոյր 'ի յաղթանակդ ։ Զի քանի՛ բազումք լինէին 'ի յաղթականաց անտի՝ որ անագորոյն զքեզ կամէին լինել, որ զի և 'ի պարտելոց անգամ գտանէին [18]․ քանի՛ բազումք, որ կամելով ոչ ումեք նե-

ընել քեզ, զգթութիւնդ քո արգելուին, յորժամ՝ որոց և ներեցեր՝ նոքին իսկ չկամին քեզ ողորմած առ այլս լինել: Զի եթէ և գոյր մեզ հնար հաւաստել Կեսարու՝ թէ Լիգարիոս չէր երբեք լեալ յԱփրիկէ, եթէ օրինաւոր [16] և արդարահաստող ստով խնամ տանել կամիցաք փրկութեան տառապելոյ քաղաքացւոյն, սակայն ոչ մարդոյ էր՝ յայտնասում՝ տագնապի և վտանգի քաղաքակցին՝ հերքել և յանդիմանել զսուտ մեր. և թէ էր եւս ումեք, ոչ այնմ ինչ էր սպառքէն՝ որ 'ի նոյն փութայիչ և 'ի պայման գտանիցի: Բայց այլ է՝ չկամել թէ խաբիցի Կեսար, և այլ՝ չկամել թէ ողորմեսցի: Յայնժամ ասել առաջի կայր. Ցո՛ւշ, Կեսար, մի հաւատայցես. եղև յԱփրիկէ Լիգարիոս, սա զէնս ընդդէմ քո: Իսկ այժմ զի՞նչ ասես. Ցէս, մի ողորմեսցիս: Այս ոչ մարդոյ, և ոչ առ մարդ է բարբառ, որով որ վարիցին զք առ քեզ, Կ. Կեսար, զիւրն մանաւանդ յառաջագոյն ընկենուցու զմարդկութիւն, քան թէ զքոյդ խափանեսցէ:

Այլ առաջին մուտք և դատախազութիւն Տուբերոնի, որպէս կարծեմ, այս եղև, զի խօսել կամիք էին նմա զեղեռանէ Կ. Լիգարիոսի [17]: Ոչինչ երկբայիմ թէ զարմանայր, զի ոչ ոք զայլմէ ումեքէ, կամ զի սա՝ 'ի նմին դատի լինելով, և կամ թէ զինչ նոր ինչ եղեան յառաջ բերիցէ: Եղե՞ան կոչես դու զայն, Տուբերոն. իսկ ընդէ՞ր ընաւ. զի այնմ դատի չեղև ցայսօր այդ անուն: Կէսք՝ վրիպակ կոչեն, այլք՝ երկիւղ. իսկ որ խստագոյնս, յոյս, ցանկութիւն, ատելութիւն, յամառութիւն. և որ եւս սաստկագոյն, յանդգնութիւն. եղեան՝ ոչ ոք մինչև ցայժմ բայց 'ի քէն: Իսկ ինձ, եթէ բուն և ճշմարիտ անուն խնդրեսցի մերոյ չարեացս, աղէտք ինչ թուին աստուածատուրք անկեալ, և զանզգաստ միտս մարդկան պաշարեալ. վասն որոյ չէ արժան զարմանալ ումեք, թէ հարկին աստուածազօր անց և եւ զմարդկեղէն խորհրդովք: Թոյլ տուք թշուառս լինել, թէպէտ և սորին յաղթանակաւ չմարթի լինել: Այլ ո՛չ զմինչ խօսիմ.

զի՞նչ կամիցի ասել։ — Չընկալան զմեզ 'ի նաւահանգն։ — Եւ զի՞նչ՝ եթէ ընդունէին. առաւե՞լ եւս զայն 'ի ձեռս Կեսարու, թէ ընդդէմ Կեսարու պահելոյ։ Տես, Կեսար, զի՞նչ համարձակութիւն, մանաւանդ՝ թէ յանդգնութիւն առ մեզ քո ազատականութեանդ։ Եթէ պատասխանի տացէ Տուբերոն, թէ հայր իւր մտանելոց էր 'ի քո ձեռս զԱփրիկէ՝ յոր առաքեալ էր ի՛նա ատագանին և վիճակն, ոչ ինչ երկմըտեցայց՝ թէ դու, որում արարուած նորա քեզ յօգուտ էր, ծանր ծանր բամբիւք զխորհուրդ նորա կշտամբէիր առ նմա. զի թէ և հաճոյ լինէր գործն, բայց և ոչ գովելի յաչս քո։ Այլ զայսու ամենայնիւ զանց առնեմ. ոչ այնչափ՝ զի մի՛ ներող լսելեացդ պատերազմող եղէց, քան՝ զի մի՛ Տուբերոն՝ զոր ոչն երբէք ած զմտաւ՝ երևեսցի թէ առնելոց էր։ Արդ գնացեալ երթայիք յափրիկեանն մարզ, որ միայն էր յամենեցունց անհնարին ոխերիմ այսր յաղթութեան. յորում էր թագաւոր հարստաբուռն [28], թշնամի այսմ խնդրոյ. կամք օտարոտի, զունդք հզօրք և ստուարք։ Զի՞նչ առնել էր ձեզ, հարցանեմ։ Այլ մի թէ երկբայիցիմ ինչ՝ թէ զի՞նչ էիք առնելոց, մինչ դեռ զոր արարէքն [29] ահա տեսանեմ։ Խափանեցայք չկոխել 'ի մարզ իշխանութեան ձերոյ, և խափանեցայք՝ որպէս պատմէքն՝ յետին թշնամանօք։ Զիա՞րդ տարայք այնմ. զկրեց թշնամանացդ առ ո՞ ողք արկէք բողոք։ Առ նա ապաքէն, որոյ ձոխութեանն անսացեալ՝ [30] յարբանեկութիւն պատերազմին երթեալ էիք։ Զի եթէ 'ի Կեսարու սակս երթայիք 'ի մարզն, յորժամ 'ի մարզէն մերժեցայք՝ անշուշտ առ նա անցեալ գնայիք։ Չոգայք առ Պոմպէոս. զի՞նչ է ապա տրտունջք ձեր այդ առ Կեսարու, չարախօս լինել զայնմանէ՝ յորմէ խափանեալս զձեզ բանբասէք 'ի պատերազմելոյ ընդդէմ Կեսարու։ Այլ արդ յայդմ, շնորհեալ ձեզ յինէն, թէ կամիք և ստութեամբ պարծեսջիք, զի եթէ 'ի Վարոսէ կամ յայլոց ումանց չէիք արգելեալ՝ դուք զմարզն զայն 'ի ձեռս Կեսարու էիք աւանդելոց. և ես խոստովան

ժամ՞ անարգանս ազգեաց · զի անմիտ էր, մինչդեռ ճանապարհ առաջի տեսանէիր, խորհել 'ի խաղաղութիւն : Այս արդարև ամենեքեան յաղթել կամէաք · դու մանաւանդ առանց յերկուանաց՝ որ յայն վայր [33] չոգար, ուր կարօտ կայր քեզ՝ եթէ չյաղթէիր : Թէպէտ և, որպէս զիարդ ինչ այժմս է, ոչինչ յերկուանամ թէ զփրկութիւնս զայս առաւել ընտրես քան զայն յաղթութիւն : Զայս ես ոչ ասէի, Տուբերոն, եթէ ձեր ընդ անօրինաց միտս ձեր ապրջացեալ էր, կամ Կեսարու՝ ընդ բարերարութիւն իւր : Այս տեղեաց՝ հարցանեմ · արդեօք զձեր, եթէ զհասարակաց ընկերահաշտեաց զթշնամանան պահանջիցէք : Եթէ հասարակ զպետութեանս, զի՞նչ տայցէք պատասխանի զյամառեալ անզգութենէք ձերմէ յայն ինչիր [34] · իսկ եթէ զձերդ, տեսէք մի՛ սխալիցէք, համարելով թէ Կեսար զթշնամիս ձեր պատուհասեսցէ, որ և իւրոցն իսկ թողութիւն շնորհեաց :

Եւ արդ, Կեսար, իցէ՞ թէ թուեցիմ քեզ ինչ 'ի դատ Լիգարիոսի մտադիւր պարապեալ, զպէտս նորին ճառեալ : Որ զինչ և խօսեցայս՝ կամիմ բովանդակել 'ի մի գլուխ մարդասիրութեան քոյ կամ զթութեան կամ ողորմութեանդ : Բազում դատս խօսեալ է իմ, Կեսար, և ընդ քեզ ես [35], յորժամ 'ի պատճառս պատուոյ և փառաց քոց յամէնի յատենի հրապարակին · բայց ո՛հ և ո՛հ, ոչ երբէք այսու ոճով, Ներեցէ՛ք, դատաւորք, սխալեցաւ, վրիպեցաւ, ոչ խորհեցաւ · եթէ երբէք այսուհետև . . . : Զայդ օրինակ՝ առ հայր որդին է բարբառել · իսկ առ դատաւորս, Ոչ արար, ոչ արկ 'ի միտ, սուտ են վկայք, ճուտ ստայօք : Դիր, Կեսար, թէ 'ի դատաւոր Լիգարիոսի դատաւոր իցես · հարց, յորո՞ւմ պահապան զնդի եղեալ իցէ : Լռեալ լինիմ · և ոչ զայսոսիկ 'ի հանդէսի անցուցանեմ, որ առ դատաւոր ևս իցեն թերևս զօրաւորք : Տեղապահ երթեալ յառաջ քան զպատերազմն, թողեալ լքեալ 'ի խաղաղութեան, մարտիւ պաշարեալ, յայնմ ոչ դաժան, այլ և հօգւով և ջանիւք բովանդակ քոյ : Արդ դա-

եւ տարապէր հանելոյ ։ Ի վտարանդել միոյն այնմիկ , ամենայն աքսորանք առաւել ցանկալի են ասցա՝ քան զաշխարհս հայրենիս և քան զտուն և քան զթերափան ընտանիս ։ Եթէ ՚ի հարապատութեանց , եթէ առ գութան , եթէ արտաքսաւութեամբն տանեն , շարժեսցեն զքեզ արտասուք ասցա , շարժեսցեն խանդաղատանքն , շարժեսցէ արիւնն լերդակէկց . զօրասցի ձայն քո այն որ յաղթեսցի ։ Քանզի լաւէաք զքո տաեւլ , թէ մեք զամենեսեան՝ բաց յորոց ընդ մեզս եղեն՝ առ թշնամիս ունիմք , խակ դու առ քոյս՝ զամենեսեան որ ոչն եղեն քեզ հակառակ ։ Արդ տեսանիցես զայս շուք փառաւարութեան , զտունս զայս Բրոկքեանց առ հասարակ , զԼ. զայս Մարկելոս , զԿ. Կեսեանոս , զԼ. Կորնիլիոս [37] , զասպետսքս զայսոսիկ համօրէն հռովմայեցւոց , որ աստ են կերպարանափոխ հանդերձիւք , որք՝ ոչ միայն ծանօթք քեզ , այլ և արդոյք , ընդ քեզ եղեալք ։ Եւ սակայն ընդ սոսա բարկացեալ էաք , ասցա ՚ի խնդիր էաք , ոմանք և ըսպառնայինն խակ սոցա ։ Եւ արդ պահեա քոյոցդ զնոցայսն , որպէս զի խրրև զայլ բանս քո՝ ճշմարիտ դասցի և այդ անմքէալ ։

Զի եթէ կարօղ էիր ՚ի խոր նկատել զԼ. Լատերեանցն մեծաբանութիւն , զեղբարան զամենայն ընդ քեզ լեալ մարկանէիր ։ Իցէ՞ խնչ ումեք յերկմիտս լինել , զի եթէ Կ. Լխղարիոս յԻտալիա դատանէր , ՚ի նոյն միտս և ՚ի խորհուրդս լինելոց էր՝ յորում և եղբայրքն ։ Ո՞ է որ զսոցա համաշունչ և զմիաբան միաբանութիւն յայսմ գործեա եղբայրական հարթ հաւատարութեան ոչ գիտիցէ . ո՞ ոչ ՚ի միտ առնուցու , թէ ամենայնիւ մարթէր լինել՝ և ոչ հարազատացս այսոցիկ յայլ և այլ միտս և ՚ի բախտս տատանդել ։ Ամենեքեան ուրեմն ընդ քեզ եղեն կամօք արտաքսն . մին մերկայափշտակեցաւ . որ եթէ և կամաւ էր զայն արարեալ , նման այնոցիկ լինէր՝ զորս համայն դու և այնպէս արդեցուցանել համեցար ։ Բայց լիցի եղթեալ ՚ի պատերազմ , օգնեալ՝ ոչ ՚ի քեն միայն , այլ և յեղբարցն ։ Արդա քոյքդ

պաղատանս առ քեզ : Նա ասանիկ անմոռաց ունիմ 'ի մտի , թէ յորժամ յամենայն 'ի գործս քո խառն էի , որպիսի էր Տ · Լիգորիոս գանձապետս քաղաքիս ընդ քեզ և ընդ փառացն[38] քում : Բայց փոքր ինչ է յիշելս իմ զայս · այն ունիմ թէ և դու գիտես , որ ոչինչ առնէր ես մտաւանել բայց միայն զառ քեզ անխրատուութիւնս , զի այս մնացք է , զի և հանձարոյք , դու գիտես 'ի խորհելց ինչ զորս գանձատու-րութեանցն և զայլոց սմանց գանձապետաց` ուր 'ի կուրծս տրկեալ յիշատակեցես : Արդ առ այս Տ · Լիգորիոս , որ ոչ ինչ այլ տրար յայնժամ , — զի և գուշակէր ոչ զայսո-սիկ , — բայց միայն զի փութառ և ժամանն առ քեզ զինքն համարեցին և այր բարի , այժմ յողորմ առ քեզ անկեալ ա-ղերսէ զերջանիկն փրկութիւն : Զոր եթէ սորա միջնորդելով յորդորեալ շնորհեսցես երկոցունց սոցա , եղբարս երկս ա-մենայնսս և անարատս , ոչ ինքեանց միայն և ոչ այսչափ և այսպիսի արանց և ոչ մեղ սիրելեաց նոցա , այլ և ընկեր-հաշտութեանս լիցի քո պարգևեալ : Արդ զոր փոքր մի յա-ռաջ 'ի սահմանին խորհրդոյ ցուցեր 'ի Մ · Մարկելլոս[39] յայրն աղնուական և հոյակապ , տուր ցոյց զնոյն յառենի սոսա և առ եղբարսն ընտրականս և գովելիս համօրէն այսմ բազմութեանս : Զոր օրինակ շնորհեցեր զնա ատաքանւոյն , տուր նոյնպէս և զսա ժողովրդեան , զորոյ զկամսն սիրեցեր միշտ յոյժ : Եւ եթէ օրն այն քեզ 'ի մեծ փառս , ժողովր-դեան Հռովմայ 'ի խնդութիւն եղև , մի ինչ՝ աղաչեմ՝ յերկ-բայս մարմնոյր , Կեսար , զնմանօրինակ գովութիւն այնր փառաց յանձնսխ և սմէկ խնդրել : Զի չէք ինչ հաճոյ ժո-ղովրդեան քան զքաղցրութիւն , և ոչ մի ինչ յառաքինու-թեանց քոց 'ի բազմաց` ոչ յաւէտ սիրալի , և ոչ առաւել սիրելի քան զողորմածութիւն : Զի ոչ այլով իւիք առաւել հուպ մատչին մարդիկ առ աստուածն , որպէս փրկու-թիւն գործելով մարդկան : Չիք ինչ 'ի բախտին քում այլ ինչ մեծ` բայց զի կարօղ իցես , և ոչ 'ի բնութեան քում այլ ինչ լաւ` բայց զի յօժարագունեղ իցես կամեցող փրկու-

թեան ։ Ճառս ինձ երկայնագոյնս պահանջէր թերեւս դասն, այլ քո բնութիւնդ հաստատեաց զկարճառօտն ։ Արդ քանզի տեսանել շահ համարիմ զքեզ, ինքնին ընդ քեզ խօսել, քան թէ ինձ կամ այլում ումեք, սատանօր փափաքան աղաչեմ · զայս եւեթ քեզ յուշ արկանել, զի եթէ հեռաւորին այնմիկ շնորհեսցես զկեանսն, պարգեւեսցես եւ ամենեցուն սոցա աստ եղելոցս ։

Յուբաս արքայ մաւրիտանացւոց, յափրիկեան մարտէն փախեաւ 'ի Սպանիա ընդ Սեքստոսի Պոմպէոսի և Լաբիենոսի։ Իսկ անդ եւս նորոգեցաւ պատերազմ ընդ որդւոյն Պոմպէոսի, 'ի Մունդայ կաւուքն պարտեալ 'ի Կեսարէ սպանաւ։

7. Հանդերձ 'ի տագնապելոյ անտի և 'ի փախուստ աճապարելոյ, զի մի բանի զօրագլուխ կարգեսցի։

8. Զի ստիպէր Հպատակել Վարոսի՝ նորոյ փոխանակի բդեշխին։

9. Զի Կիկերոնին կամակար զՊոմպէոսի կողմ կալեալ և պատերազմեալ եւս էր ընդ նորա դրօշուք, ուր Լիգարիոս ակամայ 'ի Հռոմանէ կամ 'ի Հարկէն։

10. Զի փոխանակ բդեշխի տուեալ 'ի Կիլիկիա, խաղաղացուցեալ զԱմանն, և քարշեալ անտի զանդադարելի թշնամին, և յաղթեալ ոչ սակաւ 'ի գործն. զօրագլուխ ողջունեցաւ. և 'ի դարձին, քանզի չեմուտ 'ի Հռոմ՝ ուր օրէն էր մերկանալ յիշխանութենէն, կալաւ յերկար զխուրձն և զանուն փոխանակի բդեշխի մինչև ցամս չորս։

11. Տուբերոն որդին. այլ որպէս Կուինտիլիանոս ասէ, շարժեալ է բանիւքս և Կեսար ինքնին. և ըստ Պլուտարքեայ, 'ի յիշատակ լեկոյ ձեռագրաւ փարուալեալ՝ այնպէս զգացեալ, զի որ դատապարտեալն էր զԼիգարիոս 'ի մտի ունէր, և առ Հարկի եւեթ օրինի Հրահանգացոյ կայր լսէր Կիկերոնին, 'ի բանսն յայնս վէր 'ի վայր վրդովեալ, և թղթոյն որ 'ի ձեռին՝ անկանել, և Հակառակ առաջին մտացն՝ արձակուրդ շնորհել դատապարտելոյն։

12. Աւետ ունէր նման առ իւր զաղատացիս ոմանս և Ցայիոս, որ զնա յոխութիւն և 'ի ժառանգութիւն գրգէին։

13. Առ Սիլլայի, որոյ յայտնի են նախճիրքն 'ի մարիոսեան կողմանէն։

14. Զի դատաստան Կեսարու առ մարդասպանս սրիկայս կալաւ և զայնոսիկ, որ ընդ տարագրութեանց մատուցեալ զկառավարսն Հռովմայ քաղաքացւոցն՝ վարձս առեալ էին արծաթ 'ի գանձէ աշխարհին. թէպէտ և Կոռնելեան օրէնք անպարտ առնէին։

15. Այդ և յաղագս բանից յայս յանդիմանէ զՏուբերոն զդատախազն Հարկանեն։

16. Օրինաւոր իմն ընդ դատաստանական ոգւոց իւրեանց, և ոչ ընդ յաւիտենական ճշմարտութեան և արդարութեան իրաւանց։

17. Զի այսպէս սկսանէր ճառն Տուբերոնի. «Խօսել կամիմ զեղեռանէն Լիգարիոսի։»

18. Զխղճէ ինչ անուանել զՊոմպէոս յանդիմանէ լաւ 'ի լուր Կեսարու. զի և սա ինքն պատուով յիշէր միշտ զնա։

19. Զի արգելուլն 'ի նմանէ զյաղթանակ ճեմելոյս, և զերկրորդ անգամ բդեշխութիւն՝ զոր տուեալ էր ժողովուրդն։

# ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ

Դիոտարոս այս՝ ազնուական չորրորդապետս Գաղատիոյ, 'ի պատերազմունսն զոր տային Հռովմայեցիք յԱսիա, 'ի Կապադովկիա, 'ի Պոնտոս, 'ի Կիլիկիա և 'ի ստորին Ասորիս, հաւատարիմ ուխտակից եկաց զօրավարացն Հռովմայեցւոց՝ ընչիւք և զօրօք հասանել նոցա 'ի թիկունս: Վասն որոյ բազում անգամ գովութեամբք պատուեցին զնա 'ի ծերակուտին Սիլլա, Մուրենա, Սերուիլիոս և Լուկուլլոս: Իսկ Պոմպէոս համարեցաւ զնա բարեկամ և սեան և սերտ նիզակակից Հռովմէական ժողովրդեան. ուստի և զթագաւորութիւն փոքուն Հայոց պարգևեաց նմա, և աւագանին թագաւոր զնա անուանեաց: Ի ծագել ընդանի պատերազմին ընդ Կեսար և ընդ Պոմպէոս՝ յղեաց ևս օգնութիւն Պոմպէոսի, և անձամբ ևս շոգաւ 'ի փարսաղեան կռիւն: Յետ պարտութեան նորա՝ մերկնեցաւ յերկիր տէրութեան իւրոյ: Փառնակ որդի Միհրդատայ, որոյ զմասն եւեթ հայրենի թագաւորութեանն ընկալեալ էր 'ի Պոմպէոսէ՝ զԿիմմերեանն Բոսփոր, ցանկացեալ զբաւանն առնել և զայլ մասունսն, բռնութեամբ մտեալ յափշտակեաց յԱրիոբարզանայ զԿապադովկիա, և զՓոքր Հայս 'ի Դիոտարայ՝ որ չէր անդ: Մինչդեռ Կեսար յԵգիպտոս զբաղեալ կայր, գնացեալ Դիոտար առ Դոմետիոս Կալուինոս, յորոյ 'ի խնամս հաւատացեալ էր Կեսարու զԱսիա՝ հանդերձ շուրջ սահմանօքն, աղաչել՝ զի մի տացէ թոյլ փառնակայ զեկել զինքն և զԱրիոբարզան. ապա թէ ոչ, ասէ, չմարթի ինձ զհրամանս կատարել, և ոչ զխոստացեալ արծաթս հատուցանել Կեսարու: Հրեշտակ առաքէ անդէն Դոմետիոս առ Փառնակ՝ ելանել յաշխարհաց անտի. և պատասխանի ընկալաւ, թէ 'ի Կապադովկիոյ ձեռնթափ էր, բայց զՓոքրն Հայս իրաւամբք ունէր յանուն հօր իւրոյ: Յետ սուղ ինչ բանակցեաց 'ի

պայքար եկեալ է, ընդ յարկաւ տանդ խօսիմ, արտաքոյ ժողովոց խօսիմ և ատենից, յորս ճարտարախօսացն յեցեալ են և են ամենայն մխիթարութիւնք. յաչս քո՝ 'ի երեսն քո և յերեսս ակնկառոյց կամ. 'ի քեզ միայն նկատեմ, առ քեզ միայն հայիմ ամենայն բանիւս: Որ ինչ ինձ 'ի յոյս զամագիտ ճշմարտութեան լինելոյ զօրաւորքն են, առ եռանդն հոգւոյս և առ ամենայն ուժգնութիւն խօսից և 'ի մրցութիւն՝ յոյժ թեթևք: Զի եթէ զայս դատ, Կ. Կեսար, 'ի հրապարակին խօսէի՝ քեզ իսկ լու 'ի լու և քո դատողութեամբ, որպիսի զուարթութիւն ընծայէր յիս խուռնընթաց խմբոյ հռովմէական ժողովրդեան: Զի ո՞ր այն քաղաքացի՝ որ թագաւորին այնմիկ չլինէր թիկունք, զորոյ զաւուրսն զամենայն 'ի մէջ ածէր մաշեալ 'ի պատերազմունս հռովմէական ժողովրդեան: Գոյր ինձ զգետակն ամբառնալ 'ի տաճար անդր խորհրդոյ [a], հայել 'ի հրապարակ անդր, և զինքնին իսկ զերկինս վկայ ունել: Այսպէս 'ի յիշատակել ինձ զաստուածոցն անմահից և զժողովրդեանն Հռովմայ և զաւագանւոյն բարերարութիւնս առ Դիոտարոս արքայ, անհնար էր պակասել յինէն բանից: Զորս քանզի 'ի նեղ արկեալ յանձկի կացուցանեն որմունքս, ճնշեալ նուաղի ատեղեաւն և զատաստացութիւնս: Քո է, Կեսար, բազում անգամ զբազմաց ատենախօս եղելոյդ [b], յանձին քում նկարել որ ինչ այժմ յիմն կրի. զի զիւրաւ քո արդարութեանդ և ունկնդրութեանդ մտադիւրութիւն՝ զամփոփումնըս զայս կարճեսցէ յինէն:

Այլ մինչ չև 'ի բանս ամբաստանութեանն մատուցեալ՝ զյուսոյ ակնկալութեան ճարտարախօսացն ասացից սակաւուք. որ թէպէտ և ոչ հանճարով և ոչ հմտութեամբ ինչ իրաց և վարժութեամբ թուին արժել ինչ, սակայն ոչ առանց ինչ յուսոյ և խորհրդոյ ձեռն յայս դատ արկին: Չէին անտեղեակ՝ զի ցասուցեալ էիր ընդ Դիոտարոս արքայ. զիտէին զնա առ զայրացուցիս որպէս հարուածեալ և վնա-

անհնարին է կառավարել, եթէ ոչ առ մոլեկան որ զնոս ու-նիցիս : Քանզի թողեալ թէ որպիսամ ահեղ անօրէնութեան իցէ՝ ապանանել զայր հիւր, անին յանդգնման առանձին դիցն թերափից․ որպիսամ գժնէ անողորմութեան՝ զամենայն ազգաց և զամենայն յիշատակաց զլոյսն պայծառ չքջուցանել․ որպիսամ անհնարին պատրանութեան՝ չզարհուրել 'ի յաղթողէն ախտեզերաց․ որպիսամ վայրենամիտ և ապախտաւոր սրտի, զի յորմէ թագաւորն էր անուանեալ՝ 'ի նմա զատն զահիճ երևել․ զայս ամենայն թողեալ, որպիսամ ահագին մոլեգնութեան իցէ՝ զամենայն թագաւորս, յորոց բազումք սահմանակիցք իւր էին, զամենայն ազատ ազգիս, զամենայն ուխտակիցս, զամենայն նահանգս, համայն տոացեալ՝ զամենայն ամենեցուն զէնս ընդդէմ իւր միայնոյ յարուցանել : Որով նա օրինակաւ, թագաւորութեամբն՝ տամբ՝ կնաւ և սիրատուն որդւով հանդերձ, իւրեալ պատառէր, եթէ զայնքան ոճիրն՝ ոչ թէ միայն գործով կատարէր, այլ եթէ և ածէր ևեթ զմտաւ : — Բայց կարծեմ՝ այլին անխորհուրդ և յանդուգն չանեանէր զայսոսիկ : Ո՞ քան զնա խորհրդականն, ո՞ առաւել ազգագատ [13], և յաւէտ մնացի․ Թէպէտ և աստանօր Դիոտարայ ոչ այնչափ հանճարոյն և իմաստութեամբ՝ քան թէ հաւատարմութեամբն և կենացն կրօնիւք արժան համարիմ պաշտպանել : Ծանօթ է քեզ, Կ․ Կեսար, առնն լաւութիւն, ծանօթ բարքն, ծանօթ պնդութիւնն․ այլ ո՞ւմ ումեք, որոյ զամ մի պհառմեականն ժողովրդեան զանուն ևեթ լուեալ իցէ, Դիոտարայ անարատութիւն, պարկեշտութիւն, առաքինութիւն և հաւատք չիցեն պատմեալ : Արդ, ոճիր որ և ոչ առն անզգամի անկ լինել է՝ վասն յայտնի կորստեան երկիւղին, և ոչ եղեռնաւորի՝ եթէ չիցէ անմտագոյն ևս, զայն զուք առեղծանէք երկնել 'ի միոջ ամենալաւ առն և ոչ բնաւ անզգայելոյ․ և որում ոչ անհաւատ միայն օրինակաւ, այլ և ոչ զէթ կարծեաք չափ ևեթ : — Իբրև չոգար, ասէ, 'ի Լուկիոն ամրոց, և ընթացեալ տարար 'ի տուն թագաւորին՝

արձակեսցէ յիւրմէ, 'ի Հռովմ ես առաքեսցէ, ուր և զու-խտերիմն իւր գիտէր զԹոռնն, և զԿեսար ինքնին զկռովմն՝ որում զորոգայթն լարեալ էր. մանաւանդ զի և սա միայն էր՝ որ զհնարաւորէն զինքենէ կարօղ էր մատն և զուշակ լինել: — Այլ զեղբարան իմ, ասէ, վասն զի գիտակք էին, արկ 'ի բանս և 'ի կապանս: — Իսկ արդ, զնոսա կապեալ՝ որ անդ ընդ իւրն էին, զերեզ 'ի Հռովմ արձակեալ յղէր, որ զնոյնս զոր զնոցանէն ասեն գիտել՝ գիտէիր և դու:

Մնացեալ մասն ամբաստանութեանն կրկին է. մի, զի յորմէհետէ աւելոց եւ 'ի քէն արտաքս Թագաւորն, միշտ ե-ղեալ զէտակն ունէր միշտ 'ի պահ զզուշութեան. և միւս, զի բանակ մեծ գումարեալ ունէր 'ի վերայ քո: — Զբա-նակէն առաջին կարճ 'ի կարճոյ որպէս և զայլսն: Դիոտա-րոս արքայն ոչ երբեք եղեն զունդք՝ որովք բաւական զօրա-նիցի տալ պատերազմ ընդ հռովմէական ժողովրդեան. այլ այնչափ եւեթ, զի զսահմանս իւր 'ի հինից ասպատակաց Թշնամեացն և յաւազակութենէն պահպանել, և զօրագլ-խացն մերոց առաքել Թիկունս օգնականութեան: Կարօղ էր յառաջագոյն բազմաձեռն ես հաւաքել զօրս, այժմ սա-կաւ ինչ հազիւ Թէ մարԹէ պահել: — Բայց յղեաց առ Կեկիլիոս ոմն չգիտեմ ում. այլ զորս յղեացն, քանզի չկա-մեցան երԹալ, արկ 'ի կապանս: — Ոչ հետազօտեմ՝ զոր ճշմարտութեան կերպարանս ունիցի, չգտանել արքայի առ ձեռն՝ զորս առաքիցէ, կամ առաքելոցն՝ անսաստելն, կամ զհնազանդն հրամանին՝ յայնմ 'ի մեծ և կարևոր իրի՝ կապելն եւեթ, և ոչ սաստակելն: Բայց սակայն 'ի յղելն առ Կեկիլիոս՝ ո՞չ գիտէր արդեօք Թէ այն խնդիր մարտիս յաղ-Թութեամբ վճարեալ է, Թէ զԿեկիլիոսդ զայդ առ մեծ ոմն ունէր. զոր քաջածանօԹն այն մերոյ արերոյս՝ առաւել ընդ բանս ինչ ածելոյ արհամարհէր: — Ցաւել և զայն ես, Թէ ոչ զայրընտրեան 'ի հեծելոց առաքեաց առ քեզ: Զհեծ-աւուրցան կարծեմ, Կեսար. ոչինչ առ քոյովդ այրուձիովդ. այլ առաքեաց յորոց ունէրն զընտիրսն: — Ասէ չգիտեմ

լոյ՝ զի՞նչ տաց պատասխանի. որում ոչ երբեք անհնչացար, և է ուրեք՝ զի առ ախտչութեան մարդկանն 'ի հիացմանէն լռեալ կարկեցաւ. և թերևս զանց ես եղև, զի ոչինչ 'ի հա-սարակաց աստի գուշակէիցս արժանի քեզ տեսանի :

Ոչինչ յինէն կարծեմ ապախտ արարեալ, այլ թողեալ ինչ 'ի յետոյն մասն զառաջս, որ այն ինչն է՝ ամենայնիւ ա-մենայն երբեք հաշտեցուցանել ճառիս զքեզ ընդ Դիոտարի : Զի ոչ ինչ խիթամ թէ դու ցասուցուս ընդ նա, այլ կաս-կածեմ՝ գուցէ կարծիցես զնա դժգմեալ ինչ ընդ քեզ. որ, հաւատաս ինձ, Կեսար, բացէ 'ի բաց հեռի է ամենևին. զի զոր 'ի քէնդ ունի՝ զայն ընդ միտ արկանէ, ոչ զոր կորոյսն. և ոչ առաժ ինչ 'ի քէն կրեալ համարի զանձն. այլ բազմաց բաշխեալ ինչ քեզ ընծայել արժան դատելով, ոչինչ ըմբռ-նեցաւ ընդ առնուլն զայնս յինքենէ՝ որ 'ի միասում կող-մանն զտեալ էր : Զի եթէ Անտիոքոս, մեծն այն ասիա-ցւոց թագաւոր, յետ 'ի պարտութիւն մատնեալ առաջի Սկիպիոնի՝ մինչև 'ի Տաւրոս եւեթ թագաւորել հրամանն ըն-կալաւ, կորուսեալ զամենայն կողմն Ասիոյ՝ որ այժմ մեր է նահանգ, սովոր է ասել՝ թէ բարի եղև նմա 'ի հռովմէական ժողովրդենէն, զի 'ի ծանր ծանր հոգոց ազատեալ՝ 'ի չափ եւեթ սահմանի արքայութեան վայելիցէ, դիւրագոյն ևս է Դիոտարայ սփոփել զանձն. զի նա զմոլորութեանն տարաւ տուգանս, ա՛ս զղջացանացն : Զամենայն ինչ, Կեսար, պար-գևեցեր դու Դիոտարայ՝ շնորհելով նմա և որդւոյն զանուն թագաւորական : Ի կրելն և 'ի պահել զայդ անուն, ոչ ինչ յերախտեաց հռովմէական ժողովրդեան, ոչ ինչ 'ի յար-գանաց աւագանւոյն նուազեալ համարի զանձն : Մեծա-և քաջալեր հոգւով կայ, ոչ լիցի նկուն թշնամեաց և ոչ երկ բախտին : Բազում ինչ յառաջագոյն վաստակովքն մե-ծարեալ վարկանի, և ունել 'ի մտի և յառաջութեան խրատ՝ զոր ոչ իւիք կարիցէ 'ի դերևս առնել : Զի ո՞ր բախտ կամ ո՞ր արկած կամ ո՞ր զրկահարանք զամենայն զօրագնդաց

տարրև՛ շաժշառութեանն խուն ինչ 'ի քէն մեկնեալ իցէ . 'ի դլուխս սահմանացդ՝ անդ առ ձեռն զինքն առէ լեալ, և մինչև 'ի ծագս նոցին խաղացեալ . ընդ քեզ յեղանելդ 'ի լուսալեաց , 'ի զննելդ զընծայսն յետ ընթրեացն , 'ի յանկողին մտանելդ . և 'ի նոյն սոյա ցանկորգեալ առ քեզ 'ի վաղիւանդր : Վասն որոյ , եթէ 'ի չարախօսութեանց անտի յայնցանէ արդարև խորամանգեալ ինչ իցէ , ոչ խորշի թէ զեզեռնն զայն նմա գրեսցես : Ամին իրի , Կ . Կեսար , եղձ լինիմ , զի գիցես 'ի մտի թէ գաստաստան քո այսօր՝ կամ մեծաւ անարգանօք ազխողորմ կործանման հասուցանելոց է թագաւորացդ , կամ փրկութեամբ հանդերձ՝ բարեփառ համբաւ անարատութեան : Ցորոց միուժն փափաքել՝ նոցա [34] անողորմութեանն է , զմիւսն պահպանել՝ քում զթութեանդ :

---

ՏԵՂԵԿՈՒԹԻՒՆՔ ԻՆՉ

# Ի ՃԱՌՆ ԴԻՈՏԱՐԱՅ ԱՐՔԱՅԻ

Թիւ. 1. Զի միայն եղեալ 'ի վերայ Դիոտարայ՝ 'ի վտանգ կենացն Կեսարու ակնարկէր, որպէս տեսցի առորեւ. ուստի ասէ, անիրաւ լինէր՝ եթէ զայլս իմիքէ էր խնդիր. բայց ուր զքումն վտանգէն խցեն բանք, անտավոր արդարեւ՝ այլ ոչ անօրէն ինչ է համարելի փուրիշ զանձնէ թագաւորէ :

2. Այս է կատարոյր ընդդէմ հաւուն ամբարձեալ. մուտն՝ Փիդիպպոս ծառայ ընդդէմ տեառնն :

3. Իմա զատ մի այնպիսի՝ յորում զվտանգէ նորին խնդրեան Կեսարու են բանք, և այն՝ առաջի նորա : Առանց իմաստութեան նորա մեծի, կասկածելի էր՝ տասւել դատախազին անսայլ նմա :

4. Ակնարկել թուի 'ի յաղթանակն՝ զոր տարաւ Կեսարուն ընդունադանայն 'ի խորհրդարանի անդ, ներումն ընդունելով 'ի Կեսարէ և ազատութիւն Մ. Մարկելլոսի, և զնոյն յուշ արկանել Կեսարու :

5. Զի և ինքն Կեսար՝ հզօր ճարտարախօս էր, զբազում խնդրոց և դատաստանաց ատենաբանեալ :

6. Թողեալ զյիշատակութիւն ընդ Պոմպէոսի լինելոյն Դիոտարայ, մեղմական բանիւք զգեկիլ նորա ասէ 'ի փողուն Հայոց և 'ի մասնէն Գաղատիոյ, զի մի ուժգնագոյն կէրք 'ի Դիոտար իմասցին, և անտի՝ գաւոյ ինչ ակնկալութիւն :

7. Զի տեսն գրեալ առ նա. « Անարժան է, զի և ես քո բարեկամ եղեալ եմ. առ իմ՞ առ Պոմպէոս անցանէիցես. այլ նկրեալ քեզ, եթէ.

յանուն աւագանւոյն յարեցար ։ Ցդեա-զօրս առ Պոմպէոս , ասացեալ զորդիդ · դու միայն 'ի չքմեղինս լիցիս առ ծերութեանդ ։ »

8. Լ · Դոմետիոսի , Գ · Սկիպիոնի , Մ · Բիբուլոսի , Մ · Կատոնի , և այլոց՝ յորոց զամենս ասացի յայս , զկէսս ատելութիւն Կեսարու և անձնական ոխութիւնք դրդէին 'ի մարտ ։

9. Մեծագոյն շուք իմա զզուարթն Կեսարու՝ յոր փեսայացուցեալ էր զնա , վասն բազմադիմի առաքինութեանցն զնա ընտրեալ իւր ար-ժանի ։

10. Իմա զյուս նորոգելոյ զպատերազմն , որպէս խորհէրն Պոմ-պէոս , որում ոչ համեմատ և ոչ կատարած ինչ երևէր ։

11. Որոյ բդեշխ լեալ՝ և էր 'ի Կեսարու կողմանէն յայնմ ազգային մեծի հերձուածի ։

12. Արքայի Պոնտոսի , որդւոյն Միհրդատայ , որոյ 'ի ժամանակի քաղաքական պատերազմին հռոմայեցւոց յափշտակեալ էր զՀայս ։

13. Օրինակք ինչ ունին ատա—նել զէա—լեկոյն ։

14. Առ Փիլիպպոս հայլին այս դէմք բանին ։

15. Ցայտ է թէ զպատրաստեալ ընծայսն Դիոտարայ ։

16. Այս դէմքն առ Կեսար դառնան ։

17. Ոմանք կամին ընթեռնուլ Անտիոքոս . բայց գրչագիրք ամե-նայն ունին Ատտալոս , զոր և հին մեկնիչք հաստատեն . զի և բարե-կամութեանն նշանակ եթող , մինչև թագաւորութեանն ժառանգ կա-ցուցանել զժողովուրդն հռոմայեցւոց . և առ Սկիպիոն , 'ի կուսէն Նումանտիոյ , ոչ միայն նպաստ եղև 'ի կարևոր դէպսն , այլ և զպար-գևս ծանրագինս յղեաց , զորս և գոհութեամբ ընկալաւ նա ։ Զդիո-տարայ առատութիւնն առ Կեսար՝ համեմատէ ընդ Ատտալեայն առ Ափրիկեցին ։

18. Կամ զի նողկանս ինչ զգայր , կամ զծանրութիւն առհալ կե-րակրոցն թափել՝ զի մի՛ վնասեսցի ։

19. Զի ծառայից կամ ստրկաց՝ չէր օրէն 'ի զինուորութիւն մտա-նել , թող թէ 'ի վաշտ հեծելազօրու , իբրև անարգաց ոմանց եղելոց ։

20. Զի Կեսարու յաղթեալ ալեքսանդրեան մարտին , դարձ ընդ Գաղատիա արարեալ , օթեալ առ Դիոտարայ , անտի ընդդէմ Փառ-նակայ խաղաց , հրամայեալ և նմա աճնուլ զօլ զիւր զունդսն և զայ-րուձին ։ Այս այն պատերազմ է՝ զորոյ յաղթութիւնն գրեաց Կե-սար 'ի Հռոմ երիւք բայիւք , Եկի , տեսի , յաղթեցի ։

21. Զոր յետ պարտութեանն Փառնակայ եառ Կեսար ընդ Յու-բայայ նումիդացւոց արքայի և ընդ Սկիպիոնի և Կատոնի , որ տուեալ բանակօք ունէին զԱփրիկէ . և զոյցք եղին յանկարծակի , Կեսարու պաշարեալ յամբի ուրեք և սատակեալ ամենայն բանակաւն ։

22. Որպէս Դոմետիոս , որում բարեկամն էր Դիոտար ։ Յոյն և լատին օրքն անյայտ են թէ որոց քերթողաց են ։

23. Զի ոչ անարգ ինչ էր առ Հինան երկրագործն և անասնաբոյծ, և օրինակք բազում են առ արտաքինսն, ոչ յաւագ ևեթ որերոյ, այլ և յարքայից, զոր օրինակ Հերոն, Փիլոմետոր, Ատտալոս, Արքելաոս, Քսենոփոն, Փիւնիկն Մագոն, Կատոնն երէց՝ որոյ կայ և մատեանն:

24. Այս է Կաստորը, թոռնն և քոռն Դէյոտարայ:

25. Զի ձեռնթափ լինիցի խաբէ զիս ամենեքին 'ի շահու ընդելոյ անուռի յուսոյ պատերազմին այնորիկ: Զի որ յառաջ քան զփարսաղեան կռիւն՝ խաղաղութեան թելադիր լինէր Պոմպէոսի և զզէնսն մերկանալոյ, յետ այնորիկ՝ ոչ միայն մերկանալ, այլ և բացէ 'ի բաց թօթափել սպառ այլոց խրատ:

26. Գերդաստանիկք որ ընդ մեզ 'ի նմին սան յարկակից են:

27. Առ գերապանծն Դէյոտարայ՝ յորոց օգտեալ էր զնա Կաստորը:

28. Մի էր սա 'ի գերապանծացն Դէյոտարայ, այր գաղապատցի յէշխանութենէ նորա, որում և երկու ընկերքն էին՝ Հիերաս և Անտիգոնոս:

29. Կային 'ի Կապիտոլին գրօշեալք եօթանեցունց թագաւորացն, ընդ որս և Լ. Բրուտոսին՝ սուսեր 'ի ձեռին: Ի մէջի նոցա կանգնեցաւ և Կեսարուն, ընդ որ կարի պչարեցաւ որեարն, զփառամոլութիւն նորա 'ի բանակալութիւն յայտ յանդիման հատանել համարելով. զոր և 'ի բերանոյ դատախազին յառաջ բերէ Կիկերոն:

30. Հենգնօրէն առջիր զոտանելը, զոր մարէ երբեմն լատին լեզու, և այլուր ևս ինքն իսկ Կիկերոն, փոխանակ նոցա՝ որ դատարկապորտ և ընդմայրայած գեղերէին յատեանին 'ի Հռոմ, և զոյգս և համբաւս սուտս և չաւասարելիս ոփռէին ընդ խաղ և առ 'ի ծաղր:

31. Ուր կանխաւ իսկ կանգնեալ կայր գրօշեալն Կեսարու; և ընդելեալ էին աչք ժողովրդեանն:

32. Ի Տարրակոնէ քաղաքէ Սպանիոյ, ուր գտանէր յայնժամ Կեսար:

33. Երկոքին թագաւորքն են Դէյոտար և որդին իւր: Հայրն միայն թուի ամբաստանեալ, կամ զի որդին հաճոյագոյն էր յաչս Կեսարու. և այսու հնարի յաղորմէ և 'ի գութ ածել 'ի վերայ երկոցունցն:

34. Անողորմութեան տոռնացն դատախազէց: — Բազմաքանդակ ճառիւս ոչինչ աւելի շահեալ առ Կիկերոնի 'ի խաւսութենէն Կեսարու, բայց միայն՝ զի ոչ պատուհասեաց զդատափետեալն, և զկորձմ ևեթ Գաղատիոյ և զանուն թագաւորի եթող 'ի նա:

---

# ԿԻԿԵՐՈՎՆԻ

## ՃԱՌ ԵՐԿՐՈՐԴ ՓԻԼԻՊՊԵԱՆ

## ԸՆԴԴԷՄ ՄԱՐԿՈՍԻ ԱՆՏՈՆԻՈՍԻ

# ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ

Հայրենասէրն Նիկերոփէ՝ մի յականաւորաց ատենի աւագանւոյն Հռովմայ, այր լաւ, վաստակօք և ամեօք պայծառացեալ, և նախանձայոյզ ազատութեան՝ խաղաղութեան և հասարակաց բարեաց, տեսեալ՝ զի թէպէտ և ուսերահար ազանձնամբն Կայսերի Յուլիոսի Կեսարու ազատեցաւ աշխարհն 'ի բռնաւորէ, կամ որ նոյն էր բռնացօղ՝ 'ի Թագաւորէ, այլ ոչ 'ի բռնաւորութենէ կամ 'ի Թագաւորութենէ, որպէս ինքն իսկ ասէր և գրէր, նմին իրի և ցանդ հոգայր և կասկածէր, մանաւանդ զՄարկոսէ Անտոնիոսէ՝ զօրաւոր ոքանեկէ նորին, որոյ գնացք անօրէնք և ապիրատք էին, և ընթացիցն դէմք՝ դէպ ուղիղ 'ի յաջորդութիւն նորա, և 'ի չար եւս բռնակալութիւն քան անբարի որոյն իւրում: Թէպէտ և ձանայրնա միգմեա խորհրդովք խորաման-գութեան թաքուցանել զմիտս իւր, բայց խորագէտն Նիկերոփէ՝ հանգերձ հաւատարմօքն և մտերմօք՝ հասեալ ըմբռնեալ էր զգաղտնիս կնճռան նորա, և արդար նախանձուն յայտնեալ եւ զորտաւնջ իւր յառաջին աւուրս ինչ յետ սպանմանն Կեսարու, և տարագէմ գնացեալ՝ 'ի յունաստան պանդխտել մինչև անցցէ մրրիկն. բայց խաբեալ 'ի յայս մասին՝ դարձաւ անդրէն: Անգուստ և Անտոնիոս, խելամուտ լեալ 'ի յայս և դաղտ քրթմնջանաց նորա, և ծանուցեալ զնա ոսոխ՝ ամբարտաւան դահճապետութեան իւրում, մերկացաւ զմթերեալ ծածուկ ոխոն, եւ տուեալ՝ կոչել պատգամ առ նա յղելով յատենէ աւագանւոյն խորախոր և աներկիւղ ատեանախօսք, մինչև անձամբ երթալոյ և քանդելոյ զտունն նորա, զի և բդեշխ իսկ էր: Ոչ չոգաւ Նիկերոփէ, և 'ի ձեռն բարեկամի պատճառեցաւ առ նմա՝ խանդ յուղղոյ լինել և անհանգիստ, զի և այն ինչ դարձեալ եկեալ էր 'ի քաղաքն յառաւել բարեաց, և 'ի դերև ելեալ. բայց 'ի ներքոյ՝ վասն զի Անտոնի կամք

էին յայնմ ժողովի պաղատանօք հրամայել և սահմանել վասն Կեսարու աստուածարելոյ : Ի վաղիւ անդր՝ յատենի անդ ուր չէր Անտոնիոս, գնաց խօսեցաւ Կիկերոն զառաջին փիլիպպեանն իւր, որով ծանոյց մեղմօրէն զխաղաղասիրութիւն իւր և զատելութիւն բռնաւորութեան, բողոքեաց զերեկի անիրաւութենէն Անտոնի յանձն իւր, յանդիմանեաց զինքնահրաման գործս նորա, և զառապատ կասկածանաց հանդերձեալ նենգութեանց նորա փեռեկեալ, 'ի վեր եհան զերկնեալն 'ի սրտին նենգ ընդդէմ ազատութեան. և կոչեաց զբանն 'ի խրատ առ նա և առ միւս բդեշխն Դոլաբելլա, թէ զինչ ճանապարհ իցէ ճշմարիտ փառաց : Այդ եղև Անտոնի այս ատենախօսութիւն կիկերոնեան. որոյ 'ի մեծ սրտմտութիւն բարկութեան բրդեալ՝ յայս յանդիման հրապարակագոյժ ասէր զթշնամութիւն ընդ Կիկերոնի, և կէս եդեալ՝ հրաման առ նա առաքեաց՝ գալ յատեան ատագանեալն : Բայց նորա 'ի բարեկամաց խրատեալ, և խիթացեալ ևս յանձին վտանգէ՝ ոչ կամեցաւ անսալ. և 'ի ձեռն մտերմաց զեկոյց՝ զի թէ և կամեցցի, չէ հնար գալ նմա յատեան : Ի ժամանել ժամանակեալ աւուրն երթեալ Անտոնի յատեանն անհնարին զազանութեամբ, խօսեցաւ ճառ մի՝ բազմօրեայ երկնեալ մտածութեամբ, սաստիկ կշտամբողական, թշնամանալից զրպարտութեամբք ընդդէմ Կիկերոնի, թափեալ զամենայն մաղձ դառնութեան իւրոյ : Կիկերոնի, յայնժամ ամաց վաթսուն և երից, ազդասէր նախանձու և իւրով իսկ արդար սրտմտութեամբ, և նախնեացն արժանի արիութեամբ ընդդէմ ամենազօր բռնաւորին և վէս ոսոխին, գրեաց զճառս զայս՝ երկրորդ 'ի Փիլիպպեանսն իւր, որ մի է 'ի նշանաւոր ճարտարխօսութեանց նորա, մինչև Յուբենալի աստուածային զսա յորջորջել. յորում թէպէտ և ձևանայ իբրև առ նա խօսել յատենին, բայց չէ խօսեալ, այլ գրով միայն հանեալ է : Դատախազք և զրպարտ չարախօսութիւնք Անտոնի ըստ իմաստից սեաւնին բաւականութեամբ 'ի պատասխանեացն : Իսկ ճառքն իւր չորեքտասանք ընդդէմ Անտոնիոսի՝ Փիլիպպեանք անուանեալ են ըստ նմանութեան Դիմոսթենեսի, որոյ Փիլիպպեանս յորջորջեալ է զչորեսին հզօր և կորովի խօսս իւր ընդդէմ Փիլիպպեայ մակեդոնացւոյ. զի որպէս նա խրախուսէր զաթենացիս ընդդէմ այնր արքայի՝ ոսոխին իւրեանց, նոյնպէս սա վառէ զաւագանին և զժողովուրդն հռովմէական՝ ընդդէմ Անտոնի թշնամւոյ վայրագի ազատութեան իւրեանց : Եւ այս իսկ է պատճառք անուանակոչութեանդ, և ոչ այլ ինչ :

# ԿԻԿԵՐՈՎՆԻ

## ՃԱՌ ԵՐԿՐՈՐԴ ՓԻԼԻՊՊԵԱՆ

## ԸՆԴԴԷՄ ՄԱՐԿՈՍԻ ԱՆՏՈՆԻՈՍԻ

Որո՞վ բախտիւ լինել ասացից, հայրք ատենականք, զի 'ի քսաներորդին ամաս յայսմանիկ[1] չեղեւ ոք ընկերհաշտութեան թշնամի, որոյ չեղեւ 'ի նմին ժամանակի և ընդ իս 'ի մարտ պատրաստեալ։ Չէ ինձ ինչ հարկ յանուանել զոք նշանակել, զուք ձեզէն 'ի ձեր յուշ ածէք. Նոքա՝ առաւել քան զոր գոյր ինձ ցանկալ՝ ետուն ինձ վրէժս[2]։ Ընդ քեզ զարմանամ, Անտոնիէ, զի որոց զգործոցն նմանող եղեր, 'ի նոցա կատարածէն ոչ ինչ զարհուրիս։ Ընդ այս ոչ այնչափ զարմանայի յայլս. ոչ ոք 'ի նոցանէ ամբարձաւ ինձ ինքնակամ թշնամի. ամենեցուն՝ ընկերհաշտութեան աղագաւ՝ յինէն զայրացեալ։ Դու, և ոչ բանիւ ինչ իւիք զիծեալ, որպէս զի յանդգնագոյն քան զԼ. Կատիլինաս, մոլեգին քան զՊ. Կղոդիոս երևեցիր, ինքնաձեռն յարձակեցար յիս թշնամանօք. կարծե զի զկռուեալ ընդ իս՝ զգովութիւն քեզ լինելոց առ քաղաքացիս համարեցար։ Զի՞նչ վարկայց. արհամարհե՞լ զիս. ոչ նշմարեմ՝ ոչ 'ի կեանս իմ, ոչ 'ի շնորհս, ոչ 'ի գործս պաշտամանց և ոչ 'ի չափաւորու-

թեանս հանճարոյ, թէ զի՞նչ արդեօք անգոսնել կարիցէ Անտոնիոս ։ Արդեօք 'ի կարծիս ինչ եղև, թէ յատենի աւագանւոյս՝ դիւրին իցէ նմա բամբասել զիս. բայց ատեանս այս՝ քաղաքացւոց բազմաց հոյակապից զբարւոք տեսչութեան պետութեանս եւ վկայութիւն, իսկ ինձ միայնոյ՝ զփրկութեանն ։ Արդեօք ոգորել ընդ իս կամեցաւ 'ի պայքար բանից. այլ այդ շնորհք է առ իս. զի զի՞նչ յորդագոյն, զի՞նչ պարարտագոյն՝ քան ինձ փոխանակ անձին և ընդդէմ Անտոնիոսի ճառ արկանել ։ Այլ այս իսկ է անշուշտ. ոչ համարեցաւ հաւատալի լինել առ իւր նմանիսն՝ թէ թշնամի հայրենեաց իցէ, եթէ չլինիցի ինձ ոսոխ ։ Առ որ յառաջ քան զայլոց իրաց տալոյ պատասխանի, ընդ բարեկամութենէն ապախտ առնելոյ՝ որով զիսն բաստիս, և յաչս իմ ոճիր յանցանք են, ասացից սակաւուք ։

Բողոք կալաւ զինէն, թէ վնաս գործեալ իցէ իմ իրաց իւրոց [3], չգիտեմ երբ ։ Մինթէ չէ՞ր ինձ պարտ ընդդէմ եղանել օտարի ումեք՝ փոխանակ ընտանւոյս և բարեկամիս. ո՞չ հակառակ յառնել պաշտպանութեան՝ ոչ առաքինութեան յուսով գանելոյ, այլ 'ի ծաղկէ տիոցն. ո՞չ ախոյեան կալ ընդդէմ անիրաւութեան, զոր սա [4] անօրէն բարեխօսին բարերարութեամբ ժառանգեաց, ոչ դատաստանական իրաւամբք ։ Այլ զայս յայն սակս կարծեմ յիշատակեալ առ 'ի քէն, զի արդոյ ընծայեցուսցես զանձն քո խառնաղանճին. քանզի ամենեքեան գիտեն զքեզ փեսայ եղեալ առն ստրկի՝ այն ինչ ազատելոյ, և զորդիս քո՝ թոռունս Կ. Փադիոսի՝ 'ի ստրկութենէ յազատութիւն ելելոյ ։ Այլ քո զանձն ինձ 'ի դաստիարակութիւն աւանդեալ էր, — քանզի այդպէս իսկ ասացեր, — և էր 'ի յարկս իմ յաճախեալ ։ Եթէ զայդ արարեալ էր քո, այո՛ օն և օն՝ լաւ ևս համբաւոյդ, լաւ ևս պարկեշտութեանդ տարեալ լինէր քո հոգ խնամոյ ։ Բայց ոչ արարեր, և ո՛չ եթէ ցանկայիր ևս՝ ներէր քեզ Կ. Կուրիոն [5] առնել զայդ ։ Ասացեր՝ շնորհեալ

քո լինել զհաւահմայութեան խնդրուած [6]: Ո՛վ անհաւատալի յանդգնութեանն, ով հռչակելի լրբութեանն: Զի յորժամ զիս՝ 'ի բոլոր դատակարգէն ցանկացեալ հաւահմայ ընտրեցին Կն. Պոմպէոս և Կ. Հորտենսիոս, — քանզի և չէր օրէն յոլովագունից ընտրել, — ոչ զպարտսդ զոր քեզ հատուցանել [7], և ոչ այլում իւիք անպատրաս քեզ արձակիլ ակն ունէիր, բայց միայն կործանմամբ ընկերհաշտութեան: Էր՞ր ինչ հնար խնդրել քեզ յայնժամ զհաւահմայութիւն, մինչդեռ չէր Կուրիոն յԻտալիա. կամ յորժամ եղերդ, զքեզ մի ևեթ [8] առանց Կուրիոնի կարօղ էիր շահել. որոյ և ծառայք ևս դատապարտեցան 'ի բռնութիւն՝ վասն կարի լինի զքէն փոյթեռանդն գտանելոյ:

Այլ յերախտիս քո վայելեցի: Ցո՞րս. Թէպէտ և զոր յիշատակեսդ՝ հանապազ խոստովան եղէ. առաւել ընտրեալ շնորհապարտ քեզ զանձն դաւանել, քան անմտաբանագունի ումեք՝ ապերախտութեան տալ կարծիս: Այլ աղէ յո՞ր երախտիսդ: Զի 'ի Բրունդիսիոն ո՞չ սպանէր զիս. զոր յաղթողին [9], — որոյ որպէս դու ասէս սովոր էիր պարծել՝ յիւրոց անտի աւազակաց քեզ տուեալ էր իշխանութիւն, — նորա ինքնին կամեցեալ էր ապրեցուցանել զիս, և հրամայեալ նմա յԻտալիա երթալ, դու զիս սպանանէիր: Գրեսցիր թէ կարող էիր: Զի՞նչ այլ իցեն, հայրք ատենակալք, աւազակացն երախտիք, բայց զի կարեն յիշատակել, թէ զորս շնորհեցին այնոցիկ յորոց ոչն հատին: Որ եթէ երախտիք ինչ էին, սպանօղք կեցուցչին իւրեանց [10], զորս դու ինքնին արս փառաւորս սովոր ես կոչել, ոչ երբեք այնմ փառաց հասանէին: Աղէ զի՞նչ երախտիք իցեն, զի յոճիր եղերանէ անտի պահեցեր զձեռսդ. յորում ոչ այնչափ քաղցր թուեցաւ ինձ չմեռանելս 'ի քէն, որչափ եղկելի՝ կարելդ քո անպատուհաս գործել զայն: Այլ դիցուք թէ երախտիք իցեն, զի մեծ ինչ քան զայն չեղև գտանել յաւազակէ. յի՞մ իմիք ասիցես զիս ապերախտաւոր: Չէ՞ր պարտ արդեօք զմեռելութենէ ընկերհաշտու-

թեան բողոքս բառնալ, զի մի առ քեզ ապաշնորհ երեւեցիմ: Նա զի և յայն բողոքս, թշուառական աղաղէին և ողբային, բայց կարեւոր ինձ յաշտնեմանիս յայսմ, յոր կացոյց զիս ուսադանին և ժողովուրդն հռովմէական, զի՞նչ ինչ առաջի եմ նախատանօք, զի՞նչ ոչ չափով և համով, զի՞նչ ոչ սիրողաբար: Այլ զի՞նչ ժուժկալութիւն եղև այն, 'ի տրտնջելն զՄարկոսէ Անտոնիոսէ՝ զգուշանալ 'ի թշնամանաց. մանաւանդ ուր քո ցրուեալ ցնդեալ էր և զնջխարեալ մնացորդս ընկերհաշտութեանն. ուր 'ի տան քում յանարգ վաճառաշահութիւն հանեալ էր ամենայն ինչ. ուր զքէն և 'ի քէն օրէնս իմն խոստովան լինէիր եդեալս՝ որոց չէր երբեք հրապարակեալ. ուր հաւահմայք՝ զհմայս, բռնելով զգեմադարձութիւն բարձեր 'ի միջոյ[11]. ուր դժնէաբար ածեալ խռնեալ էիր զքև սպառազէնս. ուր զամենայն քարուականս 'ի պարկեշտ անդր ապարանսն[12] ժողովէիր հանապազօր, 'ի գինիս և 'ի շուայտութիւնս ողողեալ: Սակայն ես, զոր. իբրև թէ ընդ Մ. Կրասոսի անկեալ էր ինձ պայքար, — ընդ որում բազումք իսկ և մեծամեծք անկան, — և ոչ թէ ընդ 'ի վեր եկելոյ վատաշուէր սուսերամարտի, վասն ընկերհաշտութեան ծանուցս բողոքեալ՝ զմարդոյն ինչ ոչ առաջի: Այլ արդ այսօր կատարեցից, զի 'ի միտ առցէ՝ քանիօն երախտիս յինէն ընկալեալ իցէ յայնժամ:

Այլ նա և զնամակն, զոր յինէն գրեալ առ ինքն ասէր, ընթերցաւ. մարդ՝ և մարդկութեան անհաղորդ, և աշխարհօրէն կենցաղի անհմուտ: Զի՞ ո՛վ ոք երբեք՝ որ խուն ինչ ևեթ լուացն սովորութեան տեղեակ էր, զառ ինքն թուղթս բարեկամին, 'ի մէջ անկանել զժկամակութեան իրիք, 'ի դուրս եհան և կարդաց հրապարակաւ: Զի՞նչ այլ իցէ բառնալ 'ի կենաց զկենաց կցորդութիւն, բառնալ զհեռաւոր բարեկամացն ընդ միմեանս զրուցատրութիւն: Քանի քանի խաղք և կատակք սովոր են լինել 'ի թուղթս, որ եթէ յառաջ բերցին՝ անպատեհ երեւին. և քանի ծանր

և զգօն լինիք, այլ ոչ երբեք համբաւելիք: Տացի այդ քում անմարդութեանդ. տեսցէք արդ զանհաւատալի յիմարութիւնն: Զի՞նչ ունիցիս ինձ ընդդէմ դնել, այլոց վարդապետաց, որպէս Թուխդ Մուստեղայի Տամիսեայ և Տիրոնիդոսումի-անայ, որք քանզի սուսերաւոր արձանացեալ կան 'ի ժամուս յանդիման աւազանայս, և ես ինքն վարդապետն զքեզ համարեցայց, եթէ ցուցանիցես` զիարդ պաշտպանել ունիցիս նոցա 'ի սրբկայս: Այլ արդ հաւատ ուրեմն զի՞նչ ունիցիս ընդդէմ բերել, եթէ յուրասա կացից` թէ չէք իմ բնաւ երբէք զթուղթն զայն տարաբերեալ առ քեզ. որո՞վ մեկայիւ զիս ըմբերանիցես. արդեօք ձեռնագրո՞վ, յորում ունիս զգիտութիւն շահաբեր: Զիա՞րդ հնարեցիս. քանզի ձեռն դալրի է: Նախանձիմ ընդ վարժապետդ, որ այնչափ վարձուքն, զոր ընդ հուալ ցուցից, ուսուցեալ է քեզ չգիտել և ոչ ինչ: Զի զի՞նչ սասուել անձահ, չասեմ ճարտարախօսի, այլ մարդոյ, քան զայն ինչ ընդդէմ հանել տախին, զոր եթէ բանիւ ըոկով ժխտեսցէ, ոչ ես կարասցէ յառաջ խաղալ ատեանեանն: Այլ ես ոչ յուրասա ընկեմ. և զքեզ յայսմ իսկ ոչ անմարդի միայն յանդիմանեմ, այլ և անմիտ: Զի զի՞նչ բան կայցէ 'ի թղթի անդ` ոչ մարդասիրութեամբ, պաճուճիւք և լաւակամութեամբ լի: Քո է ամենայն մեղադրութիւն, զի 'ի նամակի անդ յայնմիկ ոչ ատկրատաս ունիմ զքեզ, զի երբեք առ քաղաքացի ոք գրեմ, երբեք առ լաւ այր, ոչ երբեք առ անպարկեշտ և յեղուզակ: Այլ ես զքո նամակդ, թէպէտ և 'ի քէն դրդեալ կարող էի, սակայն ոչ հանից յերևան. յորում խնդրես զի թոյլ լեցի քեզ յինէն` դարձուցանել զոք [13] յաքսորանաց, և երդնուս` չառնել զայն արտաքոյ իմոյ կամացս. և առնուս զխնդրելիդ: Զի զի՞ էր ինձ դիմադրաւել յանդգնութեանդ քում, զոր ոչ իշխանութիւն աւագամեծար այսր տանէր, ոչ համեմատական ժողովրդեանն դատաստան, և ոչ օրէնք ինչ կարէին նահանջել: Այլ արդ` զի՞նչ էր զոր յինէնս ժտէիր, ուր վասն որոյ ժտէիրն` դարձեալ էր նա` Կեսա-

րու օրինօքն ։ Այլ յինէն կամեցաւ լինել զշնորհսն, յորում և ոչ իւր ինչ գոյր լինել 'ի կալ օրինացն ։

Այլ քանզի, Հարք ատենակալք, կայ ինձ տալ ինչ զինէն ընդդէմ Մ. Անտոնեայ բարբառում ինչ, զմին' 'ի ձէնջ հայցեմ, զի 'ի խօսելս զինէն' քաղցրութեամբ մատուցջիք ունկն, զմիւսն' ես արարից, զի զընդդէմ նմին բանիս մտադիւրութեամբ լուիջիք ։ Համայն և զայս ես աղաչեմ. զի եթէ զիմ յամենայն 'ի կեանս և 'ի խօսս ճանաչէք զհամեստութիւն և զպարկեշտութիւն, մի զիս այսօր' 'ի պատասխանելս սմա ըստ գրգռելոյն իւրոյ, 'ի մոռացօնս ինչ անձինս անկեալ համարիջիք ։ Ոչ վարեցայց ընդ նմա իբրև ընդ բդեշխի, և ոչ նա ընդ իս իբրև ընդ երբեմն բդեշխի ։ Թէպէտ և նա չիցէ ամենևին բդեշխ, թէպէտ վարուքն, թէպէտ տեսչութեամբ ընկերհաշտութեանս, և թէպէտ 'ի բաւոյ քարոցն, յիս սակայն' առանց ընդ բանս ինչ ածելոյ' բդեշխութեան կայ պատիւ ։ Արդ, առ 'ի վերայ կալոյ ձեզ' թէ որպիսի՛ բդեշխս զանձն իւր ընծայեցուցանիցէ, 'ի բիծ առնէ զիմ բդեշխութիւնս, որ յանուան' իմ, իսկ արդեամբք' ձեր էր բդեշխութիւն, Հարք ատենակալք ։ Զի զի՞նչ կարգեցի, զի՞նչ կատարեցի, զի՞նչ գործեցի, որ ոչ ըստ խորհրդոյ կամաց և իշխանութեան և մտաց այսր ատենի ։ Զայսուիկ, դու այր իմաստուն, ոչ ճռամաբան միայն, առ նոսա' որոց հանճարոյն և իմաստութեամբ վճարեալ են, իշխեցեր անգոսնել ։ Այլ ո՞ գտաւ' որ զիմ բդեշխութիւնս նախատեաց, բաց 'ի Պ. Կղոդիոսէ, որոյ ճակատագիրն և քեզ մնայ, որպէս Կ. Կուրիոնի. զի 'ի տանդ է այն' [14] որ երկոցուն նոցա օրհասաբեր եղև ։ Բդեշխութիւն իմ չէ հաճոյ Մ. Անտոնիոսի. բայց հաճոյ եղև Պ. Սերուիլիոսի, — զի զնա նախ անուանեցից 'ի բդեշխութեամբ պատուեցելոց ժամանակին, որ և 'ի մօտոյ աւուրս վախճանեցաւ. — հաճոյ եղև Կ. Լուտատեայ Կատուլոսի, որոյ կենդանի կայ մեզ իշխանութիւն յընկերհաշտութեանս. հաճոյ եղև երկոցունց Լուկուլլեանցն, Մ. Կրասոսի, Կ. Հորտենսեայ, Կ. Կու-

րիոնի, Մ. Լեպիդոսի, Կ. Պիսոնի, Մ. Գլաբրիոնի, Լ. Վոլկատեայ, Կ. Փիգուլոսի, Դ. Սիլանոսի, Լ. Մուրենայ, որ յայնժամ 'ի բդեշխութիւն որոշեալք էին. և որ ինչ 'ի բդեշխութիւն կարգելոցն, նոյն և Մ. Կատոնի [15] գտաւ հաճոյական, որ ելանելովն 'ի կենաց աստի՝ բազում ինչ հոգացաւ, այլ և զայն եա՝ զի չետես զքեզ բդեաշխ: Բայց ընդ բդեշխութիւն իմ հաճեալ հաւանեցաւ Կն. Պոմպէոս, որ 'ի մեկնելն յԱսորւոց, իսկ և իսկ ընդ տեսանելն զիս՝ գիրկս արկեալ և գոհութիւն մատուցեալ, յիմմէ շնորհէ ասաց արժանի լինել տեսոյ հայրենի աշխարհին: Իսկ զի՞ մի մի թուեցեմ զամենեսին. ակմբահոյլ ատենի աւագանւոյն այնպէս հաճոյ եղև, զի չիք ոք՝ որ չխոստովանէր ինձ շնորհս իբրև հօր, որ ոչ երախտապարտ ինձ հաշուէր զկեանս իւր, զորդիս, զստացուածս, զընկերհաշտութիւնն:

Այլ քանզի յորոց անուանեցի յայնչափ և յայնպիսի արանց որբացաւ ընկերհաշտութիւնն, եկեսցուք առ կենդանիսն, որ երկուք եւեթ մնացին 'ի թուոյ բդեշխութեամբ պատուեցելոցն: Լ. Կոտտաս, այր մեծ հանճարով, մեծ և իմաստութեամբ, ուխտս և պաղատանս սահմանեաց ձօնս և պերճ բանիւ վասն իրացն գործեցելոց՝ զորս դուն խծբծես. և նմա, նոքին իսկ ինքեանք՝ զորս այժմդ յիշեցի, որք բդեշխութեամբ պատուեալք, և ատեան աւագանւոյն համօրէն, հաճեալ հաւանեցան. պատիւ, որ անդստին 'ի շինութենէ հետէ քաղաքիս՝ ոչ ումեք յառաջ քան զիս պատմուճանաւորի երբեք մատուցաւ: Լուկիոս Կեսար՝ քեռին քո, որո՜վ բանիւ, որո՜վ արութեամբ, որո՜վ զգօնութեամբ մերկացաւ զմիտսն ընդդէմ քեռայնն իւրոյ [16], յօրայքն քում: Ուր զնա քեզ արժան էր առաջնորդ և գաստիարակ ունել ամենայն խորհրդոց և բովանդակ կենաց, հօրուէն քում ընտրեցեր նախանձաւոր լինել քան քեռւոյդ: Նորա խորհրդովք վարեցայ ստորասերմն ես 'ի բդեշխութեանս. դու, նորա քեռորդի, զի՞նչ երբեք հարցեր ցնա զընկերհաշ-

տութեննէս։ Իսկ ընդ ո՞յս խորհեցի դա խորհուրդ։ Ո՛վ դիք անմահք, ընդ այնոսիկ՝ զորոց և զաւուրս ծննդոցն հասանէ մեզ լսել։ Այսօր չեկն չէր չերևեցաւ Անտոնիոս։ Ընդէ՞ր։ Տօն ծննդոց խմբէ 'ի պարտէզս։ Ո՞ւմ ումեք։ Զանուանեցից և ոչ զոք։ Հաշուեցարուք՝ մերթ Փորմիոնի ումեմն, մերթ Գնաթոնի, մերթ Բալլիոնի[17]։ Ո՛վ եղեռնաւոր դարշութեան տանն. ո՛վ անտանելի լրբութեան, անզգամութեան և լկտութեանն։ Դու, որում այնքան մերձաւոր էր իշխանն խորհրդական, անհամեմատ քաղաքացին, ո՞չ ինչ խորհիս ընդ նմա զընկերհաշտութենէս. ընդ նոսա խորհիս՝ որոց չիք ինչ, և զդոյս քո վաճառեն։ Ահա արդարև քո բդեշխութիւնդ՝ փրկաւէտ, իմս՝ եղեռնական։

Ա՞յդչափ զամօթ ընդ պատկառանաց մերկացար, զի զայդ իշխեցեր առնել 'ի տաճարի անդ[18], յորում ես 'ի խորհուրդ մատնէի ընդ աւագամեծար ատենին, որ երբեմն ծաղկափթթեալ՝ ընդ ծածս տիեզերաց տայր հրաման. դու և արս ժանտագործս կանգնեցեր անդ սուսերաւորս։ Համարձակեցար ես, — և զի՞նչ իցէ յոր դու ոչ համարձակիցես, — զբլուրն կապիտոլեան յիմում բդեշխութեանս լի և հոծ առնել սպառազէն արբանեկօք։ Կարծեմ բուռն աւագանւոյն ատենէի, զի եղեռնաւոր հրամանքն[19] այնոքիկ յաջողեսցին։ Վա՜հ հիքիդ, թէպէտ չիցեն քեզ այնոքիկ ծանօթ, — զի ոչինչ 'ի բարեաց ծանեար, — թէպէտ և իցեն, որ առ արս այսպիսիս՝ այնչափ ժմերատեալ խօսեցար։ Զի ո՞ր ասպետ հռովմայեցի, ո՞ բաց 'ի քէն՝ պատանի ազնուատոհմ, ո՞ որք յամենայն կարգէ, որ զամ մի զանձն քաղաքացի դիտէր, մինչդեռ աւագամեծար 'ի տաճարի առ էր, չգնաց 'ի կապիտոլեան բլուրն. ո՞ ոչ եմուտ 'ի դիր զինուորութեան. թէպէտ և ոչ դպիրք բաւեցին և ոչ տախտակք՝ բովանդակել զհամար անուանց նոցա։ Զի իբրև արք անօրէնք, քսութեամբ խորհրդակցացն, իբրեանց ձեռնադրօք, զոգչես նշանագրացն ձայնիւք, խոստովան լինէին զատտակմանէ հայրենեաց, թէ միաբանեալ են՝ զքաղաքն

հրոյ և զքաղաքացիս սրոյ տալ ճարակ, զԻտալիա աւար վարել, ընդաջինջ բառնալ զընկերհաստատութիւնն, ո՞ այն ոք էր՝ որ 'ի փրկութիւն հասարակաց ոչ փութայր լինել զօրավիգն. նա զի և աւագանին և ժողովուրդն համաձայնական ունէին յայնժամ առաջնորդ, որպիսի ևեթ գոյր ոք և այժմ, որ ինչ ընդ նոցա՝ նոյն և ընդ քո կառափին եղանէր:

Զմարմին յօրայլին իւրոյ, ասէ, ոչ տուեալ իմ 'ի թագուհի: Բայց զայդ և ոչ Գ. Կուրիոս ասաց երբէք. որում քանզի խրատամբք սոսկ եղէ, ցաւէ՛ ինձ՝ զի դու յամենայն չարութեան մասունս ելեր զանցուցեր զնովաւ: Իսկ զի՞ բնաւ անկաւ 'ի միտս քո՝ յուշ ածել մեզ, զի 'ի սոյն Գ. Լենտուլոսի [20] մնեալ իցես. խիթացա՞ր արդեօք, թէ գուցէ ոչ բաւական համարիցիմք զբնութիւնդ յայդքան ապիրատութիւն՝ առանց յաւելլոյ և կրթութեան: Ո՞յդչափ պատեհ գոյր էիր, մինչև անձամբ ընդ անձին կռուել քեզ 'ի բոլոր ճառին. ոչ միայն բան բանի անճահս բարբառել, այլ և յոյժ հակառակս և զխմամարտս. մինչ զի ոչ այնչափ ընդ իս՝ քան թէ քո ընդ քեզ ոգորել: Զահագին եղեռն հօրուիդ լինէիր խոստովան, իսկ զպատուհասէն՝ բողոք բառնայիր. ապա ուրեմն՝ որ ինչ յիմ հայրի՝ գովեցեր, իսկ որ յաւագանին բովանդակ՝ պարսաւեցեր. քանզի ըմբռնումն չարագործաց՝ ինձ անկ, պատիժ պատուհասին՝ աւագանւոյն էր: Այրն ճոռոմ ոչ իմանայ, թէ որում ոտնխեալ կայ՝ զովլի յիւրմէ, իսկ առ որս բարբառի՝ քամահէին: Եւ ո՞ր այն իցէ՝ չասեմ յանդգնութիւն, զի յանդգնագն սիրէ կոչել, այլ զոր ոչն բնաւ կամի, անմտութիւն՝ որով գլէ զամենեսին, կապիտոլեան բլրոյն յիշատակ առնել, մինչդեռ զաթուակօք մերովք շրջէին զինակիրք. մինչդեռ 'ի տաճարի սաս Միաբանութեան, ո՛վ անմահ դիք, յորում առ ինև բզեչխաւս՝ հասան մճիռքն փրկականք՝ որովք կեամքս ցայսօր, կարգեալ կան արք սուսերաւորք: Բամբասես զաւագանին, բամբասես զասպետացն դասս՝ որ յայնժամ ընդ աւագանւոյն էին միացեալ, բամբասես զկարգս ամենայն,

զամենայն քաղաքացիս, միայն թէ խոստովան լինիցիս, զի զատենիւս այսու՝ ասա յայսմ ժամանակիս Իտուրացիք շուրջ պաշարեալ զարանակալ նստին: Զայսոսիկ դու ոչ առ յանդգնութեան ինչ խիղախեալ բարբառիս, այլ զի զանհնարին իրացն հակառակութիւն ոչ նշմարես. արդարև խակ թափեալ ուղիղ: Զի զի՞նչ անմտագոյն քան զայն կայցէ, զի յորժամ դու ինքն ընդդէմ ընկերհաշտութեան զէն կորստաբեր շարժեցեր, այլում զփրկանութեան յանդիման հա[illegible]անիցես: Բայց է ուրեք՝ զի և կատակաբան լինել կամեցար: Քանի՜ անհամ անշնորհ էր այն, բարերար գիր. յորում և է ինչ քո մեղ. մարթէր քեզ 'ի հռետոր կնոջէդ [21] աղ ինչ անուշիչ ձգել յանձն: Տեղի փոշէն պլէնդ ողձղնաւոր հանդէրձին [22]: Եւ զի՞նչ. միթէ չետո՞ւն յայնժամ տեղի. բայց ապա զինուց քոց տեղի ետ պաճղնաւորն: Եկ արդ. խնդրեսցուք. արդեօք լաւագո՞յն էր, առաջի ազատութեան հռովմէական ժողովրդեանն՝ ամպարշտացն զինուց տալ տեղի, թէ մերոյ ազատութեանս՝ առաջի քոց զինուցդ: Իսկ ըղտանց տաղիցն՝ ոչինչ տաց քեզ պատասխանի. զայս և եթ ասացեալ համառօտս, զի ոչ զայնս, և ոչ այլ ինչ ամենևին ուսեալ է քո զպրութիւն: Իմ ոչ առ ընկերհաշտութիւնն, և ոչ առ բարեկամս երբեք պակասեալ է, բայց և ամենայն ազգի ազգի արձանագրութեանցս վաստակոց պարապմամբք՝ գործ 'ի գլուխ տարեալ, զի աքնութիւնք իմ և մատենագրութիւնք յօգուտ լինիցին պատանեաց, և 'ի պարծանս ինչ հռովմէական անուան: Այլ այսոքիկ ոչ այսր ժամու են, եկեսցուք 'ի մեծամեծան:

Իմով խորհրդով սպանեալ ասացեր զՊ. Կլոդիոս: Զինչ արդեօք համարելոց էին մարդիկ, եթէ յայնժամ էր սպանեալ, յորժամ դու 'ի հրապարակին՝ ակն յանդիման հռովմէական ժողովրդեան՝ սուր հանեալ 'ի նա յարձակեցար. և զգործն վճարեալ լինէիր, եթէ չէր նորա 'ի սանդուղս կրպակի գրոց ընկեցեալ զանձն, և խցեալ զայնս՝ զթափ բանութեանդ խափանեալ: Այլ որ զիս յօժարամիտ ընդ

քեզ եղեալ վկայեմ. հրապուրեալ, և ոչ դու ինքն ասես: Իսկ առ Միլոն՝ և ոչ յորդորամիտ անգամ կարացի լինել. զի չէ ուրուք 'ի կարծիս լեալ գործոյն, նա արդեամբք կատարեաց [23]: Այլ ես հաւանեցուցի զայրն. վասն զի այն իմն հոգի էր Միլոնի՝ որ առանց համոզակեր թովչի չմարթէր օգուտ ինչ ընկերհաշտութեան առնել. բայց ուրախ եղէ: Եւ զի՞նչ. յայնչափ խնդութեան համօրէն քաղաքիս՝ ի՞նձ ուրեմն պարտ էր միայն տրտում լինել: Թէպէտ և զմահուանէն Պ. Կլոդեայ ապաքէն եղև փութախ [24], այլ ոչ յոյժ իմաստնաբար 'ի հարցփորձ մատուցեալ: Զի ուր փութախչն օրինօք սահմանեալ էր, զի՞ ես պիտէր այնուհետև նոր օրինօք խոյզ և խնդիր առնել զմարդասպանէն: Սակայն եղև հարցափորձ: Արդ՝ զոր 'ի զատել իրացն ոչ ոք բամբասեաց յիս, յետ այնչափ ամաց դո՞ւ գտար բամբասել զայն:

Իսկ զոր յանդգնեցար ասել, և զայն՝ բազմաբանութեամբ, թէ իմով առնելով ձեղքեցաւ Պոմպէոս 'ի բարեկամութենէն Կեսարու, վասն որոյ և իմով յանցանօք ծագեցաւ պատերազմն քաղաքական, յայդմ դու ապաքէն ոչ յիրացն բովանդակ, այլ որ ևսն է՝ 'ի ժամանակացն սխալեցար: Ես 'ի բդեշխութեան Մ. Բիբուղոսի ամին նշանաւորի՝ ոչինչ թողի յորոց կարէի գործել և ջանալ, զի մի՛ օտարեցից զՊոմպէոս 'ի միաբանութենէն Կեսարու, յորում Կեսար աջողագոյն գտաւ, զի նա զՊոմպէոս յիւրմէ ընտանութենէն ուծացոյց: Իսկ իբրև Պոմպէոս բնաւ 'ի ձեռս ետ զինքն Կեսարու, զի՞ էր ինձ զուն դնել պատառել զնա 'ի նմանէ. յիմարի էր յուսալ, յորդորել՝ լրբենոյ: Սակայն դէպ եղև երկիցս, զի թելադրեցի ինչ Պոմպէոսի ընդդէմ Կեսարու. զայն թէ կարես՝ պարսաւեսջիր: Մի, զի զհինգեմեանն զօրավարութեան Կեսարու մի՛ առաւելուցու. երկրորդ, զի մի՛ տացէ թոյլ մերձ առնել՝ 'ի համարի [25] զնա ունելոյ 'ի հեռաւորութեան անդ իւրում. յորոց եթէ 'ի մին յերկոցունց յանկուցեալ էի զնա, ոչ երբեք սողա-

կեալք 'ի Թշուառութիւնս յայսոսիկ ։ Իսկ յորժամ զամե-
նայն զզօրութիւնս իւր և զհռովմէական ժողովրդեանն՝ ա-
ւանդեաց Պոմպէոս 'ի Կեսար, և անպայման ուրեմն ակնաւ
'ի միտ առնուլ զոր իմ յոյժ կանխաւ նկատեալ էր և տե-
սեալ, զի անօրէն պատերազմ յառնելոց է 'ի վերայ հայ-
րենի աշխարհիս, նոյն ինքն ես ոչ դադարեցի խաղաղու-
թեան՝ միաբանութեան և հաշտութեան լինել առաջնորդ.
և ծանօթ իսկ է բազմաց բարբառն իմ այն՝ թէ « Երանի
թէ, Կն. Պոմպէոս, մի՛ երբէք 'ի միաբանութիւն գայիր ըն-
կերաբար ընդ Կեսարու, կամ մի՛ երբէք քակէիր. մին պեր-
ճութեանդ քում էր, միւսն իմաստութեանդ ։ » Այս էին
յամենայն ժամ, Մ. Անտոնիէ, և զՊոմպէոսէ և զընկեր-
հաշտութենէն իմ խորհուրդք. որոց եթէ տիրեալ կալեալ
էր, կայր մնայր ընկերհաշտութիւնն, դու քոյին եղեռնու-
թեամբքդ՝ չքաւորութեամբ և կեղտ անուամբ սատակէիր ։

Այլ այսոքիկ հինք. իսկ նոր այն, թէ իմով խորհրդով
իցէ Կեսար սպանեալ ։ Զանգիտեմ, Հարք ատենակալք,
գուցէ՝ որ անօթոյ իրք են՝ զմեղակից ինձ առեալ թուի-
ցիմ զգաստախաղն, որ զիս ոչ իմոյս ևեթ գովութեամբք
դրուատիցէ, այլ և օտարոտիս յիս բառնայցէ ։ Զի ո՞ այն
ոք՝ որոյ ընդ իրագէտս մեծապանծ գործոյն լուեալ իցէ
զիմ անուն. իսկ ո՞յր ուրուք 'ի համարուէ անտի նոցուն
ծածկեցաւ անուն. և զի՞ ծածկել ասիցեմ, նա՛ մանաւանդ
որո՞յ ոչ անդէն առ ժամայն հռչակեցաւ ։ Առաւելց համար-
ձակ, թէ մանաւանդ պարծեցան ևս ոմանք յընկերշակու-
թենէ անտի լինել՝ որ չէին 'ի խորհրդին, քան թէ որ էին՝
զանխլանալ ոք կամեցաւ ։ Նա աւանիկ քանիո՞ն հաւանու-
թեան իցէ, թէ յայնքան բազմութեան, որոց կէսք աննշանք
ոմանք, կէսք երիտասարդք՝ որ ոչ զոք թաքուցանեին, ա-
նուն իմ մնացեալ կայցէ ։ Իսկ եթէ ձեռներէցք յազա-
տութիւն հայրենեաց պիտոյ էին, զԲրուտոսն[98] գրգէի
ես. որոց մին՝ զԼուկիոսի Բրուտոսի պատկերն զօր հանա-
պազ տեսանէր, միւսն և զԱհալայ ։ Այսպիսի նախնեաց

սերունդք՝ միթէ յօտարանց էինչ խնդրելին խորհուրդ, և ոչ յիւրեանցայոցն, և արտաքո՞յ՝ քան տանն իւրն։ Զի՞նչ. Կ. Կասսիոս, ծնունդ ազգատոհմի՝ որ ոչ միայն զտիրապետութիւն, այլ և ոչ զկարողութիւն ուրուք տանել չժուժեաց, կարօտացա՞ւ կարծեմ ունել զիս առաջնորդ. այն որ և առանց այսց արանց հոյակապից՝ անդէն 'ի Կիլիկիա առ բերանով Կիդնոս գետոյ վճարեալ էր զիրս զայս, եթէ նորա [27] 'ի սահմանեալ ափն՝ և ոչ 'ի հակառակն հասեալ էր նաւաւն։ Եւ զԿն. Դոմիտիոս՝ [28] ո՞չ ծնողին սպանումն՝ առն ականաւորի, ո՞չ քեռայն մահ, ո՞չ կապուտ կողոպուտն լինել 'ի պատուոյն՝ գրգռեաց զառնալ յազատութիւն, այլ իմ բա՞նքս։ Արդեօք հրապուրեա՞լ էինչ իցեմ զԿ. Տրեբոնիոս [29], զոր և ոչ յորդորել իսկ իշխէի. որում և մեծագոյն պարտի ունել շնորհս ընկերհասարակութիւնն, զի զազատութիւն հռովմէական ժողովրդեան առաւել մեծարեաց քան զմիոյն բարեկամութիւն, և տէրութեան վանիչ քան հաղորդ լինել ցանկացաւ։ Միթէ Լ. Տիլլիոս Կիմբեր իմո՞վ առաջնորդութեամբ եկն զհետ. ընդ որոյ ես առաւել ընդ գործն զարմացայ, զի ոչ համարէի թէ առնիցէ. և վասն այնորիկ զարմացայ, զի զերախտիսն 'ի մոռացօնս դարձուցեալ՝ յիշատակող զաւառ հայրենեաց։ Զի՞նչ զերկոսին Սերուիլիոսն [30]. Կասկա՞յս ասացից թէ Ահալայս. զսոսա ես իմո՞վ բանիւ գրգռեալս վարկանիս քան 'ի սիրոյ ընկերհասարակութեան։ Երկայն է ճառել և զայլսն. և այս՝ ընկերհասարակութեանս պարծանք, զի այնչափ բազումք եղեն երևեցան, իւրեանց՝ փառաւորութիւն։

Բայց որպէս յանդիմանեցէ զիս այրն սուր, աղէ ածէք զմտաւ։ Ընդ սրախողխող լինել Կեսարու, ասէ, ամբարձեալ անդէն 'ի վեր Մ. Բրուտոսի զարիւնաներկ դաշոյնն՝ զԿիկերոնն կարդաց յանուանէ, և ուրախակից նմա եղև ընդ ազատութեանն հասանել։ Ընդէ՞ր մանաւանդ ինձ. թէ զի գիտէի՞ արդեօք։ Տե՛ս՝ գուցէ յայն սակս ձայնեալ իցէ զիս, զի գործ մի հանգոյն իմոյս կատարեալ, զիս առաւել

վկայ ունէր՝ նախանձաւոր իմոյ պարծանացս լինելոյ։ Իսկ դու, պանդոյր քան զամենեսեան, չիմանաս՝ զի եթէ ընդ մահն կամել Կեսարու, զոր յիս բերծ չփես, վնաս ինչ իցէ, վնաս է և խնդալն 'ի մահ Կեսարու։ Զի զի՞նչ 'ի միջի իցէ ընդ յորդորիչն և ընդ գովող. կամ զի՞ փոյթ է՝ թէ կամեցեալ իցեմ արդեօք, եթէ ուրախացեալ ընդ գործն։ Արդ ո՞ իցէ, բաց 'ի քէն և յորոց ընդ թագաւորել նորա ցնծային, որոյ չիցէ կամեցեալ զլինել իրին, կամ զեղեալն պախարակեալ. ապա ամենեքեան բարեկեք. զի առաքինիք առ հասարակ, որչափ 'ի նոսա էր, սպանին զԿեսար. ոմանց՝ խորհուրդ պակասեաց, կիսոց՝ հոգի, այլոց՝ ժամանակ. կամք՝ ոչ ումեք։ Այլ մեա գիք ափշութեան սանդ, կամ թէ ասել գրաստուդ. քանզի այսպէս ասաց. «Մարկոս Բրուտոս, զոր ես 'ի պատիւ իւր անուանեմ, զարիւնաշաղախ դաշոյնն կալեալ՝ 'ի ձայն բարձր զԿիկերոնն կարդաց. յորմէ իմանալ է՝ թէ կամակից ուրեմն էր։» Արդ ես մըլիժագործ 'ի քէն կոչիմ, զոր 'ի կարծիս ինչ եղեալ վարկանիս. իսկ որ զարիւնաթոր դաշոյնն 'ի բուին ունէր, նա 'ի պատճառս պատուոյ 'ի քէն անուանի։ Այդպէս իցէ. լիցի այդ ափշութիւն 'ի բանս քո. իսկ ո՞րչափ ես առաւել յիրս և յիմաստս։ Ցոյց զայս հուսկ ուրեմն, է՞ բդեշխ. զի՞նչ կամիցիս լինել զԲրուտոսեանցն դատաստան, զԿ. Կասսիոսին, զԿն. Դոմիտիոսին, զԿ. Տրեբոնիոսին և զայլոց։ Սթափեցիր ասեմ՝ զղջացիր 'ի քնոյ շուայտութեան, և թափեա ըզգինիդ։ Մատիցե՞ն արդեօք ջահք՝ զարթուցանել զքեզ ըզթմբրեալդ 'ի դատաստան այսպիսի։ Չիմանա՞ս հասկանա՞ս՝ թէ պարտ է քեզ սահմանել, սպանո՞ղք արդեօք իցեն գործօնք իրիդ, եթէ ազատութեան քինախնդիրք։

Անսա փոքր մի, և զխօսս առն ըղջամտի վայրիկ մի ընկալ։ Ես, որ որպէս ես խոստովանիմ, բարեկամ նոցա եմ, որպէս 'ի քէնդ ամբաստանիմ՝ գործակից, յուրաստ կամ աւասիկ՝ թէ դուցէ ինչ այլ միջին. և վկայեմ, զի եթէ չիցեն նոքա ազատեցուցիչք հռովմէական ժողովրդեան և ընկեր-

հաշտութեան պահպանիչք, եղեռնութիւնք են քան զարիկայս, քան զարիւնահեղս և քան զհայրախողխողս անգամ. զի անագորոյն ևս է՝ զաշխարհին հայր սպանանել քան զիւրն։ Դու այր իմաստուն և խորհրդական, զի՞ ասես։ Եթէ հայրասպանք, ընդէ՞ր 'ի պատճառս պատուոյ յիշատակին միշտ 'ի քէն յատենի աստ և առ ժողովուրդն հռովմէական։ Զմէ՞ Մ. Բրուտոս քոյով առաջարկութեամբդ արձակեցաւ յօրինաց, եթէ աւուրս աւելի քան զտասն հեռասցի յատենէս[31]։ Հի՞մ ապողոնեան խաղք՝ անակնկալ փառօք Մ. Բրուտոսի հանդիսացան[32]։ Առ ինէ՞ տուան կուսակալութիւնք Կասսիոսի և Բրուտոսի[33]. Էր աղագաւ յաւելան գանձապետք. Էր աճեաց տեղապահացն թիւ. և այս ամենայն 'ի քէն գործեցաւ։ Ուրեմն ոչ մարդասպանք, այլ փրկիչք էին՝ քոյով իսկ դատաստանաւ. զի երրորդ իմն այլ չիք։ Զի՞նչ իցէ. միթէ խռովեցուցանեմ զքեզ. զի թերևս ոչ ըստ արժանի առնուս 'ի միտ զասացեալս զանազանութիւն։ Այլ սակայն գլուխ բանից խօսիցս այս է. քանզի յեղերանէ արձակեցեր զնոսա, նոյն ինքնդ և մեծամեծ պարգևաց արժանի զնոսա դատեցար, արդ ես յեսս ընդդէմ դարձուցանեմ զճառս։ Գրեցից առ նոսա, զի եթէ ոք երբէք հարցանիցեն՝ թէ ճշմարի՞տ իցէ զոր յինէն բասրեցեր, մի՞ ումեք ուրաստ լինիցին. քանզի խիթամ, գուցէ թաքուցանել զանձինս՝ ոչ 'ի պատուի ինչ նոցա լինիցի, կամ 'ի հրաւիրմանէն հրաժարելս՝ ինձ 'ի յոյժ գարշանս։ Զի զի՞նչ այլ երբէք ուրեք, ո՛վ սուրբդ Արամազդ, ոչ միայն յոստանիս յայսմ, այլ և ընդ ամենայն ոլորտս տիեզերաց գործեցաւ մեծագոյն, զի՞նչ այլ պանծագոյն, զի՞նչ յաւերժայիշատակ գրուատելի յազգս մարդկան։ Ցայսր խորհրդոյ ընկերութիւն՝ իբրև յերիվարն տրովական՝ առեալ արկանես դու զիս. ոչ մերժիմ, այլ և շնորհս ունիմ, որո՛վ հոգւով և առնիցես։ Իր մի այնպիսի մեծ է, զի զառաջնութիւնն զոր դու ընդ իս ճգնիս զրգռել, ոչ համեմատեցից ընդ գովութեանն։ Զի զի՞նչ երանելի քան զնոսա՝ զորս դու վտա֊

ընտանի տու 'ի քէն և տարագիրս քաղաքէս. ո՜ր այն անեղէ այնպէս անձանց և վայրենի, որ 'ի մատչել նոցա՝ ոչ խօսել և փախչել նոցին թուէցի. ո՜ր այն մարդիկ չինականք, որ 'ի տեսանելն զնոսա՝ ոչ համարեցին զանձինս 'ի քաղցրագոյն պտուղ կենաց վայելել. իսկ ո՜ր այն երախտամոռաց ապաղայք, ո՜ր այն ապաշնորհ դպրութիւնք գտանիցեն, որ ըզփառս նոցա ոչ արձանագրեսցեն 'ի յիշատակ անմահութեան: Արդ ծն դու յաւել գրեա և զքես անշուշտ այնպիսի 'ի թիւս նոցին:

Բայց խնթամ՝ զուցէ ընդ մի ինչ ոչ հաւանեսցիս: Քանզի եթէ էի, ոչ զթագաւորն միայն, այլ և զթագաւորութիւնն ինքնին զլխովին բառնայի յընկերհաշտութենէս. և եթէ իմ ինչ էր գրիչն այն չէշտ [34], որպէս ասի, հաւատա ինձ, ոչ զմի արարուածն նեթ, այլ ողջոյն իսկ զվիպացն հանդէս 'ի գլուխ վճարեալ տանէի: Սակայն եթէ յանցումն ինչ իցէ զպատանուումն կամել Կեսարու, աղէ տես քաջ, Անտոնիէ, զինչ քեզ հասանիցէ [35], զորմէ քաջայայտ է՝ զի զայս խորհուրդ առեր ընդ Կ. Տրեբոնիոսի 'ի Նարբոն, և 'ի պատճառս այնր խորհրդակցութեան՝ 'ի զրաւիլ Կեսարու տեսաք նմին իսկ Տրեբոնիոսի մեկուսի զքեզ 'ի տեղւոյն 'ի բաց մնացեալ: Իսկ ես, — տես զիարդ ոչ թշնամաբար ընդ քեզ գնամ, — զայն զի երբեմն բարւոք խորհեցար՝ գովեմ, զի ոչ գուշակ եղեր՝ շնորհս ունիմ. իսկ զի ոչ ձեռն 'ի գործ արարեր, ներեմ: Այր պիտէր 'ի գործն. զի եթէ 'ի զատ ողք զքեզ վարեացէ, և 'ի վար զԿասսիոսին առնուցու. Որում օգտակն չէաւ լոյէ, տես աղաչեմ՝ զուցէ 'ի վարան տագնապի մտանիցես: Զի թէպէտ և այն իր, որպէս զուգ. ասէիր, ամենեցուն եղև յօգուտ՝ որոց ոչն կամէին ծառայանալ, բայց մանաւանդ քեզ՝ որ ոչ միայն չծառայես, այլ և թագաւորես ևս. որ յահագին պարտուց՝ դու զքեզ յանդորր հաներ 'ի տաճարին Ոփսեայ [36]. որ 'ի նոցին տախտակաց անտի՝ անթիւ անհամար զանձս վատնեցեր. առ որ 'ի տանէն Կեսարու՝ արծաթ անբաւ մատուցաւ [37]. որոյ տուանդ՝

ամենաչահ արուեստանոց է ատեայօք արձանաց և յեռկարաց, և ագարակաց՝ գիւղից՝ ապահարկաց և բաժեանց պղծագործ ածանակաձառ : Զի զի՞նչ այլ նպաստ լինել մարթէր կարօտութեան քում և պարտուց՝ բայց 'ի մահուանէն Կեսարու : Թուի ինձ թէ խռովեալ իմն իցես : Զանգիտես ինչ արդեօք, թէ գուցէ 'ի քեզ պատշաճիցի ամբիծ գործս այս : Ազատեմ զքեզ յերկիւղէդ . ոչ ոք հաւատասցէ երբեք . ոչ քոյ ինչ է երախտաւոր առ ընկերահաշտս լինել . ընկերհաշտութիւնն՝ այսր չքնաղ գործոյ առաջնորդ գտանէ արս հօյակապս . իմ զքեզ խնդամիտ եւեթ ընդ այն առացեալ, գործոյն ոչ յանդիմանեմ : — Առ մեծամեծ ամբաստանութիւնս եսու պատասխանի, արդ և առ այլսն արժան է հատուցանել :

Զբանական Պոմպէոսի և զամենայն ժամանակն զայն ինձ 'ի մեղս դրես . յորում ժամանակի՝ եթէ որպէս առացիս՝ զօրէին բանք իմ, դու այսօր ցականեալ և մեք ազատք լինէաք, և ընկերհաշտութիւնս ոչ այնչափ զօրաւորս և զօրս 38 կորուսանէր : Քանզի վկայեմ, թէ 'ի լինել եղելոցն՝ զոր իմ կանխեալ գուշակեալ էր, յայն տրամութիւն անկայ՝ յոր և այլ ընտիր քաղաքացիքս անկանէին, եթէ նոյնպէս և նոցա նախատես լեալ էր : Ցաւէր ինձ ցաւէր, հայրք ատենակալք, զի ընկերհաշտութիւնն՝ ձերով երբեմն և իմով խորհրդով պահպանեալ, կործանելոց էր հուպ ընդ հուպ : Զի չէի այնպէս ադէտ և անտեղեակ իրացն, մինչև սրտաբեկ լինել առ սէր կենաց, որ 'ի կալն և մնալ՝ հաշելոց էր զիս թախանձալից ; իսկ 'ի գնալն՝ յամենայն նեղութեանց ազատելոց : Ես զարան զայնոսիկ ականաւորս, զլուսաւորան ընկերահաշտեաց, կամէի թէ կեցցեն, զամբոխս բդեշխից, դատաւորաց, արդարակորով աւագորերոյ, նա՝ և զբոլոր ծաղիկ ազնուականութեան և մանկութեան, ըստ նմանէ և զամենայն քաղաքացւոցն բանակս . որ եթէ կենդանի կային, թէ և դժպհի պայմանաւ խաղաղութեան, — զի ինձ ամենայն խաղաղութիւն ընդ քաղաքացիս՝ օգտակար

Թուէր քան զքաղաքական պատերազմ, — 'ի ձեռաքն ու-
նէաք այսօր զընկերահաշտիս ։ Եթէ այս իմաստ զօրացեալ
էր, և ոչ նոքա մնացուանդ՝ որոց կենացն ես խնամ տանէի,
ինձ հակառակ ամբարձեալ՝ յաղթութեանն յուսով խրոխ-
տացեալք, դու, զի զայլն ամենայն թողից, դու անշուշտ
ոչ երբէք յայսմ ակմբի, նա և ոչ 'ի քաղաքի աստ մնայիր ։
— Այլ բանք իմ ուծացուցանէին յինէն զսիրտ Պոմպէո-
սի [39] ։ — Բայց սիրեա՞ց նա զոք առաւել քան զիս, կամ 'ի
բան և 'ի խորհուրդ յաճախագոյն եմուտ ընդ նմա. որ մեծ
իմն էր այպաքէն, զբախտէ ընկերհաշտութեան երկպառակ
եղելոցս՝ կալ յամենալ 'ի նմին ընտանութեան մտերմաբար ։
Բայց և ես զնորա և նա անդուստ զիմ միտս և զկոյսս տե-
սանէր ։ Ես՝ նախ քաղաքացւոցս ողջունին և ապա պա-
տուոյն հոգ տանէի, նա՝ առաւել առժամայն պատուոյն ։
Եւ զի էր իւրաքանչիւր ումեք 'ի մէնջ յոր միտ եդեալ յա-
րեացի, նմին իրի և ներելի էր չմիաբանութիւնն մեր ։ Իսկ
թէ զինչ այրն այն անզուգական և գրեթէ աստուածային՝
զինէն խորհէր, գիտեն որ միանգամ փարսաղեան փախստեա-
կհետ չոգան նմին 'ի Պափոս ։ Ոչ երբէք յիշատակեալ նորա
զիմ անուն՝ բայց եթէ շքով, սիրահարուստ տենչմամբ. ուր
զի վկայէր՝ թէ իմ խորագոյնս նկատեալ տեսեալ էր, նորա՝
լաւագունի յուսոյ ակն կալեալ ։ Եւ իշխես ընաւ յանուն
առնն այնորիկ յարձակել 'ի վերայ իմ, որում զիս բարե-
կամ, զքեզ՝ յարձակ յարձակ վաճառական խոստովանիս [40] ։
Այլ զանց զպատերազմաւն արասցուք, յորում դու յոյժ
բարեբախտ գտար ։ Իսկ զկատակաբանութեանցն՝ զոր 'ի
բանակին 'ի վար արկեալ ասացեր յինէն, ոչ տաց պատաս-
խանի ։ Այն բանակետեղք լի հոգովք էին. այլ մարդիկ,
թէպէտ և 'ի ժխոր և 'ի շշուկ կայցեն, բայց եթէ միայն
մարդիկ իցեն, երբեք երբեք զիւր առնեն մտաց ։ Այլ
քանզի որ զթախիծս իմ ըստգտանէ, նոյն և զխաղքս, ի-
մում յերկոսին ևս չափաւորութեանս նշանակ մեծ է ։

Ասացեր թէ ժառանգութիւնք չեկին առ իս ուստեք

կատակաւ [41] ։ Ո՛ տայր ճշմարիտ լինել եպերանացդ. բազում բարեկամք իմ և մտերիմք կենդանի լինէին ։ Այլ ո՞ւստ ուստեք այդ 'ի միտսդ անկաւ. զի իմ աւելի քան զերկուհազար բիւր փող [42] 'ի հաշիւ ժառանգութեանցս արձանագրեալ է. Թէպէտ և յայսմ մասին բարեբաստագոյն զքեզ վկայեմ լեալ. զիս՝ բայց 'ի բարեկամէ՝ ոչ ոք այլ արար ժառանգ, որպէս զի ընդ շահուն՝ եթէ էր ինչ՝ յաւելցի ցաւ ինչ սրտի. զքեզ, զոր ոչն ընաւ տեսեր՝ Լ. Ռուբրիոս Կասսինաս կացոյց ժառանգ ։ Եւ տե՛ս որչափ սիրէր [43] զա ըզքեզ, որ յանդէտս՝ թէ սպիտա՞կ իցես եթէ սեաւ, զեղբօրորդւոյն զանց արարեալ, զՔ. Փուֆիոսի՝ զհամեստագունի ասպետին Հռովմայ և իւրոյ սիրելւոյն, զոր և միշտ իւր պայազատ ցուցեալ էր յայտնապէս, զքեզ՝ զոր ոչ ուրեք տեսեալ, անշուշտ ոչ երբեք ողջունեալ, ժառանգ հաստատեաց ։ Աղէ տաս ցիս, եթէ չիցէ աշխատութիւն ։ Լ. Տուրսելեայ զի՞նչ կերպարանք էին, զի՞նչ հասակ, յորմէ՞ քաղաքէ էր, յորմէ՞ տոհմէ ։ Ոչ ինչ գիտեմ, ասիցես, բայց զագարակսն զոր ունէր ։ Արդ և սորա անժառանգեալ զեղբայրն, զքեզ կարգէր ժառանգ ։ Առաւելոյ այսգոյնիկ, 'ի բազում ստացուածս արանց օտարածնաց իբրև ժառանգաւոր մտեր հինաւոր, զբուն պայազատսն հանեալ տարաշխիր ։ Բայց ընդ այս կարի զարմացայ, զի որ զհօրդ [44] ժառանգութիւնս ոչ պայազատեցեր, ժպրհեցար ժառանգութեանց անձնել յիշատակ ։

Աս 'ի զայդ բաղայսդ կցկցել, այր մոռաթափ, այնչափ աւուրս 'ի կերթս հանդիսի խօսից անցուցեր յօտար ամարանոցին [45]. Թէպէտ և դու, որպէս ընտանիքդ զրուցեն յաճախ, ոչ 'ի սրել զմիտսդ, այլ 'ի թափել զգինիդ սովոր ճառատես ։ Եւ ընդ խաղ առ քեզ ունիս վարժապետ՝ ընտրութեամբ զինարբուացդ քոց՝ զճարտասանդ, որում ներեցեր զինչ և կամին ասել ընդդէմ քեզ ։ Ո՛հ աղու և նրբախօս անձն. բայց դիւրագիւտ են հանճարաբանութիւնք ընդդէմ քո և քոյոցդ ։ Այլ աղէ տես զինչ խօսիր 'ի

միջի իցէ ընդ քեզ և ընդ հաւն քո․ նա մեղմով խօսէր առ 'ի պէտս խնդրոյն, դու Թափառնակի օտարոտի բարբանջես ։ Սակայն վարձք քանիո՞ն տուան Ճարտասանին․ լուարուք լուարուք, հարք առէնակալք, և 'ի միա առէք զվէրս ընկերհաշտութեանս ։ Երկու հազար արտավար 'ի Լէոնտեան անդաստանացն պարգևեալք Սեքստոսի Կլոդէոսի Ճարտասանի, և այն՝ ապահարկս, որպէս զի այնքան վարձուք հռովմէական ժողովրդեան՝ ոչինչ գիտել ուսանիցիս ։ Միթէ և այս, ով այրդ ժպիրհ, յարձանա՞ցն Կեսարու իցէ ։ Բայց ասացից այլուր և զԼէոնտեան ագարակէն և զԿամպանիոյ, զորս յափշտակեալ սորա յընկերահաշտեացս՝ ամենագարշ սասացողք պղծեաց զագարակն զայնոսիկ ։ — Այլ քանզի չարախօսութեանց սորա եսու բաւական պատասխանի, ժամ է արդ ասել ինչ ինչ զնոյն ինքն զյանդիմանիչէ մերմէ և զկշտամբողէ ։ Ոչ հեղից Թափեցից զամենայն․ զի եթէ յաճախ պայքարել հասանիցէ, որ և լինելոց իսկ է, միշտ նոր երևեցայց․ Ճոխութիւն՝ զոր առատապէս նօթձէ ինձ խուռն յոռութեանց սորա և մեղանաց յոլովութիւն ։

Կամիս արդ 'ի մանկութենէդ զննեսցուք զքեզ ։ Այնպէս կարծեմ․ անդուստ 'ի վերուստ արասցուք սկիզբն ։ Ունիցիս 'ի մտի, զի մինչդեռ տակաւին մանուկն էիր՝ կերեալ վատնեալ սպառեցեր զգոյսդ ։ Այդ, ասիցես, հօրս մեղ է ։ Ներեալ քեզ․ զի հայրագութ գործոյդ է պաշտպանութիւնդ ։ Բայց խորոխտ յանդգնութեանդ քոյ է այն, զի 'ի կարգս չորեքտասան աշտիճանացն 46 նստեալ բազմեցար, մինչդեռ Ռոսկեան օրինօքն ուրոյն տեղի զատուցեալ էր վատնողաց սնանկացելոց, թէպէտ և ոք 'ի բախտին վրիպակէ՝ և ոչ իւրոյին սնանկացեալ իցէ ։ Առեր զայրական պատմուճանն, զոր անդէն վաղվաղակի համակ 'ի կանացի դարձուցեր ։ Զառաջինն՝ շիտակ ոք հասարակ, կարգեալ կապէնք անառակութեանդ, և այն ոչ փոքր ինչ․ բայց փութով 'ի վերայ եհաս Կուրիոն, որ զքեզ 'ի բոզից շահէ 'ի

բաց դարձոյց. և որպէս թէ խիլայ զքև արկեալ՝ 'ի հա-
ւաստի և 'ի ստոյգ անմոռանութիւն հաստատեաց : Ոչ ոք 'ի
մանկտւոյ անձնամատն վաճառեալ՝ այնպէս ընդ ձեռամբ
տեառնն եկաց որպէս դու ընդ Կուրիոնեն : Քանիցս հայր
նորա արտաքսեաց զքեզ 'ի տանէն, քանիցս պահապանս
կացոյց, զի մի՛ և ընդ սեամն անցանիցես, սակայն քո զգի-
շեր օգնական առեալ, մորակեալ 'ի տափից, հրապուրեալ
'ի վարձուց, ընդ տանիսն և ընդ ցիւսն իջանէիր. զոր անդր
ևս այլ ոչ կարաց տունն այն տանել զքարտուականս : Գի-
տիցես, զի զկարի ծանօթական ինձ իրաց խօսիմ: Յո՛ւշ քեզ
ժամանակն, յորում հայրն Կուրիոն թաղծալից դնէր 'ի
մահիճս, որդին յոտս իմ անկեալ արտասուօքն՝ յիս
զքեզ առնէր ապաստան, պաղատէր՝ զի թէ վեց հարիւր
բիւրս փողոյ պահանջեսցէ, պաշտպան կացից քեզ ընդդէմ
հօր իւրոյ. զի այնքանոյ խոստունկ. և երաշխաւոր լեալ էր
քեզ : Իսկ ինքն 'ի մարմաջման ջերեալ և կոծեալ անդէր,
զի առ չժուժալ տարփից անջատմանդ՝ ըստ աշխարհս վտա-
րանդի ելանիցէ : Եւ զայսչափ աղէտս բարդաւաճ ազգա-
տոհմին ցածուցի ես 'ի ժամանակին, մանաւանդ թէ արգե-
լի : Ի հաւան ածի զհայրն՝ հատուցանել զպարտս որդւոյն,
փրկել[47] յաւատութենէ ընչիցն զպատանին՝ յորում յոյս
մեծ գոյր սրտի և հանճարոյ, և զնա՝ ոչ միայն 'ի քումմէ
ընտանութենէդ, այլ և 'ի տեսութենէդ՝ հայրական իրա-
ւամբքն և իշխանութեան սաստիւ արգելուլ քեցել : Զայս
ամենայն յինէն գործեալ գիտելով քո, եթէ ոչ 'ի վաղա-
կաւորսն՝ զոր տեսանեմք՝ վստահացեալ էիր, իշխէի՞ր թըշ-
նամանօքդ գրգռել զիս :

Այլ զգարշութիւնսդ և զխայտառականսդ լռեցից. են
են՝ զոր չմարթեմ պարկեշտաբար 'ի բան ձգել. իսկ դու
այնպէս ապերասան, զի զոր յամօթղած ոտոխէ լսել չկա-
րես՝ յանձն մատուցեր : Բայց տեսէք զայլ ևս զնոցա վա-
րուցն, ընդ որ թեթևակի սահեալ անցից : Զի զոր յըն-
տանի պատերազմին՝ 'ի գժնդակ տառապանս ընկերհաշ-

տութեանն գործեաց և զոր հանապազօր գործէ, յայնս փութան միտք իմ. զորս և խնդրեմ, զի թէպէտ և ծանօթագոյն ձեզ քան ինձ իցեն, սակայն մտադիւրութեամբ լուիջիք, որպէս և առնէքդ իսկ։ Զի յայտնի՝ ոչ ծանօթութիւն ևեթ իրացն շարժելոց է զսիրտս, այլ և յիշատակն։ Բայց և պարտ է զմիջինան զեղչել, զի մի՛ յոյժ անագան 'ի վերջինան հասանիցեմք։

Որ զշնորհս իւր առ իս երախտաւոր յիշատակէ, մտերիմ էր Կղոդիոսի 'ի հազարապետութեան նորա. ամենայն հրձգութեանց նորա ջահ, յորոյ և 'ի տան անդ նորա՝ նիւթեաց ինչ գաւ [48]։ Զի՞ խօսեցայց, ինքնին ճարտարագոյն իմանայ։ Ապա յետ այնորիկ ճանապարհ յԱղեքսանդրիա՝ ընդդէմ հրամանի աւագանւոյն, ընդդէմ ընկերահասարակաց և կրօնից. բայց առաջնորդ ունէր զԳաբինիոս, ընդ որում զամենայն ինչ կարէր ուղիղ գործել։ Իսկ զի՞նչ ապա անդուստ դարձն կամ որպիսի՞։ ՅԵգիպտոսէ նախ մինչև 'ի ծագս Գաղղիոյ [49] քան 'ի տուն իւր։ Եւ ո՞ր այն տուն էր. զի այլ իւրաքանչիւր ունէին յայնժամ զտունս իւրեանց [50], և քո չէր ինչ բնաւ։ Եւ զի՞ զյարկ ասիցեմ. զի՞նչ կայր բնաւ յերեսս երկրի, ուր իբրև 'ի քոյդ գնիցես զոտն, բայց միայն 'ի Միսենէ՝ զոր ընդ ընկերսդ իբրև զՍիսապոն [51] ունէիր։

Եկիր 'ի Գաղղիոյ 'ի խնդիր գանձաւորութեան։ Աղէ ժպրհեցի՞ր ասել, թէ քան առ իս՝ առ ծնօղդ քո մատեար նախ։ Քանզի ընկալեալ էի յառաջագոյն զգիրն Կեսարու, զի զիջայց քեզ հաշտիլ ընդ իս. վասն որոյ և ոչ իսկ թողի քեզ խօսել զշնորհաց։ Ապա յետ այնորիկ՝ դու անմեկնելի ինձ զգուշացար [52], ես քեզ 'ի խնդիր գանձաւորութեան կացի պաշտպան. յորում ժամանակի հաճութեամբ ժողովրդեանն Հռովմայ կրթեցար սպանանել զՊ. Կղոդիոս 'ի հրապարակին. յոր ինքնակամ նկրտեալ քո և ոչ յիմմէ ինչ դրդմանէ, համայն և այնպէս քարոզէիր, որպէս թէ ոչ հատուցումն ինչ առ իս անխրատութեանցդ փոխել հա-

մարտիցիս, բայց միայն եթէ զնա սատակեսցես։ Ցորում զար-մանամ, զի՞ է զի յիմմէ դրդեալ զերն զայն Մելոնի վճարեալ ատեցես, ուր և յառաջարկելդ ինձ զնոյն ինքնայօժար՝ ոչ երբեք յորդորեցի․ թէպէտ և եթէ 'ի նոյն միտս հաստա-տուն կացեալ էիր, առաւել 'ի քո փառս կամէի թէ գրեա-ցի գործն քան ինձ 'ի շնորհս։ Կացուցար զանձնապետ․ ան-դէն ես ընդ ես առանց ատեանոյն հրամանի, առանց հմայից, առանց օրինաց ընթացար առ Կեսար․ զի զայդ միայն ընդ ոլորտս տիեզերաց համարէիր կարօտութեանդ ապաւէն, պարտուցդ, շռայլութեանդ, կորստական ճա-նապարհաց վարուցդ։ Անդ իբրև նորա առատութեամբքն և քոյով յափշտակութեամբք լցար յօրացար, — եթէ ընուլ իցէ խծկել՝ զոր իսկոյն ցնդեցես, — սլացար չքաւոր 'ի հազարապետութիւն․ որպէս զի յիշխանութեան անդ յայնմիկ, եթէ կարօղ ինչ իցես, առն քում [33] նմանօղ լի-նիցիս։

Ընկալարուք արդ, աղաչեմ, ոչ զոր յանձն իւր և յառ-տընին ծանականս խենեշաբար և անխառնութեամբ արար, այլ զոր ընդ մեզ և ընդ բաստս մեր, այս է՝ ընդ բոլոր ընկեր-հաշտութիւնն, անօրէն և ամպարշտաբար անցոյց։ Զի 'ի դորա ապիրատութենէն զսկիզբն ամենայն աղետից գտա-նիցէք։ Քանզի յորժամ 'ի բդեշխութեան Լ. Լենտուլոսի և Մ. Մարկեղլոսի, 'ի գլուխ ամսեանն Ցանուարի խղճ լի-նէին ամրացուցանել զսասանեալ և գրեթէ կործանեալ ըն-կերհաշտութիւնն, և նմին իսկ Կեսարու՝ եթէ առողջ էր խորհրդովք, խնամ տանել կամէին [34], սա յայնժամ զվա-ճառակուր և զվտարանդի հազարապետութիւնն ընդդէմ եդ խորհրդոց ձերոց, և զպարանոց իւր արկ ընդ տապա-րաւն՝ որով յոլով սակաւամեղք իսկ կորեան։ Ցայն դքեզ, Մ. Անտոնիէ, դատակնքեաց աւագանին, մինչդեռ ողջան-դամն էր, և ոչ այնչափ լուսաւորք իւր շիջեալք, յոր նախ-նեաց օրինօք սովոր է դատապարտել թշնամի պատմուճա-նաւոր [35]։ Եւ դու ժպրհեցա՞ր չարախօսել զինէն առ կա-

Ճառեալ հարսն, մինչդեռ ես յառաջն ասացի փրկիչ գտեալ էի, դու մերոց ընկերահաշուեաց ։ Յիշատակ այնր ամպարշտութեանդ զանց եղեալ էր, ոչ ջնջեալ 'ի յուշոյ ։ Մինչև մարդկան ազգ, մինչև անուն հռովմէական ժողովրդեան կացցէ, — զոր եթէ դու թողացուցես՝ յաւիտեան կացցէ, — զրուցեսցի և այն քո ժանտագործ ընդդիմադարձութիւն ։ Արդ զի՞նչ 'ի քմաց, զի՞նչ յախուռն ինչ 'ի լինել կայր, յորժամ դու՝ մի ևեթ պատանի՝ արգելեր զատեանն համօրէն չառնել վճիռ 'ի փրկութիւն ընկերհաշտութեանն. և զայդ՝ ոչ մի անգամ, այլ բազում . և չետուր տեղի՝ թէ իշխանութիւն աւագանւոյն ազդեսցէ ինչ 'ի քեզ ։ Եւ զի՞նչ էր զոր առնէիր, բայց մի՛ բնաջինջ բառնալ և հիմն 'ի վեր տապալել զընկերհաշտութիւնն . ուր զքեզ՝ ոչ գլխաւորք՝ քաղաքիս աղերսանօք, ոչ երիցագոյնք խրատուք, և ոչ աւագանին համախումբ ջան 'ի գործ դնելով, ոչ բաւեցին 'ի կաշառակուր և 'ի սուրուկ մտացդ դրդուել զքեզ ։ Յայնժամ ապա, յետ բազում իրաց փորձոյ, հարկաւ տուաւ քեզ հարուածն՝ որ սակաւուց յառաջ քան զքեզ, յորոց ոչ ոք ողջանդամ ապրեցաւ ։ Յայնժամ ատեանս այս ետ ընդդէմ քո զէնս [58] բռնեշխից և այլոց իշխանութեանց և զօրութեանց . յորոց ոչ ճողոպրէիր, եթէ չէիր 'ի բանակն Կեսարու ապաւինեալ ։

Դու, ասեմ, դու Մ. Անտոնիոս, Կ. Կեսարու՝ որ զամենայն ինչ ցանկայր վեր 'ի վայր վրդովել, զլուխ և առաջնորդ եղեալ՝ պատճառս ետուր յարուցանելոյ զպատերազմն ընդդէմ հայրենեաց ։ Չի զի՞նչ այլ ասէր նա, զի՞նչ պատճառս անմիտ խորհրդոյն և գործոյն յառաջ ածէր, բայց զի էր միջնորդութիւն զխմագարձութեանն ապախտլեալ, իրաւունք հազարապետութեանն բարձեալ, Անտոնիոս 'ի ձեռն աւագանւոյն 'ի պաշտամանէն խափանեալ ։ Թողից ասել քանի՛ սուտ են այդպիսիք, քանի՛ մնոտի, մանաւանդ ուր ոչ ումեք մարթի ունել իրաւունս զէն վերացուցանելոյ ընդդէմ հայրենեաց ։ Այլ կացցեն բանք զԿեսա-

րէ. քեզ ինքնին անշուշտ խոստովանելի է, թէ 'ի քում անձինդ էր պատճառք կորստական պատերազմին: Ո՛վ չուառագոյն՝ եթէ իմանաս, չուառագոյնդ՝ եթէ չիմանաս, զի այդ 'ի գլխի հարկանի, այդ 'ի յիշատակարանս արձանագրի, այդ իր և ոչ գլեանովք ամենայն յաւիտենից անյիշատակ անցանիցէ. զի բդեաշխք յԽաալիոյ Թօլթափեալք, ընդ նոսին և կն. Գոմպլոսն՝ որ իշխանութեան հռովմէական ժողովրդեանն փառք և ճոճանչն էր. ամենեքեան որ 'ի բդեշխութեան պատուի էին, և յուժի կային ընթանալոյ 'ի փախուստ յայն և 'ի փոթորիկ, զատաւորք և զատաւորականք, հազարապետք ժողովրդեան, մեծագոյն մասն աւագանւոյն, ամենայն տոհմ մանկութեան, և հակիրճ՝ ընկերհաշտութիւն ողջոյն մերժեալ և հալածական 'ի կայից իւրոց: Արդ, զոր օրինակ 'ի սերմանեն է՝ ծառոց և արմանցն բոյս, նոյն և այսմ աղետաբեր պատերազմի դու եղեր սերմն: Ցաւէ ձեզ վասն սատակման երից բանակաց հռովմէական ժողովրդեանս. սատակեաց Անտոնիոս: Կարօտիք հռչակաւոր քաղաքացեացդ. զնոսա ևս 'ի ձէնջ յափշտակեաց Անտոնիոս: Իշխանութիւն ամենից տապալեալ է. տապալեաց Անտոնիոս: Համայն և զամենայն զոր յետ այնորիկ տեսաք, — և մ՞ր աղէտք իցեն զոր ոչ տեսաք, — եթէ ուղիղ 'ի քննին ածանուցումք, Անտոնիոս համարեսցի այնմ պարտ չարեաց, օրինակ իմն որպէս Հեղինէ տրոյացւոցն, և սա այսմ ընկերահաշտեաց պատճառք պատերազմին, պատճառք ժանտի և կորստեան զատու:

Միւս ևս դրուագք հազարապետութեանն՝ սկզբանն հանդգունակք: Զամենայն ինչ որում զգուշացեալ էր տաւագանին՝ զի մի՛ լինիցին 'ի կալ և պահել ընկերհաշտութեանն, արար սա և կատարեաց. զորոյ չարութիւնն և 'ի չարութեան անդ ծանեար՞ք: Բազմաց տառապելոց դարձ շնորհեր յաքսորանաց. 'ի նոսա ոչինչ բնաւ յիշատակ հօրեղբօրն: Եթէ անաչառ, ընդէ՞ր ոչ առ ամենեսին. եթէ ողորմած, ե՞ր ոչ յիւրսն: Բայց թողեալ իմ զայլսն, զի՛ Կեկինիոս

Լենտիկուլաս, դատապարտեալն վասն խաղոյ բախտի, զիւր խաղակիցն դարձոյց· ոչ զի չէր օրէն խաղալ ընդ դատապարտելումն, այլ զի զոր 'ի խաղմն կորուսեալն էր՝ 'ի շնորհէ անտի լուծանելոյ օրինացն հատուսցէ [57]: Զո՞ր իրաւունս յառաջ բերէր ժողովրդեան հռոմայ, գտանել զնա արժանի դարձի: Թերևս [58] զի հեռաւորն ընդ պարտաւորս համարեալ էր, զի առանց հարցափորձի իրացն դատաստա՞ն եղեալ էր, զի չգո՞յր ինչ օրինօք վճիռ զխաղուց, զի բռնի և զինո՞ւք էր հարստահարեալ· հուսկ յետոյ, որ ըղհօրեղբօրեգ լու լինէր, զի կաշառով Թիւրեա՞լ էր դատաստանն: Եւ ոչ մի ինչ յայսցանէ: — Այլ այր բարի էր և ընկերհաշտութեան արժանի: — Ոչինչ է այդ առ խնդիրս [59] · իսկ ես, քանզի դատապարտն լինել առ ոչինչ է համարեալ, եթէ այդպէս ինչ էր, ներէի արդեօք: Բայց որ քան զամենայն անօրէն այր, որում ոչինչ էր ընաւ խիղճ 'ի հրապարակի անգամ 'ի քուէայս խաղալ, դատապարտեալն յօրինաց խաղուց, դարձոյց անարատ յառաջին չափման, նա ո՞չ ապաքէն ինքնին մերկապարանոց խոստովան լինի զախորժակս մտացն: Իսկ 'ի նմին հազարապետութեանն, 'ի խաղալ Կեսարու 'ի Սպանիա, իբրև ամա կոխան եա զԻտալիա, որպիսի ինչ եղև արշաւան ճանապարհաց իւրոց: Մինթէ երթևեկք յայց և 'ի զննին ազատ քաղաքաց: Գիտեմ զի 'ի հռչակեալսն 'ի բերանս ամենեցուն գեգերիմ, և զի զոր ասեմս և ասելոց եմ՝ ծանօթագոյն են ամենեցուն գտելոցն յայնժամ յԻտալիա քան ինձ որ չգոյայ, սակայն նշանագրեսցից զիրան մի ըստ միոջէ, Թէպէտ և անհնար իցէ ամենևին հաւասարել բանիցս՝ գիտութեան ձերում: Զի ո՞ւր ուրեք յաշխարհի լսելի լեալ իցէ այնքան անառակութիւն, այնքան պղծութիւն, այնքան նշաւականք: Բարձեալ կրէր յոտարաբուն կառս հազարապետն ժողովրդեան, նուիրակք սարգենապանք կարապետէին · յորոց միջի՝ հոլանի գեսպակաւ ածեալ լինէր վարձակն [60], զոր 'ի քաղաքաց քաղաքաց ընդ առաջ ելեալ առ հարկին պար-

կեղծ որեարն, ոչ ծանօթ և զուարճականն անուանեալն, այլ Վոլումնիա զնա ողջունէին։ Զհետ գայր յոյնակ բռնաբոյծ կառաւոքք, ընկերք ժանտագործք. մայրն անարգեալ 'ի բաց ընկեցեալ՝ համանեայ ափոյծ որդւոյն կերև նուոյ զկնի գնայր։ Ո՜վ ստասամպեալ կնոջն թշուառականն ծննդականութեան։ Զայսց անառակութեանց հետս յամենայն ազատ քաղաքս, 'ի գաւառս, 'ի գաղթականս, միով բանիւ՝ ընդ ամենայն Իտալիա տպաւորեաց։

Այլոց գործոց նորա, Հայրք ատենակալք, դժուարին արդարև է յանդիմանութիւնն և զեղծ։ Դառն 'ի մարտին, յարեցոյց զանձն արեամբ քաղաքացւոց՝ աննմաններոց իւրոց. բախտաւոր եղև, եթէ զուցէ բնաւ յամպարշտութեան բախտ։ Այլ քանզի պատակառ կալ կամիմք հնաւորց զօրականին, թէպէտ և չեն ինչ համնմոյն զինուորացն դատ և քոյդ, զի նոքա զհետ կրթեցան զօրագլխին իւրեանց, դու 'ի խնդիր եկեր նախին. սակայն զի մի զնաս ընդ իս յատելութիւն պարձուացես, ոչ ինչ զինուութենէ պատերազմին ասացից։ Ի Թեսալիոյ յաղթօղ դարձար 'ի Բրունդեսիոն հանդերձ զուամարտակ զինդօք. անդ ոչ սպաններ զիս. շնորհ մեծ. քանզի մկայեմ՝ թէ կարօղ էիր [61]. թէպէտ և չէր ոք՝ յորոց ընդ քեզն էին, որ ոչ պարտ մարկաներ խնայել յիս։ Քանզի այնպիսի է սէր հայրենեաց, որպէս զի և յաչս զընդացն ձերոց սուրբ էի. զի զնա իսկ փրկեալ գիտէին։ Բայց դրեսցիր՝ թէ զոր ոչն բարձեր, շնորհեցեր ինձ, և թէ 'ի քէն զկեանս իմ ունիցիմ, այնու զի ոչ հաներ յինէն. միթէ 'ի քոց թշնամանացդ թո՞յլ ետ եղև ինձ՝ այնպէս անմոռաց ունել 'ի սրտի զերախտիսդ քայդ՝ որպէս ունէի. մանաւանդ զի և գիտէիր ետ՝ թէ զայսոսիկ լսելոց եմ։

Եկիր 'ի Բրունդեսիոն, 'ի ծոց և 'ի գիրկս քոյոյ մարձակիդ։ Զի՞նչ. միթէ սո՞ւտ խօսիցիմ։ Քանի՞ եղուկ իցէ չկարել ժխտել՝ զոր խոստովանելն գարշելի՛ է։ Եթէ չամաչեցեր յազատ քաղաքանւոյն, փարթամ և ո՞չ 'ի հինօրեայ սպայէն։ Զի՞ որ այն զինուոր՝ որ չետես զնա 'ի Բրունդե-

սխան . ո՛ որ չցխտոյ՝ թէ զայնչափ աւուրց Հանրապետութիւն հա-սնեալ եկեալ էր նորա առ 'ի խնդալից քեզ լինելոյ . ո՛ որ ոչ տարբերեցաւ ընդ այնպիսի անտարան խելամտութեան լինել՝ թէ որ-պիսումն առան դէպս կրթեալ էր : Դարձեալ աղաս խաղաղա-կան արշաւանն, ընկերակալ նովին վարձակաւ . յուսանան՝ անարգել և թշուառութեանց նման զօրաց . յուսանանս՝ ամէնայ և արծաթոյ՝ եա տուսանել գինեաց գերեփանք առ և ապա-տակայն : Ցաւելով 'ի վերայ, զի յանդէպս Կեսարու՝ որ զԱնէկզանդրեան էր, չնորհեա բարերանական նորին՝ առաջա-հասարակ եա կարգեցաւ : Ցայնժամ խրատումն իւր վարդապե-տենեալեց Հիպողիտոսոյ 62 լինել, և զառաջատարանեան երկնակարա այլասձկայն՝ առ Սերգեայ խոհեմաւսակի 'ի շուրջ վարձուց : Ցայնժամ ոչ զառաջարանն զայս 63, զոր այժմ վարանի ապահ-պանել, այլ զՄ. Գիտոնեին ընտրեալ էր իւր 'ի բնակութիւն : Ջի՞ է խնձ զարդա հրամանեանն, զի՞ զաւառատութիւնն, զի՞ զբաշխոյս ընչից ժառանգութեանց, զի՞ զառաջնեալն յիւրանէ յառաջ ածել : Սախոդէր առաջնադէր կարգաւորութիւն . չցոյր յոր դարձցի : Ձև էր 'ի Լ. Ռուբրիոսէ, չև 'ի Լ. Տապանե-լեայ հասեալ առ նա այնչափի ժառանգութիւն . չև եա փոխ-խանեակ Կն. Պամփիլոսի և այլոց բաղդեաց բազմակողմեան՝ յան-կարծակարծ ժառանգ սպրդեալ մնեալ էր : Մնայր նմա ա-ւաղակաբէն կեալ, այնչափ խնչ ածել՝ որչափ կարողանէր կարէկցէ :

Այլ զայսոսիկ, որ ուժգնադոյն առաքինութեան են, 'ի բաց թողեալ, խօսեսցուք մանաւանդ զգեղեխապարծ թե-թեւանացն : Դու զոմին որկորոմկ, զոմին կշռոխաղ, զոմին վերաբերականաւումաղաղանաց այնպատկանութեանն բարեխնդանի խրատուցդ, այնչափ զինի կլեալ կեր 'ի հարստանեան Հիպողիտոսա-այ, մինչև հարկ լինել քեզ վաղիւ փոխել ժայթքել անկն յանկարծակի ժողովրդեանն Հռոմէից : Ո՛վ իր՝ ոչ միայն 'ի տեսել, այլ և 'ի լսել նողկալի : Եթէ յընթրիսկներս անդ՝ յանհապլին աաշուռս բաժակացն քոց յայնսոսիկ պատահէր քեզ այդ, ո՞վ ոչ զարմեր հաւանեցեր : Իսկ դա 'ի հանդիսի

էր ժողովուրդն հռովմէական առ օտարազգէնս , արգաւորու֊ թեամբն սիրելի : Այդ կերպ անդէն լռեցաւ 'ի փարթա֊ մութիւնս նորա , խորայր առ խնդէն , խեղկատակ գինե֊ կաւոր , առժամայս չքաւոր ; յանկարծոյն մեծատուն : Սակայն որպէս քերթողն ասէ՝ չգիտեմ ոք [66], Զաւրա֊ ստացեալքն՝ չարաւ և կորնչին : Անհաւատ և հրաշանշան իմն է , թէ զխորդ զայնքան զբազմամեթեր ստացուածն՝ 'ի քանի սակաւ , չասեմ ամիս , այլ աւուրս , վատնեալ վա֊ րանեալ իցէ : Ընծն յողնահամբար կարասք գինւոյ , արծա֊ թոյ ընտրոյ՝ կշիռ մեծայազթ , հանդերձանի ծանրագինն , բազում և պայծառ կահ և կարասի չքեղաշուք 'ի տեղիս տեղիս , ոչ առն շուայտաբարոյի , այլ Ճոխի : Ի սակաւ աւուրս և ոչ մի ինչ կայր 'ի տոցանէ : Ո՞ր Քարիբդ [67] այդ֊ պէս կլանող իցէ . և զի՞ խսկ զՔարիբդ ասեցեմ , որ եթէ եղեալ ինչ իցէ , մի եւեթ յուշկապարիկ նշանք էր . ծն և ծն 'ի Հաւատոյն գիս երդուեալ , ուշխարհածոնն մեծ հաղե֊ թուի բաւական զայնքան իր , այնչափ ցիր և ցան , այնչափ 'ի հեռի վայրս զետեղեալ , այնպէս յապուրանի կլանել : Չէր ինչ 'ի մէջի փակ և ոչ կնքեալ , ոչ գրով գրոշմեալ : Շտե֊ մարանք առ հասարակ՝ որանց անզգամաց զնայեն 'ի պար֊ գեւս . էր զոր խաղալատակաց յափշտակէին , էր զոր վար֊ ձակք . խանեալ էր տունն խաղացողօք քուէից , արբեցե֊ լովք լի . զաւուրս ողջոյն զինեբբուք էին , և 'ի բազում տե֊ ղիս : Ցանելուքն զամու զամու և զեանք խաղուց , — զի ոչ միշտ բախտաւոր է դա : Ի ծառայիցն խուղս տեսանէիր խշտիս ծածկեալս ծիրանաններկ պատուտաւակալօքն Գն . Պոմ֊ պէոսի : Վասն որոյ մի՛ ևս այլ զարմանար , թէ այն ամենայն այնպէս վաղվաղակի զերփեալ սպառեալ բարձան 'ի մէջոյ : Ոչ զմիոյ ուրուք՝ թէպէտ և բազմապատիկ հայրենի ստա֊ ցուած , որպիսի ինչ այն էր , այլ և զքաղաքս և զթագաւո֊ րութիւնս կարէր այնպիսի անառակութիւն լափել լիզել վաղվաղակի :

Իսկ զնորա տաղաւարանն ես , և զգրաւոն . ո՛վ անհնարին

Կեսար ընդ քաղաքացիս. 'ի Թեսաղիա, յԱփրիկէ, 'ի Սպա-նիա. յայս ամենայն կռիւս գտաւ Դոլաբէլլա, 'ի սպանիա-կանն' վէրս եւ էառ: Եթէ զմիտս իմ հարցանես, չկամէի զայն. այլ սակայն խորհուրդն յառաջնմէ ստգտանելի է, անդրուլթիւնն' գովելի: Իսկ դու զի՞նչ կործեցեր: — Որդիք Կն. Պոմպէոսի նախ զաշխարհն իւրեանց խնդրէին: — Այդ-պէս լեցէ. լիցի այդ երկոցունց կողմանցն հասարակաց խըն-դիր: Բայց նոքա' 'ի վերայ այնր եւ զհայրենի աստուածսն խնդրէին, զբագինսն, զերդսն, զլարէն իւրեանց ընտանի' յորս դու հինաբար մտեալ էր: Ի խնդրել նոցա զայսոսիկ զինուք, որոց և էինն իսկ օրինօք, թէպէտ և յիրս անիրա-ւութեան զի՞նչ արդար մարթիցի գտանել, սակայն արդար յոյժ էր, վաճառողին Կն. Պոմպէոսի՝ տալ պատերազմ ընդ որդիսն Կն. Պոմպէոսի: Եւ զի՞նչ ուրեմն. դու 'ի Նար-բոն' զսեղանս հիւրասիրացդ փսխեցես, Դոլաբէլլա 'ի Սպանիա փոխանակ քո պատերազմեսցի:

Իսկ զի՞նչ դարձն 'ի Նարբոնէ: Եւ սակայն խնդրէր' թէ առ-ի՞նչ ես այնպէս ձեպով դարձայ 'ի ծովաչու ճանապարհէս[74]: Փոքր մի յառաջ յայտ արարի, Հայրք ատենակալք, զպատ-ճառս դարձիս[75]: Ընտրեցի, եթէ էր ինչ հնար, և յառաջ քան զամսամուտն Յանուարի ժամանել յօգնութիւն ըն-կերհաշտութեանս: Այլ զի հարցանէիր զղխարդն դարձիս, նախ' 'ի լոյս տուընջեան, ոչ 'ի խաւար գիշերոյ. ապա' կօշ-կօք և ախճղնաւոր պատմուճանաւ, ոչ 'ի մոյկս գալլիացիս և ոչ 'ի կրկնոց: Այլ տակաւին յիս դէտ ակն ունիս, նա և որպէս երևիդ' ցասուցեալ ես: Այո, ապաքէն հաշտ ընդ իս եղիցես դու եթէ 'ի վերայ հասանիցես' քանի՛ ամօթ կրեմ՝ ես ընդ զեղխութիւնդ քո' ընդ որ դու ոչ ամաչես: Ի բնաւ համաշխարհի զեղծագործութիւնս' չտեսի ինչ ու-րեք գարշագոյն, չլուայ ինչ: Որ ապահարկեալ լինել թուէ-իր յաչս քո, և յառաջիկայ ամին զբդեշխութիւն խնդրելոց էիր, մանաւանդ թէ թախանձելոց, այգպխոդ դու՝ ընդ ազատ քաղաքս և ընդ գաղթականս Գալլիոյ, ուստի մեք

ամօթ էաք զբզեշխութիւն խնդրել, մինչդեռ խնդրելի էր բզեշխութիւնն և ոչ Թախանձելի[76], զոր 'ի մոյկս գալլիացիս՝ կրկնոց զԹիկամբք ընդ նոսին ընԹացար: Այլ տեսէք զԹեԹեւութիւն առնն: Իբրև զտասն ժամաւն հասեալ 'ի Կարմիր վէմսն՝[77] ծմուռ սողեցաւ 'ի կրպակի ուրեմն, և անդ 'ի Թաքստեան էարբ սաստիկ մինչև ցընդերեկն, անտի երկանիւ կառօք շտապ տաղնապաւ յառաջ վարեալ եկն 'ի տուն՝ պատատեալ զգլուխն: — Դռնապանն. Ո՞վ ես դու: — Դեսպան 'ի Մարկոսէ: — Անդէն վաղվաղակի առ նա[78] ուր վասն երկեալն էր՝ ածեալ լինի. և տայ 'ի նա Թուղթ մի: Զոր իբրև ընթեռնոյր նա արտասուախառն, — քանզի սիրաբար էր գրեալ՝ և զլուխ բանիցն, ոչ եւս ինչ այնուհետև ընդ վարձակին ունել, զամենայն տարփումն նորա 'ի բաց Թօթափեալ և բովանդակ յինքն զեղեալ, — և 'ի յորդ արտասուս հեղուլ կնոջն, ոչ կարաց հանդարտել այրն գորովալիր, հոլանեաց զգլուխն և անկաւ զպարանոցաւն: Ո՞վ այր անպիտան. զի զի՞նչ այլ ասացից. չունիմ զպատշաճագոյն ինչ ասել: Արդ ուրեմն, զի զքեզ կնամարդիգ յանկարծուստ երևեալ՝ արտաքոյ ակնկալութեանն տեսանիցէ կինն, վասն այնորիկ զքաղաքն՝ գիշերական արհաւրօք, և զԻտալիա՝ բազմօրեայ երկիւղիւ դղրդեցեր[79]: Ընտանին զատու քեզ պատճառք տռփանաց, և արտաքոյ եւս չարագոյն, այն զի մի՛ Լ. Պլանկոս զինչս երաշխաւորացդ 'ի վաճառ հանիցէ: Կոչեցեալ ապա յատեան 'ի հրապարակէտն ժողովրդեանն, իբրև ետուր պատասխանի՝ Թէ վասն իրքն իմոյ եկեալ եմ, զերդու ամբոխին եւ 'ի քեզ արձակեցեր[80]: Այլ շատ է շատ զմնացեալքս, առ մեծամեծսն ընթացուք:

Կեսարու՝ 'ի դարձին 'ի Սպանիոյ՝ գնացեր ընդ առաջ մինչև ցմեծ հեռաստան: Հապճեպով գնացեր և եկիր, զի գէթ ժիր տեսցէ զքեզ, Թէպէտ և ոչ կարի իմն քաջ: Դարձեալ վերստին, չգիտեմ որպէս, եղեր նմա ընտանի: Է՞ր էր 'ի Կեսար այս ինչ. զոր ոք տեսանէր 'ի պատճառս պար-

բայց եթէ որում 'ի մտին իցէ հմայս հմայել. այլ զայդ 'ի ժողովսն անդ՝ չհրամայեն օրէնքն. իսկ եթէ ուրուք հըմայեալ իցէ, ոչ 'ի լինել անդ ժողովոցն՝ այլ յառաջագոյն պարտի ազդ առնել: Բայց տգիտութիւն խառն ընդ լրբութեան է. ոչ զհաւահմայի պատշաճն գիտէ, և ոչ զցածնոյն գործէ: Արդ, յօրէ անտի յայնմանէ մինչև 'ի հնգետասանն Մարտի յիշէք զբդեշխութիւն նորա. ո՞վ ոք երբէք արբանեակ խոնարհ իբրև զնա, նուաստ իբրև զնա: Ինքնին անկարող առ ամենայն, զամենայն ինչ աղերսէր. զգլուխն 'ի հանդիպակաց գահաւորակն[84] խոթեալ, շնորհս 'ի պաշտօնակցէն խնդրէր առ 'ի վաճառել:

Ահաւասիկ օր ժողովոյ Դոլաբելլայ: Վիճակարկութիւն առաջնոյ ընտրեալ հարիւրեկին[85]: Հանդարտէ: Քարոզի: Լռէ: Յառաջ կոչի առաջին դասն. քարոզի: Ապա որպէս սովոր է՝ յառաջ կոչի դասն երկրորդ 'ի վիճակարկութիւն: Եւ այս ամենայն՝ արագ քան զոր ասացի՝ կատարեցաւ: Յետ իրացն վճարելոյ՝ հաւահմայն քաջ, — գոցցես Լեղիոս ոմն, — ասէ. Յայլում աւուր: Ո՛վ նորագոյն անամօթութեանն: Զի՞նչ տեսեր, զի՞նչ իմացար, զի՞նչ լուար. զի ոչ հմայս ինչ հմայեալ ասացեր զքեն, և ոչ այսօր ինչ պատմես: Այն ինչ ուրեմն դիպաւ յոռութիւն, զոր քո յառաջնմէ 'ի գլուխ ամսոյն Յանուարի տեսեալ էր թէ պատահելոց է, և այնչափ կանխաւ գուշակեալ: Ապա ուրեմն, ո՛ն և ո՛ն, առաւել 'ի քո գլուխդ, որպէս ակն ունիմ, քան յընկերհաշտութեանն ստեցեր զհմայսն, արկեր զժողովուրդն հռովմէական յերկիւղ խորանաց կրօնից, հաւահմայ հաւահմայի, բդեաշխ բդեշխի[86] ազդեցութիւն արարեր: Ոչ կամիմ կուտակել զբանս, զի մի՛ զհրամանսն Դոլաբելլայ[87] եղծանել թուիցիմ, որոց հարկ է յաւուր միում գալ յաւանդ 'ի մեր ուխտս: Այլ զյանդգնութիւն առնն և զապարասանութիւն ծաներուք: Յորժամ քեզ կամք իցեն, թերակատար բդեշխ Դոլաբելլա. ապա դարձեալ իբրև կամիցիս, անթերի հմայիւք ընտրեալ[88]: Իսկ

եթէ չէք և ոչինչ յազգն տանել հաւահմայի՝ որովք գուն ազգեցեր բանիւք, խոստովան լեր՝ թէ յասելդ. Յայլում աւուր՝ չէիր զգաստ միտաց տէր. իսկ եթէ գուցէ ինչ զօրութիւն 'ի ձայնսդ, զինչ այն իցէ. հաւահմայս 'ի պաշտօնակցեդ հարցանեմ:

Այլ զի մի գուցէ 'ի յողնաթիւ արարուածոցն Մ. Անտոնիոսի զմիով չքնաղագունիւն վաղեալ անցանիցէ բանս, 'ի Լուպերկեան տօնսն մատիցուք: Ոչ պատրուակէ, Հարք ատեանակալք. խռովեալ թուի, ընդ քիրտն մտանէ, այլագունէ: Արասցէ զոր և կամի, միայն թէ մի փսխեսցէ, որպէս 'ի Մինուտեան գաւթին արար: Զինչ աղէ աղերսաբանութիւն կայցէ այնքանոյ եղեռնութեանն, ցանկամ լսել, զի տեսից՝ ուր ճարտարխօսութեան վարժապետին փարթամաշնորհն վարձք, ուր Լէոնտեան անդաստանքն երևիցին: — Նստէր 'ի բեմ հրապարակին պաշտօնակիցն քո, արկեալ պատմուճան ծիրանի, 'ի գահ ոսկեղէն, պսակ 'ի գլուխ [89]: Ելանես, մատչիս յաթոռն. — էիր քուրմ Լուպերկեան, բայց պարտէիր յիշել՝ թէ բդեշխ ես. — յերևան հանես թագ մի արքայական: Հեծութիւն ընդ հրապարակն ողջոյն: Ո՞ւստ ուստէք թագն այն. զի ոչ զանկեալն ինչ ուրեք բարձեր 'ի գետնոյ, այլ 'ի տանէ ածեր զերկնեալ և զխորհեալ եղեռնն: Դու թագ նմա 'ի գլուխ դնէիր ողբովք և կոծով ժողովրդեանն, նա մերժէր՝ [90] ծափիւքն և կայթիւք: Դո՞ւ ուրեմն միայն գտար, ո՛վ ամպարիշտ, որ առաջնորդ թագաւորութեան կացեալ՝ զպաշտօնակիցն քո տէր ունել կամէիր, և փորձ իմն 'ի թեթևս մատուցեալ փորձեցեր, զինչ յանձն առնուցու և հանդուրժեսցէ ժողովուրդն հռովմէական: Նա՛ և զգթութիւն որսայիր, անկանէիր առ ոտսն աղաչաւոր. առ 'ի զինչ խնդրելը. զի ծառայ լինիցիս. քեզ միայն խնդրէիր, որ 'ի մանկութենէ այնպէս կեցեր՝ զի զամենայն ինչ յանձն առնուլ առ 'ի հեշտ պաշտօն ծառայութեան. 'ի մէնջ և 'ի հռովմէական ժողովրդեանէն չունէիր բացէ 'ի բաց ամենևին զայդ.

պատուէր ։ Ո՞վ պչանչելի ճարտարախօսութեանդ քում, որ մերկանդամ առանձնաբանեցեր ։ Զի՞նչ այլ քան զայս զարչելի, զի՞նչ աղտեղի, զի՞նչ ամենայն պատուհասի արժանի ։ Սպասեցես թերևս՝ զի խմթանաս դքեզ ընդդատուցից. եթէ խուն մի է 'ի քեզ զգայութիւն, այս բանք կեղեքեն զքեզ, յարբուն թամթաւեն ։ Խիթամ թէ մի՛ նուաղ արարից զխօսս արանցն վսեմականաց [91], սակայն առաջեկ 'ի ցուցս ած-պեալ ։ Անարժան յոյժ է կեալ Թագաւորին, որ ըստ ամենեցուն վկայելոյ՝ արժանապէս սպանաւ մերժողն Թագի ։ Նա՛ և արձանագրել հրամանն ետ 'ի գիւտնս Լուսպերկեանամնից ․ « Կ․ Կեսարու, միշտանձնեայր իշխանապետի, Մ․ Անտոնիոս բռնեղի՝ պատուիրանաւ ժողովրդեան մասնոյց Թագաւորութիւն, Կեսար չկամեցաւ առնուլ » ։ Արդ ոչ եա զարմանեամ զի վրդովես զխաղաղութիւն, զի ատեաս՝ ոչ միայն զատաւնս, այլ և զլոյս ․ զի ընդ կորստականն աւազակաց ոչ միայն զօրն կեաս, այլ և առ օրին [92] ։ Զի՞ ուր ուրեք զու 'ի խաղաղութեան զետեղ առնուլ կայցես ․ ո՞ր այն քո անեղի կցէ յօրէնսն և 'ի զատաստանս, զորս զու՝ որչափ ինչ 'ի ձեռաց էր՝ Թագաւորական անէրութեամբ բարձեր ։ Մխթէ յո՞յն առկս Լ․ Տարկուինիոս հալածեցաւ, Սպուրեանքն Կասսիոս, Մելիոս, Մ․ Մանլիոս սպանան, զի 'ի վախճան գարուց բազմաց 'ի Մ․ Անտոնիոսէ արարցոյ աստուածեղէն իրաւանց Թագաւոր կարգեսցի 'ի Հռոմ ։ Այլ 'ի հաւահնմայն զարձցուք ։

Զորոց իրաց 'ի հարց և 'ի քննին էր մտանելոց [93] Կեսար յառենի աւագանւոյն 'ի հնդկատան Մարսի, զի՞նչ անել էր քեզ յայնժամ, հարցանեմ ։ Լսեի զքէն՝ կազմ և պատրաստ եկեալ, զի կարծեալ այնպէս էր քո զինեն՝ թէ հանդերձեալ էցեմ զատութենէ հմայեցք խօսել, Թէպէտ և հարկ այնուհետև էր անսալ նոցա ։ Հռոմէական ժողովրդեանն բախտ բարձ ատարս զօրն զայն ․ մի՛ եթէ և զքոյդ զատաստան զհաւահնմայից եթո՞րձ մահն Կեսարու ։ Այլ եկի անկայ յայն ժամանակ, զոր կանխել խօսել արժան է

քան զերան՝ յորս մնացեալ էր ձառս ։ Զի՞նչ այն փախստեան էր քո, զի՞նչ արհաւիրք յաւուրն յայնմիկ ․ զի՞նչ առ խղճի չարեացդ յուսահատութիւն կենաց, յորժամ 'ի փախըստեանն անտի՝ շնորհիւ այնոցիկ, որ եթէ ողջամիտ ոք էիր՝ փրկել զքեզ կամեցան, զաղտագողի թաքթաքուր անկար 'ի տունդ ։ Ո՛վ իմոցս 'ի նանիր՝ միշտ ճշմարիտ գուշակութեանց հանդերձելոցն ։ Ասէի 'ի Կապիտոլին [94] առ ազատեցուցիչսն մեր, խրբև կամէին զիս առ քեզ առաքել՝ առ 'ի յորդորելոյ զքեզ 'ի պահպանութիւն ընկերհաշտութեանն, թէ՝ մինչդեռ յահի իցես՝ զամենայն ինչ խոստանայցես, 'ի փարատել երկիւղիդ՝ դարձեալ դու քեզ նման գտանիցիս ։ Վասն որոյ 'ի գալ և 'ի գնալ այլոց 'ի բդեշխական կարգէն՝ ես հաստատուն կացի 'ի միտս իմ, և զքեզ ոչ զայն օր և ոչ զմիւս տեսի ․ և յանհնարից համարեցայ՝ թէ կնքեսցին ինչ ընդ սա զաշինք միաբանութեան քաղաքացւոց ապաքինելոց ընդ չարաչուք թշնամւոյ ։ Յետ աւուրն երրորդի եկի 'ի տաճարն Երկրի [95], և այն ակամայ, ուր յամենայն անցս զարանակալ նստէին սպառազէնք ։

Ո՛րպիսի ինչ եղև քեզ օրն այն, Մ. Անտոնիէ ։ Թէպէտ և իսկ և իսկ թշնամի ինձ դարձար, սակայն ողորմիմ քեզ, զի դու ընդ քեզ խանդացար ։ Ո՛րպիսի այր, դի՞ք անմահք, և ո՛րչափ մեծ լինէիր, եթէ զյիշատակ աւուրն այնորիկ կարացեալ էիր ունել 'ի միտ ։ Առ ձեռն կայր մեզ խաղաղութիւն, որ և եղեալ իսկ էր 'ի ձեռն պատանդին, ազնուական մանկանն՝ թոռինն Մ. Բամբալիոնի ։ Թէպէտ և երկիւղ, ոչ երկարօրեայ ուսուցիչ պարտուց, զքեզ 'ի քաղցրութիւն դարձուցանէր, այլ զառանցոյց զքեզ այն՝ որ 'ի գնալ երկիւղին անմեկնելին կայ 'ի քէն, յանդգնութիւնն ։ Նա և յայնժամ՝ յորժամ քաջալաւ զքեզ կարծէին, իմ յայլակարծիս գոլով, թաղման բռնաւորին տեսական կացեր ամենայն ամպարշտութեամբ ։ Այն քո չքնաղ գովասանութիւնք [96], այդ աղդահատանքդ քո, խրախուսանքդ քո ։ Դու, ասեմ, դու զջահսն զայն բորբոքեցեր, և զորմս կի-

տայրեաց կայնա, և որովք հրձիգ լեալ բոցակիզեցաւ տաճարանքն Լ. Բեղլինոսի: Դու զբռնութիւն արանցն այնոցիկ ժամուց, և կիսով մեծաւ՝ տորըկաց, զորս մեք ուժով և բաղկաւ վանեցաք, 'ի յարկս մեր խանձեցուցեր: Բայց և նոյն ինքեան, որպէս թէ զմուրդ ընչեալ յանձնէդ, 'ի միւս աւուրն զչնաշխարհիկ հրամանաւ հաներ 'ի Կապիտոլին, զի մի ինչ յետ հնգետասանից Մարտի կախեալի տախտակ ապահարկութեան կամ բարերարութեան: Ցիշատակեցեր քեզէն զվտարանդիսն, գիտես զոր ինչ զապահարկութենէն խօսեցար: Բայց ամենալաւ այն, զի զիշխանապետութեան անուն սպառսպուռ բնաջինջ բարձեր յաւիտեան յընկերահաշուեացս. որով այնպէս ինն յատելութիւն դարձեալ համարեցար թագաւորութեան, մինչև վասն դեռ ևս այն ինչ նորոգ գնացելոյ իշխանապետութեանն[97] զկասկած իսկ նորին բնաւ անհետ կորուսանել:

Այլոց՝ կանգնեալ թուէր ընկերհաշտութիւնս, իսկ ինձ՝ ամենեւին ոչ, որ 'ի քում վարչութեանդ յամենայն նաւաբեկութենէ խիթայի: Իսկ արդ, միթէ խաբեա՞ց զիս դա, կամ կարա՞ց ինչ յերկարաձգոյն ինքն ինքեան աննման լինել: Ձեզ ակն յանդիման 'ի բոլոր Կապիտոլին կախէին տախտակք. և ոչ միայն ումեք ումեք վաճառէին ապահարկութիւնք, այլ և ընդհանուր ազգաց և ազանց: Քաղաքակցութիւն ոչ ևս առանձինն ոմանց շնորհէր, այլ նահանգաց միանգամայն: Արդ՝ եթէ այսպիսիկ կացցեն մնասցեն, որոց 'ի կալ ընկերհաշտութեան չմարթի մնալ, համօրէն զամենայն նահանգս կորուսէք, հարք ատենակալք. և ոչ միայն հարկք հասոյթական ժողովրդեանն, այլ և տէրութիւնն զլխովին նուաղեցաւ սորա առտնին շահավաճառօքն: Ո՞ւր էցեն եօթանասուն հազար բիւր փողքն՝ որ 'ի տախտակսն առ Ոփսեայ տաճարին 'ի յայտ կային. արծաթ նորա ապաքէն եղեռնական[98], բայց սակայն՝ եթէ առ տեարսն չդառնայր, կարէր զմեզ 'ի հարկահանութեանց ազատել: Իսկ դու՝ որ 'ի հնգետասանն Մարտի չորեք հազար բիւրս

փողոյ պարտէիր, զի՞րդ. յառաջ քան զամսագլուխն Ապրի-
լի վճար եղև պարտուցն քոց: Արդարև անթիւ են և զոր այլք բազումք գնեցին ոչ առանց գիտութեանդ, բայց վճիռ մի նշանաւոր զԴիոտարայ արքայէ, զմեծ բարեկամէ հռովմէական ժողովրդեան, 'ի Կապիտոլին կախեցաւ. յորոյ երեսըն՝ չգոյր ոք որ և 'ի ցաւսն անդ կարիցէ արգելուլ ըզծաղըն: Զի ո՞վ ոք ումեք առաւել ոխերիմ քան Կեսար Դիոտարայ, նոյն և դասու աւագանւոյս, նոյն և ասպետացն, նոյն և մասսիլիացւոցն, նոյն և ամենեցուն առ հասարակ՝ որոց զընկերհաշտութիւն հռովմէական ժողովրդեան սիրելի տեսանէր: Ուրեմն, յորմէ առ կենդանութեամբ նորին ոչ 'ի մօտոյ ոչ 'ի հեռուստ բարի ինչ յիրաւի և յարժանի ընկալեալն էր, առ վախճանելոյն երախտագիտ երևեալ է: Խօսեալ էր խստիւ ընդ ասպնջականին, 'ի համար մտեալ ընդ նմա, հրամայեալ արծաթ, և 'ի յոյն ընկերակցաց իւրոց նստուցեալ զմի ոմն 'ի շամշտութեան նորա. հանեալ 'ի նմանէ զհայս՝ զոր տուեալ էր աւագանին: Զայսոսիկ կենդանեաւ իւրով կապտեալ 'ի նմանէ, ապա յետ մահուն դարձոյց անդրէն ուրեմն: Այլ՝ որո՞վք բանիւք. մերթ՝ զի արդար թուի ինքեան, մերթ՝ զի ոչ անիրաւ. պատուած բանից զարմանալի: Բայց նա [99], — քանզի ցանդ օգնական եղէ Դիոտարայ 'ի հեռաւորութեան անդ իւրում, — ոչ երբեք արդար երևել ասէր յաչս իւր՝ զոր ինչ և խնդրէաք մեք վասն նորա: Եւ ահա մուրհակ մի հազար բիւր փողոյ 'ի ձեռն դեսպանաց, արանց բարեաց՝ բայց երկչոտաց և անփորձից, առանց մեր և առանց այլոց հիւրոց թագաւորին խորհրդոյ՝ յօրինեալ 'ի խորտապճին կանանւոյն [100], յորում տեղւոջ շատ ինչ իրք 'ի վաճառ եղեն և եղանեն: Զինչ առնելոցն իցես մուրհակաւն այնուիկ, մտայոյզ լինիս՝ կարծեմ. զի թագաւորն՝ ինքնին իւրով կամաւ, առանց ինչ հարցանելոյ զյիշատակագիրսն Կեսարու, ընդ լսելն զազատութիւն նորին, իւրով իսկ զլխով զքաղաք. հարկ զտէրութիւն իւր: Գիտէր այրն իմաստուն, զի իրա-

ւունք են միշտ՝ զկողոպտածս բռնաւորաց անգղէն սատանայ՝ զրկելոյն՝ 'ի սպանանել բռնակալացն։ Արդ, ոչ ոք իրաւագէտ, նա և ոչ իսկ այն՝ 101 զոր դու միայն առ իրաւագէտս ունիս և նովաւ գործես զայգասիկ, պարտս ինչ համարել տալցէ 'ի մուրհակէ այսմ փոխանակ ստացուածոց՝ որ յառաջ քան զմուրհակն 'ի բուռն արկեալ էին. զի ոչ եթէ 'ի քէն գնեաց, այլ մինչ չև քո զիւրն նմա վաճառեալ՝ ինքնին ստացաւ։ Նա այր երևեցաւ, իսկ մեք՝ անզգամեալք, որ զգործողն ատեամք, գործոցն պաշտպան լինիմք։

Իսկ զի՞նչ ես զանեալ արձանաց, զի՞նչ զանհամար յետկարաց խօսեցայց, որոց և նմանահանգք գոն 102, որ երբև զսուսերամարտիկ խաղուցն ազդարար պիտակս հրապարակաւ վաճառեն զայնս. ուստի այնչափ անչափ կոյտք զրամոց առ սմա մթերին, մինչև ոչ համարել զարծաթն, այլ կշռել։ Այլ քանի՞ զաչացու է ապահովութիւն։ Արդ եւ կախեցաւ տախտակ՝ որով Կրետացւոցն ամենափարթամ քաղաքք ազատս թողեալ լինէին 'ի հարկաց, և սահմանի Կրետէ՝ ոչ ևս յետ Մ. Բրուտոսի փոխանակի բդեշխի՝ լինել մեզ նահանգ։ Մտաց տէ՞ր եղես դու, ո՞չ դու կապելոյ արժանի։ Մինթէ Կեսարու հրամանաւ, յետ ելիցն Մ. Բրուտոսի, կարէ՞ր ազատ լինել Կրետէ, ուր առ կենդանեաւ Կեսարու տակաւին չև էր անկ Կրետէ Բրուտոսի։ Այլ վաճառով հրամանիդ այդորիկ, — զի մի՛ համարիցիք ոչինչ յարգիւնս եկեալ, — կորուսէք զնահանգն Կրետէ։ Չերևեցաւ ոք ամենևին իմիք տագնապ, որում ոչ առ ձեռն պատրաստ կայցէ Անտոնիոս 'ի վաճառել։ Եւ զվտարանդեացն օրէնս՝ զոր կախեցեր, մինթէ և զայն Կեսա՞ր կարգեաց։ Ոչ ուրուք թշուառութեան արհամարհող եմ. բողոքեմ միայն, նախ՝ զի զորոց զատաստանն անմեղան դատեալ էր Կեսարու, դու զնոսա հաւասարորդս եդիր 'ի դարձ. և ապա՝ զի չգիտեմ է՛ր վասն ոչ զնոյն և այլոց շնորհեցես. զի և չմնացին այլք քան զերիս կամ զչորս։ Որ միանգամ 'ի նոյն աղէտս են, ընդէ՞ր չվայելիցեն 'ի նոյն ողոր-

մուԹեանդ. հեմ զնոսա 'ի տեղի հօրեղբօրդ ունիցիս, զորմէ չկամեցար հրաման տալ 'ի տալդ զայլոց. զոր և գրգռեցեր ես խնդրել զպաշտօն քննողուԹեան վարուց, և հորդեցեր նմա զխնդիրն, որ 'ի ծայր և 'ի սրտաանջ շարժեաց [103] զո-րեարն: Իսկ առ ի՞նչ զժողովն ոչ գումարեցեր. մինԹէ զի հազարապետաց ժողովրդեանն գուժէր շանԹ 'ի ձախմէ [104]: Յորժամ քո ինչ պէտք լինիցին, ոչ ինչ են հմայք. յորժամ քոյոցդ, անդ երկիւղած խտրող երևիս: Չի՞նչ. միԹէ ո՞չ և յիշխանուԹենէ արանցն եօԹանց 'ի բաց զնա լքեր [105]: — Քանզի կրճիմ ընդ մէջ անկեալ . . . Յիմէ՞ երկեար. կարծեմ, զի զուցէ 'ի յաւանել նորա 'ի կեանս՝ չմարԹիցես յուրաստ յիմէքէ լինել: Ամենայն Թշնամանօք լցեր զնա՝ զոր 'ի տե-ղի հօր պաշտել պարտ էր, եԹէ էին ինչ 'ի քեզ ազնք: Ըզ-զուստր նորա, զքո քոյրամԹիւ, ընկեցեր արտաքս, խնդրեալ քեզ այլ իմն հարսանիս և յառաջագոյն նկատեալ [106]: Չէ շատ, այլ և 'ի պարշուԹիւն զրպարտեցեր զկինն անմեղա-պարկեշտ: Չի՞նչ այլ յաւելուլ կայցէ. այնու ևս ոչ շա-տացեալ, 'ի յոգնախուռնմբ աւագանւոյն յամսագլխին Յա-նուարի, անդ բազմեալ և հօրեղբօրդ [107], լրբեցար զայն ինչ ասել քեզ պատճառս ատելուԹեան ընդ Դոլաբելլայ, զի քեռն քում և կնոջ՝ խարդաւանուԹիւն առ 'ի նմանէ եղեալ գտեր: Ո՞վ բաւական իցէ Թարգմանել, արդեօք ա-ռաւել անամօ՞Թ իցես՝ զի յատենի աւագանւոյն, Թէ առա-ւել չար՝ զի զԴոլաբելլայ, Թէ առաւել անպարկեշտ՝ զի լու 'ի լու հօրն, Թէ առաւել անագորոյն՝ զի 'ի տառապեալ կինն, զայդ պղծուԹիւն և զայդ անօրէնուԹիւն բարբառե-ցար: Այլ դարձեալ 'ի ձեռնագրեալ յետկարան եկեսցուք: Զո՞ր հարց և քնին արարեր. զի յաւագանւոյն վասն խա-ղաղուԹեան հաստատեալ պահեցան վճռականքն Կեսա-րու, զոր ինչքն Կեսար հրամայեալ իցէ, ոչ զոր Անտոնիոս ասիցէ՝ 'ի Կեսարէ հրամայեալս: Ուստի՞ այդքանիկ յոր-դեալ եղանեն, յորմէ՞ ականէ բղխեն: ԵԹէ սուտ են, ըն-դէ՞ր լինին հաճոյ. եԹէ ճշմարիտ, ընդէ՞ր վաճառին: Այլ

սովոր էիր զմահապարտսն՝ 'ի հրապարակին կործանելոց 113. որ խելև պատմեցաւ քեզ, որպէս յայտնի էր որոց ընդ քեզն էին, անկար ելևկար։ Զինչ յետ այնորիկ անցք ան-ցին, ոչ գիտեմ. կարծեմ՝ երկիւղ և զէնք բանակային 114. դպաշտօնակերց յերկինից ընկեցեր. և արարեր, ոչ և այժմ ինչ զու՝ զի քեզ հանդոյն լինիցի, այլ զի անշուշտ ինքն ին-քեան լինիցի անհնարին։

Իսկ զի՞նչ առաւ զարմ ևս անդրէն 'ի Հռովմ, որպիսի՞ ամբոխութիւն համօրէն քաղաքիս։ Յուշ լինէր մեզ Կիննա անշուշտ հզօրացեալ, ապա Սիլլա տիրացեալ, արդ և ա՛ Կեսար տեսաք թագաւորեալ։ Էին թերևս սուսերք, այլ ծածուկք, և ոչ այսչափ բազումք. իսկ այս զի՞նչ և ո՞ր խժդժութիւն էր։ Զհետ ընթացան զինուորք սուսերա-ւորք՝ զունդ չորեքկուսի, տեսանելիք վահանս ածեալ շա-լակօք։ Եւ այսուցիկ, Հայրք առանձնակալք, խրև վարուց հնա-ցեալ առաքինութեանց՝ ժուժկալեցաք։ Ի գլուխ անսանձն Յունեաց խրև կամեցաք, որպէս էրն կէս եղեալ, զայլ յա-տեան տապանակայս, յեղակարծ ահիւ զարհուրեալ 'ի փա-խուստ դարձաք։ Իսկ դու՝ որ անկարօտն էր ատեանսայ, ոչ զոք խնդրեաց, այլ մանաւանդ ուրախ լեալ ընդ մեկնել մեր՝ կատարեաց խակ և խակ զախորժելի յօրինուածութիւնն։ Որ մուրհակացն Կեսարու պաշտպանն կայր 'ի շահ անձինն, նա ինքն զօրէնսն Կեսարու՝ և զերևելին՝ տապալեաց, զի զանկերհաշտութիւնն կարող լինիցի տասանեցուցանել։ Յա-ւել 'ի թիւս ամաց 115 իշխանութեանցն. և որում հրաման-նաց Կեսարու ջատագովս լինել պարտ էր, 'ի հասարակաց և 'ի մասնաւոր իրս զվճիռսն Կեսարու պատառեաց։ Ի հա-սարակացս՝ չէք ինչ պատկառելի քան զօրէնս, 'ի մասնա-ւորս՝ հաստատուն է կտակն։ Զօրէնս՝ էր զոր առանց քա-րոզելոյ եբարձ, և էր զոր առ 'ի բառնալ՝ քարոզեաց։ Զկտակ՝ որ և առ յետին անձինքս քաղաքացիս յարգեալ է միշտ, դերև արար։ Զպատկերսն զրօշեալս և նկարեալս, զոր Կեսար զպարտէզօքն հանդերձ ժողովրդեանն ժառանգե-

ցոյց, սա՝ էր զոր 'ի պարտէզսն Գոմկլեայ փոխադրեաց, էր զոր յամարանոցն Սկիպիոնի [116]:

Եւ դու խնամով եղեր 'ի յերջանիկ Կեսարու. սիրեցես զու զնա մեռեալ: Զի՞նչ եղեալ նա մեծ քան զայն փառս, զի ունէր բարձ, զլոշեալ, զարմանուանց զմեկնթայարկ [117] և քուրմ: Իսկ արդ՝ որպէս Արամազդայ, որպէս Արեսի, որպէս Կուիրինեայ, նոյնպէս և աստուածարեալն Յուլեայ եղէ՞ ուրեմն քուրմ Մ. Անտոնիոս: Արդ զի՞ դու, զի՞ ոչ նուիրիս և կատարիս. ընտրեա օր, ահա ո զքեզ օրհնեսցէ. պաշտօնակիցք եմք, ոչ ոք առցէ հրաժեշտ: Ո՞վ այր գարշ, թէ բանտուորին եղեւ քուրմ, և թէ սատակամահին: Հարցցանեմ այսուհետև. անդէ՞ս եղեւ աւուրքս՝ զի՞նչ է օրս այս [118]: Զմոռացեր թէ չորրորդ օր էր երէկ 'ի կրկեսին խաղուցն հռոմէականաց. և քո իսկ հրամանաւ առ ժողովուրդն հանեալ, զի հինգերորդն ըստ նմանէ օր՝ Կեսարու նուիրեալ լիցի: Ընդէ՞ր չեղեւեմք պատմուճանեալ, առ ի՞մ ներեսցէ սպասուս զպատուէն առնել Կեսարու՝ զսուեալն քոյով օրինօք: Մի՞ եթէ կալեր յանձին պղծել զօրն՝ յաւելլով պաղատանօք, իսկ զբարձկննեարն ոչ կամեցար: Կամ յամենայն բայց 'ի բաց բարձ զկլոռն, կամ պահես յամենայնի մինչև 'ի սպառ: Խնդրեցես. եղէ՞ ինձ հաճոյ բարձ, զմեկնթայարկ, քուրմ: Ինձ՝ և ոչ մի ինչ յայդցանէ հաճոյ է. բայց դու՝ որ հրամանացն Կեսարու պաշտպան կաս, զի՞նչ ունիցիս ասել, թէ զմի՞ կիսոցն պաշտպան կաս, զայլոց անփոյթ առնես. բայց եթէ զի խոստովան լինել կամիցիս, թէ քեզ ամենայն ինչ քոյդ շահիւքդ չափ է, ոչ նորա արժանեօքն: Ո՞ն, հաճեա զի՞նչ առ այսոսիկ. քանզի ունիս կալեալ միամ քում պերճաբանութեանդ: Յայժ քաջախօսնակ ոք ծանեայ զհաւրդ քո, իսկ զքեզ՝ ադատողէմ եւս հոլանի 'ի բանս: Նորա ոչ երբէք մերկանդամ հրապարակախօս լեալ, իսկ զքո զանազաճոյճ ատեան՝ զլանջաց տեսաք [119]: Ցուցես ինչ առ այսոսիկ պատասխանի, կամ բնաւ և բերան անգամ բանալ իշխեսցես: Իսկ զի՞նչ գտանիցես յայսչափ

կարակոս ձիոքն, որում պատասխանին տալ համարձա-կեցին ։

Այլ թողցուք զանցեալսն. միոյ աւուրս այսմիկ, այսմ սակս միայնում սերկեան աւուրս, վայրկեննիս այսմիկ ժամանակի յորում խօսիմս՝ պաշտպանեա թէ կարես։ Ընդէր շուրջ պատեալ բոլորեալ է աւագանիս զինաւորօք. զմէ՞ արբանեակք քո՝ սուսերաւոր կան ինձ յունկնդրութիւն. առ ի՞նչ դրանդիք Միաբանութեան տաճարին չեցեն բաց. առ իմէ՞ այս խժդժագոյնս քան զամենայն ազինս, զիտաւրացիս, կապարճաւորս ածես 'ի հրապարակ։ — Ի պահ պաշտութեան անձինն սակ արարեալ։ Արդ ո՞չ ապաքէն լաւ էր է հազար անգամ կորնչել, քան յիւրում քաղաքի առանց զինապահ զինուորաց չկարել կեալ։ Այլ այդ, եթէ հաւատաս ինձ, չէ ինչ բնաւ պահպանութիւն. զսէր և բարեակամութիւն քաղաքացւոց պարտ է շուրջ բակ ունել, ոչ զէնս։ Հանցէ խլեսցէ 'ի քէն զայնուսիկ ժողովուրդն հռովմէական. ո՛ տայր թէ մեր ողջանդամ ապրելով. բայց որ ինչ և ընդ մեզ անցուցանիցես անցս, ցոր վայր 'ի դոյն խորհուրդս համակեալ ծրագրեալ կաս, ոչ կարասցես՝ հաւատա ինձ՝ երկայնակեաց լինել։ Քանզի և ամուսինդ քո այդ՝ անձնէքն անագահ, զոր ես առանց նախատելոյ նկարագրեմ, յոյժ ընդ երկար յապաղէ զհասոյթն երրորդ [120] հռովմէական ժողովրդեան։ Գոն ժողովրդեանն հռովմէացւոց՝ յորս ապաստարեսցէ զքեզխս ընկերհաշտութեանն, որ և յոր ծագս երկրի զասանիցեն, անդ են ընկերհաշտութեանն պահնակք, նա մանաւանդ ընկերհաշտութիւնն ինքնին զըլ-խովքն, որ ցայժմ զքէն վրիժուցն ևեթ եհան, չև ևս եդիս զանձն։ Են են ընկերահաշտիցս պատանիք ազնուատոհմք՝ պատրաստք 'ի պաշտպանութիւն։ Ցեղի տացեն՝ որչափ և կամին՝ հանգստեան պարապելով. համայն յեաս այարեն կոչեսցէ զնոսա ընկերհաշտութիւնն։ Քաղցր է ապաքէն և անուն խաղաղութեան, և ինքն իսկ կենսաբեր. բայց ընդ խաղաղութիւն և ընդ ծառայութիւն՝ բազում է խորոց

'ի միջի։ Խաղաղութիւն է՝ հեզ և հանդարտ ողջամտութիւն․ ծառայութիւն՝ յեռանդն ամենայն չարեաց, ոչ պատերազմաւ միայն, այլ և մահուամբ չափ հերքելի։ Աղաստարարքն մեր այնոքիկ, եթէ յերեսաց մերոց անհետացան, այլ զօրինակ գործոյն Թողին ասա․ զոր ոչ ուրուք արարեալ էր՝ արարին նոքա։ Պատերազմաւ հալածեալ Բրուտոս զՏարկուինիոս, որ յայնժամ Թագ կապեաց՝ յարժամ օրէն էր լինել Թագաւոր 'ի Հռոմ․ Սպուրեանքն Կասսիոս և Մէլիոս, Մ․ Մանլիոս, առ կասկած եթէ զԹագաւորութեան Թեկն ածելոյ՝ սպանան։ Սոքա [121] նախ սրախողխող արարին, ոչ զնկրտեալն 'ի Թագաւորութիւն, այլ զԹագաւորեալն․ որոց գործ նոցա՝ Թէ իմքնին չքնաղ իմն է և աստուածային, և Թէ 'ի կաղապար առաջի արկեալ․ նա աւանիկ այնպիսի փառս ժառանգեցին սոքա, զոր հազիւ Թէ երկինք Թուեցին բովանդակել։ Զի Թէպէտ և 'ի նմին իսկ վկայութեան մնաց չնաշխարհիկ գործոյն պատուղ բազում իցէ, սակայն մահկանացուի ոչ կարծեմ արհամարհելի զանմահութիւն [122]։

Արդ յիշեա, Մ․ Անտոնիէ, զօրն զայն՝ յորում ջնջեցեր զբռնակալութիւն․ առաջի աչացդ նկարեա զցնծութիւն ատապանոյն և զհռոմէական ժողովրդեանն․ մեծ ընդ նմին 'ի կշիռ զշահավաճառսն քո և զքոյոցդ․ յայնժամ 'ի միտ առցես՝ որչափ ինչ 'ի միջի իցէ փառաց և շահուց։ Բայց զոր օրինակ են որ յախտէ իմիքէ կամ Թմբրութեանք զգայնոցն չա[illegible]համ կերակրոց, նոյնպէս վաւաշոտք, ընչաքաղցք, չա[illegible]գործք չունին զճաշակ ճշմարիտ փառաց։ Այլ զքեզ եԹէ փառք չձգեն 'ի գործս ուղղութեան, ո՛չ և երկիւղ խոտորեցուցանէ 'ի չարեաց գործոց։ Ի դատաստանաց ոչ երկնչիս․ եթէ առ անմեղութեան, գովեմ․ եթէ առ բռնութեան, չիմանաս՝ Թէ աներկիւղն 'ի դատաստանաց յիմէ պարտիցի զանգիտել։ Զի եթէ յարանց քաջաց և յընտրական քաղաքացւոց ոչ զարհուրիս, վասն զի զի-

քան զիրսն՝ յորս մնացեալ էր ծառս ։ Զի՞նչ այն փոխատու էր քո, զի՞նչ արհաւիրք յաւուրն յայնմիկ. զի՞նչ առ խղճի չարեացդ յուսահատութիւն կենաց, յորժամ 'ի փախըստեանն անտի՝ չխորհէիր այնոցիկ, որ եթէ ողջամիտ ոք էիր՝ փրկել զքեզ կամեցան, գաղտագողի թաքթաքուր անկար 'ի տունդ ։ Ո՛վ խնդաս 'ի նախնիս՝ միշտ ճշմարիտ դաւաճանութեանց հանդերձելոցն ։ Ասէի 'ի Կապիտոլին [94] առ աղատեցուցիչսն մեր, իբրեւ կամէին զիս առ քեզ առաքել՝ առ 'ի յորդորելոյ զքեզ 'ի պահպանութիւն ընկերհաշտութեանն, թէ՝ մինչդեռ յահի լիցես՝ զամենայն ինչ խոստանայցես, 'ի փարատել երկիւղիդ՝ դարձեալ դու քեզ նման գտանիցիս ։ Վասն որոյ 'ի գալ և 'ի գնալ այլոց 'ի բդեշխական կարգէն՝ ես հաստատուն կացի 'ի միտս իմ, և զքեզ ոչ զայն օր և ոչ զկնի տեսի. և յանհնարից համարեցայ՝ թէ կռուեցին ինչ ընդու դաշինք միաբանութեան քաղաքացւոց առաքինեաց ընդ չարաշուք թշնամեաց ։ Յետ աւուրն երրորդի եկի 'ի տաճարն Երկրի [95], և այն ակամայ, ուր յամենայն անցս դարանակալ նստէին սպառազէնք ։

Որպիսի ինչ եղև քեզ օրն այն, Մ. Անտոնիէ ։ Թէպէտ և իսկ և իսկ թշնամի ինձ դարձար, սակայն ողորմիմ քեզ, զի դու ընդ քեզ խանդացար ։ Որպիսի՜ այր, զի՞ք անմահք, և որչափ մեծ լինէիր, եթէ զյիշատակ աւուրն այնորիկ կարացեալ էր ունել 'ի միտ ։ Առ ձեռն կայր մեզ խաղաղութիւն, որ և եղեալ իսկ էր 'ի ձեռն պատանդին, ազնուական մանկանն՝ թոռին Մ. Բամբայիոնի ։ Թէպէտ և երկիւղ, ոչ երկարօրեայ առաջնորդն պարտոյից. զքեզ 'ի քաղցրութիւն դարձուցանէր, այլ զտանջալոյց զքեզ այն՝ որ 'ի գնալ երկիւղին անմեկին կայ 'ի քէն, յանդգնութիւնն ։ Նա և յայնժամ՝ յորժամ քաղցրաբար զքեզ կարծէին, իմ յայլակարծիս գոլով, թաղման բռնաւորին տաղական կացեր ամենայն ամպարշտութեամբ ։ Այն քո չքնաղ գովասանութիւնդ [96], արդահատանիքդ քո, խրախուսանիքդ քո ։ Դու, ասեմ, դու զինահան զայն բարբառեցեր, և որոնք եկ-

տայրեաց կայնա, և որովք հրձիգ լեալ բոցակիզեցաւ տաճարանքն Լ. Բէլլինէնոսի: Դու զբռնութիւն արանցն այնոցիկ ժամուց, և կիսով մեծաւ՝ սորընկաց, զորս մեք ուժով և բաղկաւ վանեցաք, 'ի յարկս մեր խանձեցուցեր: Բայց և նոյն ինքն, որպէս թէ զմուրդ ընչեալ յանձնեդ, 'ի միւս աւուրսն զընաշխարհիկ հրամանսդ հաներ 'ի Կապիտոլին, զի մի ինչ յետ հնգետասանից Մարտի կախեսցի տախտակ ապահարկութեան կամ բարերարութեան: Ցիշատակեցեր քեզէն զմտարանդիսն, զիտես զոր ինչ զապահարկութենէն խօսեցար: Բայց ամենալաւ այն, զի զիշխանապետութեան անուն սպառսպուռ բնաջինջ բարձեր յաւիտեան յընկերահասարակաց. որով այնպէս իմն յատելութիւն դարձեալ համարեցար թագաւորութեան, մինչև վասն դեռ ևս այն ինչ նորոգ գնացելոյ իշխանապետութեանն[97] զկասկած իսկ նորին բնաւ անհետ կորուսանել:

Այլոց՝ կանգնեալ թուէր ընկերհաշտութիւնս, իսկ ինձ՝ ամենևին ոչ, որ 'ի քում վարչութեանդ յամենայն նաւաբեկութենէ խիթայի: Իսկ արդ, միթէ խաբեա՞ց զիս դա, կամ կարա՞ց ինչ յերկարաձգոյն ինքն ինքեան աննման լինել: Ձեզ ակն յանդիման 'ի բոլոր Կապիտոլին կախէին տախտակք. և ոչ միայն ումեք ումեք վաճառէին ապահարկութիւնք, այլ և ընդհանուր ազգաց և ազանց: Քաղաքակցութիւն ոչ ևս առանձինն ոմանց շնորհէր, այլ նահանգաց միանգամայն: Արդ՝ եթէ այսոքիկ կացցեն մնասցեն, որոց 'ի կալ ընկերհաշտութեան չմարթի մնալ, համօրէն զամենայն նահանգս կորուսեք, հարք ատենականք. և ոչ միայն հարկք հասոյթական ժողովրդեանն, այլ և տէրութիւնն զլխովին նուաղեցաւ սորա աւանին շահավաճառօքն: Ո՞ւր իցեն եօթնասուն հազար բիւր փողքն՝ որ 'ի տախտակսն առ Ոփսեայ տաճարին 'ի յայտ կային. արծաթ նորա ապաքէն եղեռնական[98], բայց սակայն՝ եթէ առ տեարսն չդառնայր, կարէր զմեզ 'ի հարկահանութեանց ազատել: Իսկ դու՝ որ 'ի հնգետասաննն Մարտի չորեք հազար բիւրս

փողոյ պարտէիր, զի՞րդ յառաջ քան զամսագլուխն Ալբի-ւլի վճար եղև պարտուցն քոց։ Արդարև անմիտ են և զոր այլք բազումք գնեցին ոչ առանց գիտութեանդ, բայց վճիռ մի նշանաւոր զԴիոտարայ արքայէ, զմեծ բարեկամէ հռովմէական ժողովրդեան, 'ի Կապիտոլին կախեցաւ. յորոյ երեսըն՝ չգոյր ոք որ և 'ի ցաւսն անդ կարիցէ արգելուլ ըզծաղըն։ Չի ո՞վ ոք ումեք առաւել ոխերիմ քան Կեսար Դիոտարայ, նոյն և դասու աւագանւոյս, նոյն և ասպետացն, նոյն և մասնիշխացուոցն, նոյն և ամենեցուն առ հասարակ՝ որոց զընկերհաշտութիւն հռովմէական ժողովրդեան սիրելի տեսանէր։ Ուրեմն, յորմէ առ կենդանութեամբ նորին ոչ 'ի մօտոյ ոչ 'ի հեռուստ բարի ինչ յիրաւի և յարժանի ընկալեալն էր, առ վախճանելոյն երախտագիտ երևեալ է։ Խօսեալ էր խստիւ ընդ ասպնջականին, 'ի համար մտեալ ընդ նմա, հրամայեալ արծաթ, և 'ի յոյն ընկերակցաց իւրոց նստուցեալ զմի ոմն 'ի շամշտութեան նորա. հանեալ 'ի նմանէ զհայս՝ զոր տուեալ էր աւագանին։ Զայսոսիկ կենդանենաւ իւրով կապտեալ 'ի նմանէ, տալս յետ մահուն դարձոյց անդրէն ուրեմն։ Այլ որո՞վք բանիւք. մերթ՝ զի արդար թուի ինքեան, մերթ՝ զի ոչ անիրաւ. պատուած բանից զարմանալի։ Բայց նա [99], — քանզի ցանդ օգնական եղէ Դիոտարայ 'ի հեռաւորութեան անդ իւրում, — ոչ երբեք արդար երևել ասէր յաչս իւր՝ զոր ինչ և խնդրէաք մեք վասն նորա։ Եւ տեհա մուրհակ մի հազար բիւր փողոյ 'ի ձեռն դեսպանաց, արանց բարեաց՝ բայց երկչոտաց և անփորձից, առանց մեր և առանց այլոց հիւրոց թագաւորին խորհրդոյ՝ յօրինեալ 'ի խորտպճին կանանւոյն [100], յորում տեղւոջ շատ ինչ իրք 'ի վաճառ ելին և ելանեն։ Զինչ առնելոյն իցես մուրհակաւն այնուիկ, մտայոյզ լինիս՝ կարծեմ. զի թագաւորն՝ ինքնին իւրով կամաւ, առանց ինչ հարցանելոյ զյիշատակագիրսն Կեսարու, ընդ լսելն զասպանութիւն նորին, իւրով իսկ զլխով զըռամբ-հարկ զտէրութիւն իւր։ Գիտէր այրն իմաստուն, զի իրա-

մութիւնդ. հեմ զնոսա 'ի տեղի հօրեղբօրդ ունիցիս, զորմէ չկամեցար հրաման տալ 'ի տալդ զայլոց. զոր և զրգեցեր եւս խնդրել զպաշտօն քննողութեան վարուց, և հորդեցեր նմա զխնդիրն, որ 'ի ծայր և 'ի սրտունջ չարժեաց [103] զօրէարն: Իսկ առ ինչ զծաղրական ոչ զուամարեցեր. միթէ զի հազարապետս ժողովրդեանն զուժէր չանել 'ի ձախմէ [104]: Ցորժամ քո ինչ պէտք լինիցին, ոչ ինչ են հմայք. յորժամ քոյոցդ, անդ երկիւղած խորող երևիս: Զի՞նչ. միթէ ո՞չ և յիշխանութենէ արանցն եօթանց 'ի բաց զնա կքեր [105]: — Քանզի կրձիմ ընդ մէջ անկեալ. . . Ցիմէ՞ երկեար. կարծեմ, զի զուցէ 'ի յառնել նորա 'ի կեանս չմարթիցես յուրասա յիմիքէ լինել: Ամենայն թշնամանօք լքեր զնա՝ զոր 'ի տեղի հօր պաշտել պարտ էր, եթէ էին ինչ 'ի քեզ աղէք: Ըզզուստր նորա, զքո քոյրաթիւ, ընկեցեր տրտմագս, խնդրեալ քեզ այլ իմն հարսանիս և յառաջագոյն նկատեալ [106]: Չէ շատ, այլ և 'ի զարշութիւն զըպարտեցեր զկինն ամենապարկեշտ: Զի՞նչ այլ յաւելուլ կայցէ. այնու ևս ոչ շատացեալ, 'ի յոգնախումբ ատեանին յամսագլուխն Յանուարի, անդ բազմելով և հօրեղբօրդ [107], լրբեցար զայն ինչ ասել քեզ պատճառս ատելութեան ընդ Դոլաբելլայ, զի քեռն քում և կնոջ՝ խարդաւանութիւն առ 'ի նմանէ եղեալ գտեր: Ո՞վ բաւական իցէ թարգմանել, արդեօք առաւել անամօ՞թ իցես՝ զի յատենի առաջանեայն, թէ առաւել չար՝ զի զԴոլաբելլայ, թէ առաւել անպարկեշտ՝ զի լու 'ի լու հօրն, թէ առաւել անողորմ՝ զի 'ի տառապեալ կինն, զայդ պղծութիւն և զայդ անօրէնութիւն բարբառեցար: Այլ դարձեալ 'ի ձեռնադրեալ յեռակարան եկեսցուք: Զօ՞ր հարց և քննեն առարեր. զի յատենականոյն վասն խաղաղութեան հաստատեալ պահեցան մձաւկանքն Կեսարու, զոր ինքն Կեսար հրամայեալ իցէ, ոչ զոր Անտոնիոս ասիցէ՝ 'ի Կեսարէ հրամայեալս: Ուստի՞ այսչափ յորդեալ եղանեն, յորմէ՞ տեղանէ բղխեն: Եթէ ստոյգ են, ընդէ՞ր լինին հանձոյ. եթէ չմարթին, ընդէ՞ր վաճառին: Այլ

թշուառութեան. ընդ փախչին ամենայն փրկանք[112]։ Թէպէտ և զհօրդ սա ունէր. այլ քանզի անհամեմատ ոք ունէր զնորին. զի Վարրոն ուսմանց խորոց ընտրեալ զայն Ճեմարան, ոչ շուայտութեանց։ Զի՞նչ բանք լինէին յատաղձագոյն 'ի դաստակերտի անդ, զի՞նչ ինչ 'ի գիրս գրոշմէին։ Իրաւունք Հռովմէական ժողովրդեանն, նախնեաց յիշատակարանք, ամենայն իմաստութեան օրէնք և ամենայն գիտութեան։ Իսկ 'ի քում վարձկանութեանդ, — քանզի չէիր տէր, — վայրքն առ հասարակ արբեցելոց ձայնիւք հնչէին, յատակք լողային 'ի գինի, տանկանային որմունք. պատանեկրամ մանկանն՝ ընդ խաղացեալս, բոզք ընդ տանտիկնայս թափթափէին։ Ի Կասինոն, յԱկուինոն, յԻնտերամնա երթային նմա յողջոյն. ոչ ոք մուծան 'ի ներքս. և այս յիրաւի. զի յանձին առն զարշելւոյ քամահեալ լինէին բարձի և պատուոյ նշանակք։ Անտի իբրև 'ի Հռովմ դէմ եդեալ մերձենայր յԱկուինոն, ընդ առաջ գնացին նմա ամբոխ բազում, զի քաղաքք է մարդաշատ. իսկ սա ամփոփեալ դեսպակաւ բարձեալ՝ անց ընդ քաղաքամէջն իբրև զմեռեալ։ Ընդ խոլ գործեցին ակուինացիք, բայց տակայն առ Ճանապարհաւն բնակեալ նոտէին։ Իսկ զի՞նչ անագնիացիք, որ 'ի բացէ գոլով յուղւոյն՝ եկին յողջոյն նմա իբրև բդեշխի։ Անհաւատ պատմութիւն, բայց վկայեալ յամենեցունց. ոչ զոք փոխարէն ողջունեաց, նա զի և երկուս անագնիացիս ընդ իւր ունէր, մին խլխաւն սուսերաց, միւսն բաժակաց։ Զի՞ ևս ես զպարծանայցիս սորա և զանարգասատական յիշատակեցից, որովք հրոսեաց 'ի սիդիկինեցիս, սատանեցոյց զպուտէոլացիս, զի զԿ. Կասսիոս, զի զԲրուտոսսն ունէին իւրեանց պաշտպանս։ Եւ տակայն մեծաւ ընտրողութեամբ, խնամով, լաւակամութեամբ և սիրով, և ոչ բռնութեամբ և զինուք որպէս զքեզդ, որպէս զԲասիլոսն և զայլս ձեզ նմանիս, որոց և ոչ թեարկել ոք յանձին կայցէ, թող թէ ընդ թևովք նոցին մտանել։ Մինչ դեռ դու մեկնեցար 'ի քաղաքէս, զի՞նչ այն օր եղև պաշտօնակցին քում. յորժամ զոր դու պաշտել

ցոյց, սա՝ էր զոր 'ի պարտէզսն Պոմպէոսի փոխառուբեաց, էր զոր յամարանոցն Սկիպիոնի [116]:

Եւ դու խնամոտ եղես 'ի յիշատակ Կեսարու. սիրեցես դու զնա մեռեալ: Զի՞նչ կալաւ նա մեծ քան զայն պատիւ, զի ունէր բարձ, զդրօշեալ, զարձանատանդ, զգմբէթայարկ [117] և քուրմ: Իսկ արդ՝ որպէս Արամազդայ, որպէս Արեայ, որպէս Կուիրինեայ, նոյնպէս և աստուածարելոյն Յուլեայ իցէ՞ ուրեմն քուրմ Մ. Անտոնիոս: Արդ զի՞ դադարես, զի՞ ոչ նուիրիս և կատարիս. ընտրեա օր, տես ո զքեզ օծեսցէ. պաշտօնակիցք եմք, ոչ ոք տացէ հրաժեշտ: Ո՛վ այր գարշ, թէ բռնաւորին իցես քուրմ, և թէ աստուածամահին: Հարցանեմ այսուհետև. անգէ՞տ իցես արդեօք՝ զի՞նչ է օրս այս [118]: Զգիտիցե՞ս թէ չորրորդ օր էր երէկ 'ի կրկէսին խաղուցն հռովմէականաց. և քո իսկ հրամանն առ ժողովուրդն հանեալ, զի հինգերորդն ըստ նմանէ օր՝ Կեսարու նուիրեալ լիցի: Ընդէ՞ր չիցեմք պատմուճանեալ, առ ի՞մ ներեմք ապախտ զպատիւն առնել Կեսարու՝ զտուեալն քոյով օրինօք: Մի՞ եթէ կալա՞ր յանձին պղծել զօրն՝ յաւելլով պաղատանս, իսկ զբարձկենեայսն ոչ կամեցար: Կամ յամենուստ բարցէ 'ի բաց բարձ զկրօնսն, կամ պահեա յամենայնի մինչև 'ի սպառ: Խնդրիցես. իցէ՞ ինձ հաճոյ բարձ, զգմբէթայարկ, քուրմ: Ինձ՝ և ոչ մի ինչ յայդցանէ հաճոյ է. բայց դու՝ որ հրամանացն Կեսարու պաշտպան կաս, զի՞նչ ունիցիս ասել, թէ զմի՞ կիսոցն պաշտպան կաս, զայլոց անփոյթ առնես. բայց եթէ զի խոստովան լինել կամիցիս, թէ քեզ ամենայն ինչ քով շահիւքդ չափի է, ոչ նորա արժանեօքն: Ո՞ն, հա՛պա զի՞նչ առ այսոսիկ. քանզի ակն կալեալ մնամ քում պերճաբանութեանդ: Յուժ քաջախօսնակ ոք ծանեայ զհաւդ քո, իսկ զքեզ՝ ազատադէմ ևս հոլանի 'ի բանս: Նորա ոչ երբեք մերկանդամ հրապարակախօս լեալ, իսկ զքո զանդամաձոյձ առն՝ զլանջսդ տեսաք [119]: Տացե՞ս ինչ առ այսոսիկ պատասխանի, կամ բնաւ և բերան անգամ բանալ իշխեսցե՞ս: Իսկ զի՞նչ գտանիցես յայսչափ

երկարախօս ճառս, որում պատասխանին տալ համարձա-կեսցիս :

Այլ թողցուք զանցեալսն. միոյ աւուրս այսմիկ, այսմ տանեմ՝ միայնում ներկեան աւուրս, վայրկենիս այսմիկ ժամանակի յորում խօսիմ՝ պաշտպանեա թէ կարես: Ընդէ՞ր շուրջ պատեալ բոլորեալ է աւագանիս զինուորօք. զմէ՞ արբանեակք քո՝ սուսերաւոր կան ինձ յունկնդրութիւն. առ ինչ գրանդիք Միաբանութեան տաճարին չիցեն բաց. առ ի՞նչ այս խժդժագոյնս քան զամենայն ազինս, զԻտու-րացիս, կապարճաւորս ածես 'ի հրապարակ: — Ի պահ զգուշութեան անձինն առնէ ասարեալ: Արդ ո՞չ ապաքէն լաւ իցէ հազար անգամ կորնչել, քան յիւրում քաղաքի առանց զինապահ զինուորաց չկարել կեալ: Այլ այդ, ենկ հաւատա ինձ, չէ ինչ բնաւ պահպանութիւն. զսէր և բը-լաւակամութիւն քաղաքացւոց պարտ է շուրջ զքեւ ունել, ոչ զէնս: Հանիցէ խլեսցէ 'ի քէն զայնուսիկ ժողովուրդն հռով-մէական. ո՜ տայր թէ մեր ողջանդամ ապրելով. բայց որ ինչ և ընդ մեզ անցուցանիցես անցս, ցոր վայր 'ի դոյն խոր-հուրդս համակեալ ծրգեալ կաս, ոչ կարասցես՝ հաւատա ինձ՝ երկարակեաց լինել: Քանզի և ամուսինդ քո այդ՝ ամե-նեւին անագահ, զոր ես առանց նախատելոյ նկարագրեմ, յոյժ ընդ երկար յապաղէ զհատոյթն երրորդ [120] հռով-մէական ժողովրդեան: Գոն ժողովրդեանն հռովմէացւոց՝ յորս ապաւինեսցէ զղեկս ընկերհաշտութեանն, որ և յոր ծագս երկրի գտանիցին, անդ են ընկերհաշտութեանն պահեստք, նա մանաւանդ ընկերհաշտութիւնն ինքնին զգլ-խովին, որ ցայժմ զքէն վրէժուցն ևեթ եհան, չև ևս եգիտ. զանձն: Են են ընկերահաշտիցս պատանիք ազնուատոհմք՝ պատրաստք 'ի պաշտպանութիւն: Տեղի տացեն՝ որչափ և կամին՝ հանդարտեան պարապելով. համայն յետոյ այսրէն կոչեսցէ զնոսա ընկերհաշտութիւնն: Քաղցր է ապաքէն և անուն խաղաղութեան, և ինքն իսկ կենսաբեր. բայց ընդ խաղաղութիւն և ընդ ծառայութիւն՝ բազում է խտրոց

'ի միջի: Խաղաղութիւն է՝ հեզ և հանդարտ ազատութիւն. ծառայութիւն՝ յետին ամենայն չարեաց, ոչ պատերազմաւ միայն, այլ և մահուամբ չափ հերքելի: Ազատաւորացն մեր այնուքիկ, եթէ յերեսաց մերոց անհետասցան, այլ զօրէնակ գործոյն թողին առա. զոր ոչ ուրուք արարեալ էր՝ արարին նոքա: Պատերազմաւ հալածեաց Բրուտոս զՏարկուինիոս, որ յայնժամ թագ կապեաց՝ յորժամ օրէն էր լինել թագաւոր 'ի Հռոմ. Սպուրեանքն Կասսիոս և Մէլիոս, Մ. Մանլիոս, առ կասկած եւեթ զթագաւորութեան թեկն ածելոյ՝ սպանան: Սոքա 121 նախ սրախողխող արարին, ոչ զնկրտեալն 'ի թագաւորութիւն, այլ զթագաւորեալն. որոց գործ նոցա՝ թէ ինքնին չքնաղ իմն է և աստուածային, և թէ 'ի կաղապար առաջի արկեալ. նա աւանիկ այնպիսի փառս ժառանգեցին սոքա, զոր հազիւ թէ երկինք թուեցին բովանդակել: Զի թէպէտ և 'ի նմին իսկ վկայութեան մտաց չնաշխարհիկ գործոյն պտուղ բաւական իցէ, սակայն մահկանացուի ոչ կարծեմ արհամարհելի զանմահութիւն 122:

Արդ. յիշեա, Մ. Անտոնիէ, զօրն զայն՝ յորում ջնջեցեր զիշխանապետութիւն. առաջի աչացդ նկարեա զմեծութիւն ատենականոյն և զհռովմէական ժողովրդեանն. մեծ ընդ նմին 'ի կշիռ զշահավաճառան քո և զքոյոցդ. յայնժամ 'ի միտ առցես՝ որչափ ինչ 'ի միջի իցէ փառաց և շահուց: Բայց զոր օրինակ են որ յախտէ իմեքէ կամ թմբրութեամբ զզայնոցն չա[illegible]համ կերակրոց, նոյնպէս ժլատաց, ընչաքաղցք, չա[illegible]ագործք չունին զճաշակ ճշմարիտ փառաց: Այլ զքեզ եթէ փառք չշարժեն 'ի գործս ուղղութեան, ո՞չ և երկիւղ խոտորեցուցանէ 'ի չարեաց գործոց: Ի դատաստանաց ոչ երկնչիս. եթէ առ անմեղութեան, գովեմ. եթէ առ բռնութեան, չիմանաս՝ թէ աներկիւղն 'ի դատաստանաց յիմէ պարտիցի զանգիտել: Զի եթէ յարանց քաջաց և յընտրական քաղաքացւոց ոչ զարհուրիս, մանաւանդ զի զի-

նուք մերժեալ որոշեալ են 'ի մարմնոյդ, նոքին իսկ քոյքդ, հաւատա ինձ, ոչ հանդուրժեսցեն քեզ յերկար: Իսկ զինչ կեանք իցեն՝ զցայգ և զցերեկ յիւրոցն իսկ 'ի խեթի և 'ի կասկածի լինել. բայց եթէ՝ կամ մեծ ևս երախտեօք շնորհապարտ քեզ զնոսա կացուցեր՝ քան զոր նա զմանս յուրոց խոշոշեցաւն, կամ թէ իցես ինչ դու յիմիք 'ի համեմատութիւն ընդ նմա գալոյ արժանի: Էր 'ի նմա հանճար, մտաւորութիւն, ուշ, գրողութիւնք, խելամտութիւն, ժրրութիւն. անցեալ էր ընդ հանդէսս մարտից պատերազմաց, թէպէտ և աղխատաբերս ընկերհաշտութեան, սակայն մեծամեծս. ամս ոչ սակաւ՝ թագաւորութեան ուշ եդեալ, ջանիւ մեծաւ և ահագին վտանգօք՝ զոր 'ի միտին էր 'ի գլուխ տարեալ. տուովք, յիշատակօք, առատութեամբ պարենից և խրախութեամբք զանդէս ամբոխն ողոքեալ. զիւրան՝ պարգևօք, զհակառակորդսն՝ գթութեան կերպարանօք զիւրև ածեալ: Զի՞ ևս այլ. էր զի ահիւ սաստից, էր զի երկայնմտութեամբ յարամրի 'ի նեղքս մուծեալ էր՝ յազատ քաղաքս այսր՝ զսովորութիւն ծառայութեան: Գոյ ինձ համեմատել զքեզ ընդ նմա յիշխանասիրութեան, իսկ յայլում ամենայնի՝ ոչ ևւիք բերես նմանութիւն: Բայց 'ի բազում չարեացն, որովք յոգի խարեաց նա զընկերհաշտութիւնն, գէթ այս ինչ գտանի բարի, զի ուսաւ ժողովուրդն հռովմէական՝ որչափ ինչ ումեք հաւատս ընծայեսցէ, յոյս ումանս վստահ դնիցէ, յորոց զգոյշ լինիցի: Արդ զայսոսիկ չածես ինչ զմտաւ, չառնուս 'ի միտ՝ թէ արանց քաջաց շատ է ուսանել քանիծն գեղեցիկ լեալ ինքնին, [illegible]եօք քաղցր, անուանք գերադիրս, ատեալ զայլ բռնաւոր. որ նմա ոչն համբերեին արք, միթէ քեզ տարցին: Նա՛ յետ այսորիկ, հաւատա ինձ, մի զգինով եւ և ելս արասցեն ընթանալ յայս գործ, և ոչ դանդաղելոյ ժամուն կալցին ակն:

Արդ հայեաց, աղաչեմ, զամ մի յընկերհաշտութիւնն, Մ. Անտոնիէ. առկ 'ի միտ՝ յորոց ծնեալդ ես, և մի ընդ որս կենցաղես. ընդ իս՝ որպէս և քեզ կամք իցեն. ընդ

ընկերահաշտիս դարձիր 'ի սէր և 'ի հաճութիւն: Սոյն ըղձէն՝ զու քեզէն անսջիր, եւ զանձնես յայս յանդիման վկայեցից: Պահեցի զընկերահաշտութիւնն յերիտասարդութեանս, ոչ լքից 'ի ծերութեան. արհամարհեցի զսուսերսն Կատիլինայի, ոչ շրջեայց 'ի քոյոցդ. Նա աւանիկ կամակար մատուցից զանձն, եթէ մարթիցի ազատութեան քաղաքիս՝ խմով մահուամբ յառնել անդէն 'ի կեանս. որպէս զի ցաւք հռովմէական ժողովրդեան՝ ծնցեն ուրեմն զոր երկնեննն 'ի վաղուց: Զի եթէ յառաջ քան զամս իբրև զքսան, 'ի տաճարի աստ յայսմիկ ասացի վասն առն բդեշխութեամբ պատուելոյ, թէ չէ հնար տարաժամ պատահել նմա մահու, ո՜րչափ ճշմարտագոյն ես ասացից այժմիկ վասն ալեւորիս: Այլ ինձ, հարք ատենակալք, արդէն փափաքելի իսկ է մահ, յետ յանկ հանելոյ զպարտս պաշտամանցն՝ զորս վիճակեցայ և կատարեցի: Երկուս ինչս միայն խնդրեմ. մի, զի 'ի մեռանելս՝ ազատ թողուցում զժողովուրդն հռովմէական. մեծ ևս ինչ քան զայս ինձ պարգեւել չէք բնաւ գիցն անմահից. և միւս, զի իւրաքանչիւր ումեք ըստ գործոց ձեռաց իւրոց առ ընկերհաշտութիւնն, նոյնպէս և 'ի գլուխ նորա կշռեսցին փոխարէնքն [123]:

« Ces paroles ont toute la mélancolie d'un adieu; c'est le testament politique de l'homme d'État qui sent venir [illegible] mort! » E. Sommerhat — Causeries litt. —

կեսարու՝ որ 'ի Հնդկաստան Մարտի գործեցաւ. զկնի որոյ եմուտ կալաւ Դիոկղետիանոս զբդեշխութիւնն, և Անտոնի հաշտեալ՝ ընկալաւ զնա իւր պաշտօնակից, մոռացեալ զհմայեան իւր:

94. Ուր սպանօղք Կեսարու յետ գործոյն վճարելոյ մեկնեալ կացին զատուն զայն և զգիշեր. ընդ այգն և Կիկերոնի գնաց առ նոսա հոգալ զընկերհաշտութենէն:

95. Աստուածուհւոյն Երկրի, ուր 'ի խորհուրդ ժողովեցան աւագանին. և Կիկերոնի 'ի խաղաղութիւն յորդորեաց զամենեսեան և յանոխակալութիւն. 'ի նոյն կեղծաւորեցաւ և Անտոնիոս: Եւ տուեալ պատանդս յորդւոց նորա և Լեպիդեայ, իբրև թէ հաստատեցաւ հաշտութիւն ընդ դաւաճանսն. և վճիռ եղև յատենէն, մի խոյզ և խնդիր առնել դատաստանաւ զսպանողացն Կեսարու, և զվճիռս նորա և զհրամանսն առ վաւերականս ունել:

96. Զի ճառ գամբանական խօսեալ Անտոնի՝ դրուատեաց զԿեսար, ողբացաւ զմահն, դրդեաց զխառնամբոխն 'ի վրէժխնդրութիւն, որոց 'ի խարուկէ անտի Կեսարու յափշտակեալ ջահս և խանձողս՝ դիմեցին հուր հարկանել զտանց սպանողացն:

97. Իմա Կեսարիոն:

98. Զի յափշտակութեամբք կուտեալ էր յընչից Պոմպէոսեանց:

99. Կեսար:

100. Որով տայ իմանալ գործակից զՓուլուիա:

101. Սեքստոս Կղոդիոս ոմն:

102. Յետ սպանման Կեսարու, որպէս ասացաք, կին նորա Կալպուռնիա չորեք հարիւր տաղանդ և զյիշատակագիրս նորա յանձն արար յԱնտոնիոս, որոյ նենգագործ հնարիւք խարդախեալ զայնս՝ արար զոր կամեցաւ, վաճառել մուտս և հաս, պաշտամունս, իշխանութիւնս, ապահարկութիւնս. յուսացեալ 'ի վճիռն որ եղև՝ չփոխել զկարգեալսն 'ի Կեսարէ:

103. Ծաղր, զի որ աքսորանօքն անուանարկ համարեալն էր, դայր քննիչ և դատաւոր լինել վարուց. և տրտունջ զանհաղորդութենէն Անտոնի, որ ծաղր և քրքիջ կացուցանէր զհօրեղբայրն:

104. Ժողով հրամայեալ Անտոնի՝ յանկարծ դադարեցոյց. զի որպէս թուի՝ հազարապետս ոմն ժողովրդեանն պատմէր շանթ տեսեալ 'ի ձախոյ կուսէ, որ և առ Լատինս ձախող նշանակէ յաճախ, որպէս մերս առ Հելլենան:

105. Զի առ 'ի բաշխել զինուորաց զԿամպանեան և զԼէոնտեան դաշտն՝ որս եօթն կարգեաց Անտոնիոս, այլ և ոչ 'ի նոսա զհօրեղբայրն. զի նախ պատրաստ էր 'ի պատուի կացուցանել զնա՝ առ 'ի կարող լինելոյ հասանել յիշխանութիւն ինչ. բայց յայնժամ խիթայր թէ չկարիցէ ժխտել և զլանալ նմա զարծաթն զոր պարտէր. զի 'ի քաղաքական մահուանէ տարագրութեանն կենդանանայր նա յայնժամ յամենայն իրաւունս իւր:

106. Այն է զփուլուխ։

107. Ցայտնի երեւի թէ 'ի Հռովմ էր Կ. Անտոնիոս հօրեղբայրն, թէպէտ եւ ոչ օրինօք մրցեալ յեպերանացն. վասն զի լաւն օրէնք 'ի քաղաքական պատերազմի։

108. Առ աւագանին առէ։

109. Ի շահել եւ յինքն յանկուցանել զվաստակաւոր զօրականն, կամեցաւ գաղութս 'ի նոցանէ բնակեցուցանել՝ անձամբ երթեալ 'ի Կապուա. այլ հին բնակիչքն ընդդէմ դարձան նմա, եւ մազապուր զերծաւ 'ի տատանմանէ։ Վասն որոյ առէ, զհետս կրթեցիք այդմ, զի յաւուր միում եւ ոչ գէրնին ապրեացիս, այլ կորիցես։

110. Ընդ հենդն իմա՝ 'ի մնաց խօթութենէ. զի զինչ մարմնոյ հիւանդութիւն յայրն շուայտոտ իբրեւ զԱնտոնիոս։

111. Ըստ Անտոնի. զի Կեսար հրապարակաւ եւս վաճառել զինչս Պոմպէոսեանց՝ իւրոց հակառակորդաց կորուսելոց 'ի քաղաքական պատերազմին, եւ գնեաց Անտոնիոս. այլ եւ խարեաց գողացաւ եւս յա-ւանդիցն Կեսարու 'ի տաճարին Ոփսեայ, որպէս տեսանք 'ի վերդ։

112. Վաղեմի ուրուք քերթողի է բանդ։

113. Զի յետ սպանութեան Կեսարու աղմկեալ ամբոխն՝ արձան իբրեւ բագին պաշտաման 'ի խարուկին տեղւոջ կանգնեաց նմա 'ի հրապարակին, եւ գիր 'ի նմա Հօրն հայրենեաց. զոր 'ի մեկնել զնալ Անտոնի պատճառանօք զգաղթականօքն շրջելոյ, կամ. յերկիւղէն՝ զի վասն սպանման սուտ Մարիոսի ուրումն՝ ատելի լեալ էր ամբոխին, յայնժամ պաշտօնակից նորա Դոլաբելլա կործանեաց զարձանն, ցրուեալ հեստախաղաղ արարեալ եւ զվայրն. 'ի խռովչացն՝ զծառայս 'ի խաչ եհան, զազատսն քարավէժ արար ընդ ժայռն Տարպէական։

114. Իբրեւ դարձաւ Անտոն 'ի քաղաքն խուան ամբոխիւ զինուց, Կիկերոնի զանգիտեալ համարի զԴոլաբելլա, եւ փախեալ յինքենէ. բայց այլք զօշաքաղութեան նորա տան զայն, որում եւ Կիկերոնի յայտնապէս վկայէ 'ի թղթի միում առ Ատտիկոս մտերիմ իւր։

115. Դատաւորութեան տարի մի կարգեալ էր Կեսարու, բդեշխութեան՝ երկեամ. Անտոնիոս՝ հազարապետութեան օրինօք՝ դատաւորաց եւս ամս կրկին, բդեշխից՝ զերեամ մի։

116. Զորս Անտոնի գնոց առեալ էր զերկոսին 'ի հասարակաց վա-ճառուց։

117. Զի միայն մեհենից անկ էր ունել զմբեթ 'ի վերայ տանեացն, իբրեւ աստուածային վայրի. որպէս եւ բարձ՝ աստուածոց, յոր հան-դուցանէին զպատկերս նոցա յերկրպագութիւն առնուլ։ Պատիւք եւ պաշտօն 'ի սրբակող աստուածային տուեալ էին Կեսարու առ կենդա-նութեամբն. իսկ Անտոնիոս եւ զքրմութիւն նորա խնդրեալ էր եւ ըն-կալեալ, բայց չեւ նուիրեալ՝ սպանաւ Կեսար. եւ նա ոչ եւս այնուհետեւ կամեցաւ նուիրել, եւ յայս ակնարկէ հեգնութիւն Կիկերոնի։